# ՀԱՄԱՌՕՏ
# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
## ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ

ՇԱՐԱԳՐԵԱՑ

Հ. ԱՄԲՐՈՍԻՈՍ ԳԱԼՖԱՅԵԱՆ,

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ




Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1850



## ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ

### Ա.

Թէոդոսի մահուան ատենը՝ հռովմէական կայսերութեան վիճակը (395)։

Թէոդոսի մահուան ատենը (395), Հռովմայեցւոց տէրութիւնը երկու կայսրութիւն բաժնուած էր, Արեւելեան ու Արեւմտեան։

Ա. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆ. — Արեւելեան կայսրութեան սահմանն էր հիւսիսէն Եւքսինեան Պոնտոս և Դանուբ գետը, արեւմուտքէն Տրին գետն ու Յոնիական ծովը, արեւելքէն Տիգրիս ու Եփրատ գետերը, հարաւէն Լիբիոյ անապատը ու Արաբիոյ ծոցը։ Մայրաքաղաքն էր ԲԻՒԶԱՆԴԻՈՆ կամ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ։ Երկու կուսակալութիւն կը բաժնուէր, այսինքն Արեւելք և Լիւրիկէ. Արեւելքի կուսակալը կը նստէր Բիւզան-

դիոն, Լիւրիկէին ՍԻՐՄԻՈՆ՝ որ Պաննոնիոյ մայրաքաղաքն էր։

Արեւելեան կայսերութիւնը հինգ վիճակ կամ նահանգ կը բաժնուէր ու քառասունըինը գաւառ։

ա. Արեւելքի վիճակին մայրաքաղաքն էր ԱՆՏԻՈՔ (Անթաքիա), և տասնըհինգ գաւառ կը բաժնուէր, որոնց գլխաւորներն էին Պաղեստին, Ասորիք, Փիւնիկէ, Միջագետք, Կիպրոս կղզին, Կիլիկիա և Արաբիա։

բ. Եգիպտոսի վիճակին մայրաքաղաքն էր ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ (Իսքէնտէրիէ), ու վեց գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Եգիպտոս, Վերին Լիբիա, Ստորին Լիբիա։

գ. Ասիոյ վիճակին մայրաքաղաքն էր ԵՓԵՍՈՍ (Այասալուգ), և տասնըմէկ գաւառ կը բաժնուէր, որոնց գլխաւորներն էին Պամփիլիա, Փռիւգիա, Լիւդիա, Պիսիդիա, Լիկիա։

դ. Պոնտոսի վիճակին մայրաքաղաքն էր ՆԻԿՈՄԻԴԻԱ (Իզնիմիտ), և տասնըմէկ գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Բիւթանիա, Կապադովկիա, Փոքր Հայք ու Պափղագոնիա։

ե. Թրակիոյ վիճակին մայրաքաղաքն էր ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ, և վեց գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Եւրոպա, Թրակիա, Միսիա և Սկիւթիա։

Լիւրիկէի կայսերութիւնը երկու վիճակ կը բաժնուէր ու տասնըմէկ գաւառ։

ա. Մակեդոնիոյ վիճակը, որուն մայրաքաղաքն էր ԹԵՍԱՂՈՆԻԿԷ (Սէլանիկ), վեց գաւառ կը բաժնուէր, որոնց գլխաւորներն էին Աքայիա, Մակեդոնիա, Թեսսալիա և Եպիրոս։

ա. Դանիոյ վիճակը հինգ գաւառ կը բաժնուէր, ու մէկ մասը օտար ազգաց ձեռքն էր:

Բ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ. — Արեւմտեան կայսերութեան սահմանն էր հիւսիսէն Դանուբ ու Հռենոս գետերը և Գերմանական Ովկիանոսը, արեւմուտքէն Ատլանտեան Ովկիանոսը, հարաւէն Ափրիկէի անապատները, արեւելքէն Տրին գետը. և բոլոր երկիրը երկու կուսակալութիւն կը բաժնուէր, Իտալիա և Գաղղիա:

Թէպէտ և կայսրը սովորաբար ՄԻԼԱՆ կը նստէր, սակայն մայրաքաղաքը հին ատենին պէս ՀՌՈՄ կը սեպուէր: Իտալիոյ կուսակալը Հռոմ կը նստէր, Գաղղիայինն ալ ՏՐԵՒԻՐԻ քաղաքը, որ հիմա կ'ըսուի Թրեւ կամ Թրիեր:

Իտալիոյ կուսակալութիւնը երեք վիճակ կը բաժնուէր ու քսանըինը գաւառ ունէր:

ա. Իտալիոյ վիճակին մայրաքաղաքն էր ՀՌՈՄ, ու տասնըեօթը գաւառ կը բաժնուէր, որոնց գլխաւորներն էին Վենետիա, Լիգուրիա, Հռետիա, Կամպանիա, Սիկիլիա, Ապուլիա, Սամնիոն և Սարդինիա:

բ. Լիւրիկէի վիճակը վեց գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Պաննոնիա, Դալմատիա և Նորիկոն:

գ. Ափրիկէի վիճակին մայրաքաղաքն էր ԿԱՐՔԵԴՈՆ, և վեց գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Ափրիկէ Կարթագինեան, Նումիդիա և Մաւրիտանիա:

Գաղղիոյ կուսակալութիւնը երեք վիճակ կը բաժնուէր և քսանըինը գաւառ:

ա. Սպանիոյ վիճակին մայրաքաղաքն էր ՆՈՐ

ԿԱՐԽԵԴՈՆ կամ ԿԱՐԹԱԳԻՆԷ, և եօթը նահանգ կը բաժնուէր. գլխաւորներն էին Բեթիկէ, Լուսիտանիա և Տարրագոնիա:

Ե. Գաղղիոյ վիճակին մայրաքաղաքն էր ՏՐԵՒԻՐԻ, և տասնըեօթը գաւառ ունէր. գլխաւորներն էին Լուգդոնիա Ա, Գերմանիա, Բելգիա Ա, Սեկուանիա Մեծն, Ակուիտանիա Ա, Նարբոնիա Ա:

Զ. Բրիտանիոյ վիճակին մայրաքաղաքն էր ԵԲՈՐԱԿՈՆ (Եորք), և հինգ գաւառ ունէր:



## Բ.

### Աշխարհագրութիւն Եւրոպիոյ՝ բարբարոսաց արշաւանքէն ետքը (527):

Երբոր 527ին Յուստինիանոս կայսր եղաւ, գերմանական մեծ արշաւանքը լմնցեր էր: Բարբարոսները Արեւմտեան կայսերութիւնը կործաներ, Արեւելեանը կտոր կտոր ըրեր, ու հռոմէական գաւառներուն մէջ այլեայլ թագաւորութիւններ կանգներ էին: Ան միջոցին Եւրոպայի մէջ քսան թագաւորութենէ աւելի կար. գլխաւորներն ասոնք էին:

Ա. Արեւելեան կայսերութիւն. ասոր տակն էին, Եւրոպայի մասին մէջ՝ Մակեդոնիոյ վիճակը, Աքայիոյ փոխահիւպատոսութիւնը և Թրակիոյ վիճակը:

Բ. Թագաւորութիւն Ոստրոգոթաց. ասոր մէջն էր բոլոր Իտալիա, Հռետիոյ ու Նորիկէի մէկ մասը,

Դակիա, Սիկիլիա և Արելատայ Թագաւորութիւնը։

Գ. Թագաւորութիւն Վիսիգոթաց. ասոր մէջն էր Գաղղիոյ Սեպտիմանիա նահանգը, Սպանիական թերակղզւոյն ալ մեծ մասը։ Մէկ մասն ալ Սուեւաց ձեռքն էր։

Դ. Թագաւորութիւնք Փռանկաց, որ չորս էին Կլովիսին մեռած ատենը, այսինքն Մէցի կամ Աւստրասիոյ Թագաւորութիւնը, Օռլէանի Թագաւորութիւնը, Փարիզի Թագաւորութիւնը, Սուասոնի Թագաւորութիւնը։

Ե. Թագաւորութիւն Պուրկոնի. ասոր սահմանն էր հիւսիսէն Վոսգեան լեռները, և արևելքէն Յուրա և Ալպեան լեռները։

Զ. Թագաւորութիւն Լոմպարտացւոց. ասոր գիրքն էր Գերմանիոյ արևելեան հարաւային կողմը, հարաւէն Դանուբին՝ հիւսիսէն ալ Կարպաթեան լերանց մէջտեղը։

Է. Սլաւիա կամ Սլաւոնիա, որ հին ատենը Սարմատիա կ'ըսուէր։

Ը. Սաքսոնացւոց Թագաւորութիւնները, որ Մեծին Բրիտանիոյ մէջ էին։

Թ. Կալէտոնիա, որ երկու Թագաւորութիւն կը բաժնուէր. արևելեան հարաւային կողմը Պիկտացւոց Թագաւորութիւնն էր, արևմտեան հիւսիսային կողմն ալ Սկովտացւոց։

Ժ. Սկանդինաւիա, որ գրեթէ անծանօթ էր, և բնակիչները բարբարոս ժողովուրդներ էին։

## Գ.

### Աշխարհագրութիւն Եւրոպիոյ՝ առաջին խաչակրաց ատենը (1096)։

Առաջին խաչակրաց ատենը, այսինքն մետասանէրորդ դարուն վերջերը՝ Եւրոպան քսանըչորս գլխաւոր մասի կը բաժնուէր։

ա. Կայսերութիւն Յունաց, որ կը տարածուէր Եւքսինեան Պոնտոսէն դէպ 'ի արեւմուտք մինչուան Տրին գետը, Միջերկրական ծովէն ալ դէպ 'ի հիւսիս՝ մինչուան Դանուբ գետը։ Եւրոպայի մասին մէջ տասուերկու գաւառ ունէր։

բ. Թագաւորութիւն Սլաւէնաց, որ Սերուիոյ հարաւային մասն էր։

գ. Տէրութիւնք Նորմանդացւոց Իտալիոյ, որոնց մէջ էին Կապուայի ու Աւերսայի իշխանութիւնները, Ապուլիոյ և Կալաբրիոյ դքսութիւնը, Տարենտոնի իշխանութիւնը և Սիկիլիոյ մեծ կոմսութիւնը։

դ. Թագաւորութիւն Իտալիոյ, որուն մէջ էին Եկեղեցւոյ երկիրները. ասոնց գլխաւոր քաղաքն էր Հռոմ, ուր կը նստէին պապերը. Տոսկիոյ կամ Թոսքանայի զօրաւոր դքսութիւնը. Իտալական Հասարակապետութիւնները, որոնց մէջ երեւելի էին Վենետկոյ, Ճենովայի, Փիզայի, Միլանի և Փաւիայի հասարակապետութիւնները։

ե. Մահմէտական տէրութիւնք Սպանիոյ, որոնց մէջ գլխաւորներն էին Մալակայի, Կրանատայի, Քորտովայի և Թոլետոյի տէրութիւնները. աս ետքինը ամենէն զօրաւորն էր։

Զ. Թագաւորութիւն Վալէնսիոյ կամ Վալէնցայի, որ Սպանիոյ հինգ քրիստոնեայ թագաւորութեանց մէկն էր:

Է. Թագաւորութիւն Արագոնի և Նաւարրայի:

Ը. Կոմսութիւն Պարսէլոնայի և Քաթալոնիոյ:

Թ. Թագաւորութիւն Կաստիլիոյ և Լէոնի, որ Սպանիոյ քրիստոնեայ տէրութեանցը մէջ ամենէն մեծն էր:

Ժ. Կոմսութիւն Փորթուգալի:

ԺԱ. Գաղղիա, որ այլեայլ իշխանութիւններ ու կալուածական տէրութիւններ բաժնուած էր. արեւմտեան հիւսիսէն սահմանն էր Մանշ ըսուած նեղուցը և Հիւսիսային ծովը. արեւելքէն Էսքօ, Սօն և Հռոդանոս գետերը. հարաւէն Լիոնի ծոցն ու Պիրենեան լեռները. արեւմուտքէն Ատլանտեան Ովկիանոսը:

ԺԲ. Հռովմէական կայսրութիւն Գերմանիոյ, որ կը բաժնուէր Լօրէնա, Սաքսոնիա, Փրանկոնիա, Սուապիա, Պաւարիա, Պօհեմիա և Արելատայ Թագաւորութիւնը:

ԺԳ. Թագաւորութիւն Սլաւոնիոյ:

ԺԴ. Լեհաստան կամ Պոլոնիա, որուն մէջն էին Փոմերանիա և Սլեզիա:

ԺԵ. Հունգարիա կամ Մաճառստան:

ԺԶ. Կումանիա, որ Ուրալ լեռներէն մինչեւ Ալութա գետը կը տարածուէր:

ԺԷ. Անգղիա, որ երեսունըինը կոմսութիւն կը բաժնուէր, և Սորլինգեան կղզիները անոր մասն էին:

ԺԸ. Իշխանութիւն Կալլէսի կամ Ուէլսի:

ԺԹ. Սկովտիա:



# ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ

## Ա.

Թէոդոսի մահուան տարէնը՝ հռովմէական կայսերութեան կիսմանը (395)։

Թէոդոսի մահուան տարէնը (395), Հռովմայեցւոց տէրութիւնը երկու կայսրութիւն բաժնուած էր, Արեւելեան ու Արեւմտեան։

Ա. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆ. — Արեւելեան կայսրութեան սահմանն էր հիւսիսէն Եւքսինեան Պոնտոս և Դանուբ գետը, արեւմուտքէն Տրին գետն ու Յոնիական ծովը, արեւելքէն Տիգրիս ու Եփրատ գետերը, հարաւէն Լիբիոյ անապատը ու Արաբիոյ ծոցը։ Մայրաքաղաքն էր ԲԻՒԶԱՆԴԻՈՆ կամ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ։ Երկու կուսակալութիւն կը բաժնուէր, այսինքն Արեւելք և Լիւրիկէ. Արեւելքի կուսակալը կը նստէր Բիւզան-

դիոն, Լիւրիկէինը ՍԻՐՄԻՈՆ՝ որ Պաննոնիոյ մայրաքաղաքն էր։

Արեւելքի կուսակալութիւնը հինգ վիճակ կամ նահանգ կը բաժնուէր ու քառասունըինը գաւառ։

ա. Արեւելքի վիճակին մայրաքաղաքն էր ԱՆՏԻՈՔ (Անթաքիա), և տասնըհինգ գաւառ կը բաժնուէր, որոնց գլխաւորներն էին Պաղեստին, Ասորիք, Փիւնիկէ, Միջագետք, Կիպրոս կղզին, Կիլիկիա և Արաբիա։

բ. Եգիպտոսի վիճակին մայրաքաղաքն էր ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ (Իսքէնտէրիէ), ու վեց գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Եգիպտոս, Վերին Լիբիա, Ստորին Լիբիա։

գ. Ասիոյ վիճակին մայրաքաղաքն էր ԵՓԵՍՈՍ (Այասուլուգ), և տասնըմէկ գաւառ կը բաժնուէր, որոնց գլխաւորներն էին Պամփիլիա, Փռիւգիա, Լիւդիա, Պիսիդիա, Լիկիա։

դ. Պոնտոսի վիճակին մայրաքաղաքն էր ՆԻԿՈՄԻԴԻԱ (Իզնիմիտ), և տասնըմէկ գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Բիւթանիա, Կապադովկիա, Փոքր Հայք ու Պափղագոնիա։

ե. Թրակիոյ վիճակին մայրաքաղաքն էր ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ, և վեց գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Եւրոպա, Թրակիա, Միսիա և Սկիւթիա։

Լիւրիկէի կուսակալութիւնը երկու վիճակ կը բաժնուէր ու տասնըմէկ գաւառ։

ա. Մակեդոնիոյ վիճակը, որուն մայրաքաղաքն էր ԹԵՍԱՂՈՆԻԿԷ (Սէլանիկ), վեց գաւառ կը բաժնուէր, որոնց գլխաւորներն էին Աքայիա, Մակեդոնիա, Թեսաղիա և Եպիրոս։

Է. Դակիոյ վիճակը հինգ գաւառ կը բաժնուէր, ու մէկ մասը օտար ազգաց ձեռքն էր։

Բ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ. — Արեւմտեան կայսերութեան սահմանն էր հիւսիսէն Դանուբ ու Հռենոս գետերը և Գերմանական Ովկիանոսը, արեւմուտքէն Ատլանտեան Ովկիանոսը, հարաւէն Ափրիկէի անապատները, արեւելքէն Տրին գետը. և բոլոր երկիրը երկու կուսակալութիւն կը բաժնուէր, Իտալիա և Գաղղիա։

Թէպէտ և կայսրը սովորաբար ՄԻԼԱՆ կը նստէր, սակայն մայրաքաղաքը հին ատենին պէս ՀՌՈՄ կը սեպուէր։ Իտալիոյ կուսակալը Հռոմ կը նստէր, Գաղղիայինն ալ ՏՐԵՒԻՐԻ քաղաքը, որ հիմա կ՚ըսուի Թրեւ կամ Թրիէր։

Իտալիոյ կուսակալութիւնը երեք վիճակ կը բաժնուէր ու քսանըինը գաւառ ունէր։

Ա. Իտալիոյ վիճակին մայրաքաղաքն էր ՀՌՈՄ, ու տասնըեօթը գաւառ կը բաժնուէր, որոնց գլխաւորներն էին Վենետիա, Լիգուրիա, Հռետիա, Կամպանիա, Սիկիլիա, Ապուլիա, Սամնիոն և Սարդինիա։

Բ. Լիւրիկէի վիճակը վեց գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Պաննոնիա, Դալմատիա և Նորիկոն։

Գ. Ափրիկէի վիճակին մայրաքաղաքն էր ԿԱՐՔԵԴՈՆ, և վեց գաւառ կը բաժնուէր. գլխաւորներն էին Ափրիկէ Կորթագինեան, Նումիդիա և Մաւրիտանիա։

Գաղղիոյ կուսակալութիւնը երեք վիճակ կը բաժնուէր և քսանըինը գաւառ։

Ա. Սպանիոյ վիճակին մայրաքաղաքն էր ՆՈՐ

ԿԱՐՔԵԴՈՆ կամ ԿԱՐԹԱԳԻՆԷ, և եօթը նահանգ կը բաժնուէր. գլխաւորներն էին Բետիկէ, Լուսիտանիա և Տարրագոնիա։

է. Գաղղիոյ վիճակին մայրաքաղաքն էր ՏՐԵՒԻՐԻ, և տասնըեօթը գաւառ ունէր. գլխաւորներն էին Լուգդոնիա Ա, Գերմանիա, Բելգիա Ա, Սեկուանիա Մեծն, Ակուիտանիա Ա, Նարբոնիա Ա։

ը. Բրիտանիոյ վիճակին մայրաքաղաքն էր ԵԲՈՐԱԿՈՆ (Եորք), և հինգ գաւառ ունէր։

---

## Բ.

### Աշխարհագրութիւն Եւրոպիոյ՝ Բարբարոսաց արշաւանքէն Ետքը (527)։

Երբոր 527ին Յուստինիանոս կայսր եղաւ, գերմանական մեծ արշաւանքը լմնցեր էր։ Բարբարոսները Արեւմտեան կայսերութիւնը կործաներ, Արեւելեանը կտոր կտոր ըրեր, ու հռոմէական գաւառներուն մէջ այլևայլ Թագաւորութիւններ կանգներ էին։ Ան միջոցին Եւրոպայի մէջ քսան Թագաւորութենէ աւելի կար. գլխաւորներն ասոնք էին։

ա. Արեւելեան Կայսերութիւն. ասոր տակն էին, Եւրոպայի մասին մէջ՝ Մակեդոնիոյ վիճակը, Աքայիոյ փոխահիւպատոսութիւնը և Թրակիոյ վիճակը։

բ. Թագաւորութիւն Ոստրոգոթաց. ասոր մէջն էր բոլոր Իտալիա, Հռետիոյ ու Իլլիրիկէի մէկ մասը.

Դակիա, Սիկիլիա և Արելատայ Թագաւորութիւնը:

Գ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՎԻՍԻԳՈԹԱՑ. ասոր մէջն էր Գաղղիոյ Սեպտիմանիա նահանգը, Սպանիական թերակղզւոյն ալ մեծ մասը: Մէկ մասն ալ Սուեւաց ձեռքն էր:

Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ ՓՌԱՆԿԱՑ, որ չորս էին Կլովիսին մեռած ատենը, այսինքն Մեցի կամ Աւստրասիոյ Թագաւորութիւնը, Օռլէանի Թագաւորութիւնը, Փարիզի Թագաւորութիւնը, Սուասոնի Թագաւորութիւնը:

Ե. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՊՈՒՐԿՈՆԻ. ասոր սահմանն էր հիւսիսէն Վոսգեան լեռները, և արևելքէն Յուրա և Ալպեան լեռները:

Զ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԼՈՄՊԱՐՏԱՑՒՈՑ. ասոր դիրքն էր Գերմանիոյ արևելեան հարաւային կողմը, հարաւէն Դանուբին՝ հիւսիսէն ալ Կարպաթեան լեռանց մէջտեղը:

Է. ՍԼԱՒԻԱ կամ ՍԼԱՒՈՆԻԱ, որ հին ատենը Սարմատիա կ'ըսուէր:

Ը. ՍԱՔՍՈՆԱՑՒՈՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ, որ Մեծին Բրիտանիոյ մէջ էին:

Թ. ԿԱԼԷՏՈՆԻԱ, որ երկու Թագաւորութեան կը բաժնուէր. արևելեան հարաւային կողմը Պիկտացւոց Թագաւորութիւնն էր, արևմտեան հիւսիսային կողմն ալ Սկովտացւոց:

Ժ. ՍԿԱՆԴԻՆԱՒԻԱ, որ գրեթէ անծանօթ էր, և բնակիչները բարբարոս ժողովուրդներ էին:

1*

## Գ.

### Աշխարհագրութիւն Եւրոպիոյ՝ առաջին խաչակրաց ատենը (1096)։

Առաջին խաչակրաց ատենը, այսինքն մետասա- ներորդ դարուն վերջերը՝ Եւրոպան քանիչորս գլխաւոր մաս կը բաժնուէր։

ա. Կայսերութիւն Յունաց, որ կը տարածուէր Եւքսինեան Պոնտոսէն դէպ 'ի արեւմուտք մինչուան Տրին գետը, Միջերկրական ծովէն ալ դէպ 'ի հիւսիս՝ մինչուան Դանուբ գետը։ Եւրոպայի մասին մէջ տասուերկու գաւառ ունէր։

բ. Թագաւորութիւն Սլաւէնաց, որ Սերուիոյ հա- րաւային մասն էր։

գ. Տէրութիւնք Նորմանդացւոց Իտալիոյ, որոնց մէջ էին Կապուայի ու Աւերսայի իշխանութիւնները, Ապուլիոյ և Կալաբրիոյ դքսութիւնը, Տարենտոնի իշխանութիւնը և Սիկիլիոյ մեծ կոմսութիւնը։

դ. Թագաւորութիւն Իտալիոյ, որուն մէջ էին Եկեղեցւոյ երկիրները. ասոնց գլխաւոր քաղաքն էր Հռոմ, ուր կը նստէին պապերը. Տուսկիոյ կամ Թոսքանայի զօրաւոր դքսութիւնը. Իտալա- կան Հասարակապետութիւնները, որոնց մէջ ե- րեւելի էին Վենետկոյ, Ճենովայի, Փիզայի, Մի- լանի և Փաւիայի հասարակապետութիւնները։

ե. Մահմէտական տէրութիւնք Սպանիոյ, որոնց մէջ գլխաւորներն էին Մալակայի, Կրանատայի, Քոր- տովայի և Թոլետոյի տէրութիւնները. աս ետքինը ամենէն զօրաւորն էր։

զ. Թագաւորութիւն Վաղէնտիոյ կամ Վալէնցայի, որ Սպանիոյ հինգ քրիստոնեայ թագաւորութեանց մէկն էր։

է. Թագաւորութիւն Արագոնի և Նաւառրայի։

ը. Կոմսութիւն Պարսելոնայի և Քաթալոնիոյ։

թ. Թագաւորութիւն Կասթիլիոյ և Լէոնի, որ Սպանիոյ քրիստոնեայ տէրութեանցը մէջ ամենէն մեծն էր։

ժ. Կոմսութիւն Փորթուգալի։

ժա. Գաղղիա, որ այլևայլ իշխանութիւններ ու կալուածական տէրութիւններ բաժնուած էր. արևմտեան հիւսիսէն սահմանն էր Մանշ ըսուած նեղուցը և Հիւսիսային ծովը. արևելքէն Էսքօյ, Սօն և Հռոդանոս գետերը. հարաւէն Լիոնի ծոցն ու Պիրենեան լեռները. արևմուտքէն Ատլանտեան Ովկիանոսը։

ժբ. Հռովմէական կայսերութիւն Գերմանիոյ, որ կը բաժնուէր Լօրէնա, Սաքսոնիա, Ֆրանկոնիա, Սուապիա, Պաւարիա, Պոհեմիա և Արելատայ թագաւորութիւնը։

ժգ. Թագաւորութիւն Սլաւոնիոյ։

ժդ. Լեհաստան կամ Պոլոնիա, որուն մէջն էին Փոմերանիա և Սլեզիա։

ժե. Հունգարիա կամ Մաճառաստան։

ժզ. Կումանիա, որ Ուրալ լեռներէն ինչուան Ալութա գետը կը տարածուէր։

ժէ. Անգղիա, որ երեսունըլինը կոմսութիւն կը բաժնուէր, և Սորլինգեան կղզիները անոր մասն էին։

ժը. Իշխանութիւն Կալլէսի կամ Ուէլսի։

ժթ. Սկովտիա։

Ի. Իռլանտա։

ԻԱ. Դանիա կամ Տանիմարքա, որուն մէջն էին Եութլանտ Թերակղզին և Պալթիկ ծովուն կղզիները։

ԻԲ. Շուէտ, որ երկու թագաւորութիւն կը բաժնուէր, հիւսիսային կողմը՝ թագաւորութիւն Շուէտաց, և հարաւային կողմը թագաւորութիւն Գոթացւոց։

ԻԳ. Նորվէկիա, որուն մասն էին՝ բաց ՚ի բուն Նորվէկիայէն՝ նաև Իսլանտա ու Կրէօնլանտիա, Ֆէրրէօ, Եբրիդեան, Շէթլանտ ու Որկադեան կղզիները։

ԻԴ. Ռուսաստան, որ վեց իշխանութիւն կը բաժնուէր, և ամենէն երևելին էր Քիեվի իշխանութիւնը։





# ՊԱՏԿԵՐ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ

Միջին դար. — Միջին դարու պատմութեան տարածութիւնը. — Գլխաւոր բաժանմունքը. — Գլխաւոր պետութիւնները:

Թէպէտ և դար ըսելով սովորաբար հարիւր տարի կը հասկցուի, բայց պատմութեան մէջ Միջին դար կ'ըսուի ան 1058 տարուան միջոցը, որ հին պատմութեան ու նոր ազգաց պատմութեանը մէջտեղուանքը կ'իյնայ:

Միջին դարու պատմութիւնը կը սկսի Հռովմայեցւոց՝ կայսրութեան բաժնուելէն, որ եղաւ Մեծին Թէոդոսի մահուընէն ետքը 395ին, և կ'երթայ մինչուան 1453, այսինքն սուլթան Մէհէմմէտին Կոստանդնուպօլիսն առնելը:

ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԳԼԽԱՒՈՐ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԸ: Միջին դարու պատմութիւնը ութը մեծամեծ բաժանմունք կամ դարագլուխ ունի.

Ա. ԿԼՈՎԻՍ, կամ Արեւմտեան պետութեանց հաստատուիլը (Զ դար), որ են Փրանկք, Անկլոսաքսոնք, Ոստրոգոթք, Վիզիգոթք, Ալամանք և Պուրկինեանք:

Բ. ՄԱՀՄԷՏ, կամ Ծագումն արեւելեան պետու-

թեանց (Է դար), ինչպէս Պաղտատու ամիրապետները, Սելճուգեանք, Փաթիմեանք և Էյուպեանք։

Գ. ՄԵԾՆ ԿԱՐՈԼՈՍ, կամ Արեւմտեան կայսերութեան նորոգուիլը 800ին (Թ դար)։

Դ. ՄԵԾՆ ՈԹՈՆ, կամ Արեւմտեան կայսերութեան Գերմանացւոց ձեռքն անցնիլը 936ին (Ժ դար)։

Ե. ԿՈՏՖՐՈՒԱ ՏԸ ՊՈՒՅԼԻՈՆ, կամ Սկիզբն խաչակրաց 1095ին (ԺԱ դար)։

Զ. ՀՌՈԴՈՒԼՓՈՍ ՀԱՊՍՊՈՒՐԿՑԻՆ, կամ Վերջ գերմանական անիշխանութեան (1273, ԺԳ դար)։

Է. ՊԱՊԵՐՈՒՆ ԱՒԵՆԻՈՆ ԲՆԱԿԻԼԸ, կամ Արեւմտեան մեծ հերձուած, որ 1378ին սկսաւ ու 1449ին լմնցաւ՝ Կոստանդնուպօլսոյ առնուելէն չորս տարի առաջ։

Ը. ՍՈՒԼԴԱՆ ՄԷՀԷՄՄԷՏ Բ, կամ Առումն Կոստանդնուպօլսոյ յՕսմանեանց 1453ին (ԺԵ դար)։

ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ ՄԷՋ ՁԵՒԱՑԱԾ ԳԼԽԱՒՈՐ ՏԷՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ։ — Միջին դարու մէջ Հռովմայեցւոց կայսերութեան ընդարձակ աւերակներուն վրայ շատ մը նոր տէրութիւններ հաստատուեցան, որոնց գլխաւորները իրենց աշխարհագրական ու ժամանակագրական կարգովը ասոնք են.

Եւրոպայի մէջ. Ա. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ, որ սկսաւ 395ին Մեծին Թէոդոսի որդւոյն Արկադէոսի ձեռքովը, և 1453ին Օսմանցւոց ձեռքովը կործանեցաւ։

Բ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ, որ 395ին սկսաւ Մեծին Թէոդոսի որդւոյն Ոնորիոսի ձեռքովը, և 476ին բարբարոսներուն յարձակմամբը կործանեցաւ։

Գ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ ՓՐԱՆԿԱՑ, *որ Փարամոնտ հիմնեց* 420*ին*, *կամ Կլովիս* 481*ին*։

Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՊՈՒՐԿՈՒՆԵԱՆՑ, *որ* 413*ին Գոնդիկարիոս հիմնեց*, *ու* 534*ին Փրանկները կործանեցին*։

Ե. ՎԻՍԻԳՈԹԱՑ ԵՐԿՈՒ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ, *մէկը Գաղղիոյ մէջ որ Աթաուլֆ հիմնեց* 413*ին*, *ու* 507*ին Կլովիս կործանեց*. *մէկալը Սպանիոյ մէջ որ Վալլիա հիմնեց* 418*ին և Արաբացիք կործանեցին* 711*ին*։

Զ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՆԿԼՈՍԱՔՍՈՆԱՑ, *որ* 455*ին Հէնկիսթ Անգղիոյ մէջ հաստատեց*, *և* 1066*ին Գուլիելմոս Աշխարհակալը կործանեց*։

Է. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՕՍՏՐՈԳՈԹԱՑ, *որ* 493*ին Թէոդորիկոս հիմնեց Իտալիոյ մէջ*, *և* 568*ին Լոմպարտացիք կործանեցին*։

Ը. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԼՈՄՊԱՐՏԱՑԻՈՑ, *որ* 568*ին Ալբոյինոս հիմնեց*, *և Մեծն Կարոլոս* 774*ին կործանեց*։

Թ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՐԱԲԱՑԻՈՑ, *որ* 711*ին Սպանիոյ մէջ հիմնեց Թարիգ*, 1031*ին իր տէրութիւն բաժնուեցաւ*, *և* 1492*ին Փերտինանտոս Ուղղափառին ձեռքովը կործանեցաւ*։

Ժ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒՐԻՈՑ *կամ* ԼԷՈՆԻ, *որ* 711*ին Պեղագիոս Սպանիոյ մէջ հաստատեց*. *նոյնպէս հիմնուեցան Սպանիոյ մէջ* ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՆԱՒԱՐՐԱՑԻ 905*ին*, ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՔԱՍԹԻԼԻՈՑ 960*ին*, ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՐԱԿՈՆԻ 1003*ին*, *և* ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՓՈՐԴՈՒԿԱԼԻ 1139*ին*։

ԺԱ. ՏԷՐՈՒԹԻՒՆ *կամ* ՎԻՃԱԿ ԵԿԵՂԵՑԻՈՑ,

որ 756ին հաստատեց Պեպինոս կարճահասակն 'ի շնորհս Ստեփանոս Բ պապին ։

ԺԲ․ ՀԱՍԱՐԱԿԱՊԵՏՈՒԹԻՒՆՔ ԻՏԱԼԻՈՅ, որոնց գլխաւորներն են Վենետկոյ ու Ճենովայի հասարակապետութիւնները․ առջինը հիմնուեցաւ 709ին, երկրորդը 958ին ։

ԺԳ․ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ կամ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ, զոր 936ին հիմնեց Մեծն Ոթոն ։

ԺԴ․ ՍԼԱՒԵԱՆ ՏԷՐՈՒԹԻՒՆՔ ՌՈՒՍԻՈՅ, ԼԵՀԱՍՏԱՆԻ, ՄԱՃԱՌՍՏԱՆԻ ԵՒ ՊՈՀԵՄԻՈՅ, հիմնուեցան Թ և Ժ դարերուն մէջ ։

ԺԵ․ ՍԿԱՆԴԻՆԱՒԵԱՆ ՏԷՐՈՒԹԻՒՆՔ ՏԱՆԻՄԱՐՔԱՅԻ, ՇՈՒԵՏԻ ԵՒ ՆՈՐՎԵԿԻՈՅ, հիմնուեցան Ը և Թ դարերուն մէջ ։

ԺԶ․ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՒՑ ՍԻԿԻԼԵԱՑՑ, զոր 1089ին հիմնեցին Նորմանտացիք ։

ԺԷ․ ՀԵԼՈՒԵՑԵԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ, զոր 1308ին Հելուետիացիք կամ Զուիցերացիք հաստատեցին ։

Ասիոյ մէջ․ Ա․ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՊԱՐՍԻՑ, որ 226ին հիմնեց Արտաշէս Սասանեան, և 652ին Արաբացիք կործանեցին ։

Բ․ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՐԱԲԱՑԻՈՑ, որ 622ին Մահմէտ հիմնեց, ու անոր յաջորդները կառավարեցին մինչուան 660․ Իւմէանք մինչուան 750, Աբբասեանք մինչուան 1258, և ան տարին Մողոլները Պաղտատու ամիրապետութիւնը կործանեցին ։

Գ․ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՍԷԼՃՈՒԿԵԱՆ ԹՈՒՐՔԱՑ, զոր 1040ին հիմնեց Տուղրիլ, և 1294ին Մողոլներն ու Օսմանցիք կործանեցին ։

Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄՈՂՈԼԱՑ, *զոր* 1206*ին հիմնեց Ճէնկիզխան*, *և* 1294*ին կործանեցաւ* ։

Ե. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՕՍՄԱՆԵԱՆՑ, *որ* 1294*ին հիմնեց սուլդան Օսման*, *և* 1453*ին Կոստանդնուպօլիս փոխադրուեցաւ* ։

ԱՖՐԻԿԷ ՔԷ. Ա. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՎԱՆԴԱԼԱՑ, *զոր* 429*ին հիմնեց Գենսերիկոս*, *և* 534*ին կործանեց Բեղիսարիոս՝ Յուստինիանոս կայսեր զօրավարը* ։

Բ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՖԱԹԻՄԵԱՆՑ, *զոր* 907*ին հիմնեց Իւպէյտուլլահ*, *և* 1171*ին կործանեց Սալահադին* ։

Գ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԷՅՈՒՊԵԱՆՑ, *որ* 1171*ին հիմնեց Սալահադին*, *և* 1260*ին Մէմլուքները կործանեցին* ։

Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄՈՐԱՒԵԱՆՑ (1056-1146) ։

Ե. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄՈՀԱՏԵԱՆՑ (1121-1269) ։



Ժ. Իռլանտա :

ԺԱ. Դանիա կամ Տանիմարգա, որուն մէջն էին Եութլանտ Թերակղզին և Պալթիկ ծովուն կղզիները :

ԺԲ. Շուէտ, որ երկու թագաւորութիւն կը բաժնուէր, հիւսիսային կողմը՝ թագաւորութիւն Շուէտաց, և հարաւային կողմը թագաւորութիւն Գոթացւոց :

ԺԳ. Նորվէկիա, որուն մասն էին՝ բաց 'ի բուն Նորվէկիայէն՝ նաև Իսլանտա ու Կրէօնլանտիա, Ֆէրրէօ, Եբրիդեան, Շէթլանտ ու Որկադեան կղզիները :

ԺԴ. Ռուսաստան, որ վեց իշխանութիւն կը բաժնուէր, և ամենէն երևելին էր Քիեվի իշխանութիւնը :





# ՊԱՏԿԵՐ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ

Միջին դար. — Միջին դարու պատմութեան տարածութիւնը. — Գլխաւոր բաժանմունքը. — Գլխաւոր պետութիւնները։

*Ինչպէս և դար ըսելով սովորաբար հարիւր տարի կը հասկըցուի, բայց պատմութեան մէջ Միջին դար կ'ըսուի ան 1058 տարուան միջոցը, որ հին պատմութեան ու Նոր ազգաց պատմութեանը մէջտեղուանքը կ'իյնայ։*

*Միջին դարու պատմութիւնը կը սկսի Հռովմայեցւոց կայսերութեան բաժնուելէն, որ եղաւ Մեծին Թէոդոսի մահուընէն ետքը 395ին, և կ'երթայ մինչուան 1453, այսինքն սուլթան Մէհէմմէտին Կոստանդնուպոլիս առնելը։*

ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԳԼԽԱՒՈՐ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԸ։ *Միջին դարու պատմութիւնը ութը մեծամեծ բաժանմունք կամ դարագլուխ ունի.*

Ա. ԿԼՈՎԻՍ, կամ Արեւմտեան պետութեանց հաստատուիլը (Զ դար), որ են Փրանկք, Անկլոսաքսոնք, Ոստրոգոթք, Վիզիգոթք, Ալամանք և Պուրկինեանք։

Բ. ՄԱՀՄԷՏ, կամ Ծագումն արեւելեան պետու-

թեանց (Է դար), ինչպէս Պաղտատու ամիրապետները․ Սելճուքեանք, Թաթարեանք և Էյուպեանք:

Գ. ՄԵԾՆ ԿԱՐՈԼՈՍ, *կամ* Արեւմտեան կայսերութեան նորոգումը 800*ին* (Թ *դար*):

Դ. ՄԵԾՆ ՈԹՈՆ, *կամ* Արեւմտեան կայսերութեան Գերմանացւոց ձեռքն անցնիլը 936*ին* (Ժ *դար*):

Ե. ԿՈՏՖՐՈՒԱ ՏԸ ՊՈՒՅԼԻՈՆ, *կամ* Սկիզբն խաչակրաց 1095*ին* (ԺԱ *դար*):

Զ. ՀՌՈԴՈՒԼՓՈՍ ՀԱՊՍՊՈՒՐԿՑԻՆ, *կամ* Վերջ գերմանական անիշխանութեան (1273, ԺԳ *դար*):

Է. ՊԱՊԵՐՈՒՆ ԱՒԵՆԻՈՆ ԲՆԱԿԻԼԸ, *կամ* Արեւմտեան մեծ հերձուած, *որ* 1378*ին սկսաւ ու* 1449*ին լմնցաւ՝ Կոստանդնուպօլսոյ առնուելէն չորս տարի առաջ*:

Ը. ՍՈՒԼԴԱՆ ՄԷՀԷՄՄԷՏ Բ, *կամ* Առումն Կոստանդնուպօլսոյ յՕսմանեանց 1453*ին* (ԺԵ *դար*):

ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ ՄԷՋ ՁԵՒԱՑԱԾ ԳԼԽԱՒՈՐ ՏԷՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ: — *Միջին դարու մէջ Հռովմայեցւոց կայսրութեան ընդարձակ աւերակներուն վրայ շատ մը նոր տէրութիւններ հաստատուեցան, որոնց գլխաւորները իրենց աշխարհագրական ու ժամանակագրական կարգովը ասոնք են․*

Եւրոպայի մէջ. Ա. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ, *որ սկսաւ* 395*ին Մեծին Թէոդոսի որդւոյն Արկադէոսի ձեռքովը, և* 1453*ին Օսմանցւոց ձեռքովը կործանեցաւ:*

Բ. ԱՐԵՒՄՏԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ, *որ* 395*ին սկսաւ Մեծին Թէոդոսի որդւոյն Ոնորիոսի ձեռքովը, և* 476*ին բարբարոսներուն յարձակմամբը կործանեցաւ:*

Գ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՔ ՓՐԱՆԿԱՑ, *որ Փարամոնտ հիմնեց* 420*ին*, *կամ Կլովիս* 481*ին*։

Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՊՈՒՐԿՈՒՆԵԱՆՑ, *որ* 413*ին Գոնդիկարիոս հիմնեց*, *ու* 534*ին Փրանկները կործանեցին*։

Ե. ՎԻՍԻԳՈԹԱՑ ԵՐԿՈՒ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ, *մէկը Գաղղիոյ մէջ՝ որ Աթաուլփ հիմնեց* 413*ին*, *ու* 507*ին Կլովիս կործանեց*. *մէկալը Սպանիոյ մէջ՝ որ Վալլիա հիմնեց* 418*ին և Արաբացիք կործանեցին* 711*ին*։

Զ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՆԿԼՈՍԱՔՍՈՆԱՑ, *որ* 455*ին Հէնկիսթ Անգղիոյ մէջ հաստատեց*, *և* 1066*ին Գուլիէլմոս Աշխարհակալը կործանեց*։

Է. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՈՍՏՐՈԳՈԹԱՑ, *որ* 493*ին Թէոդորիկոս հիմնեց Իտալիոյ մէջ*, *և* 568*ին Լոմպարտացիք կործանեցին*։

Ը. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԼՈՄՊԱՐՏԱՑԻՈՑ, *որ* 568*ին Ալբոյինոս հիմնեց*, *և Մեծն Կարոլոս* 774*ին կործանեց*։

Թ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՐԱԲԱՑԻՈՑ, *որ* 711*ին Սպանիոյ մէջ հիմնեց Թարիգ*, 1031*ին ինը տէրութեան բաժնուեցաւ*, *և* 1492*ին Փերտինանտոս Ուղղափառին ձեռքովը կործանեցաւ*։

Ժ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒՐԻՈՑ *կամ* ԼԷՈՆԻ, *որ* 711*ին Պեղագիոս Սպանիոյ մէջ հաստատեց*. *նոյնպէս հիմնուեցան Սպանիոյ մէջ* ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՆԱՒԱՐՐԱՅԻ 905*ին*, ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՔԱՍԹԻԼԻՈՅ 960*ին*, ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՐԱԿՈՆԻ 1003*ին*, *և* ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՓՈՐԴՈԿԱԼԻ 1139*ին*։

ԺԱ. ՏԷՐՈՒԹԻՒՆ *կամ* ՎԻՃԱԿ ԵԿԵՂԵՑԻՈՅ,

որ 756ին հատուածեց Պեպինոս Կարճահասակն 'ի շնորհս Ստեփանոս Բ պապին :

ԺԲ. ՀԱՍԱՐԱԿԱՊԵՏՈՒԹԻՒՆՔ ԻՏԱԼԻՈՅ, որոնց գլխաւորներն են Վենետկոյ ու Ճենովայի հասարակապետութիւնները . առջինը հիմնուեցաւ 709ին, երկրորդը 958ին :

ԺԳ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ կամ ԿԱՅՍԵՐՈՒԹԻՒՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ, զոր 936ին հիմնեց Մեծն Ոթոն :

ԺԴ. ՍԼԱՒԵԱՆ ՏԷՐՈՒԹԻՒՆՔ ՌՈՒՍԻՈՅ, ԼԵՀԱՍՏԱՆԻ, ՄԱՃԱՌՍՏԱՆԻ ԵՒ ՊՈՀԵՄԻՈՅ, հիմնուեցան Թ և Ժ դարերուն մէջ :

ԺԵ. ՍԿԱՆԴԻՆԱՒԵԱՆ ՏԷՐՈՒԹԻՒՆՔ ՏԱՆԻՄԱՐՔԱՅԻ, ՇՈՒԵՏԻ ԵՒ ՆՈՐՎԵԿԻՈՅ, հիմնեցան Ը և Թ դարերուն մէջ:

ԺԶ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԵՐԿՈՒՑ ՍԻԿԻԼԵԱՑՑ, զոր 1089ին հիմնեցին Նորմանտացիք :

ԺԷ. ՀԵԼՈՒԵՏԵԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ, զոր 1308ին Հելուետիացիք կամ Զուիցերացիք հաստատեցին :

Ասիոյ մէջ. Ա. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՊԱՐՍԻՑ, որ 226ին հիմնեց Արտաշէս Սասանեան, և 652ին Արաբացիք կործանեցին :

Բ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՐԱԲԱՑԻՈՑ, որ 622ին Մահմէտ հիմնեց, ու անոր յաջորդները կառավարեցին ինչուան 660. Օմմէանք ինչուան 750, Աբբասեանք ինչուան 1258, և ան տարին Մողոլները Պաղտատու ամիրապետութիւնը կործանեցին :

Գ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՍԷԼՃՈՒԳԵԱՆ ԹՈՒՐՔԱՑ, զոր 1040ին հիմնեց Տուղրիլ, և 1294ին Մողոլներն ու Օսմանցիք կործանեցին :

Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄՈՂՈԼԱՑ, *զոր 1206ին հիմնեց Ճենկիզխան, և 1294ին կործանեցաւ։*

Ե. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՕՍՄԱՆԵԱՆՑ, *որ 1294ին հիմնեց սուլդան Օսման, և 1453ին Կոստանդնուպօլիս փոխադրուեցաւ։*

Աֆրիկէի Մէջ. Ա. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՎԱՆԴԱԼԱՑ, *զոր 429ին հիմնեց Գենսերիկոս, և 534ին կործանեց Բելիսարիոս՝ Յուստինիանոս կայսեր զօրավարը։*

Բ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՖԱԹԻՄԵԱՆՑ, *զոր 907ին հիմնեց Իւպէյտուլլահ, և 1171ին կործանեց Սալահադին։*

Գ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԷՅՈՒԲԵԱՆՑ, *որ 1171ին հիմնեց Սալահադին, և 1260ին Մէմլուքները կործանեցին։*

Դ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄՈՐԱԻԵԱՆՑ (1056-1146)։

Ե. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՄՈՀԱՏԵԱՆՑ (1121-1269)։





# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԻՋԻՆ ԴԱՐՈՒ

## ԳԼՈՒԽ Ա.

Պատմութիւն Արեւելեան ու Արեւմտեան կայսերութեանց՝ Թէոդոսի մահուընէն ինչուան Ոնորիոսի մահը (395–424) : Արկադէոս և Ոնորիոս. — Հռուֆինոս և Ստիլիկոն. — Բարբարոս ազգաց այլևայլ ցեղերը, այսինքն Սկիւթացիք, Ալանք, Գերմանացիք. — Բարբարոսաց արշաւանքը. — Ալարիկոսի ապէնը Վիզիգոթաց արշաւանքը. — Եւտրոպիոս. — Եւդոքսիա թագուհին. — Յովհան Ոսկեբերան. — Սուեւաց արշաւանքը. — Ստիլիկոնի յաղթութիւնները. — Մահը. — Ալարիկոսի Հռոմ առնելն ու կողոպտելը. — Մահը. — Աթաուլֆ. — Կոստաս. — Վալլիա. — Հիմնարկութիւն թագաւորութեանց Վիզիգոթաց, Սուեւաց և Պուրկինեանց. — Ոնորիոսի մահը :

1 Մեծն Թէոդոս մեռնելու ատեն (395) կայսերութիւնը իր երկու որդւոցը թողուց, որ էին

---

1 Մեծն Թէոդոս որմէն թողուց իր թագաւորութիւնը :

Ոնորիոս և Արկադէոս. Ոնորիոսի բաժինն ընկաւ արևմուտքը, Արկադէոսին արևելքը. բայց իրօք ոչ մէկը թագաւորեց և ոչ մէկալը. Ոնորիոս բոլոր կառավարութիւնը Ստիլիկոն անուամբ իշխանին յանձներ էր, Արկադէոս ալ Հռուփինոս անունով մէկուն:

1 Այս երկու իշխանները ամենևին իրարու չէին նմաներ: Հռուփինոս Գաղղիացի էր ազգաւ և աննշան ցեղէ. միայն խարդախութեամբ ու անգթութեամբ իշխանութեան հասեր էր, և փառամոլութեամբ վառուած կ'ուզէր նաև կայսերութիւնը ձեռք ձգել, բայց Եւտրոպիոս ներքինին չթողուց: Իսկ Ստիլիկոն՝ ազգաւ Վանդալ էր, և իր զանազան կատարելութիւններովը հասաւ ան փառաւոր աստիճանին. բնաւորութեամբը Մարիոսին կը նմանէր. ան անուանի զօրավարին պէս խելացի, անոր պէս ալ քաջ ըլլալէն ետքը՝ ճարտարութեամբն ու յանդգնութեամբը անկէց ալ վեր էր:

2 ԲԱՐԲԱՐՈՍ ԱԶԳԱՑ ԱՅԼԵՒԱՅԼ ՑԵՂԵՐԸ: — Այն ատեններն որ աս իրարու հակառակ բնաւորութեամբ մարդկանց ձեռքը մնացած էր աշխարհքիս կառավարութիւնը, անհամար բարբարոսներ*

---

1 Հռուփինոս և Ստիլիկոն ինչ բնաւորութեան տէր մարդիկ էին:
2 Բարբարոս ազգերը ինչ մեծամեծ ճիւղեր կը բաժնուէին:

* Բարբարոս ըսելով կը հասկընային Հռովմայեցւոց տէրութենէն դուրս ու անոնց քաղաքականութիւնը չճանչցող ժողովուրդները:

*եկան հռոմէական տէրութեան սահմանները կոխեցին՝ Պարսկային ծոցէն մինչուան Բատաւացւոց երկիրը, այսինքն Հոլանտայոյ կողմերը։ Այս բարբարոսները երեք գլխաւոր ցեղ կը բաժնուէին.* Սկիւթական կամ Թաթար, Սլաւեան կամ Սարմաթացի, և Գերմանական։ *Սկիւթական ցեղին մէջ էին Հոնք, Ալանք, Աւարք, Բուլղարք, Մողոլք և Թուրքք։ Սլաւեան ցեղին մէջ Խառուաթք, Բուն Սլաւեանք, Պոհեմիացիք, Լեհք, Փոմերանիացիք և Ֆինք կամ Ֆինլանտացիք։ Իսկ Գերմանականին մէջ կը սեպուէին Ալամանք, Փրանկք, Սաքսոնիացիք, Գոթացիք *, Վանդալք, Բաւարք (Պաւերիացիք), Հերուլք, Գեպիդեանք, Պուրկինեանք, Լոմպարտացիք, Սուէւք, Սուեւիացիք, Անգղիացիք և Նորմանտացիք։*

1 *Ասոնց ամենուն կարգէ դուրս և ահաւոր բնաւորութիւնները հռոմայ տէրութեանը՝ մէջ երևցան։ Նախ քիչ քիչ, ետքն ալ մէկէն բազմութեամբ եկան կոխեցին ան երկիրները. կէս մը կարճահասակ, վառուժ ու սեւամորթ մարդիկ, կէս մըն ալ կապուտ աչուըներով ու դեղին մազերով վիթխարի հսկաներ. ոմանք մերկ՝ վզնոցներով, երկաթէ օղակներով ու ապարանջաններով զարդարուած, ուրիշները մորթապատ լայն վարտիք ու գոյնզգոյն վերարկու հագած. ոմանք գլուխնին վայրենի գազանաց գլուխներուն նման այլանդակ*

---

1 *Բարբարոսաց դրսի տեսքը ի՛նչպէս էր։*

* Գոթացիք երկու ցեղ կը բաժնուէին. Տնեպեր գետին արևելեան կողմը բնակողները *Ոստրոգոթք* կ'ըսուէին, իսկ արևմտեան կողմը բնակողները *Վիզիգոթք*։

սաղաւարտներ դրած , ուրիշները կզակնին ու ծոծրակնին միայն գերծած , ուրիշներն ալ երկայն մօրուք ու ընչացք թողած :

1 Ասոնք թէ՛ լեզուով և թէ սովորութիւններով իրարմէ տարբեր ժողովուրդներ էին : Սկիւթացւոց կամ Հոնաց կերպարանքին վրայ մէկէն կ'երևնար անոնց անգթութիւնը . իրենց աստուածը՝ գետինը տնկած թուր մըն էր կ'ըսեն , որ մարդու արիւնով կ'ոռոգէին : Պզտիկուց մայրերնին անոնց քիթը կը ճզմեն եղեր որ տափակ մնայ . իրենք ալ երեսնին թրով կը կտրտէին որ վրան մօրուք չբուսնի : Այնպիսի սոսկալի տեսք մը ունէին Հոնք , որ բարբարոս ազգերն ալ անոնց տգեղութենէն ու անգթութենէն կը սարսափէին : Երբոր ասոնք տեղէ մը կ'անցնէին՝ երկիրը անանկ կ'ապականէին , որ ալ հոն խոտ չէր բուսներ . և թէ որ շատ արգելքներ չունենային դիմացնին , իրենց դիւցազունքը Ատտիղաս , Ճէնկիզխան և Լէնկթիմուր , անշուշտ կրնային իրենց ազգին դիտաւորութիւնը կատարել , որ էր բոլոր երկիրս լայն և ընդարձակ անապատ մը դարձընել :

2 Սլաւեանք Սկիւթացւոց պէս տգեղ չէին . երկայնահասակ ու զօրաւոր մարդիկ էին , իրարմէ հեռու խեղճ տնակներու մէջ կը բնակէին , և անդադար տեղերնին կը փոխէին : Մէկ աստուած մը միայն կը պաշտէին , ու անոր եզներ և ուրիշ կենդանիներ կը զոհէին :

---

1 Բարբարոսները , և նախ Սկիւթացիք ինչ մանաւոր բնաւորութիւններ ունէին :

2 Սլաւեանք ինչ սովորութիւններ ունէին :

1 Գերմանացիք՝ որ Կեսարու ատենէն 'ի վեր ճանչցուած էին իրենց քաջութեամբը, կ'ըսէին թէ մեր Նախահայրը Երկրիս որդին Տուիսկոն աստուածն է։ Անոնք խելքով, քաջասրտութեամբ ու տեսքով ան բարբարոս ազգաց մէջ ամենէն վեր էին։ Իրենց պատերազմասէր բնաւորութեանը չափ չկար. մեծ աստուածնին Օտին կ'ըսուէր, և խոստացեր էր իրենց որ ով որ քաջութեամբ պատերազմելով մեռնի, անոր հոգին Վալհալլա ըսուած դրախտը կամ փափկութեան երկիրը պիտի երթայ, հոն անդադար պատերազմ պիտի ընէ ու որչափ որ ուզէ գարեջուր պիտի խմէ։ Աս ժողովուրդներէն ոմանք շատ համբաւաւոր եղան, ինչպէս Գօթացիք, Փրանկք, Ալամանք, Սաքսոնք, Վանդալք, Անգղիացիք և Նորմանտացիք։ Անոնց մէ էին Ալարիկոս, Գենսերիկոս, Կլովիս, Մեծն Կարոլոս ու Գուլիելմոս Աշխարհակալը, որոնց անունները պատմութեանց մէջ անկորուստ մնացին, ինչպէս որ պիտի տեսնենք։

2 Սկիւթական ցեղը Դանուբէն ինչուան ասիական Ռուսաստանի սահմանը բռնած էր, Սլաւեան ցեղը՝ Թիսա գետին, Պալթիկ ծովուն և Վոլկա գետին մէջտեղուանքը. Գերմանական ցեղն ալ՝ Հռենոսի, Պալթիկ ծովուն և Հռետեան Ալպեանց մէջ ընկած երկիրները. Գօթացիք ան ատենները դեռ նոր եկեր՝ հին Մակեդոնիոյ տիրեր էին, Կոստանդնուպօլսոյ ալ տիրելու կը սպառնային։

---

1 Գերմանացիք ի՞նչ բնաւորութեան տէր էին։

2 Բարբարոսաց բնակած երկիրները որո՞նք էին։

1 ՎԻՍԻԳՈԹԱՑ ԱՐՇԱՒԱՆՔԸ. — *Թէոդոսի Թագաւորութեան վերջի տարիները Վիսիգոթք, այսինքն արեւմտեան Գոթացիք, որ Դանուբին եզերքը կը բնակէին, տարեկան վարձ կամ տուրք մը առնելով կայսեր սահմաններուն պաշտպանութիւն կ'ընէին։ Թէոդոսի մեռնելու ատենը ան Վիսիգոթաց իշխանն էր Ալարիկոս անունով յանդուգն ու գործունեայ մարդը։ Արկադէոսի հազարապետը Հռուփինոս՝ Ստիլիկոնի պահանջմունքներէն վախնալով, որ կ'ուզէր երկու կայսերութիւններն ալ ինքը կառավարել, Վիսիգոթները իրեն օգնութեան կանչեց։ Ալարիկոս մէկէն Կոստանդնուպոլսոյ վրայ վազեց. հոն Կայնաս անունով Գոթացի զօրավարը՝ որ մեծ իշխանութիւն ունէր կայսերական պալատին մէջ՝ զարկաւ Հռուփինոսը կայսեր առջեւը սպաննեց։*

2 *Արկադէոս Հռուփինոսին տեղը դրաւ իր սիրելի Եւտրոպիոս ներքինին։ Խելացի մարդիկ շատ բարկացան աս ընտրութեան վրայ, վասն զի նախատինք ալ կը սեպէին իրենց ներքինիէ մը կառավարուիլը. ընդհակառակն շողոքորթները շատ ուրախութիւն ցուցուցին եւ խնդակցութեան գնացին իրեն, ծերակոյտն ալ անոր արձաններ կանգնեց։ Եւտրոպիոս հիւպատոս ու Թագաւորահայր ըլլալէն ետքը՝ երբոր իշխանութեանը մէջ հաստա-*

---

1 *Վիսիգոթք ի՞նչ պատճառաւ արշաւեցին արեւելեան կայսերութեան վրայ։ — Հռուփինոս ի՞նչպէս մեռաւ։*

2 *Հռուփինոսին տեղը ո՞վ անցաւ։*

տուեցաւ, միտքը դրած չարութիւնները սկսաւ 'ի գործ դնել. շատ գաւառներ ծախեց թշնամեաց, հարստութիւն դիզելու համար մէկու մը չէր խնայեր, և ամենուն ստացուածքը կը կողոպտէր. օրէնք դրաւ որ եկեղեցին փախչողներն ալ չկարենան իր ձեռքէն ազատիլ, ու Թէոդոսի ատենէն մնացած զօրավարները՝ որոնց քաջութենէն ու համբաւէն կը վախնար, զամէնքն ալ սպաննեց:

1 Ան միջոցին Ոստրոգոթացի զօրավար մը Փռիւգիոյ մէջ ապստամբութիւն մը հանեց. Եւտրոպիոս անոր դէմ հռչակաւոր Կայնաս Գոթացին խրկեց, բայց անիկայ գնաց Ոստրոգոթաց հետ միացաւ, ու կայսեր դեսպան խրկեց որ եթէ Եւտրոպիոսի գլուխը իրենց տայ, մէկէն կը հնազանդին: Երբոր կայսրը տարակուսեր էր, Եւդոքսիա Թագուհին երկու որդիքը գիրկն առած՝ գնաց անոր ոտքն ինկաւ, գանգատեցաւ Եւտրոպիոսին վրայ որ ամենուն առջևը զինքը յանդիմաներ ու ինչուան պալատէն դուրս վռնտելու սպառնացեր էր: Ալ չտարակուսեցաւ Արկադէոս, կտրեց անոր վճիռը:

2 Ան պալատականները, ան ժողովուրդը որ իշխանութենէն վախնալով՝ Եւտրոպիոսի շողոքորթութիւն կ'ընէին, զինքը դատապարտուած տեսնելնուն պէս՝ նախատինք չմնաց որ չտան անոր. ինչուան կ'ուզէին զինքը բզիկ բզիկ ընել. հազիւ

---

1 Եւտրոպիոս ի՞նչ կերպով մահապարտ վճռուեցաւ:

2 Ի՞նչ կերպով մահուընէ ազատեցաւ առջի անգամ:

փախաւ Եւտրոպիոս իր գրած օրէնքին դէմ՝ ե-
կեղեցի մը ապաւինեցաւ ։ Սուրբն Յովհան Ոս-
կեբերան ( որ այն ատենը Կոստանդնուպօլսոյ պա-
տրիարք էր ) պաշտպանեց զինքը , հրաշալի ճար-
տասանութեամբ մը մարդկային իրաց անհաստա-
տութեանը վրայ գեղեցիկ ճառ մը խօսեցաւ , ու
ժողովրդեան կատաղութիւնը իջեցուց ․ « Թէ որ
,, յարմար ատեն մը կայ , ըսաւ , կանչելու Ու-
,, նայնութի՜ւն ունայնութեանց ամենայն ինչ ընդունայն է ,
,, ահա անտարակոյս աս ատենս է ։ Ո՞ւր է այն
,, փառաւոր իշխանութիւնը , ո՞ւր է այն մեծամեծ
,, պատուոյ նշանները , ի՞նչ եղան այն հանդէսներն
,, ու ուրախութեան օրերը ․ ո՞ւր մնացին այն ծա-
,, փահարութիւնները , այնչափ շողոքորթութիւն-
,, ները որ կ՚ընէր բոլոր ժողովուրդը կրկեսին մէջ
,, ժողվուած ։ Հովը մէկ փչելով մը այն փառաւոր
,, ծառին բոլոր տերեւները թօթափեց , ու արմա-
,, տէն խլեց՝ մէկդի ձգեց ․ ․ ․ ։ Ամէն բան անցաւ ,
,, աներեւոյթ եղաւ երազի մը պէս , ծաղկի մը պէս ,
,, շուքի մը պէս ։ Ուրեմն յարմար ատեն է որ
,, կրկնենք Հոգւոյն սրբոյ վճիռը թէ Ունայնութիւն
,, ունայնութեանց ամենայն ինչ ընդունայն է ։ Աս խօսքը
,, պայծառ գրերով պէտք էր գրել հրապարակ-
,, ները , դռներուն վրայ ու տներու պատերուն
,, վրայ ․ բայց ևս առաւել պէտք է գրել աս խօսքս
,, մեր սրտին մէջ ու անդադար անոր վրայ ընել մեր
,, խօսակցութիւնները ։ Իրաւունք չունէի՞ ուրեմն ,
,, ( կ՚ըսէ Ոսկեբերան Եւտրոպիոսին դառնալով ) ,
,, երբոր կ՚ըսէի քեզի թէ հարստութիւններդ ան-
,, հաստատ ու անցաւոր բաներ են ։ Հիմայ փոր-
,, ձով հասկըցար որ փախստական գերիներու պէս

„ անոնք քեզ ձգեցին փախան , մնացանք թէ
„ կերպովմը զքեզ մատնեցին ու սպաննեցին . վասն
„ զի քու թշուառութեանդ գլխաւոր պատճառ
„ անոնք եղան ։ Շատ անգամ կ՚ըսէի քեզի թէ
„ աւելի պէտք է սիրես իմ յանդիմանութիւն-
„ ներս որչափ ալ դառն երևնան քեզի , քան թէ
„ քու շողոքորթներուդ անհամ գովեստները .
„ վասն զի լաւ են սիրելւոյն տուած վէրքերը քան
„ թշնամւոյն խաբէական համբոյրը ։ Իրաւունք
„ ունէի՞ աս խօսքերս քեզի ըսելու թէ չէ ։ Հիմա
„ ո՞ւր մնացին ան շողոմարարները . մէկդի քաշուե-
„ ցան , մոռցան քու բարեկամութիւնդ , միայն
„ իրենց օգուտը կը մտածեն՝ քեզի վնաս ալ ընե-
„ լով ։ Բայց մենք անանկ չենք . մենք քու բար-
„ ձրութեանդ ատենը բարկութիւններուդ համ-
„ բերեցինք , ընկած ատենդ ալ կրցածնուս չափ
„ զքեզ վեր բռնենք ։ Եկեղեցւոյ դէմ դուն պա-
„ տերազմ ըրիր . անիկայ գիրկը բացած զքեզ կ՚ըն-
„ դունի . թէատրոնները բոլոր սրտանց ու ամէն
„ ատեն սիրեցիր ու անոնց պատճառաւը այնչափ
„ անգամ մեզի դէմ բարկացար . ահա անոնք զքեզ
„ թողուցին ու մատնեցին „ ։

1 Ժողովուրդը աս խօսքերս լսելով խօսք տուաւ որ անոր կենացը խնայէ , ու Կիպրոս կղզին աքսորուեցաւ Եւտրոպիոս . բայց ետքը հոն սպաննուեցաւ ։

2 Կայնաս ալ իշխանասիրութեան ետևէ իյնա-

---

1 Ասկեբերանի խօսքերովը ինչպէս հանդարտեցաւ ժողովուրդը ։

2 Կայնաս ինչպէս մեռաւ ։

լով իր բանը աւրեց. բոլոր կայսերական զօրքը Կոստանդնուպօլսէն դուրս հանեց, որպէս զի իր հայրենակից Գոթացիքը ներս մտցընէ. բայց միտքը դրածը առաջ չգնաց, պէտք եղաւ որ շուտ մը քաղաքէն ելլէ փախչի, և գնաց Հոնաց Թագաւորին ապաւինեցաւ. ան ալ ձեռքովը բռնեց զինքը սպաննեց: Կայնասի մահուան վրէժն առնելու վազեց Ալարիկոս Վիսիգոթաց իշխանը, Թրակիան, Մակեդոնիան ու Պեղոպոնեսը կողոպտեց, Ադրիական ծովէն ինչուան Վոսփորոս աւերակներով լեցուց, Աթէնքի ալ տակնուվրայ ըրաւ:

1 Վազեց Ստիլիկոն Իտալիայէն որ Արեւելեան կայսերութեան օգնութիւն հասնի. Թեսսաղիոյ դաշտերուն մէջ Թշնամեաց դէմն ելաւ, և խելքով ու ճարտարութեամբ զանոնք Արկադիոյ անտառներուն մէջ ձգեց ու չորս կողմէն զօրքովը զանոնք պաշարեց ու սովի բռնեց. և ալ իր հոն կենալը սպասելը անօգուտ սեպելով՝ նորէն Իտալիա դարձաւ: Ան ատենը Ալարիկոս բոլոր զօրքովը ազատեցաւ, ու յաղթութիւններ ընելով Եպիրոսա հասաւ: Արկադէոս ուզելով անոր աշխարհակալութեանց առջեն առնուլ՝ զինքը Իլիւրիկէի կուսակալութեան զօրացը սպարապետ անուանեց:

2 Վիսիգոթները մէյմը հոն հանելէն ետքը, հարկաւ Իտալիոյ գեղեցիկ երկրին վրայ աչք պիտի

---

1 Ալարիկոս Արկադիոյ անտառին մէջ ինչպէս պաշարուեցաւ ու ազատեցաւ:

2 Վիսիգոթները ինչպէս Թագաւորեցուցին Ալարիկոսը:

ձգելին. կըսուի է որ ընդհանուր երկրին մէջ խաղաղութիւն պահելու խօսք տուեր էին, բայց իրենք խօսքերնին պահող մարդիկ չէին: Ուստի աւելի մեծ յաղթութիւններու փափաքելով, խոշոր վահանի մը վրայ հանեցին Ալարիկոսը՝ ինչպէս իրենց սովորութիւնն էր, և Թագաւոր անուանեցին զինքը (401).

[1] ԱԼԱՐԻԿՈՍԻ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՒԱՆՔԸ (401): — Նորապսակ Թագաւորին փառքը տեսնելով՝ շատ կողմէ պատերազմողներ եկան անոր զինուորուեցան. ինքն ալ խոստացաւ անոնց Հռովմայ հարուստ կողոպուտները, որ հարիւրաւոր տարիներու մէջ իրեք հարիւր յաղթանակով հոն դիզուած էին: Ճամբայ ելաւ Ալարիկոս, և իր գալուն համբաւը ամէն տեղ տարածուեցաւ, ամէն տեղ սարսափ ձգեց: Անցաւ Ալարիկոս Ալպեան լեռներէն ու Վենետաց երկիրը մտաւ, բոլոր առած քաղաքները կործանեց, և ասդին անդին միայն աշտարակ մը, դուռ մը, և կամ ուրիշ նշան մը թողուց, որպէս զի իմացուի թէ ատենով ինչ կայ եղեր հոն: Առջևնին ելածը մէկէն կը սպաննէին՝ ծեր կամ երիտասարդ, կին ու տղայ, ինչ որ ըլլար: Ինչուան հարիւր տարի ետքն ալ անոնց անցած տեղերը կը ճանչցուէին:

[2] Ոնորիոս կայսրը, որ այն ատենը Միլան կը նստէր, կը վախնար որ Հռովմ ալ ձեռքէն ելնի

---

1 Ալարիկոս ի՞նչ կերպով Իտալիա արշաւեց:

2 Ոնորիոս կայսրը ո՞ւր էր, և ի՞նչ ըրաւ Ալարիկոսի դէմ:

երթայ, և Գաղղիա կ'ուզէր փախչիլ. վատասիրտ
պալատականներն ալ նոյն խորհուրդը կուտային
իրեն. միայն քաջն Ստիլիկոն դէմ կեցաւ, կայսեր
սիրտ տուաւ, Գաղղիայէն, Անգղիայէն ու Սպա-
նիայէն զօրք ժողվեց, Հռովմայեցւոց հետ միա-
ցուց ու Վիսիգոթաց վրայ դիմեց: Երբոր Վիսի-
գոթք Միլանի կը մօտենային, Ոնորիոս իր կեանքը
ազատելու համար ելաւ Միլանէն, Գաղղիոյ Ա-
րելատ (Արլ) քաղաքը ուզեց փախչիլ. ետևէն
հասան, Ճամբան կտրեցին Թշնամիք, և ինքը ստի-
պուեցաւ Ասթի քաղաքը ապաւինելու, հոն ալ
հասան բարբարոսները ու զինքը քաղաքին մէջ
պաշարեցին: Ոնորիոս երբոր անոնց հետ դաշնա-
գրութիւն ընելու կը պատրաստուէր, զօրքով հա-
սաւ Ստիլիկոն, և Ալարիկոս Ոնորիոսը պաշա-
րելու ատեն՝ ինքզինքը պաշարուած գտաւ: Աս-
թիէն ետ որ քաշուեցաւ Ալարիկոս, Ստիլիկոն
ետևէն վազեց, Պոլլենտիա (Փոլլենցա) քաղաքին
քովը յանկարծակի վրան հասաւ, բանակին տի-
րեց, անոր կինն ու տղաքն ալ ձեռք ձգեց. Ալա-
րիկոս կատղած՝ ետ քաշուեցաւ. Վերոնայի քով
մէյմըն ալ վրան յարձակեցաւ Հռովմայեցի զօրա-
վարը, և անոր զօրքէն շատ մարդ ջարդեց. Վիսի-
գոթներէն շատն ալ տողկի սիրով իր կողմն ան-
ցան: Ալարիկոս տեսնելով որ եթէ քիչ մըն ալ
ուշանալու ըլլայ առանց զօրքի պիտի մնայ՝ Լիւ-
րիկէ փախաւ (402):

[1] Կայսրը կարծեց որ ալ ազատեցաւ Թշնամի-

---

[1] Ստիլիկոնի յաղթութիւններէն ետքը Ոնորիոս ինչ
ըրաւ:

նորէն. քաջայաղթ Ստիլիկոնը քովն առած՝ յաղթական կառքով գնաց Հռոմ մտաւ, ու մէյմըն ալ Միլան դառնալ չուզելով Ադրիական ծովին եզերքը Հռաւեննա քաղաքը հաստատեց իր արքունիքը :

1 ՍՈՒԵՒԱՑ ԱՐՇԱՒԱՆՔԸ : — Ալարիկոսի ետ քաշուելէն ետև երկու հարիւր հազար Սուեւիացիք իրենց Հռադագաս իշխանին առաջնորդութեամբը Օտէր գետին քովերէն ելան, Ալպեան լեռներէն անցան ու Իտալիա մտան : Ամենևին անոնց առջևն առնելու մէկը սիրտ չէր ըներ. անոնք ալ ազատ համարձակ գնացին Փլորենտիա (Ֆիորէնցա) քաղաքը պաշարեցին : Երդում ըրեր էր Հռադագաս որ Հռոմը հիմնայատակ կործանէ, և ծերակոյտը իր կուռքերուն զոհ ընէ : Ստիլիկոն նորէն զօրք ժողվեց ու անոնց վրայ վազեց. ան տեսնելուն պէս Սուեւեանք՝ պաշարումը վերուցին. ետևնէն ընկաւ Ստիլիկոն, և լերանց մէջ տարաւ փակեց զանոնք, ուր շատը մեռան, շատն ալ զէնքերնին ձգեցին, անձնատուր եղան. Հռադագաս ալ բռնուեցաւ ու շղթայակապ Հռոմ տարուելով գլխատուեցաւ : Ան երկրորդ անգամն էր որ ծերակոյտը Ազատարար Իտալիոյ անուանեց Ստիլիկոնը (406) :

2 Բայց բարբարոսները չյուսահատեցան, ու արևմտեան կայսրութեան տիրելու փափաքէն ետ

1 Սուեւիացիք ի՞նչ կերպով արշաւեցին Իտալիա :
2 Բարբարոսները ի՞նչպէս արշաւեցին Գաղղիա ու Սպանիա :

չկեցան ։ Սուեւեանք , Վանդալք , Ալանք՝ իրենց Գոդեգեսիլ անուամբ զօրավարին առաջնորդութեամբը՝ Պուրկինեանք ալ Գոնդիկարի առաջնորդութեամբը Հռապապային դժբաղդութիւնը լսելով՝ դէպ 'ի Հռենոս գետը արշաւեցին ։ Հռենոսի եզերքին Փրանկ պահապանները ուզելով թշնամեաց անցքը արգիլել, ամէնքն ալ Ալանաց ձիաւորներէն ջարդուեցան , և Գաղղիա ոտնակոխ եղաւ ։ Պուրկինեանք Սօն գետին եզերքը բնակեցան , մէկալները երկու տարի երկիրը ոտնակոխ ըրին՝ ինչուան որ Բրիտանիոյ լեգէոնաց Կոստանդին զօրավարը եկաւ զանոնք զարկաւ , Սպանիա քշեց ․ Ոնորիոս ալ զանիկայ իրեն գահակից ընտրեց ։ Կոստանդինի որդին Կոստանդ Սպանիա անցաւ և ընդունայն տեղը աշխատեցաւ որ ան երկիրը ազատէ բարբարոսաց կատաղութեննէն ։ Ան գազանամիտ մարդիկը ամէն բան կ'այրէին , քաղաքներ , գեղեր , եկեղեցիներ կը կործանէին ․ ժողովուրդը սարսափած՝ լեռները կը փախչէր ․ անտառները մարդիկներով լեցուեցան ու վայրենի գազանները սկսան դաշտերը իջնալ ։ Ան խեղճութեանց վրայ սովն ու ժանտախտն ալ աւելցաւ ․ շատ տներու մէջ մէկ հոգի մըն ալ չմնաց ։ Սուեւեանք և Վանդալք Սպանիոյ մէջտեղուանքը բնակեցան , Ալանք ալ արեւմտեան ու արեւելեան ծովեզերքը ։

։ ԱԼԱՐԻԿՈՍԻ ԵՐԿՐՈՐԴ ԱՐՇԱՒԱՆՔԸ (407)։ — Ալարիկոս ան բարբարոս ազգաց յաջողութիւն-

---

։ Ալարիկոսի երկրորդ արշաւանքը ինչպէս վերջացաւ ։

ները առնելով, ուզեց Արեւմտեան կայսերու-թեան կողոպուտներէն իրեն ալ բաժին հանել. ելաւ Իլլիւրիկէէն ու Հռովմայ վրայ սկսաւ եր-թալ։ Կրօնաւոր մը առջեւը գնաց և ուզեց զինքը կեցընել, աղաչելով որ չերթայ այնչափ մարդ-կանց արիւնը չթափէ, վասն զի երկինքը վրէժխն-դիր Աստուած կայ կ'ըսէր. “ Ես ալ ինքնիրմէս չեմ ուզեր, ըսաւ Ալարիկոս, մէկը կայ որ զիս կը ստիպէ, կը տանջէ ու կ'ըսէ. Գնա՛ Հռոմը կողոպ-տէ ”։ Վերջապէս ան արշաւանքէն ետ կենալու համար՝ չորս հազար լիտր արծաթ ուզեց. խնդիր-քը կատարեցին, և Գոթացիք նորէն դէպ 'ի ա-րեւելք դարձան (408)։

[1] ԱԼԱՐԻԿՈՍԻ ԵՐՐՈՐԴ ԱՐՇԱՒԱՆՔԸ (409)։ — Քիչ ատենէն նորէն առիթ եղաւ իրենց ետ դառ-նալու։ Ստիլիկոնի փառացը վրայ շատ ատենէն 'ի վեր պալատականք ատելութեամբ ու նախանձով կը նայէին. և որովհետև Ալարիկոսի այնչափ ստակ տրուելուն իրենք դէմ կեցեր էին, և անի-կայ ստիպեր էր որ տրուի, սկսան ըսել թէ ուրեմն կ'ուզէ Ալարիկոսի ձեռքովը կայսր ըլլալ, և վրան ամբաստանութիւն ըրին։ Ոնորիոս դիւրահաւան բնութեամբը մէկէն հաւատաց անոնց, և հրամայեց որ սպաննեն ան մարդը՝ որուն անունէն ալ կը վախնային թշնամիք, և Հռաւեննայի մէջ եկե-ղեցւոյ մը դրան առջեւը՝ սպաննուեցաւ Ստիլիկոն մեծանուն զօրավարը (408)։ Ան միջոցին Հռով-

---

[1] Ստիլիկոն ինչպէս մեռաւ։

մայեցիք բոլոր Գոթացի զօրքերուն կանայքն ու տղաքը թրէ անցուցին. անոնք ալ կատղած՝ գնացին իրենց Թագաւորին ընկան որ վրէժխնդրութիւն ընէ։

Ալարիկոս նորէն վազեց Հռոմին վրայ։ Զօրքը անգթութիւն չմնաց որ չընէ ամէն տեղ. Աքուիլէա, Կրեմոնա և ուրիշ օ՛ր քաղաքն որ հանդիպեցան՝ հիմնայատակ կործանեցին, ու գնացին Հռոմը պաշարեցին։ Հոն երբոր սովը սկսաւ սաստկանալ, ծերակոյտը դեսպան խրկեց Ալարիկոսի ըսելով որ եթէ միտքդ չփոխես՝ գիտնաս որ յուսահատութենէն աչուընին դարձած բազմութեան մը հետ պիտի պատերազմիս։ Ալարիկոս պատասխան տուաւ անոնց. "Խիտ բուսած խոտը դիւրաւ կը հնձուի,,։ Բայց տուանց պատերազմելու ստակնին առնելը աւելի լաւ սեպելով աս պայմանով ուզեց հետերնին հաշտութիւն ընել. "Հռովմայեցիք պիտի տան Գոթացւոց Թագաւորին հինգ հազար լիտր ոսկի, երեսուն հազար լիտր արծաթ, չորս հազար մետաքսէ պատմուճան, երեք հազար ծիրանի և երեք հազար լիտր պղպեղ։ — Ո՛վ Թագաւոր, հապա բնակչացը ի՞նչ պիտի թողուս,,, ըսին դեսպանները։ "Կեանքերնին,, ըսաւ Ալարիկոս, ու պաշարումը վերուց (409)։

---

Երրորդ անգամ ի՞նչպէս արշաւեց Ալարիկոս Հռոմին վրայ։

1 ԱԼԱՐԻԿՈՍԻ ԶՈՐՐՈՐԴ ԱՐՇԱՒԱՆՔԸ, ՀՌՈՎՄԱՅ ԱՌՈՒՄԸ (410)։ — Ոնորիոս Հռաւեննա քաշուած ու ամրացած, համարձակեցաւ Ալարիկոսի դրած պայմանները մերժելու. Ալարիկոս ալ վրէժխնդրութեամբ վառուած՝ Հռոմին վրայ վազեց, ու ան անգամ առաւ քաղաքը։ Վեց օր քշեց աւարառութիւնը, և միայն քանի մը եկեղեցիներու խնայեցին Վիսիգոթները։ Անանկով ինը հարիւր տարի այնչափ յաղթանակներ ընելէն ետքը բոլոր աշխարհիս մայրաքաղաք սեպուած Հռոմը, ուրիշ այնչափ քաղաքներուն ըրածը իր գլուխն ալ եկած տեսաւ (411)։ Իրեք ամիսէն ետքը երբոր Ափրիկէ երթալու կը պատրաստուէր, մեռաւ Ալարիկոս Սիկիլիոյ Կոնսէնտիա (Քոզէնցա) քաղաքը։ Գոթացիք Բիսիէնտոն գետը ցամքեցուցին, ու մէջը փոս մը փորելով շատ ոսկիով, արծաթով ու ազնիւ դիպակներով իրենց թագաւորին մարմինը անոր մէջ թաղեցին, ու գերեզմանին վրայէն նորէն գետը վազցընել տուին. և որպէս զի մարդ չգիտնայ անոր թաղուած տեղը, և օր մը յանկարծ դուրս չհանուի մարմինն ու չնախատուի, գերեզմանին վրայ աշխատող բոլոր գերիները սպաննեցին (411)։

2 Գոթացիք Ալարիկոսի յաջորդ դրին անոր

---

1 Զորրորդ անգամ ի՞նչպէս արշաւեց Ալարիկոս Իտալիա, և Հռոմին ի՞նչ կերպով տիրեց։ — Ալարիկոսի մահն ու թաղումը ի՞նչպէս եղաւ։

2 Ալարիկոսի ո՞վ յաջորդեց։ — Ի՞նչ քաջութիւններ ըրաւ Աթաուլփ։

Աթաուլփ քեռայրը, որ ջանաց առջի բերան հռովմէական կայսերութեան տեղ գոթացի կայսերութիւն մը հաստատել. բայց տեսնելով որ իր ազգը դեռ անկիրթ է, օրէնքի մտիկ ընել չէ սորված, միտքը դրաւ որ գէթ հին կայսերութիւնը նորոգէ. ուստի ելաւ Ոնորիոսին գնաց, և անոր յայտնեց իր միտքը որ իրեն օգնելու եկեր է: Կայսրը սիրով ընդունեցաւ զինքը, և խրկեց որ երթայ Գաղղիան բռնաւորաց ձեռքէն ազատէ: Գնաց Աթաուլփ Նարբոնիոյ, Թուլուզի ու Պորտոյի տիրեց, կայսեր քոյրը իրեն կին առաւ, իր ազգը Գաղղիոյ Գարումնա (Կարոն) գետին քովերը բնակեցուց, ու Վեսիգոթաց թագաւորութիւնը հաստատեց (413): Ետքը գնաց՝ Յովիանոս ու Սեբաստիանոս անունով երկու եղբարց հետ պատերազմեցաւ, որ իրենք զիրենք կայսր անուաներ էին, յաղթեց անոնց ու գլուխնին Հռաւեննա խրկեց:

1 Ոնորիոսի զօրավարներէն մէկը Կոստաս հռովմայեցին շատ ջանաց Գաղղիան բարբարոսներէն ազատելու, և երբոր չկրցաւ՝ նայեցաւ որ գէթ զանոնք կայսերութեան բարեկամ ընէ. և նախ Պուրկինեանները հռովմայեցւոց դաշնակից գրեց, խոստացաւ որ անոնց թագաւոր մը գնէ, և առջի թագաւորն եղաւ Գոնդիկարոս (413):

2 Ետքը խրկեց Կոստաս Աթաուլփը որ երթայ Սպանիան նուաճէ, բայց Աթաուլփ ատեն չունեցաւ, վասն զի Պարսելոնա քաղաքին տիրելուն

---

1 Կոստաս զօրավարը Ի՞նչ քաջութիւններ ըրաւ:
2 Աթաուլփ Ի՞նչպէս մեռաւ ու տեղը ո՞վ անցաւ:

պէս հոն սպաննուեցաւ (416) ։ Անոր յաջորդը Վալլիա այնպէս նեղը ձգեց Ալանքը, որ Սպանիոյ Բեթիկէ (Կրանատա) ու Անտալուսիա նահանգները փախան և հոն Վանդալներուն հետ խառնուեցան. Սուեւեանք ալ իրմէ յաղթուեցան, Ոնորիոսի հետ հաշտութիւն ըրին, ու Սուեւեանց Թագաւորութիւնը ձևացուցին (419) ։

[1] Կայսրը Վալլիային այնչափ ծառայութեանցը փոխարէն մը ընելու համար՝ Պիրենեան լերանց, Ովկիանոսի ու Լուար գետին մէջտեղի երկիրը անոր տուաւ, զինքն ալ Թագաւոր անուանեց. և Գաղղիոյ մէջ ան Վիսիգոթեան Թագաւորութեան մայրաքաղաքն եղաւ Տոլոզա (Թուլուզ) քաղաքը (419) ։

[2] Երբոր 421ին մեռաւ Կոստաս, բարբարոսները նորէն սկսան շարժիլ. ան միջոցին խաղաղասէրն Ոնորիոս ալ վախճանեցաւ ։ Իրեն գովեստի արժանի գործը աս է որ մեծ ջանք ըրաւ հեթանոսութիւնը արմատէն խլելու, կուռքերը վերցընելու, խաղերը, սուսերամարտութիւններն ու բոլոր մարդկութեան դէմ եղած տեսարանները ջընջելու. բայց ուրիշ կողմանէ պարսաւելի է որ տէրութեանը կործանումը տեսնելով անհոգ կը կենար, ու իր տղայական զուարճութեանցը կը նայէր. ինչուան կ'ըսեն թէ երբոր եկեր իրեն Հռովմայ առնուիլը իմացուցեր են՝ աստնկ պատասխան տուեր է. "Անկարելի բան է, դեռ հի-

---

[1] Ոնորիոս ի՞նչ փոխարէն ըրաւ Վալլիային ։

[2] Ոնորիոս ի՞նչպէս մեռաւ ։ — Ի՞նչ բնաւորութեան տէր էր ։

մայ իմ ձեռքովս ես անոր կերակուր տուի ,, : Վասն զի իր սիրելի հաւը կարծեր է , կ՚ըսեն , որուն անունը Հռոմ դրեր է եղեր :

1 Առմորիկ կամ Փոքր Բրիտանիա (Պրէթայն) ըսուած երկիրը 410ին ինքնագլուխ եղեր էր . 420ին Փրանկք իրենց Փարամոնտ Թագաւորին առաջնորդութեամբը Հռենոսէն անցան ու անոր ձախ կողմի գետափանցը վրայ իրենց բնակութիւն հաստատեցին : Նոյն տարին Բրետոնք կամ Բրիտանացիք ալ Մեծ Բրիտանիայէն Հռովմայեցիքը վռընտեր էին : Այսպիսի վիճակի մէջ էր Արեւմտեան կայսրութիւնը Իտալիոյ , Ափրիկէի ու Գաղղիոյ մէջ՝ երբոր Ոնորիոս մեռաւ (424) : Իսկ Կոստանդնուպօլսոյ կայսրը հեռու կեցած՝ փոյթ չէր ըներ , ու անհոգ կերպով կը նայէր աս կործանման վրայ . ինչպէս որ ետքը արեւմտեան կայսերքը ալ արեւելքի խեղճութիւնները տեսան , բայց աւելի ալ պարսաւելի անհոգութեամբ մը իրենց շահուն ու հանգստութեանը նայեցան :

---

1 Ոնորիոսի մեռած տենները արեւմտեան կայսերութիւնը ինչ վիճակի մէջ էր :

## ԳԼՈՒԽ Բ.

Պատմութիւն Արևելեան ու Արևմտեան կայսերութեանց՝ Ոնորիոսի մահուընէն մինչև Արևմտեան կայսերութեան իյնալը (424-476)։ Վաղենտիանոս Գ. — Աէտիոս. — Վոնիֆակիոս Վանդալները Աֆրիկէ կը կանչէ. — Գենսերիկոս. Վանդալաց թագաւորը. — Հոնք. — Ատտիլայի արշաւանքը. — Սրբուհին Ժընըվիէվ. — Օռլէանի պաշարումը. — Կատալաունեան դաշտաց մէջ պատերազմը. — Իտալիոյ արշաւանքը. — Մեծն Լեւոն պապ. — Ատտիլայի մահը. — Արևմտեան վերջին կայսերք. — Գենսերիկոսի Հռոմը կողոպտելը. — Ոդոակր Հերուլաց թագաւորը Հռոմայ կայսերութիւնը կը վերջացնէ։

1 *Յաջորդութեան իրաւունքը նայելով՝ Արևմտեան կայսերութիւնը արևելքի կայսեր Թէոդոս երկրորդին կ'իյնար. երբոր անիկայ չուզեց, Կոստասի դեռահասակ որդւոյն Վաղենտիանոս երրորդին տրուեցաւ։ Ոնորիոսի ատենադպիրը Յովհաննէս՝ ինքզինքը կայսր անուանել տուաւ. բայց յաղթուեցաւ, ու իշու մը վրայ զինքը նստեցուցած՝ հրապարակը տարին, գլուխը կտրեցին։*

2 *Այն ատենները երկու անուանի զօրավարներ կային, մէկն էր Այետիոս Սկիւթացին՝ մէկալը Վոնիփակիոս. Այետիոս՝ Հոնաց Ատտիլաս թագաւորին յաղթելովը մեծ անուն հանեց, Վոնիփա-*

1 *Ո՞վ յաջորդեց Ոնորիոսի։*
2 *Ի՞նչ անուանի զօրավարներ կային այն ատենը։*

կիոս ալ Ափրիկէն նուաճելովը ։ Թէ որ ասոնք իրարու հետ միաբան ըլլային՝ շատ հաւանական է որ կայսերութիւնը կործանմանէ կ'ազատէին · բայց իրենց անմիաբանութեամբը անոր կործանումը աւելի շուտ հասուցին ։

1 Այետիոս կոմսութեան պատիւը առաւ, ու երբոր Վիսիգոթաց Թէոդորիկոս թագաւորը Գաղղիոյ Փռովանս գաւառին տիրեր ու Արելատ քաղաքն ալ պաշարեր էր՝ վրան վազեց, յաղթեց անոր ու իր երկիրը քշեց (425 և 429) ։ Յաջորդտարին Փրանկաց Կղոդիոն թագաւորին ալ յաղթեց, որ կ'ուզէր տիրել Գաղղիոյ ան մասին որ Հռովմայեցւոց ձեռքը մնացած էր · բայց երբոր Այետիոս սկսաւ նախանձիլ Վոնիփակիոս կոմսին վրայ որ Ափրիկէի կուսակալ էր, ամէն բան տակնուվրայ եղաւ ։

2 Այետիոս հաւատացուց Պղակիդիա թագուհւոյն (որ իր որդւոյն Վաղենտիանոսի անուամբը տէրութիւնը կը կառավարէր) թէ Վոնիփակիոս կոմսը ապստամբութեան կը պատրաստուի, Վոնիփակիոսին ալ իմացուց ծածուկ որ կայսրը զինքը բռնել ու մեռցնել պիտի տայ · Վոնիփակիոս ալ վախցած՝ իրեն օգնութիւն կանչեց Վանդալները ։

3 Վանդալաց թագաւորն էր ան ատեն Գենսերիկոսը, որ Ալարիկոսի ու Ատտիղասայ պէս աշխարհքս ոտնակոխ ընելով շատ հռչակաւոր ե-

---

1 Այետիոս ինչ քաջութիւններ ըրաւ ։
2 Վոնիփակիոսին վրայ նախանձելով ինչ վնաս ըրաւ Այետիոս ։
3 Ո՞վ էր Գենսերիկոս ։

ղաւ . մարմնով պզտիկ ու տգեղ մարդ էր , բայց այնպիսի իշխանասիրութիւն մը ունէր՝ որ մէկ բանով մը գոհ չէր ըլլար ։ Կեղծաւոր , արիւնկզակ , Թշնամի զեղխութեան ու ոխակալ ըլլալով վրէժխնդրութիւնը իր մեծ զուարճութիւնն էր . խորագէտ , յանդուգն և կամքը կատարելու յաջողակ ալ ըլլալով ամէն տեղ իր սարսափը ձգեր էր ։ Վոնիփակիոսին խնդիրքը ընդունեցաւ Գենսերիկոս . բայց կատարելէն առաջ՝ Սպանիոյ մէջ եղած Սուեւեանց հետ պատերազմ ըրաւ , զամէնքը ջարդեց , երկիրն ալ աւերակ անապատ դարձնելէն ետքը ճամբայ ելաւ ։

[1] Վանդալաց հետ Ալանք ալ գնացին Ափրիկէ , ու սկսան հոն չլսուած անգթութիւններ ընել ։ Հասկըցաւ Վոնիփակիոս իր ըրած մեծ սխալմունքը , և ուզեց բարբարոսաց առջեն առնուլ . բայց շատ ուշ էր ։ Երկու պատերազմի մէջ յաղթուեցաւ , և բոլոր երկիրը՝ Կարքեդոնէն զատ՝ Գենսերիկոսի ձեռքն անցաւ ։ Գենսերիկոս քիչ ատենէն Կարքեդոնի ալ տիրեց , որ նորէն սկսեր էր ծաղկիլ ու հարստանալ , և անիկայ իր թագաւորութեանը մայրաքաղաք ըրաւ (436) ։

[2] ԱՐՇԱՒԱՆՔ ՀՈՆԱՑ ։ — Հոնք՝ Սկիւթիայէն ելած ժողովուրդներէն էին , և ան ատենը (433) երկու եղբարց կառավարութեանը տակ էին , որ կ՚ըսուէին Ատտիղաս և Բղեդաս կամ Պլէտաս ։ Ատտիղաս կորիճ՝ քալուածք մը ունէր , և մարմնոյն

---

1 Գենսերիկոս ի՛նչպէս տիրեց Ափրիկէի ։
2 Հոնք ի՛նչպէս սկսան արշաւել Իտալիա ։

շարժմունքէն ու կլոակոտ փայլուն աչուըներէն իր անհեղ զօրութիւնը կ'իմացուէր ։ Պատերազմասէր էր, բայց պէտք եղած ատենն ալ գիտէր իր եռանդը սանձելը. իրեն ապաւինողներուն դիւրաւ կը ներէր, և իր խոստումը հաւատարմութեամբ կը կատարէր ։ Հասակը կարճ, կուրծքը լայն, գլուխը հաստ, աչուըները մանր, անմօրուս, մազերը գռուզ, քիթը տափակ, կերպարանքը թուխ էր, և երեսը նայողին վրան սարսափ կը ձգէր ։

[1] Ատտիլաս իր եղբօրը և զօրացը հետ նախ շուտ շուտ առաջ քալելով Արեւելեան կայսերութեան սահմանացը վրայ արհաւիրքը տարածեց ։ Վեց տարուան արշաւանքէն ետքը երբոր Պաննոնիա հաստաւ բանակը, Ատտիլաս հպարտութեամբ կ'ըսէր անդադար և ուրիշներուն ալ կրկնել կուտար. "Ե՛ս եմ Ատտիլաս Դենգիզիքայ որդի, թոռն Ներբրովթայ, շնորհօքն Աստուծոյ թագաւոր Հոնաց, Մարաց, Դանեաց, արհաւիրք աշխարհի և սուսեր ցասմանն Աստուծոյ" ։

[2] Քիչ ատեննէն իրաւցընէ սուսեր ցասմանն Աստուծոյ ըսուելու արժանի եղաւ ։ Պաննոնիա կեցած՝ կարծես թէ ձեռքովը դրածի պէս ընտրութիւն կ'ընէր թէ երկու կայսերութիւններէն որը առնէ. մտածեց որ առաջ Կոստանդնուպօլսոյ վրայ երթայ ։ Փոքրն Թէոդոս անկասկած և անհոգ կեցած ատենը՝ Հոնք ինչուան մայրաքաղաքին պարըսպացը քով հասան, իրենցմէ Յունաց քովը փախած զինուորները սպառնալեօք պահանջեցին, սով-

---

[1] Ատտիլաս ի՞նչ կերպով սկսաւ արշաւանքը ։
[2] Կոստանդնուպօլսոյ վրայ ի՞նչպէս գնաց ։

րական տուրքն ալ աւելցուցին ։ Թէոդոս բարբարոսաց ուզած ստակը մէկէն վճարեց, բայց փախըստականները չկրցաւ ետ դարձընել, վասն զի Յոյնք զամէնքն ալ կախեր էին ։ Ատտիլաս ալ աստոր վրէժը հանելու համար Յունաց գաւառները կողոպտեց (442) ։

1 Հինգ տարի ետքը Ատտիլաս իր եղբայրը սպաննեց ու ինքը մինակ թագաւորեց ։ Ան ատեն Թէոդոս նայեցաւ որ անոր հետ բարեկամանայ, ու հռովմայեցի զօրավար ըսուելու պատիւը տուաւ անոր ։ Ատտիլաս արհամարհեց ան պատիւը . դեսպան մը խաւրեց Թէոդոսին ու ըսաւ . “Տիրոջդ պալատ մը պատրաստէ ,, . Եւ ինքը մէկէն յարձըկեցաւ, Թրակիան առաւ, Յունաց երկու բանակը ջարդեց, և եօթանասուն բազմամարդ քաղաքներ այրեց՝ Ադրիական ծովէն ՚ինչուան Սեւ ծովը ։ Կայսրը սարսափած՝ հաւանեցաւ որ տարուէ տարի անոր երկու հազար լիտր ոսկի հարկ տայ (447) ։

2 Ասանկով սկսաւ անուանի ըլլալ Ատտիլաս, որուն բոլոր զօրքն ալ իրեն պէս սարսափելի էին . վզերնին հաստ, երեսնին սեւ, տափակ, անմօրուս, գլուխնին գնտակի պէս կլոր, աչքերնին ալ անոր վրայ աւելի մէյմէկ ծակի կը նմանէին քան թէ աչքի ։ Ամէն տեղ անուննին անանկ ելեր էր թէ ասոնք երկոտանի գազաններ են՝ սատանաներէ ու կախարդներէ ծնած ։

3 Աս Հոները ոչ կրակ կը վառէին և ոչ եփած

---

1 Յունաց կայսեր հետ ի՞նչպէս վարուեցաւ ։
2 Հո՞նաց կերպարանքը ի՞նչպէս էր ։
3 Ի՞նչ սովորութիւններ ունէին ։

կերակուր կ'ուտէին : Կերածնին խոտեղէն էր և կէս եփած միս , և սա միսը ձիուն Թամբին ու կռնակին մէջտեղը դնելով կը տաքցընէին ու կիսեփ բան մը կը դարձընէին : Վրանին մէյմէկ վերարկու ունէին՝ գոյնզգոյն կտաւէ ու դաշտի մկներու մորթերէ շինած : Գլուխնին մորթէ գտակ մը կը դնէին կլոր ձևով . վարտիքնին ալ այծու կաշիէ էր . Ձիերնին մանր էին , բայց խիստ դիմացկուն , և իրենք անոնց վրայ գամուածի պէս կը կենային :

¹ Աս ազգին դրսի տեսքին համեմատ՝ վրան զանազան զարմանալի բաներ ալ կը պատմուէին : Կ'ըսէին Թէ եղնիկ մը իրենց Եւրոպայի ճամբան ցըցուցեր ու աներևոյթ եղեր է : Հովուին մէկը տեսեր է որ իր կովերէն մէկուն ոտքը վիրաւորեր է , պատճառը փնտռեր իմացեր է որ խոտերուն մէջ Թուր մը կայ եղեր, առեր Թագաւորին տարեր է . Ատտիղաս ալ աս Թուրը Աստուած մեզի խրկեց որ բոլոր տիեզերաց տիրապետենք ըսելով՝ զամէնքը հաւատացուցեր , և ան Թուրը Հոնաց կուռքը դարձեր է : Ատտիղային յանդուգն խրոխտանացը չափ չկար : Անգամ մը Թէոդոսի դեսպաններուն ըսեր է . “ Իմ ձիուս անցած տեղը մէյմըն ալ խոտ չբուսնիր ” :

² ԱՏՏԻՂԱՍԱՅ ԻՏԱԼԻԱ ԱՐՇԱՒԱՆԸ : — Արևելքը կողոպտելէն ձանձրացածի պէս էր Ատտիղաս՝ երբոր Գենսերիկոսի դեսպանները եկան զինքը յորդորեցին որ Հռովմայեցւոց իշխանութիւնը

---

1 Հոնաց վրայ ի՞նչ առասպելներ կը պատմուէին :
2 Ի՞նչ պատճառաւ Իտալիա արշաւեց Ատտիղաս :

կործանելու երթայ։ Ուրախութեամբ յանձն առաւ Ատտիլաս ան հրաւէրքը, և արևմուտքի վրայ յարձակելու պատճառ մըն ալ գտաւ։ Տասնըլեց տարի առաջ Վալենտինիանոս երրորդին քոյրը Ոնորիա՝ ուզեր էր իրեն հետ կարգուիլ, և ինքը Ատտիլաս չէր հաւանած. հիմայ ուզեց. կայսրը երբոր յանձն չառաւ տալ, Ատտիլաս հինգհարիւր հազար զօրքով սկսաւ դէպ 'ի Գաղղիա արշաւել։

¹ Բասիլէա (Պալ) քաղքին քովէն նաւակներով ու կամուրջներով Հռենոսէն անդին անցաւ, Հռենոս ու Սէն գետերուն մէջտեղի քաղաքները կողոպտեց, Մեթս քաղաքին բոլոր բնակիչները թրէ անցուց, ինչուան քահանաներն ալ խորաններուն առջևը մորթեց։

² Այսպէս հարիւր քաղաք կործանելէն ետև սկսաւ Փարիզի մօտենալ։ Փարիզացիք սարսափած՝ կ'ուզէին քաղաքնին թողուլ փախչիլ. Ժէնվիէվ անունով սուրբ հովուուհին զիրենք ազատեց, գնաց քաղաքին դրան առջևը կեցաւ ու փախչողներուն քարոզեց որ եթէ քաղաքէն դուրս չելլեն՝ թշնամին իրենց պիտի չվնասէ։ Հաւտացին խօսքին, գուշակութիւնն ալ կատարուեցաւ. Հոնք յանկարծակի մոքերնին փոխեցին, Սէն գետէն անցան ու գնացին Օռլէան քաղաքը պաշարեցին։

³ Հոնք ան քաղաքը առնելով՝ Գաղղիոյ մեծ

---

¹ Գաղղիա ի՞նչպէս անցաւ։

² Փարիզ ի՞նչպէս ազատեցաւ Ատտիլասայ Հոնաց յարձակմունքէն։

³ Օռլէան քաղաքը ի՞նչ կերպով Ատտիլասայ պաշարմանէն ազատեցաւ։

մայ իմ ձեռքովս ես անոր կերակուր տուի,,: Վահան զի իր սիրելի հաւը կարծեր է, կ'ըսեն, որուն անունը Հռոմ դրեր է եղեր.

[1] Արմորիկ կամ Փոքր Բրիտանիա (Պրէթայն) ըսուած երկիրը 410ին ինքնագլուխ եղեր էր. 420ին Փրանկք իրենց Փարամոնտ Թագաւորին առաջնորդութեամբը Հռենոսէն անցան ու անոր ձախ կողմի գետափանցը վրայ իրենց բնակութիւն հաստատեցին: Նոյն տարին Բրետոնք կամ Բրիտանացիք ալ Մեծ Բրիտանիայէն Հռովմայեցիքը վռընտեր էին: Այսպիսի վիճակի մէջ էր Արեւմտեան կայսերութիւնը Իտալիոյ, Ափրիկէի ու Գաղղիոյ մէջ՝ երբոր Ոնորիոս մեռաւ (424): Իսկ Կոստանդնուպօլսոյ կայսրը հեռու կեցած՝ փոյթ չէր ըներ, ու անհոգ կերպով կը նայէր աս կործանման վրայ. ինչպէս որ ետքը արեւմտեան կայսերքը ալ արեւելքի խեղճութիւնները տեսան, բայց աւելի ալ պարսաւելի անհոգութեամբ մը իրենց շահուն ու հանգստութեանը նայեցան:

---

[1] Ոնորիոսի մեռած ատենները արեւմտեան կայսերութիւնը ինչ վիճակի մէջ էր:

# ԳԼՈՒԽ Բ.

**Բաժանումն Արեւելեան ու Արեւմտեան կայսրութեանց՝ Ոնորիոսի մահուընէն ինչուան Արեւմտեան կայսրութեան ինկալը (424-476)։ Վաղենտինիանոս Գ. — Այէտիոս. — Վոնիփակիոս Վանտալները Աֆրիկէ կը կանչէ. — Գենսերիկոս Վանտալաց թագաւորը. — Հոնք. — Ատտիլայի արշաւանքը. — Սրբուհին Ժընեվիէվ. — Օռլէանի պաշարումը. — Կատալաւնեան դաշտաց մեծ պատերազմը. — Իտալիոյ արշաւանքը. — Մեծն Լեւոն պապ. — Ատտիլայի մահը. — Արեւմտեան վերջին կայսերք. — Գենսերիկոսի Հռոմը կողոպտելը. — Ոդոակր Հերուլաց թագաւորը Հռոմայ կայսերութիւնը կը վերջացընէ։**

1 *Յաջորդութեան իրաւունքը նայելով՝ Արեւմտեան կայսերութիւնը արեւելքի կայսեր Թէոդոս երկրորդին կ'իյնար. երբոր անիկայ չուզեց, Կոստասի դեռահասակ որդւոյն Վաղենտինիանոս երրորդին տրուեցաւ։ Ոնորիոսի ատենադպիրը Յովհաննէս՝ ինքզինքը կայսր անուանել տուաւ. բայց յաղթուեցաւ, ու էշու մը վրայ զինքը նստեցուցած՝ հրապարակը տարին, գլուխը կտրեցին։*

2 *Այն ատենները երկու անուանի զօրավարներ կային, մէկն էր Այետիոս Սկիւթացին՝ մէկալը Վոնիփակիոս. Այետիոս՝ Հոնաց Ատտիլաս թագաւորին յաղթելովը մեծ անուն հանեց, Վոնիփա-*

---

1 Ո՞վ յաջորդեց Ոնորիոսի։
2 Ի՞նչ անուանի զօրավարներ կային այն ատենը։

կիոս ալ Ափրիկէն նուաճելովը ։ Թէ որ ասոնք իրարու հետ միաբան ըլլային՝ շատ հաւանական է որ կայսրութիւնը կործանմանէ կ'ազատէին. բայց իրենց անմիաբանութեամբը անոր կործանումը աւելի շուտ հասուցին ։

1 Այետիոս կոմսութեան պատիւը առաւ, ու երբոր Վիսիգոթաց Թէոդորիկոս թագաւորը Գալլիոյ Փռովանս գաւառին տիրեր ու Արելատ քաղաքն ալ պաշարեր էր՝ վրան վազեց, յաղթեց անոր ու իր երկիրը քշեց (425 և 429) ։ Յաջորդտարին Փրանկաց Կլոդիոն թագաւորին ալ յաղթեց, որ կ'ուզէր տիրել Գալլիոյ ան մասին որ Հռովմայեցւոց ձեռքը մնացած էր. բայց երբոր Այետիոս սկսաւ նախանձիլ Վոնիփակիոս կոմսին վրայ որ Ափրիկէի կուսակալ էր, ամէն բան տակնուվրայ եղաւ ։

2 Այետիոս հաւատացուց Պլակիդիա թագուհւոյն (որ իր որդւոյն Վաղենտինիանոսի անուամբը տէրութիւնը կը կառավարէր) թէ Վոնիփակիոս կոմսը ապստամբութեան կը պատրաստուի, Վոնիփակիոսին ալ իմացուց ծածուկ որ կայսրը զինքը բռնել ու մեռցնել պիտի տայ. Վոնիփակիոս ալ վախցած՝ իրեն օգնութիւն կանչեց Վանդալները ։

3 Վանդալաց թագաւորն էր ան ատեն Գէնսերիկոսը, որ Ալարիկոսի ու Ատտիղասայ պէս աշխարհքս ոտնակոխ ընելով շատ հռչակաւոր ե-

---

1 Այետիոս ի՞նչ քաջութիւններ ըրաւ ։
2 Վոնիփակիոսին վրայ նախանձելով ի՞նչ վնաս ըրաւ Այետիոս ։
3 Ո՞վ էր Գէնսերիկոս ։

ղաւ . մարմնով պզտիկ ու տգեղ մարդ էր , բայց այնպիսի իշխանասիրութիւն մը ունէր՝ որ մէկ բանով մը գոհ չէր ըլլար : Կեղծաւոր , արիւնկզակ , Թշնամի զեղխութեան ու ոխակալ ըլլալով վրէժխնդրութիւնը իր մեծ զուարճութիւնն էր . խորագէտ , յանդուգն և կամքը կատարելու յաջողակ ալ ըլլալով ամէն տեղ իր սարսափը ձգեր էր : Վոնիփակիոսին խնդիրքը ընդունեցաւ Գենսերիկոս . բայց կատարելէն առաջ՝ Սպանիոյ մէջ եղած Սուեւեանց հետ պատերազմ ըրաւ , զամէնքը ջարդեց , երկիրն ալ աւերակ անապատ դարձնելէն ետքը ճամբայ ելաւ :

[1] Վանդալաց հետ Ալանք ալ գնացին Ափրիկէ , ու սկսան հոն չլսուած անգթութիւններ ընել : Հասկըցաւ Վոնիփակիոս իր ըրած մեծ սխալմունքը , և ուզեց բարբարոսաց առջևն առնուլ . բայց շատ ուշ էր : Երկու պատերազմի մէջ յաղթուեցաւ , և բոլոր երկիրը՝ Կարքեդոնէն զատ՝ Գենսերիկոսի ձեռքն անցաւ : Գենսերիկոս քիչ ատենէն Կարքեդոնի ալ տիրեց , որ նորէն սկսեր էր ծաղկիլ ու հարստանալ , և անիկայ իր Թագաւորութեանը մայրաքաղաք ըրաւ (436) :

[2] ԱՐՀԱՒՍԱՆՔ ՀՈՆԱՑ : — Հոնք՝ Սկիւթիայէն ելած ժողովուրդներէն էին , և ան ատենը (433) երկու եղբարց կառավարութեանը տակ էին , որ կ'ըսուէին Ատտիլաս և Բլեդաս կամ Պլէտա : Ատտիլաս կորիճ՝ քալուածք մը ունէր , և մարմնոյն

---

1 Գենսերիկոս ի՞նչպէս տիրեց Ափրիկէի :
2 Հոնք ի՞նչպէս սկսան արշաւել Իտալիա :

շարժմունքէն ու կրակոտ փայլուն աչուըներէն իր անհեղ զօրութիւնը կ'իմացուէր : Պատերազմասէր էր, բայց պէտք եղած ատենն ալ գիտէր իր եռանդը սանձել. իրեն ապաւինողներուն դիւրաւ կը ներէր, և իր խոստումը հաւատարմութեամբ կը կատարէր: Հասակը կարճ, կուրծքը լայն, գլուխը հաստ, աչուըները մանր, անմօրուս, մազերը գռուզ, քիթը տափակ, կերպարանքը թուխ էր, և երեսը նայողին վրան սարսափ կը ձգէր :

1 Ատտիլաս իր եղբօրը և զօրացը հետ նախ շուտ շուտ առաջ քալելով Արեւելեան կայսրութեան սահմանացը վրայ արհաւիրքը տարածեց: Վեց տարուան արշաւանքէն ետքը երբոր Պաննոնիա հասաւ բանակը, Ատտիլաս հպարտութեամբ կ'ըսէր անդադար և ուրիշներուն ալ կրկնել կուտար. “Ե՛ս եմ Ատտիլաս Դենգիզիքայ որդի, թոռն Ներրովթայ, շնորհօքն Աստուծոյ թագաւոր Հոնաց, Մարաց, Դանեաց, արհաւիրք աշխարհի և սուսեր ցասմանն Աստուծոյ„:

2 Քիչ ատենէն իրաւցընէ սուսեր ցասմանն Աստուծոյ ըսուելու արժանի եղաւ : Պաննոնիա կեցած՝ կարծես թէ ձեռքովը դրածի պէս ընտրութիւն կ'ընէր թէ երկու կայսրութիւններէն որը առնէ. մտածեց որ առաջ Կոստանդնուպօլսոյ վրայ երթայ: Փոքրն Թէոդոս անկասկած և անհոգ կեցած ատենը՝ Հոնք ինչուան մայրաքաղաքին պարըսպացը քով հասան, իրենցմէ Յունաց քովը փախած զինուորները սպառնալեօք պահանջեցին, սով-

---

1 Ատտիլաս ինչ կերպով սկսաւ արշաւանքը :
2 Կոստանդնուպօլսոյ վրայ ինչպէս գնաց :

րական տուրքն ալ աւելցուցին ։ Թէոդոս բարբարոսաց ուզած տուրքը մէկէն վճարեց , բայց փախըստականները չկրցաւ ետ դարձընել , վասն զի Յոյնք զամէնքն ալ կախեր էին ։ Ատտիղաս ալ ասոր վըրէժը հանելու համար Յունաց գաւառները կողոպտեց (442) ։

1 Հինգ տարի ետքը Ատտիղաս իր եղբայրը սպաննեց ու ինքը մինակ թագաւորեց ։ Ան ատեն Թէոդոս նայեցաւ որ անոր հետ բարեկամանայ , ու հռովմայեցի զօրավար ըսուելու պատիւը տուաւ անոր ։ Ատտիղաս արհամարհեց այն պատիւը . դեսպան մը խաւրեց Թէոդոսին ու ըսաւ . "Տիրոջդ պալատ մը պատրաստէ ,, . և ինքը մէկէն յարձըկեցաւ , Թրակիան առաւ , Յունաց երկու բանակը ջարդեց , և եօթանասուն բազմամարդ քաղաքներ այրեց՝ Ադրիական ծովէն `ինչուան Սեւ ծովը ։ Կայսրը սարսափած՝ հաւանեցաւ որ տարուէ տարի անոր երկու հազար լիտր ոսկի հարկ տայ (447) ։

2 Ասանկով սկսաւ անուանի ըլլալ Ատտիղաս , որուն բոլոր զօրքն ալ իրեն պէս սարսափելի էին . վզերնին հաստ , երեսնին սև , տափակ , անմօրուս , գլուխնին գնտակի պէս կլոր , աչքերնին ալ անոր վըրայ աւելի մէյմէկ ծակի կը նմանէին քան թէ աչքի ։ Ամէն տեղ անուննին անանկ ելեր էր թէ ասոնք երկոտանի գազաններ են՝ սատանաներէ ու կախարդներէ ծնած ։

3 Աս Հոները ոչ կրակ կը վառէին և ոչ եփած

---

1 Յունաց կայսեր հետ ի՞նչպէս վարուեցաւ ։
2 Հոնաց կերպարանքը ի՞նչպէս էր ։
3 Ի՞նչ սովորութիւններ ունէին ։

կերակուր կ'ուտէին ։ Կերածնին խոտեղէն էր և կէս եփած միս , և սա միսը ձիուն թամբին ու կռնակին մէջտեղը դնելով կը տաքցնէին ու կիսեփ բան մը կը դարձնէին ։ Վրանին մէյմէկ վերարկու ունէին՝ գոյնզգոյն կտաւէ ու դաշտի մկներու մորթերէ շինած ։ Գլուխնին մորթէ գտակ մը կը դնէին կլոր ձեւով . վարտիքնին ալ այծու կաշիէ էր . Ձիերնին մանր էին , բայց խիստ դիմացկուն , և իրենք անոնց վրայ գամուածի պէս կը կենային ։

1 Աս ազգին դրսի տեսքին համեմատ՝ վրան զանազան զարմանալի բաներ ալ կը պատմուէին ։ Կ'ըսէին թէ եղնիկ մը իրենց Եւրոպայի ճամբան ցըցուցեր ու աներեւոյթ եղեր է ։ Հովուին մէկը տեսեր է որ իր կովերէն մէկուն ոտքը վիրաւորեր է , պատճառը փնտռեր իմացեր է որ խոտերուն մէջ թուր մը կայ եղեր , առեր թագաւորին տարեր է . Ատտիլաս ալ աս թուրը Աստուած մեզի ղրկեց որ բոլոր տիեզերաց տիրապետենք ըսելով զամէնքը հաւատացուցեր , և ան թուրը Հոնաց կուռքը դարձեր է ։ Ատտիլասին յանդուգն խրոխտանացը չափ չկար ։ Անգամ մը Թէոդոսի դեսպաններուն ըսեր է . " Իմ ձիուս անցած տեղը մէյմըն ալ խոտ չբուսնիր " ։

2 ԱՏՏԻԼԱՍԱՅ ԻՏԱԼԻԱ ԱՐՇԱՒԱՆԸ ։ — Արեւելքը կողոպտելէն ձանձրացածի պէս էր Ատտիլաս՝ երբոր Գենսերիկոսի դեսպանները եկան զինքը յորդորեցին որ Հռովմայեցւոց իշխանութիւնը

---

1 Հոնաց վրայ ի՞նչ առասպելներ կը պատմուէին ։
2 Ի՞նչ պատճառաւ Իտալիա արշաւեց Ատտիլաս ։

կործանելու երթայ ։ Ուրախութեամբ յանձն առաւ Ատտիլաս ան հրաւէրը , և արևմուտքի վրայ յարձակելու պատճառ մըն ալ գտաւ ։ Տանըլեց տարի առաջ Վաղենտինիանոս երրորդին քոյրը Ոնորիա՝ ուզեր էր իրեն հետ կարգուիլ, և ինքը Ատտիլաս չէր հաւանած . հիմայ ուզեց . կայսրը երբոր յանձն չառաւ տալ, Ատտիլաս հինգհարիւր հազար զօրքով սկսաւ դէպ 'ի Գաղղիա արշաւել ։

1 Բասիլէա (Պալ) քաղքին քովէն նաւակներով ու կամուրջներով Հռենոսէն անդին անցաւ , Հռենոս ու Մէն գետերուն մէջտեղի քաղաքները կողոպտեց, Մեց քաղաքին բոլոր բնակիչները թրէ անցուց , ինչուան քահանաներն ալ խորաններուն առջևը մորթեց ։

2 Այսպէս հարիւր քաղաք կործանելէն ետև սկսաւ Փարիզի մօտենալ ։ Փարիզացիք սարսափած՝ կ'ուզէին քաղաքնին թողուլ փախչիլ . Ժենովիեվ անունով սուրբ հովուուհին զիրենք ազատեց , գնաց քաղաքին դրան առջևը կեցաւ ու փախչողներուն քարոզեց որ եթէ քաղաքէն դուրս չելլեն՝ թշնամին իրենց պիտի չվնասէ ։ Հաւատացին խօսքին , գուշակութիւնն ալ կատարուեցաւ . Հոնք յանկարծակի մտքերնին փոխեցին, Մէն գետէն անցան ու գնացին Օռլէան քաղաքը պաշարեցին ։

3 Հոնք ան քաղաքը առնելով՝ Գաղղիոյ մեծ

---

1 Գաղղիա ի՞նչպէս անցաւ ։

2 Փարիզ ի՞նչպէս ազատեցաւ Ատտիլասայ Հոնաց յարձակմունքէն ։

3 Օռլէան քաղաքը ի՞նչ կերպով Ատտիլասայ պաշարմանէն ազատեցաւ ։

մասին տիրած կ'ըլլային՝ ինչուան Վիսիգոթաց երկիրը ։ Ատտիլաս պաշարեց քաղաքն ու մարդ խրկեց բնակչացը որ անձնատուր ըլլան . բայց Անիանոս եպիսկոպոսը սիրտ տուաւ քաղաքացւոց , յորդորեց զանոնք որ Աստուծոյ ողորմութեանը ապաւինին ու անոր օգնութիւնը խնդրեն ։ Ամէնքը աղօթքի կեցան . աղօթքէն ետքը՝ ըսաւ անոնց Անիանոս . "Նայեցէք պարսպին վրայէն թէ Աստուծոյ ողորմութիւնը ձեզի օգնութեան կը հասնի՞ թէ չէ ,, ։ Բան մը չտեսան ։ "Նորէն աղօթք ըրէք , ըսաւ եպիսկոպոսը , վասն զի այսօր Աստուած զմեզ պիտի ազատէ ,, ։ Նայեցան աշտարակաց վրայէն ու ամենևին օգնութեան նշան մը չտեսան , միայն լսեցին որ թշնամիք անդադար բաբաններով պարիսպը կը ծեծէին ։ Ան ատեն ըսաւ Անիանոս . " Երրորդ անգամ մըն ալ ջերմեռանդութեամբ աղաչեցէք զԱստուած , անշուշտ օգնութիւն կը գտնէք ,, ։ Ամէնքը լալով ողբալով Աստուծոյ ողորմութեանը դիմեցին . մէյմըն ալ աչուըննին դարձընեն տեսնեն որ փոշին ամպի պէս բարձրացեր է , և իմացան որ Անիանոսին աղաչանքովը Այետիոս՝ Հռովմայեցիքը , Թէոդորիկոս ալ Թուլուզի Վիսիգոթաց թագաւորը իրենները և Մերովէոս Փռանկները հետերնին առած՝ քաղաքին օգնութեան կուգան եղեր ։

1 Ատտիլաս՝ պաշարումը վերուց ու Թրուա և Շալոն քաղաքներուն մէջ տեղը եղած Կատալաւնեան դաշտին մէջ բանակը դրաւ , ուր կրնար դիւ-

1 Կատալաւնեան դաշտին պատերազմը ի՛նչպէս եղաւ ։

րաւ իր բազմաթիւ ձիաւորները շարժել. հոն ուզեց Օռլէանի քով ունեցած ձախորդութեանը ոխը հանել: Սակայն յաղթութեանը վրայ տարակուսելով իր լերդահմաններուն խորհուրդ հարցուց. պատասխան տուին թէ պիտի չյաղթես, բայց թշնամեաց գլխաւորը պատերազմին մէջ պիտի մեռնի: Քաջալերեց Ատտիղաս իրենները, ու պատերազմի կեցուց, ինքը անոնց մէջտեղը կեցաւ, Ոստրոգոթաց զօրավարը Վալամիր՝ բանակին ձախ թեւը, Արդարիկոս ալ մեկալ բարբարոսաց հետ աջ կողմը կեցաւ: Թշնամեաց զօրքին շարքն ալ ասանկ էր. մէջտեղը Մերովէոս ու Փրանկները, ձախ կողմը Այետիոս ու գաղղիացիակ Հռովմայեցիք, աջ կողմն ալ Թէոդորիկոս և Վիսիգոթք: Ատտիղաս նշան տուածին պէս՝ պատերազմողները կատաղաբար իրարու վրայ յարձակեցան. բարբարոսները յոյս ունէին ան յաղթութեամբ բոլոր արեւմուտքի տիրելու և հարուստ աւարներով լեցուելու. մեկալնոնք ալ գիտէին որ եթէ հոնք յաղթելու ըլլան՝ բոլոր Եւրոպա բարբարոս պիտի դառնայ: Ան պատերազմին մէջ մեռնողներուն թիւը՝ ոմանք հարիւր վաթսուննուերկու հազար կ'ըսէին, ոմանք ալ ինչուան իրեք հարիւր հազարի հանեցին: Դաշտին մէջէն անցած գետակը յանկարծակի աճեցաւ ու մարդու արիւնով հեղեղ մը դարձաւ. բայց յաղթութիւնը անորոշ մնաց, և պատերազմին սկսած ատենը Թէոդորիկոս թագաւորը մեռեր էր (451):

1 Ատտիղաս այսչափ դիմակալութիւն գտնելու

---

1 Ատտիղաս Գաղղիայէն ո՞ւր գնաց: — Հռովմէն ի՞նչ կերպով հեռացաւ:

կարծիք չունէր, ուստի ալ չուզեց Գաղղիոյ մէջ ուշանալ, Խտալիոյ վրայ յարձակեցաւ։ Ալպեան լեռներէն անցաւ, Աքուիլէա քաղաքը պաշարեց, որուն բնակիչքը Ադրիական ծովուն ճահիճներուն մէջ փախան ու հոն Վենետիկ քաղաքը շինեցին։ Երբոր Հոնք Միլանը, Փաւիան ու Փոյ գետին քովի քաղաքները կը կողոպտէին՝ ոտնակոխ կ'ընէին, Վաղենտիանոս կայսրը Հռոմ փակուած կեցեր էր. բայց հոն ալ հասաւ Աստիղաս։ Մեծն Լեւոն պապը բոլոր եկեղեցականները հետն առած՝ քահանայապետական հագուստովը Աստիղայ առջևն ելաւ ու անվեհեր քաջութեամբ ըսաւ անոր. “ Վախցի՛ր, Աստուած որ զքեզ ինչուան հիմա իր բարկութեանը գաւազան առեր էր, քեզի դէմ ալ սրդողելով իր ահաւոր ձեռքովը զքեզ կրնայ ջախջախել։ Գնա՛, ալ պաշտօնդ լմընցաւ. աս խօսքերը իմ բերանս դնողը ան Աստուածն է՝ որ ամենայն մարդկանց տէր է„։ Աստիղաս վեհափառ ծերունւոյն սրբութեանը առջև խոնարհեցաւ. կայսեր վրայ տուրք մը դրաւ, և երդում ըրաւ որ նորէն գայ՝ թէ որ Ոնորիա իշխանուհին իրեն կին չտան (452)։

[1] Բայց շուտով իմացուեցաւ որ մէյմըն ալ գալիք չունէր։ Վասն զի Պաննոնիա դառնալէն ետև, ան գիշերն որ հարսնիք կ'ընէր՝ ինքզինքը սաստիկ կերուխումի տուաւ, և առաւօտը անկողնին մէջ արիւնլուայ խղդուած գտնուեցաւ, վասն զի արիւնը սաստիկ գլխուն զարնելով քթէն վազեր ու բերանը գնացեր խղդեր էր զինքը։ Զինուորները

---

[1] Ինչպէս մեռաւ Աստիղաս։

երկար ատեն ոռնալով վրան ողբեր երգելէն ետքը՝ մարմինը երեք կտոր դագաղի մէջ դրին, մէկը երկաթէ, մէկը արծըթէ, մէկալը ոսկիէ ։ Ասանկ վերցուեցաւ աշխարհիս երեսէն ան մարդն որ ինքզինքը Աստուծոյ բարկութեանը գործիք կ'անուանէր, թէպէտ և ըսած խօսքին իմաստը ինքն ալ չէր գիտեր ։

1 ԳԵՆՍԵՐԻԿՈՍԻ ՀՌՈՄԸ ԿՈՂՈՊՏԵԼԸ ։ — Ատտիղասի մահուանը վրայ իր զօրքէն զատ ամէնքը ուրախացան. բայց աս ուրախութիւնը շատ ժամանակ չտևեց ։ Անոր պէս ահաւոր ուրիշ բարբարոս մըն ալ Գենսերիկոսն էր, որ ծովուն երեսը իր նաւերովը բռնած՝ ամէն անգթութիւն կ'ընէր ։ Ցանկարծակի ծովեզերք մը կ'ելլէր, բնակիչները կը բռնէր՝ նաւերը կը տանէր, ու դէպ 'ի խորերը բացուելով ծովը կը նետէր զանոնք կը խեղդէր ։ Իր մայրաքաղաքը Կարքեդոն նորէն զօրացեր էր. անկէց կ'ելլէր անհամար նաւերով, և ուր որ հովը զինքը տանէր՝ հոն կ'երթար ։ " Տէր, ըսաւ իրեն օր մը նաւապետը, ո՞ր ժողովրդեան վրայ պատերազմի կ'ուզես երթալ ։ — Անոր վրայ որուն որ Աստուած բարկացեր է ,, ըսաւ Գենսերիկոս ։

2 Գենսերիկոս Հռովմայեցւոցմէ կանչուելով՝ նաւերը դէպ 'ի Տիբերիս գետը դարձուց ։ Վալենտինիանոսը՝ Աէտիոս պատրիկը մեռցնել տալուն համար՝ Պետրոնիոս Մաքսիմոս իշխանն ալ

---

1 Գենսերիկոս ի՞նչ անգթութիւններ կ'ընէր ։
2 Գենսերիկոս ի՞նչպէս կողոպտեց Հռոմը ։

Վաղենտինիանոսը մեռաւ ու անոր ինքը կայսր նստաւ։ Վաղենտինիանոսի Եւդոքսիա թագուհին էր որ Գենսերիկոսէն օգնութիւն խնդրեց. ան ալ Ռոմա հասաւ, Վաղենտինիանոսի մահուան վրէժն առաւ, տասնըչորս օր ու տասնըչորս գիշեր Հռոմը կողոպտեց, Կապիտոլիոնի աւարներովը Կարքեդոնը զարդարեց, Ժողովրդեան մէկ մասն ալ գերի տարաւ։ Գենսերիկոսի համար նէ՝ բոլոր բնակիչներն ալ թրէ պիտի անցընէր. բայց սրբոյն Լեւոնի աղաչանքովը այնչափով գոհ եղաւ (455)։

1 ԱՐԵՒՄՏԵԱՆ ԿԱՅՍԵՐՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԱՆԱԼԸ։ — Հռովմայ երկրորդ աւարառութիւնը Արեւմտեան կայսերութեան վերջին հարուածը եղաւ. անոր վրայ ապրած քսանըմէկ տարին ալ կեանք չէր, երկարատեւ հոգեվարք մըն էր։ Թէոդոս կայսրը Վիսիգոթաց թագաւոր անուանեց Գաղղիոյ Աւիտոս անունով կուսակալը. Հռիկիմեր Սուեւիացին զանիկայ աթոռէն ձգեց ու տեղը Մայորիանոս անունով զինուորը դրաւ, որ քաջարութեամբն ու երկայնմտութեամբն ալ չկրցաւ Վանդալաց յաղթել։ Անոր ետեւէն հետզհետէ նստան Սեւերոս Գ, Անթեմիոս, Ողիմբրիոս, Գլիկերիոս և Յուլիոս Նեպոս. ասոր ձեռքէն ալ Որեստէս պատրիկը յափշտակեց կայսերութիւնը, և իր վեց տարեկան Հռոմուլոս որդւոյն կայսերական ծիրանի հագցուց, ժողովուրդն ալ հեգնութեամբ Օգոստուղոս կամ Օգոստիկ մականունը տուին ան տղուն։ Երբոր Հերուլաց թագաւորը Ոդոակր

1 Արեւմտեան կայսերութիւնը ինչպէս վերջացաւ։

ուզեց որ Իտալիոյ երկիրներուն իրեք մասին մէկը իր զօրացը տրուի, Որեստէս չուզեց տալ. Ոդոակր ալ բարկացած՝ գնաց Փաւիայի ու Հռաւեննայի տիրեց, Որեստէսը բռնեց սպաննեց, և անոր որդւոյն Հռոմուլոսի ձեռքը Կամպանիան միայն թողուց: Ասանկով վերջացաւ Արեւմտեան կայսերութիւնը Ակտիոնի պատերազմէն ետքը հինգ հարիւր եօթը տարի քշելէն ետև, ու Հռոմուլոսէն 'ի վեր հազար երկու հարիւր քսանըլինը տարի (478): Ոդոակր Թագաւոր Իտալիոյ ըսուեցաւ, ու տասնըհինգ տարի Թագաւորեց հոն իր Հերուլներովը:

## ԳԼՈՒԽ Գ.

Պատմութիւն Իտալիոյ՝ մինչեւ Հերուլաց իշխանութեան վերջանալը (476-493): Պատմութիւն Գաղղիոյ և Փրանկաց՝ մինչեւ Կլոթարիոս Ա (420-561): Աստիղասայ տէրութեան քակտիլը. — Ոստրոգոթաց Պաննոնիոյ մէջ հաստատուիլը. — Մեծն Թէոդորիկոս Իտալիա կ'անցնի. — Հերուլաց Ոդոակր Թագաւորին յաղթուիլն ու մահը: — Փրանկաց արշաւանքն ու ծագումը. — Փարամոնդ. — Կլոդիոն. — Մերովէոս. — Քիլդերիկոս. — Կլովիս. — Փրանկաց Գաղղիոյ տիրելը. — Աս բարբարոսաց դարձը. — Կլովիսի մահը. — Իր ժառանգութեան բաժնուիլը. — Կլոդոմիրի որդւոցը սպաննութիւնը. — Սէն-Քլու. — Թէոդեբերտ. — Կլոթարիոսի միայն Թագաւորելը. — Մահը:

¹ Աստիղասայ տէրութեան պէս ահաւոր իշխանութիւն չէին ունեցած ան ատենի բարբա-

---

¹ Աստիղասայ մեռնելէն ետքը իր տէրութիւնը ինչ եղաւ:

րոմները. բայց հիմնադրին հետ ան ազատութիւնն ալ գրեթէ մեռաւ։ Նուաճուած ազգերը չուզելով անոր Դենկիզիքը, Իռնակ ու Ելլակ որդւոցը հնազանդիլ՝ ոտք ելան, սոսկալի կռիւ մը բացուեցաւ ու օրերով Սկիւթացիք, Սլաւք և Գերմանացիք միմեանց կը ջարդէին։ Վերջապէս Հոնք յաղթուեցան, Ասիա դարձան ու հոն անունն ալ մոռցուեցաւ. իսկ մեկալ ազգերը ցրուեցան։ Գեպիդեանք իրենց Արդարիկոս թագաւորին առաջնորդութեամբը՝ Թիսա ու Տնեսթեր գետերուն մէջտեղը ազատութիւն մը հաստատեցին։ Ոստրոգոթք իրենց Վալամիր, Վիդիմիր և Թէոդոմիր իշխանաց առաջնորդութեամբը գնացին արեւելք, ու Մարկիանոս կայսրէն իրենց բնակութեան երկիր ուզեցին. կայսրն ալ Պաննոնիան տուաւ իրենց՝ այս պայմանով որ Դանուբի սահմաններուն պաշտպանութիւն ընեն (455)։

[1] Յոյնք Ոստրոգոթներուն իրենց երկրին մէջ բնակութեան տեղ տալու համար՝ անոնցմէ պատանդ առեր էին Թէոդոմիրի որդին Թէոդորիկոսը։ Լեւոն Ա կայսրը այս Թէոդորիկոսը իրեն որդեգիր ըրաւ, Յոյնք ալ վրան սէր ձգեցին, պատրիկ ու հիւպատոս ըրին զինքը, և Կոստանդնուպոլսոյ մէջ անոր արձան մը կանգնեցին. Թէոդորիկոս ալ Յունաց քաղաքականութեանը մէջ կրթուելով շատ անգամ անոնց համար պատերազմի կ'երթար ու քաջութիւններ կ'ընէր։

---

[1] Յոյնք ի՞նչ պայմանաւ իրենց երկրին մէջ Ոստրոգոթաց բնակութեան տեղ տուին։

1 Երբոր տասնըութը տարեկան եղաւ Թէոդորիկոս, հայրը մեռաւ, և Ոստրոգոթները կանչեցին զինքը ու հօրը տեղը Թագաւորեցուցին։ Ան նոր իշխանութեանը մէջ ալ չմոռցաւ Թէոդորիկոս իր մանկութեան ատեն լսած խրատները․ երբոր զօրքէն առնուած՝ Կոստանդնուպօլսոյ վրայ պատերազմի գնաց, Զենոն կայսրը մարդ խրկեց իրեն ըսելով թէ դու հիւպատոս ըլլալով չես կրնար կայսեր դէմ զէնք վերցընել․ ամչցաւ Թէոդորիկոս, ու ետ դարձաւ։ Աս բանիս վրայ շատ ուրախացաւ Զենոն; և անոր հաւատարմութիւնը վարձատրելու համար՝ հրամանատար անուանեց զինքը բոլոր Իտալիոյ, և իրեն յանձնեց որ Օդոակրին իշխանութիւնը կործանէ (489)։

2 ԹԷՈԴՈՐԻԿՈՍԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ։ — Տասուերեք տարի էր որ Իտալիոյ գեղեցիկ երկրին վրայ տիրած էր Հերուլաց Թագաւորը․ բայց Ոստրոգոթք յուսով լեցուած՝ դէպ 'ի արևմուտք Ճամբայ ելան, մեծ ու պզտիկ երկու հարիւր հազար զինուորով․ ինչուան իրենց ցորեն աղալու երկանները ալ հետերնին տարեր էին։

3 Թէոդորիկոս Ալպեան լեռներէն անցնելէն ետքը՝ Սոնտիոս (Իզոնցօ) գետին քով Օդոակրին զօրացը հանդիպեցաւ, որուն մէջ գրեթէ ամէն ազգէ մարդ կար․ ան խառնիճաղանճ զօրքին դիւրաւ

---

1 Թէոդորիկոս ինչպէս Թագաւորեց։
2 Թէոդորիկոս ինչ մաքով արշաւեց Իտալիա։
3 Հերուլներուն Թագաւորութիւնը ինչ կերպով վերջացաւ։

յաղթեց, և ան յաղթութեամբը Խաղրիոյ ու Վենետիայ տիրեց։ Վերջնոյն մօտ նորէն յաղթեց Հերուլներուն, և Ոդոակր Հռովեննա փախաւ. հոն երեք տարի դէմ կենալէն ետև՝ անձնատուր եղաւ Թէոդորիկոսին, որ կեանքին հետ Խաղրիոյ կէսը կը խոստանար անոր. բայց ետքը Թէոդորիկոս վրան դաւաճանութեան կասկած առնելով կոչունքի մը հրաւիրեց զինքը ու հոն սպաննել տուաւ (493)։

[1] ՓՐԱՆԿԱՑ ԱՐՇԱՒԱՆՔԸ (420–561)։ — Գերմանական ազգերուն մէջ Փրանկները ամենէն աւելի անուանի պիտի ըլլային առենով։ Չէր գիտցուեր թէ աս ազգը ինչպէս ձևացած էր. աւանդել մը կար թէ Հեկտորի ու Անդրոմաքէի որդին Փրանկոս՝ Տրոյացիքը առեր ու Հռենոս գետին քովերը բնակեցուցեր և իր անունովը զանոնք Փրանկ անուաներ է։ Իսկ Փրանկները կ՚ըսէին թէ իրենց թագաւորութեան հիմնադիրը Աստուած է։ Հաւանական կարծիքն աս է որ ասոնք երրորդ դարուն մէջ Հռովմայեցւոց դէմ կենալու համար՝ այլևայլ գերմանական ժողովուրդներէ ձևացած դաշնակցութիւն մըն էին, ու քաջութեամբ ազատութիւննին պաշտպանելու համար՝ Փրանկ այսինքն Ազատորեար կամ Ազատ մարդիկ ըսուեցան։

[2] Վաղեռիանոս կայսեր ատեն շատ մը Փրանկներ Գաղղիայէն ու Սպանիայէն անցան ու գնացին Ափրիկէի անապատներուն մէջ կորսուեցան,

---

1 Փրանկները ի՞նչ ազգ էին։
2 Հռովմայ կայսերաց ատենը ի՞նչ վիճակի մէջ էին։

և այս գործողութեամբ մեծ անուն հանեցին։ Անկէց ետքը ամէն տարի գունդ գունդ երիտասարդներ կը խրկէին, որ կ'երթային Հռենոսէն անդին քաղաքներ գեղեր կը կողոպտէին, կ'այրէին, ու անոնց աւարներովը տեղերնին կը դառնային։ Պրոբոս, Կոստանդին Քլորոս, Կոստանդիանոս և Յուլիանոս կայսրերք շատ ջանացին զանոնք նուաճել, ճար չեղաւ. վերջապէս Հռենոսի ձախակողմեան եզերքը անբարբարոսաց տուին, ու ապսպրեցին որ ան երկիրներուն պաշտպանութիւն ընեն։ Ան տենէն ազգը երկու բաժնուեցաւ, ոմանք ըսուեցան Գետափնեայք, որովհետև անոնց յանձնուած էր գետին պահպանութիւնը, ոմանք ալ Սալեանք, Սալ գետին եզերքը բնակելնուն համար։ Գետափնեայք իրենց իշխանութիւնը շուտ կորսնցուցին, 406ին ալ բոլորովին ջարդուեցան Ալաններէն. իսկ Սալեանք օրէ օր Գաղղիոյ մէջ առաջ երթալով՝ կը ջանային իրենց հաստատուն բնակութիւն մը ունենալ։

[1] ՖՐԱՆԿԱՑ ԳԱՂՂԻՈՅ ՏԻՐԵԼԸ։ — Ֆրանկներուն Փարամոնտ թագաւորը 420ին Հռենոս՝ ձախակողմեան եզերքը բնակութիւն մը հաստատեց, որ երբ յաջորդը Կղոդիոն Հերապատանծը մինչև Սոմ գետը ընդարձակեց։ Անկէց ետքը Սալեանք Մերովէոսը թագաւորեցուցին՝ որ Ատտիլայայ դէմ պատերազմեցաւ Շալոնի մէջ, և անոր քաջութեանը համար Ֆրանկաց կամ թէ հիմակուան Գաղղիացւոց թագաւորներուն առա-

---

[1] Ի՞նչ կերպով սկսան Գաղղիոյ տիրել։

ջին ցեղը Մերովէան ըսուեցաւ : Անոր յաջորդեց Քլդերիկոս, որ ինչուան Լուար գետը տիրեց (481) :

¹ Բայց ան արշաւանքներէն ետքն ալ Փրանկները դեռ հաստատուն բնակութիւն մը չունէին. որ երկիրն որ հասնէին՝ կը կողոպտէին ու կ'անցնէին, ինչուան որ Քլդերիկոս մեռնելով թագաւորութիւնը թողուց իր Կլովիս որդւոյն, որ տասնըհինգ տարեկան էր, և ասոր ծննդեանը վրայ զարմանալի բան մը կը պատմէին : Գիշեր մը տղուն մայրը կ'արթընցընէ կ'աղաչէ զՔլդերիկոսը, որ մէյմը պալատին դրան առջևը երթայ. կ'ելլէ կը նայի Քլդերիկոս, ու աչքին առիւծներ և ընձառիւծներ կ'երևնան : Սարսափած վեր կ'ելլէ, թագուհւոյն կը պատմէ. ան ալ սիրտ կուտայ իրեն ըսելով. "Ասիկայ նշան է թէ մեզմէ առիւծ մը պիտի ծնանի" :

² Կլովիս քսան տարեկան հազիւ կար, միտքը դրաւ որ բոլոր Գաղղիոյ տիրապետէ : Ան ընդարձակ երկիրը չորս տէրութեան ձեռքն էր. Սոմ ու Լուար գետերուն մէջտեղուանքը Հռովմայեցւոց ձեռքն էին, և անոնց գլուխն էր Սիագրիոս՝ Կոստանդնուպոլսոյ իշխանութեանը տակ. Սէն գետին արևմտեան կողմը Բրետոնք (Պրէթոնները) կը բնակէին, և իրենց ազատ թագաւորներ ունէին. Լուար գետին, Պիրենեան լեռներուն, Ովկիանոսի ու Հռոդանոսի մէջտեղը Վեստգոթները տիրած էին. Հռոդանոսի ու Ալպեանց մէջ-

---

¹ Քլդերիկոսին յաջորդ ո՞վ եղաւ :
² Կլովիս ինչ յաղթութիւններ ըրաւ :

տեղն ալ Պուրկինեանք ։ Կլովիս նախ Հռովմայեցւոց մասին վրայ յարձակեցաւ ․ Սուասոնի պատերազմին մէջ Սիագրիոս յաղթուեցաւ ու Վեսիգոթաց քովը փախաւ ․ անոնք ալ բռնեցին զինքը, յաղթականին ձեռքը մատնեցին, և Հռովմէական Գաղղիան նուաճուեցաւ (486) ։ Հոն կեցած Կլովիս՝ երբոր Պուրկինեանց բարեբեր հովիտներուն ալ տիրելու կը փափաքեր, անդին Ալամանք, որ Գերմանացիք ալ կ՚ըսուին, սկսան վրան արշաւել՝ նոր տիրած երկիրը ձեռքէն առնելու մտքով ։ Վազեց Կլովիս անոնց առջևը, և երկու կողմէն ալ սաստկութեամբ պատերազմեցան ։ Բայց երբոր տեսաւ Կլովիս որ իրենները փախչիլ սկսան, ձեռուըները երկինքը վերցուցած՝ քրիստոնեից պաշտած Աստուածը իրեն օգնութիւն կանչեց, ուխտ ընելով որ եթէ յաղթութիւնը իրեն տայ՝ մկրտուի, քրիստոնեայ ըլլայ ։ Փրանկները ան երդմամբ սիրտ առած՝ նորէն յարձակեցան Ալամանաց վրայ, յաղթեցին ու հալածեցին զանոնք (496) ։

1 Կլովիս յաղթութենէն ետքը իր ուխտը չմոռցաւ ․ մանաւանդ որ արդէն իր կինը Կղոտիլդէ քրիստոնեայ էր և շատ անգամ զինքն ալ յորդորեր էր քրիստոնեայ ըլլալու ․ ուստի Հռեմս (Ռէնս) քաղաքը գնաց Կլովիս, ու հոն իրեք հազար զինուորացը հետ քաղաքին սուրբ Հռեմիգիոս եպիսկոպոսէն մկրտուեցաւ ։ Ետքը նորէն աշխարհակալութեանց ետևէ ըլլալով, Թրով ու կրակով Պուրկինեանց երկիրը գնաց, անոնց թագաւորը

1 Ի՞նչ կերպով քրիստոնեայ եղաւ ։

Գանդերաւդոս Կլովիսին հարկատու եղաւ, և ուղղափառութիւնը ընդունելովը իր թագաւորութիւնը ազատեց :

[1] Կլովիս ուզեց նուաճել Վիսիգոթներն ալ, որ Գաղղիոյ հարաւային կողմերուն տիրած էին, և արիոսեան ըլլալով ատելի էին ուղղափառաց : Անոնց թագաւորը Ալարիկոս Կլովիսի դէմ կենալու կը պատրաստուէր, ու Վիգեննա կամ Վեննա (Վիէն) գետին քով ամրացաւ, ուսկից ջրոյն առատութեանը պատճառաւ դժուար էր որ թշնամին անցնէր . բայց ան դժուարութիւնը անօգուտ եղաւ : Կլովիս շուտ շուտ առաջ գնաց, պատուիրելով իշխաններուն որ եկեղեցականաց ստացուածքին չդպչին, մանաւանդ սրբոյն Մարտինոսի եկեղեցւոյն ստացուածոցը ամենեւին չձեռնեան, որովհետեւ ան սուրբը Գաղղիոյ մեծ պաշտպանն էր : Զինուորին մէկը քիչ մը չոր խոտ գողնալով՝ խեղճինքը կ'արդարացնէր ու կ'ըսէր . " Թագաւորը հրաման տուաւ որ խոտ կարենանք փրցնել . աս ալ ահա կտրած ու չորցուցած խոտ է " : Բայց թագաւորը աս բանս որ լսեց, զինուորը առջևը կանչեց, թրովը զարկաւ անոր ու ըսաւ . " Ի՞նչ պէտ կրնանք յաղթութեան յոյս ունենալ՝ երբոր սուրբին Մարտինոսի բարկացընենք " : Անցաւ Կլովիս Վեննա գետէն ու Փուաթիէ քաղաքին մօտ զարնուեցաւ Վիսիգոթաց հետ, որ չկրցան երկար ատեն Փրանկաց յարձակմանը դիմանալ . իրենք ջարդուեցան փախան, և թագաւորնին Ալարիկոս ընկաւ մեռաւ . անով բոլոր Պիրենեանց,

---

[1] Վիսիգոթներուն ինչպէս յաղթեց :

Հռոդանոսի ու Ովկիանոսի մէջտեղն ընկած Գաղղիան Կլովիսի ձեռքն անցաւ (507)։ Չորս տարիէն ետքը մեռաւ Կլովիս Փարիզու մէջ՝ որ տէրութեան մայրաքաղաքը եղեր էր (511), և իր կանգնած թագաւորութիւնը Եւրոպայի նոր թագաւորութիւններուն ամենէն հինն եղաւ։ Երկիրն ալ անկէց ետքը Ֆրանս կամ Փրանկաց աշխարհ ըսուեցաւ։

[1] Կլովիսի մեռնելէն ետքը իր չորս որդիքը տէրութիւնը մէջերնին բաժնեցին․ Թիէրրի՝ Մէս քաղաքին մէջ թագաւորեց, Քիլդեբերտ (Շիլտեպէր) Փարիզու մէջ, Կլոթարիոս (Քլոթէր) Սուասոնի մէջ, Կլոդոմիր ալ Օռլէանի մէջ։ Իսկ Պուրկոն (Պուրկոնները) գաւառը ինչուան վեցերորդ դար իրենց առանձին թագաւորներ ունեցաւ։ Այս թագաւորաց մէջ ամենևին միաբանութիւն չկար․ անդադար իրարու ձեռքէն երկիր յափշտակելու և մէկզմէկ քանդելու կը ջանային։ Կլոթարիոս, Քիլդեբերտ ու Կլոդոմիր միան Պուրկոն, Սիկիսմոնտ թագաւորին զօրքը ջարդեցին, զինքն ալ բռնեցին, անգթութեամբ ջրհորի մը մէջ ձգեցին ու վրան քար լեցուցին։ Այն արշաւանաց մէջ մեռաւ Կլոդոմիր ու իրեք որդի թողուց։

[2] Այս որդիները Կլոտիլդէ մեծ մայրերնին քովը առաւ ու մասնաւոր սիրով սկսաւ զանոնք մեծցնել։ Այս բանիս վրայ Քիլդեբերտ նախանձելով, ծածուկ մարդ խրկեց Կլոթարիոս եղբօրը որ գայ,

---

1 Կլովիսին մէկ յաջորդեց։
2 Կլոդոմիրի իրեք որդիքը ինչպէս մեռան։

ու այն տղաքը մէջտեղէն վերցընելու ճար մը մտածեն ։ Կղոթարիոս Փարիզ գնաց , և բանը մէջերնին որոշելէն ետև՝ մօրերնէն խնդրեցին որ իրենց եղբօրորդիքը տայ որ Կղոդոմիրի տեղը զանոնք թագաւորեցընեն ։ Կղոտիլդէ ամենևին կասկածի չերթալով ուրախութեամբ հանեց տուաւ տղաքը ։ Մէկէն Կղոթարիոս ու Քիլդեբերտ այն խեղճ տղաքը իրենց ծառաներէն զատեցին , բանտ դրին , ու Արկադէոս անունով մէկը Կղոտիլդէին ղրկեցին որ մէկ ձեռքը մկրատ՝ մէկալ ձեռքը բաց թուր մը բռնած գնաց ըսաւ անոր ․ “ Վեհափառ դշխոյ , որդիքդ կը սպասեն որ իմացընես իրենց քու կամքդ թէ ինչ պէտք է ընել այն տղոցը ․ անոնց մազե՞րը կ'ուզես որ կտրուին աս մկրատով թէ աս թրով անոնց գլուխը ”։ Կղոտիլդէ սաստիկ բարկութենէն չկարենալով բերնէն հանած խօսքին ուշ դնել , “ Աւելի կ'ուզեմ , կ'ըսէ , որ թոռներս մեռնին քան թէ մազերնին կտրուի (այսինքն վանք մտնեն ու թագաւորութենէ զրկուին) ”։ Արկադէոս ալ այն կ'ուզէր լսել ․ ուստի վազեց աւետիս տուաւ երկու եղբարց ։ Անոնք իրենց անմեղ եղբօրորդւոցը բանտը մտան ․ Կղոթարիոս բռնեց քաշեց անդրանկին թևէն որ հազիւ տասը տարեկան կար , ու անողորմաբար զարկաւ թուրը սպաննեց ։ Մեծ եղբօրը այնպիսի սոսկալի մահն որ տեսաւ խեղճ պզտիկը , որ եօթը տարեկան էր , Քիլդեբերտին ոտքը ընկաւ պլլուեցաւ , ու խեղճ թափելով “ Հա՛յր իմ , հայր իմ , մի թողուր որ ես ալ եղբօրս պէս մեռնիմ ” կը կանչէր ․ Քիլդեբերտին սիրտը կտրտեցաւ , սկսաւ լալով աղաչել Կղոթարիոսին որ խնայէ տղուն ․ բայց թափած

անմեղ արիւնով Կլոթարիոսին աչքը դարձած՝ Նախատեց զեղբայրն ու « Մէկդի՛ դնա, կանչեց անոր, ապա թէ ոչ՝ հիմա զքեզ անոր տեղը կը սպաննեմ. դո՛ւն զիս աս բանիս դրդեցիր, հիմա կ'ուզես զիս մինակ թողուլ »: Քիլդեբերտ մեկէն տուաւ տղան, և Կլոթարիոս նոյն արիւնոտ թրով զանիկայ ալ սպաննեց, ու գառնուկի մը պէս բռնեց ոտքէն, եղբօրը մարմնոյն վրան ձգեց, իսկ ինքը ձին հեծաւ գնաց (533): Մեկալ երրորդ տղան անգութ հօրեղբարցը ձեռքէն փախչելով ինքիրմէ մազերը կտրեց, վանք մը քաշուեցաւ Փարիզի մօտ, ու սրբութեամբ հոն մեռաւ (560): Բնակած գեղը իր անունովը Սէն-Քլու այսինքն Սուրբ Կլոդոալդ լսուեցաւ, և նստած վանքին տեղը թագաւորական պալատ մը շինուեցաւ որ ինչուան հիմայ կայ:

[1] Ան ատենները Թիէրրի Գերմանիոյ մէջ դէպ 'ի Թուրինկիա ըրած արշաւանացը ատեն մեռնելով իրեն յաջորդ թողուց Թէոդեբերտ որդին (534): Աս քաջասիրտ ու փառասէր թագաւորը հարիւր հազար հոգւով Ալպեան լեռներէն անցաւ, Յունաց և Ոստրոգոթաց յաղթեց ու անկեց Յուստինիանոս կայսեր ալ սպառնալով երբոր արևելքի ալ տիրելու կը մտածէր՝ որսի մէջ սաստիկ վիրաւորուելով մեռաւ: Իր որդին Թէոդեբալտ որ անդամալոյծ տղայ մըն էր, Իտալիոյ վրայ բանակ մը խրկեց որ Նէրսէս պատրիկէն ջարդուեցաւ, և ինքը Թէոդեբալտ առանց զաւկի մեռաւ

---

[1] Թիէրրի, Թէոդեբերտ ու Թէոդեբալտ ի՞նչպէս մեռան:

(584)։ Զորս տարի ետքն ալ Քիլդեբերտը մեռնելով Կլոթարիոս միայն մնաց թագաւոր։

ւ Կլոթարիոս իրեք տարուան թագաւորութեանը առեն Սաքսոնիացւոց ու Պրեթոնաց հետ կռուըտեցաւ։ Սաքսոնիացւոց դէմ ըրած պատերազմը յաջող չգնաց. վասն զի Փրանկք իրենց թագաւորին մտիկ չընելով յանձն չառին թշնամւոյն խնդիրքը կատարել, հաշտութիւն ընել. պատերազմիլ ուզեցին ու չարաչար յաղթուած՝ իրենք խոնարհեցան, Սաքսոններէն հաշտութիւն խընդրեցին. Կլոթարիոսի որդին Քրամնէ կամ Քրամնոս իր հօրը դէմ ապստամբեցաւ, ու Պրեթոններէն օգնութիւն առնելու գնաց. բայց հօրը խրկած զինուորները ետեէն հասան, բռնեցին զինքը շըղթայակապ հօրը առջևը բերին. Կլոթարիոս ալ հրամայեց որ Քրամնէն ու անոր կինն ու զաւակները հիւղի մը մէջ դնեն ու կրակ տան այրեն. և անգութ հայրը հոն կեցած նայեցաւ ինչուան որ հիւղին մոխիրը իր որդւոյն, հարսին ու թոռանցը մոխիրներուն հետ խառնուեցաւ։ Աս սոսկալի անգթութենէն տարի մը ետքը (561), վրան սաստիկ ջերմ եկաւ, և մահը մօտեցած տեսնելով դեռ արդար դատաւորին առջևը չելած կը կանչէր Կլոթարիոս. “ Բա՜բէ, ի՞նչպէս զօրաւոր պիտի ըլլայ ան երկնային թագաւորը, որ ինծի պէս զօրաւոր թագաւորներ կը մեռցնէ „։

---

ւ Կլոթարիոս ի՞նչ պատճառաւ ու ի՞նչ կերպով սպաննեց իր Քրամնէ որդին, ու ինքը ի՞նչպէս մեռաւ։

## ԳԼՈՒԽ Դ.

Պատմութիւն Իտալիոյ ինչուան Լոմպարտացւոց արշաւանքը (476-590), և Մեծին Բրիտանիոյ պատմութիւնը՝ ինչուան Սաքսոնիացւոց և Անգղիացւոց արշաւանքը (448-584)։ Իտալիոյ մէջ Ոստրոգոթաց թագաւորութիւնը. — Թէոդորիկոս. — Բոյեցիոս և Սիմմաքոս. — Իրենց մահը. — Թէոդորիկոսի մահը. — Ամալասունթա. — Թէոդատ. — Ամալասունթ. — Մահը. — Բելիսարիոս ու Ներսէս պատրիկ. — Վիտիգէս. — Տոտիլաս. — Տէյաս. — Ներսէսին հէք ըրած մեծ պաշտօնը. — Ոստրոգոթաց Իտալիայէն ելլելը. — Ներսէս պատրիկին Լուքքա քաղաքը առնելը. — Սոֆիա թագուհին. — Լոմպարտացւոց արշաւանքը. — Ալբոյինոս. — Կլեփոս. — Երեսունըվեց դքսութիւնք. — Աութարիս։ — Սաքսոնիացւոց արշաւանքը. — Հէնկիսթ և Հորսա. — Թագաւորութիւնք Քէնթի, Սուսեքսի, Վեսթ-Սեքսի, Էսսեքսի. — Անգղիացւոց արշաւանքը. — Իտա. — Թագաւորութիւնք Նորթումպերլանտի, Արևելեան Անգղիոյ և Մերսիոյ։ — Բարբարոսաց արշաւանքին ընդհանուր հետեւանքները։

1 ՈՍՏՐՈԳՈԹԱՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ։ — *Թէոդորիկոս բոլոր Իտալիոյ տիրապետելով իր աթոռը Հռաւեննա դրաւ, և հրատարակեց որ Իտալիան ատկէց ետքը Յունաց կայսերութեան մէջ մտած է։ Ըստ Ջանաց որ նորէն ան երկիրը առաջինին*

¹ *Թէոդորիկոս ինչ բարեկարգութիւններ ըրաւ։*

պէս ծաղկեցընէ ու զօրացընէ · ծերակոյտը հաստատեց, հին մոռցուած պաշտօնները, սովորութիւններն ու կարգերը նորոգեց · փառաւոր խաղեր սկսաւ ընել տալ, ու ժողովրդեան ցորեն կը բաժնէր : Կ'ելլէր երբեմն Կապիտոլիոնի վրայէն ժողովրդեան ճառեր կը խօսէր, ինչպէս որ առենով հիւպատոսները կ'ընէին : Միանգամայն դըպրոցները նորէն բանալ տուաւ · հոն Իտալացիքը կը ժողվէր, անոնց ուսմունք կը սորվեցընէր, երկրագործութիւնը, վաճառականութիւնն ու արուեստները ծաղկեցընել կուտար : Տարուէ տարի երկու հարիւր լիտր ոսկի կուտար որ նորէն Հռովմայ պարիսպները շինուին, կործանուած շէնքերն ալ նորոգուին · Հռաւեննա, Վերոնա ու Փաւիա քաղաքներն ալ շատ զարդարեց : Իր արքունիքը Կոստանդնուպօլսոյ պալատէն վար չէր մնար · հոն ալ մաքուր յունարէն ու լատիներէն կը խօսէին : Իմաստուն մարդիկը շատ կը սիրէր ու անուանի գիտունները քովը կը ժողվէր, որոնց մէջ երեւելիներն էին Կասիոդորոս, Փեստոս, Սիւմմաքոս և Բոյեթիոս :

[1] Արտաքին աշխարհակալութեամբ ալ մեծ անուն հանեց Թէոդորիկոս · Լիւրիկէի տիրեց, Պաննոնիան, Նորիկոնը, Հռետիան ու հարաւային Գաղղիոյ մէկ մասը նուաճեց : Բաւարք (Պաւերացիք) իրեն հարկ կուտային, և Ալամանք Փրանկաց Կլովիս թագաւորին դէմ իրեն պաշտպանութիւնը կը խնդրէին : Իր զօրութեամբը արեւելեան կայսերքը խոնարհեցուց, ճարտար քաղաքագի-

---

[1] Օտար տէրութեանց հետ ինչպէս վարուեցաւ :

տուլթեամբն ալ բարբարոս Թագաւորները, այսինքն Ալարիկոս Բ Վիսիգոթաց Թագաւորը, Սիգիսմոնտ՝ Պուրկինեանց Թագաւորը, Թրասիմոնտ՝ Վանդալաց Թագաւորը, Կլովիս՝ Փրանկաց Թագաւորը, իր իշխանութեան տակը առաւ, ոմանց հետ խնամութիւն՝ մէկալնոնց բարիք ընելով:

¹ Բայց բոլոր աս շէնքը աւազի վրայ հիմնած էր. վասն զի Ոստրոգոթներուն ամենեն քաղաքական իշխանութիւն չէր տար, հապա միշտ զինուորութեան մէջ առաջ կը տանէր զիրենք, ու կը նայէր որ քաջ ու զօրաւոր մարդիկ ունենայ. բայց անոնք քիչ ատենէն ակարացան Իտալիոյ օդին վարժած չըլլալով. և որովհետև ամէն իշխանութիւն Իտալացւոց ձեռքն էր, կայսերաց ատենի կառավարութիւնն ու զօշաքաղութիւնները նորէն սկսան:

² Բոյետիոս իմաստասէր իշխանը Թէոդորիկոսին բռնած Ճամբուն չհաւնիլը յայտնի ըրաւ: Ասիկայ ինքզինքը ան հռչակաւոր Մանլիոսին ցեղէն կը կարծէր՝ որ Գաղղիացիները Կապիտոլիոնէն վռնտեր էր, ուստի մեծ փափաք ունէր որ ան փառաւոր անուանը արժանի վարք ունենայ: Պզտիկուց ուսման եռանէ ըլլալով՝ Աթէնք գնացեր ու հոնտեղի դպրոցները շատ տարի կեցեր էր: Միտքը քրիստոնէութեան բարոյականովը լուսաւորուած, ու Արիստոտէլի տրամաբանութեամբը զօրացած՝ երբոր Հռոմ դարձաւ, Սիւմմաքոս

---

¹ Թէոդորիկոս իշխանութիւնները որո՞նց տուած էր:

² Ո՞վ էր Բոյետիոս:

պատրիկը զինքը իրեն փեսայ ըրաւ։ Բոյետիոս շատ ճառեր գրեց հին երաժշտութեան վրայ, Արքիմեդեսի մեքենականութեանը, Պտղոմէոսի աստեղաբաշխութեանն ու Պղատոնի փիլիսոփայութեանը վրայ։ Հարստութեամբը աղքատաց կ'օգնէր, քաղաքաւարութեամբը անմեղներուն պաշտպանութիւն կ'ընէր, ճարտասանութեամբն ալ իր ժամանակակից մատենագրաց մէջ ամենէն վեր էր։

1. Թէոդորիկոս Բոյետիոսի առաքինութիւնը և հանճարը պատուելու մտքով հիւպատոս ընտրեց զինքը։ Բայց Բոյետիոս պատուոյ հասնելովը իր բնութիւնը չփոխեց, և ճշմարտախօսութիւնը ձեռքէ չձգեց։ Օր մըն ալ ծերակուտին առջևը համարձակեցաւ Թագաւորին վրայ գանգատելու. " Թագաւորական իշխանութիւնը կը պատուենք մենք, ըսաւ, և կը թողունք որ իր շնորհքները որուն որ կ'ուզէ տայ, ինչպէս որ արեգակը իր ճառագայթները կը բաշխէ. բայց ազատութիւն ալ կը խնդրենք՝ որ աս տէրութեան ամենէն պատուական արտօնութիւնն է։ Մէկը չկայ որ աս օրուան օրս հարուստ ըլլայ ու անպատիժ մնայ. ինչուան քարերն ալ ժողովրդեան հառաչանքներուն արձագանգը կուտան։ Դուն էիր որ կ'ըսէիր ատենով, Ոչխարները խուզելու է, չէ թէ քերթելու,,։ Թէոդորիկոս աս խօսքերուն սաստկութեանը չդիմանալով՝ Բոյետիոսը աքսորեց. և որովհետև իր իշխանները Բոյետիոսի ու անոր աներոջը Սիւմմաքոսին վրայ դաւաճանութեան զրպարտութիւն

---

1 Թէոդորիկոս ինչպէս վարուեցաւ Բոյետիոսին հետ։

ըրին, հրամման տուաւ որ ան երկու անուանի մարդիկը սպաննուին։ Սիւմմաքոս գլխատուեցաւ. իսկ խեղճ Բոյետիոս սոսկալի տանջանքներու մատնուեցաւ. անիւի վրայ չուաններով կապեցին զինքն ու աչուըները հանեցին. ետքը գերանի մը վրայ պառկեցուցած՝ երկու գահիճ սաստիկ ծեծեցին գաւազանով, և վերջապէս կացինով գլուխը կտրեցին։

[1] Քիչ ատենէն իմացաւ Թէոդորիկոս երկուքին ալ անմեղութիւնը, սրտին մեծ ցաւ եղաւ, ու մաքէն անոնց յիշատակը չէր ելլեր։ Օր մը սեղանի ատեն առջևը մեծ ձուկ մը բերին. "Վերուցէք դիմացէս սա ձիւաղը, կանչեց, Սիւմմաքոս կեցեր՝ կատղած աչուըները վրաս կը դարձընէ, ակռաները կը կրճտէ ու ինծի մահ կը սպառնայ"։ Այս երևութին վրայ խելքին այլայլութիւն եկաւ, ու իրեք օրէն մեռաւ՝ երեսունուիրեք տարի Թագաւորելէն ետքը (526)։ Մեծ ըսուեցաւ Թէոդորիկոս, բայց ափսո՜ս որ ինչուան վերջը իր մեծութիւնը անարատ չպահեց։

[2] Թէոդորիկոսի յաջորդեց իր Թոռը Աթալարիկոս. և որովհետև դեռ պզտիկ էր, անոր խնամակալ եղաւ իմաստուն մայրը Ամալասունթ՝ Մեծին Թէոդորիկոսի սիրելի աղջիկը, որ անխափան յունարէն ու լատիններէն կը խօսէր, սուր միտք մը ունէր, և հաստատուն ու խաղաղասէր բնաւորութիւն։ Անիկայ ջանաց որ Իտալիան Կոստանդնուպօլսոյ արքունեացը հետ բարեկամ պահէ,

---

1 Թէոդորիկոս ինչպէս մեռաւ։
2 Թէոդորիկոսի ով յաջորդեց։

Հռովմայեցւոց շատ շնորհքներ ըրաւ, իր որդին ալ կը խրատէր որ անոնց նմանի: Բայց Գոթացիք աժգոհ էին աս բանիս վրայ որ յաղթուողները իրենցմէ աւելի պատուոյ կը հանէին, ու օր մը երբոր տեսան որ իրենց թագաւորին ապտակ մը զարկաւ մայրը, գնացին ըսին անոր. "Թէոդորիկոս կ'ըսէր որ եթէ Գոթացի մը ծեծէն վախնայ՝ հարկաւ պատերազմէ ալ կը վախնայ. հանէ աս տղան օտար դաստիարակներու ձեռքէն ու բարբարոսներու տուր, որպէս զի բարբարոսաբար կառավարութիւն ընել սորվի": Կատարեց Ամալասունթ անոնց կամքը. բայց քիչ ատենէն մանկահասակ թագաւորը մեռաւ (534):

[1] Ան ատեն Ամալասունթ իր հօրեղբօրորդին Թէոդատը թագաւոր դրաւ, յուսալով որ ինքն ալ անոր հետ մէկտեղ թագաւորէ. բայց Գոթացիք չկարենալով համբերել որ օտարները իրենցմէ վեր դրուէին, նենգամիտ Թէոդատին խորհրդովը խեղճ թագուհին բաղնիքի մէջ խեղդեցին: Աս բանիս վրէժխնդիր ելաւ Յունաց կայսրը Յուստինիանոս, և Թէոդատին վրայ պատերազմ բացաւ (536):

[2] Ան պատերազմին գլուխ դրուած երկու զօրավարները, որ մեծ անուն հաներ էին իրենց ճարտարութեամբը, էին Բելիսարիոս ու Ներսէս պատրիկ հայկազն: Նախ Բելիսարիոս երեւցաւ,

---

[1] Ամալասունթ ի՞նչպէս մեռաւ:

[2] Յունաց անուանի զօրավարները որո՞նք էին ան ատենը: — Բելիսարիոս ի՞նչ քաջութիւններ ըրաւ:

Սիկիլիոյ տիրեց, անկէց անցաւ Իտալիա, և Նէա֊պօլիսը (Նափոլին) ու Հռոմը առաւ։ Ան միջոցին Թէոդատ դեսպան խրկեց կայսեր և կ՚ուզէր հնա֊զանդիլ Յունաց. Ոստրոգոթները բարկացան ա֊նոր դէմ, տեղը ընտրեցին Վիտիգէս անուանով քաջ զինուորականը, որ զԹէոդատը սպաննել տուաւ ու Փռանկաց հետ դաշնակցութիւն ըրաւ։ Բար֊բարոս Փռանկները իրենց Թէոդեբերտ Թագա֊ւորին առաջնորդութեամբը Ալպեան լեռնե֊րէն իջան, և Ոստրոգոթաց ու Յունաց աչքին առջևը Փօյ գետէն անցին անցան. երկու բանակ֊ները ալ չէին գիտեր թէ ասոնք իրենց դաշնակի՞ց են թէ թշնամի, բայց շուտով իմացան։ Վասն զի Փռանկները նախ Վիտիգէսի զօրացը վրայ յարձա֊կեցան ու սոսկալի ջարդ մը տուին անոնց. ասոր վրայ շատ ուրախացաւ Բելիսարիոսին զօրքը. բայց Թէոդեբերտ ետևի կողմէն Յունաց վրայ վազելով զանոնք ալ հալածեց։ Իտալացւոց բաղդէն սաս֊տիկ տաքերը կոխելով Փռանկներէն շատը սկսան մեռնիլ. ուստի Ալպեան լեռներէն նորէն անցան, իրենց երկիրը գնացին (539)։

[1] Անկէց ետքը յաղթութիւնը Յունաց կողմն անցաւ, և Բելիսարիոս ամէն պատերազմաց մէջ Գոթացւոց յաղթեց, այնպէս որ ուզեցին զինքը իրենց Թագաւոր պսակել։ Բելիսարիոս ան հրա֊ւէրքը չընդունեցաւ, իր յաղթութիւնները առաջ տանելով Հռաւեննան առաւ, Վիտիգէսն ալ բռնեց՝ Կոստանդնուպօլիս տարաւ։ Բայց Յուս֊տինիանոս իր զօրավարին ըրած յաղթութեանցը

[1] Գոթացւոց ի՞նչպէս յաղթեց։

վրայ նախանձելով՝ զինքը արդէն ետ կանչեր էր (541)։

ա Բելիսարիոս Իտալիայէն ոտքը վեր վերցընելուն պէս սիրտ առին Գոթացիք, և Տոտիղաս անունով քաջ մարդը իրենց թագաւոր ընտրեցին։ Տոտիղաս Ֆայէնցա քաղաքին մօտ Յունաց հետ զարնուելով՝ անանկ մեծ յաղթութիւն մը ըրաւ որ անոնց ամէն դրօշներն առաւ, բոլոր Իտալիոյ տիրապետեց, ու ամէն տեղ իր գթութիւնն ու մարդասիրութիւնը ցըցուց։ Կայսրը Կոստանդնուպոլսէն Բելիսարիոսը ղրկեց որ Տոտիղասայ առջևն առնէ. բայց անօգնական մնալով՝ չկրցաւ գործ մը տեսնել, և խնդրեց որ զինքը նորէն ետ կանչեն (548)։

բ Բելիսարիոսին տեղը անցաւ Յուստինիանոսի սենեկապետը Ներսէս պատրիկ հայկազն ներքինի։ Ամէնքը անոր հնարագէտ ու զարմանալի հանճարը, խոհեմ գործունէութիւնը, վեհանձնութիւնը, երկայնմտութիւնն ու անպարտելի զօրութիւնը քիչ ատենի մէջ տեսան։ Ներսէս բազմութեամբ զօրաց զարնուեցաւ Գոթացւոց հետ, պատերազմը խիստ սաստիկ եղաւ, ու երկար ատեն անորոշ մնաց. բայց վերջապէս Ներսէս յաղթեց, Տոտիղաս ընկաւ մեռաւ, անոր հետ Գոթացւոց ազգը իր ազատութիւնն ալ կորսնցուց (552)։ Անանկ սարսափեցուցեր էր Տոտիղաս Հռովմայեցիքը որ մեռնելուն չէին հաւատար. մարդ-

---

ա Տոտիղաս ի՞նչ քաջութիւններ ըրաւ Յունաց դէմ։

բ Ներսէս պատրիկ ի՞նչպէս սկսաւ իր արշաւանքը։

խորկեց Ներսէս, գերեզմանը բացին ու արիւնլուայ ծիրանին հանեցին վրայէն բերին, որ առաւ կայ-սեր խաւրեց:

[1] Տոտիլասին ետքը Գոթացիք իրենց թագաւոր ըրին Տէյաս զօրավարը, որ Կումա քաղաքին քով Ներսէսի դէմ ճակատեցաւ: Երկու բանակին ալ զօրավարներն ու ձիաւորները ձիերնին իրենց քո-վէն հեռացուցին որ փախչելու յոյս չունենան: Երբոր պատերազմը սկսաւ, Տէյաս յանդուգն արիութեամբ հասարակ զինուորի մը պէս կը պա-տերազմէր. չորս ժամ միակերպ կռուեցաւ ու շատ մարդ մեռուց, շատ անգամ վահանը փոխեց, վեր-ջինն ալ նետերով լեցուած ու ծակծըկած ըլլա-լով՝ երբոր կուրծքին գլխուցէն մէկդի բռնեց որ ուրիշ մը առնէ՝ առջևէն նետ մը եկաւ, սիրտը խոթուեցաւ, ու մէկէն քաջ թագաւորը գետինը դիզուած մարդկանց վրայ ընկաւ մեռաւ:

[2] Տէյասայ մահուամբը պատերազմը չվերջա-ցաւ, մանաւանդ թէ աւելի սաստկութեամբ ին-չուան գիշերը տևեց. երկու բանակն ալ հոն պա-տերազմին տեղը պառկեցան քնացան, ու արևը ծագելուն պէս նոյն կատաղութեամբ նորէն զէն-քերնուն վազեցին. պատերազմը ահաւոր խառ-նուրդ մը դարձաւ. զէնքերը թողուցին, ձեռքով սկսան կռուըռտիլ. և վիրաւորուած մարդը զէնքը խոցողին մարմնէն չբաժնուելով՝ զանիկայ պատըռ-տելով կը մեռնէր: Աս սոսկալի կոտորածը բոլոր օրը քշեց, և ան գիշերը երկու բանակները նորէն

---

1 Տոտիլասին ո՞վ յաջորդեց:
2 Տէյասայ մահուընէն ետքը ի՞նչ ըրին Գոթացիք:

իրարմէ բաժնուեցան՝ առանց մէկ կողմին յաղթութիւնը որոշուելու ։

¹ Առաւօտը Գոթացիք իրենց ըրած կորուստները տեսնելով՝ ալ չուզեցին պատերազմիլ. մարդ խրկեցին Ներսեսի և ըսին թէ Աստուած չուզեր որ մենք Իտալիոյ տիրենք. հրաման տուր մեզի որ երթանք Ալպեան լեռներէն անդին բնակինք (554) ։

² Լուկա (Լուքքա) քաղաքին բնակիչները առաջուց ազնուականի տղաք պատանդ տալով Ներսեսի հետ դաշինք դրեր էին որ եթէ մինչուան երեսուն օր տեղէ մը օգնութիւն չգտնեն՝ իրեն անձնատուր ըլլան ։ Օրերը հասան, հրամայեց Ներսէս որ քաղաքը տան. երբոր անոնք չուզեցին տալ, այսպիսի հնարք մը բանեցուց ։ Ապսպրեց դահճաց որ ծածուկ ան պատանդ տղոց վիզը չերտ չերտ տախտակներով պատեն ու վրան լաթով գոցեն, ձեռքերնին ալ մահապարտի պէս ետեւնին կապել տալով՝ պարսպին մօտ քաղաքացւոց առջեւը խրկեց զանոնք, ինքն ալ զայրացած դէմքով հոն եկաւ ու դահճաց հրամայեց որ ան պատանդները սպաննեն ։ Դահիճները զարկին տղոց վիզերը՝ կտրել ձեւացուցին, տղաքն ալ առաջուց խրատուած ըլլալով՝ մէկէն մեռածի պէս ինկան ։ Աս երբոր տեսան տղոց ծնողքը՝ սկսան լալ ողբալ, մազերնին փետտել ։ Ան ատենը իմացուց իրենց Ներսէս որ տղաքնին չեն մեռած, ու ձայն տուաւ սուտ մեռելներուն որ ելլեն. "կամաւ սպանել ըլլալ տուի,

¹ Ինչպէս ելան Իտալիայէն ։
² Լուքքա քաղաքը ինչպէս առաւ Ներսէս ։

ըսաւ, որ անձնատուր ըլլայ, ապա թէ ոչ, իրաւցընէ մեռցընել պիտի տամ,,։ Ամէնքը ուրախացան և խօսք տուին որ անձնատուր ըլլան. բայց երբոր մէջերնէն ոմանք նորէն դէմ կ'ուզէին դնել, պաշարումը սաստկացուց Ներսէս ու քաղաքն առաւ։

[1] Ներսէս Արիմինոն (Ռիմինի) քաղաքին քովը Գերմանացւոց ալ յաղթելէն ետև՝ Իտալիան բոլորովին բարբարոսաց ձեռքէն ազատեց ու Յունաց կայսերութեան նահանգ մը ըրաւ, և ինքը տասնըհինգ տարի Հռաւեննա կեցած՝ փոխարքայ անունով կառավարեց Իտալիան։ Բայց Յուստինիանոս Բ կայսրը չարախօսաց զրպարտութեանը հաւատալով՝ Ներսէսը Կոստանդնուպօլիս կանչեց. Սոփիա Թագուհին ալ զանիկայ նախատելու համար անոր ռոք ու իլիկ խաւրեց նամակով մը ըսելով. "Ալ զօրավարութիւնդ ու փոխարքայութիւնդ արժանաւորաց թող, ու եկուր ներքինութեան պաշտօնդ կատարէ,,։ Աս խօսքին վրայ Ներսէս բարկացաւ. "Գնա՛ զրուցէ քու տիկնոջդ, ըսաւ սուրհանդակին. իրեն անանկ բան մը մանեմ ես որ ինքն ալ չկարենայ քակել,,։ Մէկէն Լոմպարտացիքը հրաւիրեց որ գան Իտալիոյ տիրեն (568). իսկ ինքը Հռաւեննայի մէջ մնաց, և մարմինը Կոստանդնուպօլիս տարին։

[2] ԼՈՄՊԱՐՏԱՑԻՈՑ ԱՐՇԱՒԱՆՔԸ ։ — Լոմպարտացիք կամ Լոնգոբարդացիք (որ տիգաւոր կամ

---

1 Ներսէս ի՞նչ պատճառաւ պաշտօնէն ընկաւ, ու ի՞նչպէս մեռաւ։

2 Լոմպարտացիք ի՞նչ ազգ էին։

նիզակաւոր ըսել է), Գերմանիոյ Օտեր գաւառին ե-
զերքներէն եկած էին: Երկար ժամանակ Պաննո-
նիոյ քէն անդին սպառնալէն ետքը, յարմար ատենի կը
սպասէին որ տեղ մը գտնեն իրենց բնակութիւն մը
հաստատելու: Գեպիդեանց թագաւորութիւնը
կործանելու ատեննին՝ Ներսէս պատրիկին դես-
պանները հասան, Լոմպարտացւոց Ալբոյինոս իշ-
խանը հրաւիրեցին որ գայ Իտալիոյ տիրէ:

1 Լոմպարտացիք ահագին բազմութեամբ ճամ-
բայ ելան Իտալիա երթալու, և սարսափը առջե-
նէն կը վազէր: Կ'ըսէին թէ ասոնց մէջ շան գլխով
մարդիկ կան որ բռնած գերիներուն արիւնը կը
խմեն. դէմքերնին վայրենի ու կատաղի էր, մօրուք-
նին ալ երկայն*: Ալպեան լեռներէն իջնելուն պէս՝
սկսան քաղաքները կործանել, եկեղեցիները կողոպ-
տել, ժողովուրդը ջարդել. վերջապէս սպանու-
թենէ յոգնած Միլան քաղաքին քովերը կեցան,
մեծ վահանի մը վրայ կեցուցին Ալբոյինոսն ու
թագաւոր անուանեցին. ետքը աշխարհակալու-
թիւննին առաջ տանելով Փաւիա քաղաքին վրայ
գնացին: Քաղաքացիք դռները գոցեցին, չուզե-
ցին անձնատուր ըլլալ. Ալբոյինոս ալ երդում ը-
րաւ որ եթէ քաղաքին տիրէ՝ քար քարի վրայ
չթողու: Քաղաքացիք անոր սպառնալեացը մտիկ
չըրին. բայց իրեք տարի դէմ կենալէն ետև սովէն
չդիմանալով անձնատուր եղան: Ալբոյինոս երբոր

---

1 Ի՞նչ կերպով արշաւեցին Իտալիա:

* Ոմանք կ'ըսեն թէ ասանք իրենց մօրուքին երկայնու-
թեանը համար Լոնգոբարտ ըսուեցան:

քաղաքէն ներս կը մտնէր, յանկարծ ձին սահեցաւ ընկաւ. Թագաւորը աս բանս երկնային ազդեցութիւն մը սեպելով՝ վրէժխնդրութիւնը մոռցաւ, և փախան իր տէրութեանը մայրաքաղաք ըրաւ (573)։

¹ Ալբոյինոս Հիւսիսային Իտալիոյ անունը Լոմպարտիա դրաւ. քիչ ատենի մէջ Իտալիոյ մէկալ մասերուն ալ տիրելով՝ երեսունըմէկ դքսութիւն բաժնեց երկիրը, որոնց գլխաւորներն էին Ֆրիուլ, Սփոլէթոյ ու Բենեւենտ, և ամէն մէկը իր գլխաւոր ընկերներուն տուաւ։ Բայց ինքը չկրցաւ երկար ատեն իր յաղթութեան պտուղը վայելել։ Վերոնայի մէջ կոչունքի մը ատեն ստիպեց իր Հռոսամոնդ կինը որ իր հօրը գանկովը գինի խմէ. խմեց Հռոսամոնդ, բայց սրտին մէջ սաստիկ ոխ պահելով՝ ծառաներէն մէկուն ձեռքովը զանիկայ քունին մէջ սպաննել տուաւ (573)։

² Ալբոյինոսի յաջորդը Կլեփոս տասնըութը ամիս միայն թագաւորեց. վասն զի բռնութեանցը համար ամենուն ատելի ըլլալով իր վրանին մէջ սպաննուեցաւ։ Իրմէ ետքը քանի մը տարի դուքսերը կառավարեցին երկիրը. 588ին Կլեփոսի որդին Աւթարիս թագաւոր ընտրուեցաւ, Փրանկաց և Յունաց յաղթեց որ Լոմպարտիոյ տիրելու վազեր էին, ու իր ազգին իշխանութիւնը հաստատեց։ Ինչուան Հռեգիոն (Ռէճճիոյ) քաղաքին գնաց սրբեց՝ Մեսինայի նեղուցին քովը, և Հռեգեան սիւնին նիզակը զարնելով "Ահա աս է, ը-

---

¹ Ալբոյինոս ի՞նչպէս բաժնեց Իտալիան։

² Ալբոյինոսի ո՞վ յաջորդեց։

տաւ, Լոմպարտիոյ տէրութեան սահմանը,,: Անկէց եօթը Յունաց կայսերքն Իտալիայէն ձեռքերնին քաշեցին, ու միայն Հռաւեննայի փոխարքայութիւնը, Պենտապօլիս կամ Հինգ քաղաքները *, և Հռովմայ ու Նէապօլսոյ դքսութիւնները իրենց պահեցին (590):

**ՍԱՔՍՈՆՆԵՐՈՒՆ ԲՐԻՏԱՆԻԱ ԱՐՇԱՒԱՆՔԸ (448-518):** — Սաքսոնները Էլպա գետին մօտ տեղուանքը կը բնակէին. և որովհետև ցամաքի կողմէն չէին կրնար Հռովմայեցւոց տէրութեան վրայ մղել՝ Փրանկները անոնց արդէն ըլլալնուն պատճառաւ, ուստի բոլոր իրենց ճարտարութիւնն ու քաջութիւնը ծովուն վրայ թափեցին. այնպէս որ քիչ ատենի մէջ հիւսիսային կողմերը իրենց աւազակութեամբը մեծ անուն հանեցին: Մեծին Բրիտանիոյ կամ Անգղիոյ և Արմորիկեայ բնակիչները կը սարսափէին ան հսկայ ու կատաղի մարդիկներէն, որ երբեմն երբեմն նաւակներով կուգային, իրենց ծովեզերքները կը կոխէին. ան նաւակներն ալ ուռենիի վրայ կարած կաշիէ շինած էին, և Սաքսոնները մեծամեծ փոթորիկներու ատեն ալ անոնցմով կը կռուըտէին: Հինգերորդ դարուն ատենները Սաքսոններն իրենց բնակու-

---

Սաքսոնները ի՞նչ ազգ էին: — Ի՞նչպէս արշաւեցին Բրիտանիա:

* Միջին դարու ատենները Պենտապօլիս կ'ըսուէին Իտալիոյ այս հինգ քաղաքները՝ Ռիմինի, Փեզարօյ, Ֆանօյ, Սինիկալիա և Անքոնա:

թեան տեղ մը ուզեցին գտնել, և Մեծն Բրիտանիա աս բանիս իրենց յարմար երեցաւ։ Աս կղզիները իրեք ազգ բաժնած էին մէջերնին. հիւսիսային կողմը Կալեդոնացիք, մէջտեղը Կամբրիացիք, հարաւային կողմը Լոգրացիք։ Քանի որ Հռովմայեցւոց տէրութիւնը սկսեր էր իյնալ, Բրիտանացիք կը տեսնէին որ Կալեդոնացւոց յարձակմանցը դէմ կենալու կարողութիւն չունին. ուստի իրենց Վորթիկեռն սպարապետը Տանիմարքայի մէջ Հոլսթէյն գաւառը բնակող Սաքսոններէն օգնութիւն ուզեց անոնց դէմ (448)։ Սաքսոնները հազար հինգ հարիւր հոգի՝ իրենց Հենկիստ և Հորսա զօրավարներուն առաջնորդութեամբը յաղթեցին Կալեդոնացւոց, և Բրիտանացիքը ազատեցին, սակայն ալ անոնց բարերարութեանը փոխարէն՝ Թանեթ կղզին անոնց տուին ու տարեկան հարկ ալ խոստացան։

[1] Բայց Սաքսոնները անտալ գոհ չեղան. կերակրոյ պաշարի համար կռիւներ հանեցին բնակիչներուն հետ. Հենկիստ օգնութիւն ուզեց Էլպայի քով բնակող Սաքսոններէն, ու Ճերմակ վիշապով դրօշը բացած՝ հալածեց Լոգրացիները, որոնց դրօշը կարմիր վիշապ էր։ Վորթիկեռն և իր քաջ որդին Վորթիմեռ՝ ամէն ջանք ըրին որ Սաքսոններուն դէմն առնեն. բայց Ալեսֆորտի պատերազմին մէջ յաղթուեցան, Սաքսոններն ալ Բրիտանիոյ Կանտիոն ըսուած կտորին տիրեցին ու հոն հիմնեցին Քենթի թագաւորութիւնը (455)։

---

[1] Ի՞նչ կերպով Բրիտանիոյ մէջ հաստատուեցան։

[1] Քիչ ատենէն ուրիշ բարբարոսներ ալ հասան Բրիտանիա : Ելլա անունով մէկը, որ Սաքսոններուն զօրավարներէն էր, Սուսսէքսի թագաւորութիւնը հիմնեց 491ին : Չորս տարի ետքը Քերտիկ աւազակը յաղթեց Կամբրիացւոց, որոնց առաջնորդն էր Արթուր : Աս Արթուր իշխանը շատ անուանի է միջին դարու վիպասանութեանց մէջ իր առասպելեալ քաջութեանը համար : Սաքսոններուն յաղթեց և իր ձեռքովը չորս հարիւր հոգի սպաննեց . բայց ինքն ալ սաստիկ վիրաւորուեցաւ, և Ուրկանտ անունով յաւերժահարսը առաւ զինքը անծանօթ կղզի մը տարաւ կ'ըսեն, ուսկից մէյմըն ալ չդարձաւ : Անկէց ետքը Քերտիկ Վեսթսէքսի թագաւորութիւնը ձևացուց (516) : Եսսէքսի գաւառը 530ին բաժնուեցաւ Քէնթի նահանգէն ու զատ թագաւորութիւն եղաւ :

[2] ԱՆԳՂԻԱՑԻՈՑ ԱՐՇԱՒԱՆՔԸ (547-584) : — Սաքսոնները չորս տէրութիւն հաստատեր էին, Անգղիացիք ալ գնացին իրեք նոր տէրութիւն կանգնեցին Բրիտանիոյ մէջ . ասանկով ձևացաւ Եօթնապետութիւն ըսուածը : Անգղիացիք առաջ Գերմանիոյ ան կողմը կը բնակէին որ հիմա Եութլանտ կ'ըսուի . ասոնք Սաքսոններուն յաջողութիւնը տեսնելով՝ իրենց երկրէն ելան գնացին Բրիտանիա : Իտա անունով կտրիճ մարդը, ո-

---

1 Սաքսոններէն ետքը ուրիշ ի՞նչ բարբարոսներ արշաւեցին Բրիտանիա :

2 Անգղիացիք ուսկի՞ց եկան ու ի՞նչ տէրութիւն հաստատեցին Բրիտանիոյ մէջ :

րուն նշանէ մերթ կ'ըսէին, տասուերկու որդւով Գլէմորկոյ գաւառը եկաւ, ու սաստիկ պատերազմի մը մէջ մեծ յաղթութիւն ըրաւ բնակիչներուն դէմ։ Ասոնկով Անգղիացիք իրեք տէրութիւն հաստատեցին, որ են Նորթումպէրլանտ, Էսթանկլիա և Մերկիա կամ Մերսիա (547–584), ու բոլոր Բրիտանիոյ տիրապետող Ժողովուրդը Անկլոսաքսոն ըսուեցաւ ան ատենները, ետքն ալ ամէնքը Անգղիոյ անունը առին։

[1] Անկլոսաքսոնները Բրիտանիոյ տիրապետելու ատեն սոսկալի անգթութիւններ ըրին․ վասն զի իրենց պաշտպան Օտին աստուածը խոստացած էր իրենց թէ որչափ արիւն որ թափեն սա աշխարհքիս վրայ, այնչափ աւելի պիտի զուարճանան անդին աշխարհքը․ անոր համար դիմացնին ելլողը անխնայ կը սպաննէին, քաղաքները, գեղերը, եկեղեցիները կ'այրէին, ու մահուընէ ազատ մնացած բնակիչները գերի կ'ընէին։ Եւ սակայն ան խեղճերուն մէջէն շատը Կալլեսի երկրին լեռները փախան ու երկար ատեն իրենց ազատութիւնը պաշտպանեցին։

[2] ԲԱՐԲԱՐՈՍԱՑ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐՈՒՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ։ — Երկիրներու բաժանումը։ — Բարբարոսաց կանգնած տէրութիւններուն մէջ իրեք տեսակ երկիր կար․ մէյմը ազատ երկիր, որ

---

1 Ի՞նչ անգթութիւններ կ'ընէին Անկլոսաքսոնները։

2 Բարբարոսաց արշաւանքէն ետքը երկիրները ի՞նչ կերպով բաժնուած էին։

տիրապետելով առած էին մասնաւոր մարդիկ, և երկիրները ժառանգութեամբ որդւոց որդի կ'անցնէին. երկրորդ՝ կալուածներ, որ Թագաւորը իր տէրութենէն կը բաժնէր ու հաւատարիմ ծառաներուն կուտար. աս պարգևը ժառանգական չէր, և ասիկայ ընդունողը մասնաւոր պարտքեր ալ ունէր կատարելու. երրորդ՝ հարկատու երկիրներ, որ մասնաւոր տուրք մը կուտային երկրին բուն տիրոջը:

1 Մարդկանց վիճակը: — Երկիրներուն բաժանմունքէն առաջ կուգար մարդկանց բաժանումն ալ: Ժողովուրդը երեք կարգ կը բաժնուէր. Մէյմը հպատակ, որ կալուածներ կ'ունենար և ազնուական կ'ըսուէր, վասն զի Թագաւորին տուած երկիրը ազնիւ բան մը կը սեպուէր ու առնողին ազնուութիւն կը բերէր. Թագաւորական տանը ծառայողներն ալ իրենց պաշտօնին համար ազնուական կ'ըսուէին: Երկրորդ՝ ազատ երկիրներուն տէրերը, որ ոչ Թագաւորին ծառայութեանը մէջ էին և ոչ քաղաքական կամ զինուորական պաշտօններ ունէին: Երրորդ՝ հարկատու գաղթականներ, որ տուրք մը կուտային, բայց ուրիշ կողմանէ ազատ էին: Աս երրորդ կարգին մէջ կը սեպուէին նաև տնական ծառայութեան կապուած գերիները:

2 Կառավարութիւն: — Գերմանական տէրութեանց ամենուն ալ սկիզբը միապետական կառավարութիւն էր: Թագաւորին ձեռքն էր արդարու-

---

1 Ժողովուրդը քանի՞ կարգ կը բաժնուէր:
2 Կառավարութիւնը ի՞նչ կերպ էր:

*Թիւն ընել ու պատերազմ հրատարակելը. Ժողով-ներ ու խորհրդարաններ ալ կային որ Թագաւո-րական իշխանութեան չափ մը կը դնէին։ Ատեն եղաւ որ կայսերական կալուածները վերցուեցան, ու կանոնաւոր տուրքերը դադրեցան, այնպէս որ Թագաւորին եկամուտները կամ իր սեփական ստացուածքէն կուգային և կամ հպատակներուն կամաւոր տուրքերէն և ակամայ տուգանքներէն։ Ամէն զինուոր պարտական էր իրեն պէտք եղած բաները իր ծախքովը հոգալու, և իրեն ունեցած երկրին տէրը իմաց տալուն պէս՝ պատերազմի եր-Թալու։*

[1] Բարբարոսաց օրէնքները։ — *Զանազան օրինաց գրքեր կան ինչուան հիմա Եւրոպացւոց մէջ՝ որ բարբարոս ազգերը իրենց արշաւանքէն քիչ ատեն ետքը շարադրած են։ Աս օրինաց գրքերուն գըլ-խաւոր մասերը և ոճը իրարու շատ կը նմանին. ուստի ան ատենները ամէն մարդ կրնար իր ուզած օրէնքին հետևիլ։ Ո՛ր և իցէ յանցանք՝ որչափ ալ ծանր ըլլար՝ տուգանքով կրնար վերցուիլ. և տուգանքը Թէ ստակ և Թէ անասուն տալով կը վճարուէր։ Մարդու մը կեանքն ու պատիւը այլև-այլ գին կ՛ունենային՝ իր վիճակին նայելով։*

---

1 *Ի՞նչ օրէնքներ գրին բարբարոսները։*

## ԳԼՈՒԽ Ե.

Պատմութիւն Արեւելեան կայսերաց՝ Արկադէոսէն մինչեւ Հերակլի կայսերութիւնը (395–711)։ Արկադէոս. — Փոքրն Թէոդոս եւ իր քոյրը Պուլքերիա. — Մարկիանոս. — Ասպար զօրավարը. — Լեոն Ա. — Զենոն. — Արիադնէ թագուհին. — Անաստաս. — Յուստինոս. — Կապոյտ ու կարմիր բաժանմունքներուն թշնամութիւնները. — Յուստինիանոս. — Բելիսարիոս. — Թէոդորա. — Կրկէսի խռովութիւնը. — Վանդալաց ու Գոթաց թագաւորութեան կործանումը. — Գելիմեր թագաւորը. — Պարսից ու Բուլղարաց դէմ պատերազմը. — Բելիսարիոսին պաշտօնէ ձգուիլը. — Յուստինիանոսի օրինաց գիրքը. — Յուստինոս Բ. — Տիբերիոս Բ. — Մաւրիկիոս կամ Մօրիկ կայսր հայկազն. — Իր հայրը. — Մօրիկ կայսեր եւ ընտանեացը ողբալի մահը. — Փոկաս. — Հերակլ. — Խոսրովու հետ ըրած պատերազմները. — Սուրբ Խաչը ազատելը. — Հերակլի մահը. — Իր յաջորդները։

1 Արեւմտեան կայսերութեան յեղափոխութեանցն ու խեղճութեանցը ատեն Կոստանդնուպօլսոյ կայսերքը պաղութեամբ մը կեցած կը տեսնէին բարբարոսաց Իտալիան տակնուվրայ ընելն ու հոգերնին չէր ըլլար։ Բայց երբոր Վանդալներն ու Գոթացիք Հռոմը կողոպտեցին, արեւելեան բարբարոսներն ալ աչքերնին Կոստան-

---

1 Արեւմտեան կայսերութեան իյնալուն ատենները Արեւելեանը ինչ վիճակի մէջ էր։

դնուպօլսոյ վրայ դարձուցին, ան ատենը կռիւ մը բացուեցաւ որ գրեթէ հազար տարի քշեց՝ Կոստանդնուպօլսոյ ու ասիացի ժողովրդոց մէջ, որոնց գլխաւորներն էին Պարսիկք, Արաբացիք և Թուրքերը, ինչուան որ ասոնք բոլորովին ալ ջնջեցին ան հռովմէական տէրութեան մնացած ճիւղը:

[1] Մեծին Թէոդոսի յաջորդեր էր 395ին Արկադէոս կայսրը, որ կենդանութեան ատեն տէրութեան կառավարութիւնը իր բարեկամներուն ձեռքը յանձնեց, մեռնելուն ժամանակն ալ Թէոդոս Բ, որ Փոքր կ՚ըսուի՝ շատ պզտիկ ըլլալով, իր տասնըվեց տարեկան քոյրը Պուլքերիա կամ Պողքեր՝ սկսաւ քաջութեամբ ու փառքով տէրութիւնը կառավարել, և ինչուան քառասուն տարի թագաւորեց: Մեծին Թէոդոսի առաքինութիւնները ու քաջասրտութիւնը աս իշխանուհւոյն վրայ կը փայլէին. արդարութեամբ կարգերը կուտար, գթասրտութեամբ ամենուն սիրելի կ՚ըլլար, և հաստատութեամբը խռովարարները կը սանձէր: Գիտութեանց մեծ պաշտպանութիւն կ՚ընէր, և շատ մաքուր յունարէն ու լատիներէն կը խօսէր:

[2] Թէոդոս կայսրն ալ թէպէտև զգաստ, ժուժկալ ու քաղցրաբարոյ էր, բայց հաստատամտութիւնը քիչ էր, բոլոր օրերը փորագրութեամբ, պատկերահանութեամբ ու որսորդութեամբ կ՚անցընէր. գիրն ալ շատ գեղեցիկ ըլլալուն համար Գեղեցկագիր ըսուեցաւ: Իրեն ստորագրելու համար բերուած թղթերը հազիւ թէ կը կարդար,

---

1 Արկադէոսին ո՞վ յաջորդեց:

2 Ի՞նչ բնաւորութեան տէր էր Փոքրն Թէոդոս:

և անգամ մը Պողքեր Թագուհին ուզելով անոր իմացընել անհոգութեան փնասակար ախտ ըլլալը, Թուղթ մը ցըցուց իրեն որով կայսրը իր անձին հրաժարումը ստորագրեր էր : Այս կայսրը օր մը ձիով պտըտելու ատենը վար ինկաւ մեռաւ (450) : Այս Թէոդոսն էր որ Եփեսոսի ժողովը ընել տուաւ Նեստորի մոլորութեանը դէմ 431ին :

[1] Թէոդոս անորդի մեռնելով ծերակոյտն ու ժողովուրդը Պողքերիան կայսրուհի գրին . ան առաջին անգամն էր որ կնիկ մարդ մը Թագաւորեց Հռովմայեցւոց վրայ : Գիտնալով խորագէտ Պողքերիան որ աս բանս շատին ծանր կրնայ գալ, Մարկիանոս անուանով սինկղիտոսին հետ կարգուեցաւ՝ որ ամենուն առջևը մեծ պատիւ ունէր, իրմէ երդում առաւ որ իշխանութիւնն ու կուսութիւնը պահէ, և կայսր անուանել տուաւ զանիկայ :

[2] Մարկիանոս իր ազնիւ բնաւորութեամբը, լաւ վարքովը ու իմաստուն կառավարութեամբը ինքզինքը Պողքերին ընտրութեանը արժանի ցըցուց : Թրակիոյ մէջ աղքատ տնէ մը ծնած՝ տասնըինը տարի ծառայ եղեր էր . ետքն ալ Ասպար զօրավարին օգնական ըլլալով Պարսկաստանի ու Ափրիկէի մէջ շատ քաջութիւններ ըրեր, մեծ անուն հաներ էր, ու համեստութեամբն ալ նախանձորդաց բերանը գոցեր էր : Աթոռը նստելուն պէս՝ խելացի օրէնքներով անկարգութեանց դարման ըրաւ, ու բռնաւորական կերպերը գադրե-

---

1 Թէոդոս Երկրորդին յաջորդ ո՞վ եղաւ :
2 Մարկիանոս ո՞վ էր ու ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը :

ցուց. ժողովրդեան հետ սիրով ու քաղցրութեամբ կը վարուէր, իսկ Թշնամեացը հետ խրոխտանօք։

[1] Ատտիղաս գոռոզութեամբ մը պահանջեց իրմէ որ Թէոդոսին խոստացած հարկը վճարէ։ Մարկիանոս պատասխան տուաւ թէ “Ընցաւ ան ժամանակն որ ամէն մարդ ուզածն ընել կուտար կայսեր. ես ստակով ու ամէն բանով պատրաստ եմ օգնելու ան դաշնակից Թագաւորաց՝ որ ինծի հետ համատարմութեամբ կը վարուին. բայց ըսպառնալեաց զօրքով, քաջութեամբ ու Թրովս պատասխան կուտամ”։ Աս պատասխանին վրայ կատղեցաւ Ատտիղաս, երդում ըրաւ որ ինչուան Հռովմայեցւոց անունն ալ չԹողու աշխարհիս վրայ. սակայն վայրենամտութեանը հետ խորագիտութիւն ալ ունենալով, երբոր տեսաւ Մարկիանոսին պատրաստութիւնը, սիրտ չըրաւ հետը պատերազմելու, զէնքը դէպ 'ի Իտալիա ու Գաղղիա դարձուց։

[2] Մարկիանոսի մահուընէն ետքը (457) Թէ զօրաց և Թէ արքունեաց մէջ Ասպար զօրավարին պէս անուանի մարդ չկար. քաջութեամբը մեծամեծ պատիւներու հասած ըլլալով՝ կայսերուԹեան կը փափաքէր ու ինքզինքը ան պատուոյն արժանի ալ կը տեսնէր։ Բայց որովհետև արիոսական էր, վախնալով որ անով ուղղափառ ժողովրդեան ու ծերակուտին մեծ մասին չկրնար սիրելի ըլլալ, իրեն գաւառապետը Լէոն Թրակացին կայսր ընտրել տուաւ, յուսալով որ անոր ձեռքովը ինքը Թագաւորէ։ Լէոն ալ խոստացաւ որ Ասպա-

---

1 Ատտիղասայ հետ ինչպէս վարուեցաւ։
2 Մարկիանոսին ո՞վ յաջորդեց։

րին խօսքէն դուրս չելլէ, և անոր իրեք որդւոցը մէկը իրեն կեսար կամ յաջորդ անուանէ ։

1 Սակայն աթոռը նստելուն պէս Լեոն՝ գլուխ քաշեց իր բարերարին դէմ, և Ասպար ուշ իմացաւ որ զանիկայ իր վրայ տէր դրեր էր ։ Որդւոցը հետ դաւակցութիւն մը պատրաստեց. Լեոն իմացաւ, պալատը հրաւիրեց զանոնք, չորսն ալ մեռցընել տուաւ, իրեն կայսերակից ընտրեց Զենոն փեսան ու ինքը քիչ ատենէն մեռաւ (474) ։

2 Զենոն մարմնով տգեղ ու մտքովը նուաստախոհ ըլլալով, գէշ թագաւորի մը ամէն տեսակ պակասութիւններն ունէր ։ Յանձնապաստան, վատ, կասկածոտ, ապերախտ, անգութ բնաւորութեամբը՝ մեծամեծ ծառայութեանց հատուցումն՝ աքսորանքով կ'ընէր, թէև յանցանաց ալ պատիժ մահ կուտար ։ Կը ջանար իր տգեղութիւնը՝ երեսը ներկ քսելով գոցել, ամբարշտութիւնը՝ սուտ նախանձայուզութեամբ, և վատասրտութիւնը՝ մեծաբանութեամբ. միշտ պալատը կեցած կը սպառնար բարբարոսաց, ու ոչ երբեք անկէ դուրս ելաւ որ հետերնին պատերազմի ։

3 Արիադնէ կայսրուհին վախնալով որ Անաստաս իշխանին վրայ ունեցած սէրը թէ որ կայսրը իմանայ՝ զինքը մեռցընել պիտի տայ, ինքն ուզեց սոսկալի չարագործութեամբ անոր կեանքը վերցընել ։ Զենոն հիւանդացած ըլլալով օր մը մարեցաւ. Արիադնէն մէկէն անիկայ ողջ ողջ թաղել

1 Լեոն Թրակացին ինչպէս ըրաւ կայսերութիւնը ։
2 Զենոն ինչ բնաւորութեան տէր էր ։
3 Ինչ կերպով մեռաւ Զենոն ։

տուաւ : Շատ պտտաց կանչեց Զենոն, մէկը չհամարձակեցաւ օգնութեան երթալու : Քիչ մը ատենէն գերեզմանը բացին տեսան որ թեւերը խածնելով պատռտեր ու իրօք մեռեր էր (491) : Զենոնի ատենն եղաւ Արեւմտեան կայսերութեան վերջանալը :

[1] Անաստաս Արիադնէ կայսերուհւոյն հնարքովը կայսր նստելէն ետքը, քանի մը բարեկարգութիւններ ըրաւ, ժողովրդեան տուրքերը թեթեւցուց, գազանամարտութիւնը (որով մարդիկ գազաններու հետ կռիւ կ'ընէին՝ ժողովրդեան զուարճութիւն ըլլալու համար) վերջացուց․ բայց իր ատենը սկսան (491) Կոստանդնուպօլսոյ կործանման պատճառները երեւնալ, որ էին դրսէն բարբարոսներն ու ներսէն իշխանաց անմիաբանութիւնները : Նախ Արաբացիք յարձակեցան տէրութեան արեւելեան երկիրներուն վրայ, ետքն ալ Բուլղարք՝ Վոլկա գետին քովերէն ելած եկան, Թրակիոյ վրայ դիմեցին, կողոպտեցին ու գնացին Միսիա գաւառը բնակեցան՝ որ հիմակուան Բուլղարիա կամ Բուլղարք ըսուածն է :

[2] Սակայն աս երկու ազգերը հեռաւոր գաւառները միայն ոտնակոխ կ'ընէին : Պարսից արշաւանքները անոնց պէս չեղան, վասն զի անոնք կրկին և կրկին հարուածներով կայսրութիւնը տկարացուցին : Իրենց Կաւատ թագաւորին առաջնորդութեամբը դիմեցին Ասիոյ վրայ, շատ

1 Զենոնի ով յաջորդեց : — Բուլղարները ուսկից եկան :

2 Պարսիկք ի՞նչ արշաւանք ըրին :

քաղաքներ առին, ու անգթութիւն չմնաց որ բնակչացը դէմ չընէին: Անաստաս անոնց առջևն առնելու կարողութիւն չունենալով, տասնըմէկ հազար լիտր ոսկի տուաւ ու ձեռքերնէն ազատեցաւ. բայց ան աստիճանի սարսափ ընկեր էր Կոստանդնուպօլսոյ մէջ անոնց արշաւանքէն, որ Յոյնք քաղաքին ու մօտ տեղերուն չորս կողմը տասնըութը մղոն երկայնութեամբ պարիսպ քաշեցին՝ Սեւ ծովէն ինչուան Պրոպոնտիս, որ է Մարմարայի ծովը:

[1] Անաստաս կայսրը 518ին կայծակէ զարնուելով մեռաւ, և իրեն յաջորդեց վաթսունըութը տարեկան լիւրիկեցի ծերունի մը, որ երկրագործութիւնը թողած, ոտքով մայրաքաղաքը եկած, հետզհետէ զինուոր՝ անձնապահապետ եղեր էր, ետքն ալ զանազան իշխանութիւններու հասնելով ինչուան կայսերական աթոռը բարձրացաւ: Աս ծերունին էր Յուստինոս Ա, այնչափ տգէտ որ ոչ կարդալ գիտէր և ոչ իր անունը ստորագրել: Բոլոր թագաւորութեան ժամանակը կրկէսին մէջ կառամարտութիւն ընելով՝ անցուց. հոն չորս կառք մէկէն վազցընել կուտար՝ կառավարներուն այլ և այլ գոյնով հագուստներ հագցընելով. ասկէց ելաւ ան սովորութիւնը՝ որ ոմանք ճէրմակ ըսուեցան, ոմանք կանանչ, ոմանք կարմիր, ոմանք ալ կապոյտ. թէ՛ ժողովուրդը և թէ կայսրը աս տեսակ խաղերու վրայ մեծ սէր ձգեր էին, ու

---

[1] Անաստաս ինչպէս մեռաւ, ու ով յաջորդեց: — Կապոյտ ու Կարմիր ըսուողներուն կռիւն ինչ էր:

երբեմն մէկ գոյնը կ'ընտրէին՝ երբեմն մէկալը։ Մէկ անգամ մըն ալ կապոյտը ամենուն սիրելի եղած էր, ինչպէս նաև Յուստիանոսի. և ասկէց մեծամեծ կռիւներ ելան։ Կապոյտները տեսնելով որ կայսրը և ուրիշ մեծամեծները իրենց կողմն են, սկսան մէկալ գոյներուն նախատինք ընել. բարբարոսաց հագուստները հագած, և անոնց կոպիտ սովորութիւններուն ալ հետևելով՝ բոլոր գիշերը Կոստանդնուպօլսոյ փողոցներուն մէջ վեր վար կը քալէին, ինչ որ դիմացնին ելլէր՝ կը յափշտակէին, երբեմն ալ յափշտակած բաներուն տէրերը կը սպաննէին։ Քանի որ չէին պատժուեր, իրենց յանդգնութիւնն ալ կ'աւելնար. որով սկսան ինչուան ցորեկ ատեն ո՛ր և իցէ տեղ, ու նաև դատաւորաց առջևը սպանութիւններ ընել։ Մեծ պարծանք կը սեպէին՝ իրենց դիմացինը մէկ զարնելով մը մեռցընել. առանց զէնքի և առանց ծառաներու փողոցները քալողին բանը գէշ էր։ Աս անկարգութիւնները իրեք տարի քշեցին. վերջապէս տեսաւ Յուստիանոս որ ծայրը գէշի կ'երթայ, ջանաց որ անոնց դիմացը առնէ։ Ծերութենէն ոյժը կորսնցընելով իմացաւ որ մահը մօտեցեր է. իր եղբօրորդին Յուստինիանոսը կայսր պսակել տուաւ, ու ինքը քիչ ատենէն մեռաւ (527)։

[1] Յուստինիանոս գեղ տեղ մը յարդի վրայ ծնած, բանակներու մէջ մեծցած, Վիտալիոս քաջ զօրավարին մահուանը կեսարներու կարգն անցած, տղայական զբօսանքներովը Դոմետիանոսի նման՝ աւելի ժողովրդեան վրայ վախ սիրտ ձգէր՝

---

1 Ո՞վ էր Յուստինիանոս։

քան թէ անոր բարիք պիտի ընէր . սակայն կեանքը փառաւոր եղաւ ու անունը հռչակաւոր . և իր երեսունըութը տարուան թագաւորութեան ատենը կարծես թէ կայսրութիւնը նոր կեանք ու նոր զօրութիւն առաւ (527-565)։ Աս փառքին ալ ոչ այնչափ իր հանճարովը հասաւ, որչափ Բեղիսարիոսին, Ներսէս պատրիկին ու Թէոդորա թագուհւոյն ձեռքովը ։

1 Բեղիսարիոս Թրակացի գեղացի մըն էր, իսկ Ներսէս՝ կայսեր ներքինիներէն մէկը . երկուքն ալ իրենց խելքովը այնչափ մեծցան որ զօրաց գլուխն անցան . Թէոդորա ալ անոնցմէ աւելի ազնուականութիւն մը չունէր . ամփիթէատրոնին մէջ արջերուն պահապանին աղջիկն է կ'ըսէին, և մանկութիւնը կատակերգակներու մէջ անցուցած էր, բայց միանգամայն հանճարեղ էր և խորագէտ, բարեկիրթ, արիասիրտ, ու փառասէր . կայսրը ու կայսերութիւնը ինքը կը կառավարէր ։ Իր կամացը հակառակ եղողներուն դէմ շատ խստութիւն կ'ընէր, սինկղիտոսներ, զօրավարներ, կուսակալներ, եպիսկոպոսներ բանտ կը դնէր, կ'աքսորէր ու 'ի մահ կը դատապարտէր, և իր բանտերուն անունն էր Լաբիւրինթոս ու Տարտարոս։ Աս թագուհին անգութ վրէժխնդրութեանը հետ զարմանալի հաստատութիւն մտաց ալ ունէր, որով զկայսրը ժողովրդեան կատաղութենէն ազատեց։

2 Յուստինիանոս կայսրութեանը հինգերորդ

1 Բեղիսարիոս, Ներսէս և Թէոդորա ի՞նչ յատկութիւններ ունէին ։

2 Ի՞նչ խռովութիւն եղաւ Կոստանդնուպօլսոյ մէջ Յուստինիանոսի օրերը ։

տարին երբոր խաղի համար կրկեսը գացեր էր, արիւնահեղ կռիւ մը ելաւ կապոյտներուն ու կանաչներուն մէջ։ Քաղաքապետը հրամայեց որ երկու կողմէն ալ գլխաւոր խռովարարները բռնուին, և չորս հոգի մէկէն գլխատուեցան։ Մէկալնոնք փախան, եկեղեցի մը ապաւինեցան. զինուորները անոնց ետևէն հասան, պաշարեցին։ Բայց հասարակ ժողովուրդն ալ զէնք առաւ, ու երկու հակառակ կողմերն ալ իրեն հետ միացընելով վազեց որ զանոնք ազատէ. զինուորները փախան, ու քաղաքը խռովարարաց ձեռքը թողուցին. անոնք ալ հասարակաց շէնքերուն կրակ տուին, բանտերը բացին, ու վեց օրուան մէջ իրենց կայսր ընտրեցին Յուստինիանոսի եղբօրորդին Հիպատիոսը։

Աս տեսնելով Յուստինիանոս՝ սարսափած միտքը դրաւ որ քաղքէն փախչի. և երբոր նաւերը պատրաստ իրեն կը սպասէին, յանկարծ մէյմըն ալ կը վազէ Թէոդորան, կուգայ իրեն, "Մարդուս ապրիլը հարկաւոր բան մը չէ, կ'ըսէ, բայց պատիւը կորսնցընելէն ետքը ապրիլը ամօթ է. պատուէն ընկած ու աքսորուած կայսրը մեռած մարդէն ալ գէշ է։ Թէ որ փախչիլ կ'ուզես, ահա ծովը՝ ահա նաւերը կեցած են. իսկ ես միտքս դրած եմ՝ հիներէն մէկուն ըսածին պէս՝ թէ թագաւորական աթոռէն աւելի փառաւոր գերեզման չկրնար ըլլալ"։ Աս խօսքին վրայ փախչելու դիտաւորութենէն ետ կեցաւ Յուստինիանոս։ Շուտ մը կանչեց Թէոդորա իր երկու ճարտարամիտ զօրավարները, Ներսէսն ու Բելիսարիոսը. մէկուն ստակ տուաւ որ կապոյտներուն բաժնէ ու

զանոնք որսայ, մեկալին ալ զօրք՝ որ երթայ կանաչներուն դէմ պատերազմի։ Անանկով խռովութիւնը դադրեցաւ, ու երեսուն հազար հոգի մեռան կրկեսին մէջ։

[1] Այն տասնօրեայ խռովութիւնը նոր դադրեր էր, մէյմըն ալ կայսեր սիրտը աշխարհակալութիւններ ընելու փափաք ընկաւ. միտքը դրեր էր որ Արեւմուտքը բարբարոսաց ձեռքէն ազատէ, և արշաւանքը Ափրիկէէն սկսաւ։ Ափրիկէ ան ատենները Գենսերիկոսին տիրելովը Վանդալաց ձեռքն անցած ըլլալով խաղաղ հանգստութեան մէջ էր, վասն զի Վանդալաց մէջ քաղաքականութիւն մըտնելով իրենց առջի վայրենամիտ անգթութիւնը գնացեր էր։ Բեղիսարիոս ան արշաւանքին գլուխ ընտրուեցաւ, գնաց շուտ մը Ափրիկէի Տրիկամերոն քաղաքին քով Վանդալաց Գելիմերիոս թագաւորին յաղթեց։ Յաղթուողները լեռան մը վրայ քաշուեցան, բայց հոն սովէն նեղուելով դաշնադրութիւն ըրին որ անձնատուր ըլլան։ Գելիմերիոս իրեք բան խնդրեց. քիչ մը հաց, որովհետև իրեք օրէ 'ի վեր բան չէր կերած. սպունգ մը որ իր վէրքերը լուանայ, և սրինգ մը որով Վանդալաց կործանմանը վրայ ողբ ընէ (534)։ Բեղիսարիոս Կոստանդնուպօլիս դարձաւ ու փառաւոր յաղթանակ մը ըրաւ, որուն մեծ զարդն էր Գելիմերիոս թագաւորը։ Վրան ծիրանի ձգած, չորս կողմը իր իշխաններն ու պալատին մեծամեծները առած՝ բազմութեան մէջէն անցաւ Գելիմերիոս,

---

[1] Վանդալաց դէմ ի՞նչ կերպով պատերազմ բացաւ Յուստինիանոս։

գնաց կայսեր գահաւորակին առջեւ, ոչ գանգատ մը հանեց բերնէն եւ ոչ կաթիլ մը արցունք թափեց աչքէն. Սուրբ գրքին աս խօսքը միայն զուրցեց. "Ունայնութիւն ունայնութեանց, ամենայն ինչ ընդունայն է": Հոն թագաւորական ծիրանին վրայէն առին, յաղթողն ու յաղթուողը՝ երկուքն ալ Յուստինիանոսի ոտքն ընկան: Կայսրը Գելիմերիոսին Գաղատիոյ մէջ երկիր տուաւ որ հոն հանգիստ բնակի:

[1] Անկէց ետքը սկսաւ Գոթացւոց պատերազմը, որուն մէջ Բեղիսարիոսին ու Ներսէս պատրկին ցուցած ճարտարութիւնն ու Վիտիգեսի, Տոտիղասայ և Տէյասայ քաջութիւնները շատ անուանի են: Քսան տարի պատերազմելէն ետեւ (534-554) Յոյնք Իտալիան իրենց կայսրութեան մէկ նահանգը ըրին:

[2] Բայց Գոթացւոց պատերազմէն մեծ եղաւ Պարսից դէմ պատերազմը: Խոսրով Նուշիրուան Պարսից թագաւորը 540ին ամէն անցած տեղերը ոտնակոխ ընելով Ասորւոց երկրին դաշտերը անհամար զօրքով ծածկեց: Բեղիսարիոս քիչ զօրքով վրան գնաց, արգիլեց, բայց անիկայ ինչուան Եդեսիա հասեր ու տիրեր էր: Ան միջոցին երբոր Բեղիսարիոս ետ կանչուեցաւ որ վրան եղած ամբաստանութիւնը արդարացընէ, նորէն դուրս ելաւ Խոսրով, ու չորս հազար զօրքով երեսուն հազար մարդ ջարդեց. ան անգամուն՝ կայսրը երկու հազար լիտր ոսկի տալով Պարսից արշաւանքը

---

1 Գոթացւոց պատերազմը երբ եղաւ:
2 Պարսից արշաւանքը ինչպէս եղաւ:

հաղիւ դադրեցուց։ Վրան շատ չանցաւ, Խոսրով նորէն յարձակեցաւ Ասիոյ վրայ. բայց ան արշաւանքը անյաջող գնաց. վասն զի Փասիս կամ Ճորոխ գետին քով այնպիսի ջարդ մը տուաւ Բելիսարիոս Պարսից որ Յուստինիանոսի կենդանութեան ատենը մէյմըն ալ պատերազմի չելան Յունաց վրայ (555)։

[1] Ան միջոցին պատերազմէ ազատած երկիրները գետերուն ողողելովը աւրուեցան. մէկդիէն ալ ժանտախտն ու գետնաշարժը շատ վնասներ կ'ընէին։ Իրեք ամիս անանկ սաստիկ ժանտախտ եղաւ Կոստանդնուպօլսոյ մէջ որ մինչուան տասը հազար հոգի մէկ օրուան մէջ կը մեռնէր։ Քիչ ատենէն ուրիշ վտանգի մը մէջ ալ ինկաւ կայսերութիւնը։ Բուլղարները հարաւաբնակ Սլաւեանց հետ միանալով՝ Դանուբէն անցան, Թրակիոյ տիրեցին, ու Անաստասայ շինած պարսպէն անցան, որուն մէկ կողմը գետնաշարժէն նոր փլեր էր։ Կոստանդնուպօլսոյ պարիսպները անոնց առջևը դիմանալու ամրութիւն չունէին. զօրք ալ չկար քաղքին մէջ, ուստի ժողովուրդը մեծ վախի մէջ էր։ Բելիսարիոս քաղաքին չորս բոլորը կրակ վառել տուաւ, որպէս զի թշնամին կարծէ թէ չորս դին տարածուած զօրք ունի, ու անով խաբուի. և ունեցած քիչ զօրքովը յարձակեցաւ բարբարոսաց վրայ, ու մինչուան զամէնքն ալ կը ջարդէր՝ թէ որ թող տար Յուստինիանոս (559)։

---

1 Բուլղարաց արշաւանքը Ի՛նչ կերպով արգիլուեցաւ։

[1] Քանի մը տարի ետքը կայսեր կենացը դէմ դաւակցութիւն մը ըլլալով Բելիսարիոս թշնամիներէն ամբաստանուեցաւ թէ անիկայ ալ դաւաճաններուն մէջն է. ուստի այն հռչակաւոր զօրավարը բռնեցին բանտ դրին, ու աչուըները փորեցին։ Ետքերը իմացուեցաւ անոր անմեղութիւնը ու բանտէն հանեցին, բայց շատ խեղճ վիճակի մէջ էր. և այնչափ ազգերու յաղթող զօրավարը ցաւալի կերպով Կոստանդնուպօլսոյ փողոցներուն մէջ դռնէ դուռ քալելով իր հացը կը մուրար կ'ըսեն։ Բայց շատ պատմիչներ ալ կը հաստատեն թէ Բելիսարիոսին այնչափ ծանր նախատինքներ չըրուեցան, և թէ ստացուածքն ու ազատութիւնը նորէն իրեն դարձուցին։ Անկէց ութը ամիս ետքը մեռաւ Բելիսարիոս. քիչ ատենէն ալ կայսրը (565)։

[2] Յուստինիանոսի մեծ պարծանքն ան է որ շատ մը օրինաց գրքեր հանեց որ մինչուան հիմայ իր անունովը կը յիշուին։ Տրիբոնիանոս անունով գիտուն պալատականին յանձնեց որ հռոմէական իրաւագիտութեան վերաբերեալ բոլոր յիշատակարանները ժողվէ. աս մեծ հաւաքմունքը (որ մինչուան հիմայ ալ կայ) չորս մաս կը բաժնուի. այսինքն ա, Օրէնք, որ կայսերական վճիռներ են. բ, Սահմանք, որ Հռոմայեցւոց օրէնքներն են պարզ սկզբունքներու վերածուած. գ, Կանոնագիրք, որոնց մէջ շատ մը իրաւագիտական ճառեր

---

1 Բելիսարիոսին վերջը ինչպէս եղաւ։
2 Յուստինիանոս ինչ բարեկարգութիւններ ըրաւ։

կան. Գ. Վաւէրական, որ Յուստինիանոսի բուն սահմանադրութիւններն են։ Բոլոր աս օրէնքներուն հիմն էր՝ միապետական կառավարութիւնը զօրացընել ու կայսեր կամքը ամէն բանէ վեր ճանչցընել։

[1] Շատ հոյակապ շէնքեր ալ շինել տուաւ Յուստինիանոս թէ Կոստանդնուպօլսոյ մէջ և թէ ուրիշ երևելի քաղաքները. շատ ալ եկեղեցիներ կանգնեց ու նորոգեց, որոնց մէջ ամէնէն հռչակաւորն էր սրբոյն Սոփիայ տաճարը որ է հիմակուան հոյակապ Այա Սօֆիա մզկիթը։ Աս կայսեր ատենը երկու յոյն կրօնաւորներ Չինու երկրէն Կոստանդնուպօլիս բերին մետաքսագործ շերամը՝ մէջը փորուած եղէգներու մէջ պահած։

[2] Յուստինիանոսի յաջորդեց իր եղբօրորդին Յուստինոս Բ (565), որ առջի բերան հեզ, վեհանձն, և առատաձեռն մարդ մը կ՚երևնար, բայց շուտով իմացուեցաւ իր բարկասիրտ, ագահ, զեղխ ու վատ բնաւորութիւնը։

[3] Յուստինիանոսի մահուան լուրը Պարսկաստան հասածին պէս՝ զէնք առաւ նորէն Խոսրով թագաւորն ու սկսաւ կայսերութեան գաւառները համարձակ ոտնակոխ ընել։ Յուստինոս ծնկուըներուն ցաւէն իր պալատը կեցած՝ մէկ կողմանէ Խոսրովին աւերմունքները, մէկալ կողմանէ ալ Լոմպարտացւոց Իտալիոյ տիրելն ու արևմուտքին տակնուվրայ ըլլալը լսելով՝ սրտին

---

1 Ի՞նչ շէնքեր շինեց։
2 Ո՞վ յաջորդեց Յուստինիանոսի։
3 Յուստինոս ի՞նչպէս մեռաւ։

նեղութենէն ու տրտմութենէն խելքը կորսնցուց. և երբոր քիչ մը զգաստացաւ՝ հրաժարեցաւ կայսերութենէն, տեղը դրաւ իր Տիբերիոս անձնապահապետը, և իշխանութիւնը յանձնած ատենը աս սրտաշարժ խօսքը ըսաւ անոր. “ Ասկէ ետքը իմ երկայն կամ կարճ ապրիլս քու ձեռքդ է. բերնիդ մէկ խօսքը զիս մէկէն կը մեռցընէ ,,:

1 Տիբերիոս Բ (579) ինքզինքը բաղդին արժանի ցուցուց. տէրութեան պարպուած գանձը խնայութեամբը լեցուց, զօրքը կարգաւորեց, ժողովուրդը հօր պէս կառավարեց: Աւարացիքը հալածեց, Պարսից Խոսրով անուանի թագաւորին յաղթեց, ու ետքը հետը հաշտութիւն ըրաւ. մեռնելէն առաջ ալ իրեն յաջորդ ընտրեց իր քաջասիրտ զօրավարը Մաւրիտիանոս կամ Մօրիկը (584): Նշանաւոր են Տիբերիոսին վերջի խօսքերը որ զուրցեց ծերակուտին ու եկեղեցականաց առջեւ. “ Իմ
,, տեղս այնպիսի մարդ մը ընտրեցի ձեր մէջէն որ
,, ինծմէ աւելի արդիւնք ու արժանաւորութիւն
,, ունի. անիկայ է ձեր թշնամեաց յաղթօղը, ա-
,, նիկայ է որ հռովմէական փառքը բարձրացուց
,, ու Պարսից ամբարտաւանութիւնը խոնարհե-
,, ցուց: Մօրիկն է աս մարդը, որ կայսերութեան
,, սուսերն ու վահանն է: Թագաւորէ Մօրիկ.
,, յոյսս պարապ մի հաներ. ականջդ բաց ըլլայ
,, ճշմարտութեան, ու գոց շողոքորթութեան:
,, Արդարութիւնը քեզի աթոռակից ըրէ. գիտ-

---

1 Տիբերիոս Բ ինչպէս ըրաւ կայսերութիւնը: — Իրեն զո՞վ ընտրեց յաջորդ ու ինչ կերպով:

„ ցեր որ ծիրանին իր պայծառութիւնը կը կոր-
„ սնցընէ՝ թէ որ ախտերու մէայն ծածկոյթ ըլ-
„ լայ ։ Գաւազանդ ժողովրդեան նեցուկ ըլ-
„ լալու համար է . նայէ որ ժողովուրդը երջան-
„ կացընես ։ Լաւ թագաւորը իր գերագոյն իշ-
„ խանութիւնը՝ փառաւոր ծառայութիւն մը պի-
„ տի սեպէ ։ . . . Միանգամայն վստահ եղիր ու
„ արթուն , տուած պատիժներուդ պատճառն
„ ու չափը հասարակաց օգուտը միայն ըլլայ ։ Ա-
„ սոնք հօր պէս ես քեզի կ'ըսեմ . բայց օր մը այն-
„ պիսի անաչառ դատաւորի մը պատասխան պի-
„ տի տաս , որուն առջեւը ամէն մեծութիւն անե-
„ րեւոյթ կ'ըլլայ ։ Թագաւորէ Մօրիկ . քու յաղ-
„ թութեանդ նշանները՝ իմ գերեզմանիս զար-
„ դերն ըլլան , և առաքինութիւններդ ինծի գամ-
„ բանական ներբողներ „ ։ Աս խօսակցութեան
վրայ բոլոր ունկնդրաց սիրտը եռաւ . և քանի մը
օրէն մեռաւ իմաստունն Տիբերիոս ։

[1] Մօրիկ կայսրը Հայ էր ազգաւ՝ Օշական գե-
ղէն . պզտիկուց Կոստանդնուպօլիս գալով հոն մեծ-
ցեր , ու զօրավարութեամբ քանի մը անգամ Պար-
սից Խոսրով թագաւորին յաղթելով՝ ինչուան
կայսեր փեսայ եղեր էր ։ Կը պատմեն թէ Մօրիկը
կայսր նստելէն ետքը մարդ խրկեր է հօրը որ գայ
իր կայսերական պալատին մէջ իբրեւ թագաւորա-
հայր բնակի , և կամ իրեն խրատ մը տայ որ ինչպէս
կրնայ լաւ կերպով տէրութիւնը կառավարել ։
Գացող հրաւիրակները տեսեր են որ ան ծերը

---

[1] Մօրիկ կայսեր ծագմանն ու բնաւորութեանը
վրայ ինչ կը պատմուի ։

պատերազմին մէջ կ'աշխատի. երբոր կայսեր հրամանը իրեն իմացուցեր են, « Ինծի չվայլեր, ըսեր է, որ երբեմնակալի մը հայր ապերախտութիւն ընեմ », ու կը սկսի կաղամբներուն մէջէն խոշորները արմատէն փրցընել, գլուխնին կտրել, հողուն տակը ծածկել, ու անոնց տեղ նորատունկները դարմանել: Հրաւիրակները խելացի ծերունին ցնդածի տեղ դնելով կուգան կայսեր կը պատմեն: Հօրը միտքը կ'իմանայ Մօրիկ, կը ժպտի, ու կը սկսի անկէց ետքը մէջտեղէն վերցընել քանի մը մեծամեծ իշխանները, որ սաստիկ զօրանալով իրեն դէմ դաւակցութիւն կ'ընէին. և անոնց տեղը ուրիշ հաւատարիմ մարդիկ կ'ընտրէ: Ետքը կանչեց ան հրաւիրակներն ու ըսաւ անոնց. « Ահա աս էր հօրս զուրցածը որ դուք չէիք հասկըցած »: Մօրիկ քաջասրտութեանը հետ նաև խոհեմ էր, գիտուն՝ առանց փառասիրութեան, ծանրակաց՝ առանց ամբարտաւանութեան, արդարասէր ու հեզ, աշխատասէր ու ժուժկալ: Շատ բարեկարգութիւններ ըրաւ ու բոլոր տէրութիւնը խաղաղեցուց, այնպէս որ առակ եղեր էր նաև Հայաստանի մէջ ըսել թէ « Մօրկայ ժամանակին պէս անհոգ կեցեր ես »:

[1] Աւարացւոց հետ պատերազմելու ատենը երբոր չուզեց գերիները փրկանաւորել, այսինքն գիներնին տալով ազատել, աս ագահութեանը վրայ զօրքը բարկացաւ, ու նենգաւոր Փոկաս զօրավարին առաջնորդութեամբը մայրաքաղաքին վրայ

---

1 Ի՞նչ պատճառաւ ու ինչպէս մեռաւ Մօրիկ կայսրը:

դիմեց : Երբոր տեսաւ Մօրիկ որ ժողովուրդն ալ զօրաց հետ միացաւ , Նաւակ մը մտաւ , դէպ 'ի Ասիա փախաւ . բայց հովը դէմ ըլլալով Քաղկեդոնի (Գատը քէօյիւ) մէջ ետևէն հասան , բռնեցին զինքը , եօթը որդիքը կնոջը հետ աչքին առջևը սպաննեցին , որոնց ամէն մէկուն արիւնը իր վրայ կը ցատքէին և ինքը կատարեալ համակամութեամբ ամէն մէկ զաւկին գլուխն իյնալուն աս խօսքս միայն բերնէն կը հանէր . " Արդար ես դու տէր , և ուղիղ են դատաստանք քո " : Ամենէն ետև կտրճութեամբ իր գլուխն ալ երկնցուց դահճին առջևը : Ետքը դահիճները տարին անխեղճ ազգատոհմին գլուխները Կոստանդնուպօլսոյ պարիսպներուն վրայ կախեցին (602) :

1 Վայրենամիտ փոկասը կայսր եղաւ Մօրիկին տեղը : Ասոր սրտին կատաղութիւնը կերպարանքէն ալ կիմացուէր : Նայուածքը դաժան էր , մազերը կարմիր , ընքուիները թաւ ու իրարու կպած , և երեսը պիսակոտ , ու բարկացած ատենը բոլոր ան պիսակները կը սևնային :

2 Ափրիկէի փոխարքային որդին Հերակլ աս ընտրութիւնն որ լսեց՝ նաւերով տիրապետան փոկասին վրայ պատերազմի ելաւ , որ Մօրիկ կայսեր մահուան վրէժն առնու : Աս նաւատորմիղն որ տեսան Կոստանդնուպօլսեցիք , մէկէն ոտք ելան , Հերակլը ներս առին , ու փոկասու պալատին վրայ դիմեցին . բռնեցին կայսրը , կռնըկէն ծիրանին

---

1 Մօրիկին ով յաջորդեց : — Ի՞նչ բնաւորութեան տէր էր փոկաս :

2 Ի՞նչպէս մեռաւ փոկաս :

հանեցին, և ողորմելի վերարկու մը վրան ձգած՝ առին Հերակլի առջևը բերին. Հերակլ ըսաւ անոր. "Ո՛վ Թշուառական, ասա՞նկ պիտի կառավարէիր կայսերութիւնը: — Դուն աւելի լաւ կառավարէ,, ըսաւ Փոկաս: Այն խօսքին վրայ չկարենալով Հերակլ բարկութիւնը սանձել, բռնեց գետինը զարկաւ զբռնաւորը, ոտքին տակը առաւ, առաջ ձեռուըներն ու ոտուըները՝ ետքն ալ գլուխը կտրել տուաւ (610):

[1] Հերակլ կայսերական աթոռը նստելուն պէս, Պարսից Թագաւորը Խոսրով Բ բազմագունդ բանակով Ասիոյ գաւառները մտաւ, ու ամէն տեղ ոտնակոխ կ'ընէր: Ասորւոց երկրին ու Պաղեստինու մէջ ինչուան իննսուն հազար քրիստոնեայ իր հրամանովը սպաննուեցան, և Հրէայք արեան մէջ կը լողային. Քրիստոսի Տեառն մերոյ խաչափայտն ալ Երուսաղեմէն վերուց տարաւ Պարսկաստան: Պարսից ուրիշ բանակ մըն ալ ինչուան Կոստանդնուպօլսոյ պարսպաց քովը հասաւ. ան բաւական չէր, Աւարացիք ալ աստէն գալով Թրակիան, Մակեդոնիան, և Իտալիան ոտնակոխ կ'ընէին:

[2] Հերակլ իր մայրաքաղաքին մէջ պաշարուած ու գրեթէ յուսահատած՝ կը մտածէր որ Կոստանդնուպօլիսը թողու, աթոռը Կարքեդոն փոխադրէ: Այս մտածութեան դէմ կեցաւ քաղաքին պատրիարքը. սրբոյն Սոփիայ եկեղեցին տարաւ զկայսրը ու ժողովրդեանը վրայ մեռնելու երդում

---

[1] Հերակլի ատեն ի՞նչ արշաւանք ըրին Պարսիկներն ու Աւարացիք:

[2] Ի՞նչ կերպով յաղթեց Հերակլ Պարսից:

տուաւ անկէց : Այն ատեն ամէն բան փոխուեցաւ . եկեղեցականք՝ վեհանձն առատաձեռնութեամբ բոլոր ունեցածնին տուին . ան տակներով կայսրը օտար ազգերէ զօրքեր գնեց , Ասորւոց երկիրը գնաց անոնցմով ու Ծասսաւի դաշտին մէջ մեծ յաղթութիւն մը ըրաւ Պարսից վրայ : Այսպէս շատ անգամ յաղթուելով Պարսիկներն ու Աւարացիք՝ քաշուեցան գնացին , ու կայսերութիւնը խաղաղացաւ : Քիչ ատենէն Կաւատ մեռցուց իր հայրը Խոսրովը ու անոր անցաւ , կայսեր հետ հաշտութիւն ըրաւ ու պատուով սուրբ Խաչը ետ դարձուց : Հերակլ Կոստանդնուպօլսէն ելաւ՝ Երուսաղէմ գնաց , և հոն ինքը սուրբ Խաչափայտը ուսը առած՝ պատուով տարաւ առջի տեղը դրաւ , և անոր յիշատակ՝ Վերացման խաչին տօնը հաստատուեցաւ (628) :

1 Աս խաղաղութիւնը երկար չքշեց . վասն զի չորս տարի ետքը աւելի ահաւոր թշնամիներ ելան Յունաց դէմ : Արաբացիք մէկ արշաւանքով անոնց ձեռքէն Եգիպտոսը , Պաղեստինն ու Ասորիքը առին . խեղճ կայսրը որ արդէն ծերացած էր , աս բաներուս գոյժը իր պալատին մէջ լսեց ու սրտին ցաւէն մեռաւ (641) :

2 Հերակլի յաջորդները գրեթէ ամէնն ալ մէյմէկ անարգ թագաւորներ եղան : Մենք հոս կարգաւ անոնց անունները և ինչ կերպով մեռնիլը միայն դնենք : Կոստանդին Հերակլ թունաւորուեցաւ . Հերակլէոնին քիթը կտրեցին . Կոստանդին

---

1 Ի՞նչպէս մեռաւ Հերակլ :

2 Հերակլի յաջորդներուն վրայ ի՞նչ գիտելիք կայ :

Բ, առաջ աքսորուեցաւ, ետքը սպաննուեցաւ Սիրակուսայի մէջ. Կոստանդին Գ., որ Պոգոնատ կամ Մօրուեղ կ'ըսուէր, իր եղբայրը անոր աչուըները փորել տուաւ. Յուստինիանոս Գ. անոր որդին՝ հրաման տուաւ որ մայրաքաղաքին ժողովուրդը ջարդուի, և աթոռէն ձգուեցաւ. Լեւոն՝ որ անիրաւութեամբ թագաւորեր էր, Տիբերիոս Ապսիմարոսին ձեռքովը աթոռէն ձգուեցաւ, քիթն ալ կտրեցին: Բոլոր աս բռնաւորները 641էն մինչուան 711 թուականը թագաւորեցին, ու իրենց անզգամութիւններովը Տիբերիոսի, Ներոնի ու Դոմետիանոսի օրերուն յիշատակը նորոգեցին:



## ԳԼՈՒԽ Զ.

Պատմութիւն Սասանեանց՝ Արտաշիր Սասանեանէն մինչեւ Շապուհ Երկայնակեաց: (226-390): Արտաշիր Սասանեան. — Մեծին Խոսրովու և Աղեքսանդր կայսեր դէմ ըրած պատերազմը. — Անակ նախարարը. — Արտաշրի Հայաստանին տիրելը. — Շապուհ որդին իրեն գահակից կ'ընտրէ. — Հռոմայ կայսերաց դէմ ըրած պատերազմները. — Մահը. — Շապհոյ պատերազմը Տրդատայ դէմ. — Վաղերիանոսի յաղթելն ու զանիկայ գերի բռնելը. — Որմիզդ. — Շապուհ Երկայնակեաց. — Ըրած հալածանքները. — Հայաստանի վրայ արշաւանքները. — Յուլիանոսի դէմ պատերազմը. — Տիգրանակերտը պաշարելն ու առնելը. — Արշակ թագաւորը բռնելն ու Անյուշ բերդը ղրկելը. — Անոր Վռամշապուհ եղբայրը Հայոց վրայ թագաւոր դնելը. — Շապհոյ մահը:

[1] **ԱՐՏԱՇԻՐ ՍԱՍԱՆԵԱՆ ԵՒ ԱՆՈՐ ՈՐԴԻՆ ՇԱՊՈՒՀ (226-301):** — *Երբոր մեր Խոսրով Թագաւորը լսեց թէ Արտաշիր Սասանեան՝ Արտաւանը սպաններ է, որ իրեն ազգակից Արշակունի էր, և Կարենեան Պահլաւեանց ցեղը ջնջեր է՝ իրեն հնազանդիլ չուզելնուն համար, սաստիկ բարկացաւ, վրան պատերազմի ելաւ ու ճնշուած Հնդկաստան քշեց զանիկայ: Արտաշիր Հնդկաստանէն ու քովի ազգերէն շատ զօրք ու փիղեր ժողվելով պատերազմի կը պատրաստուէր, սպառնալով*

---

[1] *Սասանեանց թագաւորութիւնը ով կանգնեց:*

որ Պարսից առջի Թագաւորացը տիրած երկիրները նորէն ձեռք պիտի ձգէ ։

1 Աղեքսանդր կայսրը աս բաներս լսելով՝ սպառնալիք գրեց իրեն որ հանդարտ կենայ ․ բայց երբոր մտիկ չըրաւ Արտաշիր, անձամբ շատ զօրքով վրան պատերազմի ելաւ ․ Արտաշիր ալ եօթը հարիւր փիղով, հազար ուլթը հարիւր գերանդազէն կառքով և անթիւ զօրքով անոր դէմ գնաց ։ Մեր Թագաւորը Մեծն Խոսրով միաբանեցաւ կայսեր հետ, կոտրեցին Արտաշիրին զօրքը, զինքն ալ իր երկիրը Ասորեստան փախուցին (232) ։

2 Անկէց ետքը տասը տարի անդադար իրարու հետ պատերազմեցան Խոսրով և Արտաշիր, յաղթեց Խոսրով, ու նորէն ինչուան Հնդկաստան հալածեց Արտաշիրը (246) ։ Արտաշիր տեսնելով թէ քանի որ Խոսրով կենդանի է՝ ինքը չկրնար հանգիստ Թագաւորել, մտածեց որ նենգութեամբ զանիկայ սպաննել տայ ․ միտքը յայտնեց նախարարներուն ու “ Ով որ կարենայ դաւով Խոսրովը մեռցնել, Քուշաստանը Բահլ քաղաքով մէկտեղ անոր կուտամ, կ'ըսէր, և զինքը ինծի երկրորդ կ'ընեմ ,, ։ Աս խոստմունքէն հրապուրուած Անակ նախարարը (որ Սուրէնեան Պահլաւեանց ցեղէն էր) յանձն առաւ Արտաշիրին փափաքը կատարել, և անոր ձեռքէն իր ընտանիքովը փախչիլ ձեւացուց ․ Պարսից զօրքն ալ ետևէն ինչուան

---

1 Աղեքսանդր կայսրը ինչ պատերազմ ըրաւ Արտաշրի դէմ ։

2 Մեր Խոսրով Թագաւորը ինչ պատերազմներ ըրաւ հետը ։

Ասորեստան հալածեցին զինքը, անկէ ալ ինչուան Ատրպատական։ Ու երբոր լսեց Խոսրով, փախ-նալով որ չըլլայ թէ զԱնակն ալ Պարթեւները մէ-կտեղ Սուրէնեանց պէս ջարդեն, անոր գունդ մը զօրք օգնութիւն խրկեց, որ առին զինքը Վաղար-շապատ բերին. շատ պատուով ընդունեցաւ զինքը Խոսրով, և հոն իր քովը բնակեցուց։

1 Անկէ ետքը յարմար առթի սպասելով Անակ՝ որ անօրէն պաշտօնը կատարէ, որ մէկ երբոր Խոս-րովին հետ որսի գնացեր էր, խօսելու պատճառաւ եղբօրը հետ Խոսրովը մէկդի քաշեցին, զարկին զինքը թրով, ու իրենք ձիերնին հեծան փախան։ Խոսրովին զարմանքն ու ցաւերը կատաղութիւն դարձան, դեռ չմեռած մէկէն հրամայեց որ Անա-կը անով ազգով ջնջեն։ Անակ չորս կողմէն պաշա-րուած, չկարենալով փախչիլ՝ ինքզինքը Երասխ գետը ձգեց խեղդուեցաւ, իր ընտանիքն ալ թրէ անցան, երկու պզտիկ տղաքը միայն իրենց դայեակ-ներուն ձեռքովը ազատեցան, մէկը որ Սուրէն կ՚ըսուէր Պարսկաստան տարուեցաւ, միւսն ալ որ ետքը մեծ Լուսաւորիչ եղաւ՝ Կեսարիա։

2 Արտաշիր Խոսրովու մահը լսածին պէս շատ զօրքով վազեց Հայաստանի վրայ, տիրեց երկրին, նախարարները հալածեց, և հրամայեց որ Խոս-րովին ցեղը ջնջեն։ Ետքը հրաման հանեց քաղ-ցրութեամբ որ փախած նախարարները դան ժող-

---

1 Անակ ինչպէս սպաննեց մեր Խոսրով թագա-ւորը։

2 Արտաշիր Խոսրովու մահը լսելէն ետև ինչ ըրաւ։

վուլին , իրենց պաշտօնն ու պատիւը առնեն ․ միայն լսելով որ Արտաւազդ Մանդակունի նախարարը Խոսրովին Տրդատ որդին փախուցեր է, բոլոր Մանդակունեաց ցեղը ջնջել տուաւ ։ Վաղարշակ Թագաւորին կանգնել տուած արձանները կոտրտեց, Արտաշէս երկրորդին ալ Հայաստանի սահմանագլուխները կանգնած քարերուն վրայ իր անունը փորել տուաւ, ինքզինքը Թագաւոր Հայոց և բոլոր Ասիոյ անուանեց, Շապուհ որդին Թագաւորութեանը գահակից ըրաւ ու բոլոր Հայաստանի իշխաններուն վրայ զանիկայ դրաւ հրամանատար ։

[1] Օրէ որ զօրանալով Արտաշիր՝ Հռովմայեցւոց վրայ ալ սկսաւ խրոխտալ ։ Տակիտոս կայսրը լսելով որ Արտաշիր պատերազմի պատրաստութիւն կը տեսնէ՝ շատ զօրք խրկեց վրան ․ բայց Արտաշիր վազեց, զանոնք ամէնքն ալ հալածեց ։ Պրոբոս երբոր կայսր եղաւ, դեսպան խրկեց Արտաշիրին ու խաղաղութեան դաշինք դրաւ հետը (276) ։

[2] Պրոբոսի տեղը երբոր Կարոս կայսր նստաւ, շատ զօրքով Արտաշիրին վրայ վազեց, ու Միջագետաց մէջ մեծ յաղթութիւն մը ընելով ինչուան Տիզբոն հասաւ ։ Երբոր տեսաւ Արտաշիր որ Հռովմայեցիք իրեն դէմ կը զօրանան, նորէն այլեայլ ազգերէ զօրք ժողվեց և անոնց զօրավար դրաւ Կոռնակ հայկազն կորիճ մարդը, դիմեց Հռովմայեցւոց վրայ, յաղթեց, Կարոսն ալ սպաննեց (283) ։

---

1 Հռովմայեցւոց դէմ ինչ պատերազմ ըրաւ ։
2 Կարոսին ինչպէս յաղթեց ։

1 Այսպիսի աշխարհակալութիւններով յիսունըութը տարի թագաւորելէն ետքը մեռաւ Արտաշիր (285)։

2 Արտաշրի որդին Շապուհ տեսաւ որ Տրդատ Ասորեստանի տիրելով Տիզբոնն ալ առաւ ու առաջ կը քալէ, շատ զօրք ժողվեց ու Հայաստանի վրայ վազեց։ Առջևը ելաւ Տրդատ, յաղթեց, զինքն ալ հալածեց։ Ուրիշ երկու անգամ ալ զարնուեցան ու միշտ յաղթուեցաւ Շապուհ. երրորդ անգամ յոյս մը առնելով Շապուհ շատ զօրք ու փիղ վարձեց դրսէն, ու նորէն սկսաւ պատերազմիլ. բայց սաստիկ ջարդուելով յուսահատեցաւ, մէյմըն ալ սիրտ չըրաւ պատերազմի (290)։

3 Ան ատենը Շապուհ զէնքը Հռովմայեցւոց գաւառներուն վրայ դարձուց ու ամէն տեղ ասպատակ սփռեց, Ասորւոց երկրին ալ տիրեց։ Վաղերիանոս կայսրը վրան պատերազմի ելաւ, բայց յաղթուեցաւ ու ինքն ալ գերի ընկաւ։ Պալմիրայի թագաւորը Ոդենատ՝ որ Զենոբիա թագուհւոյն էրիկն էր, Շապհոյ վրայ պատերազմի ելաւ, յաղթեց, բանակը կողոպտեց ու բոլոր հարճերը գերի տարաւ։ Ասոր վրայ սաստիկ կատղեցաւ Շապուհ, ոխը Հռովմայեցւոցմէ առնել ուզելով՝ անոնցմէ բռնած բոլոր գերիները մեռցընել տուաւ. Վաղերիանոս կայսեր հետ ալ ամենայն նախատանօք վարուելէն ետքը՝ չարաչար մա-

---

1 Քանի՞ տարի թագաւորեց Արտաշիր։

2 Շապուհ ինչ պատերազմ ունեցաւ Տրդատայ հետ։

3 Հռովմայեցւոց դէմ ինչ պատերազմներ ըրաւ։

հուամք մեռուց։ Երեսունըմէկ տարի թագաւո-րելէն ետև մեռաւ Շապուհ (301), ու տեղը թա-գաւորեց որդին Որմիզդ։

[1] ՇԱՊՈՒՀ ԵՐԿԱՅՆԱԿԵԱՑ (320-390)։ Որմիզդ իր թագաւորութեանը ժառանգ՝ մի միայն որդի թողուց, ան ալ դեռ չէր ծնած. և որովհետև նախարարները չէին գիտեր թէ մանչ պիտի ծնա-նի թէ աղջիկ, կանչեցին մոգերը ու անոնց հար-ցուցին. անոնք ամէնքը մէկ բերան ըսին թէ մանչ պիտի ծնանի։ Նախարարները ուզելով անոնց ըրած գուշակութեան ճշմարտութիւնը փորձել, մա-տակ ձի մը բերին որ քիչ ատենէն պիտի ծնանէր, որպէս զի նային թէ անոր վրայ ըսածնին ճշմարիտ կ'ելլէ թէ չէ։ Ձին անոնց ըսածին պէս ծնանե-լով՝ հաւատացին որ ուրեմն թագուհւոյն ծնածն ալ մանչ պիտի ըլլայ. Որմզդի թագը առին, թա-գուհւոյն գլուխը պսակեցին, իբր թէ անով ա-նոր ծնանելու զաւակը թագաւորեցուցին. դեռ չծնած տղուն "կեցցէ արքայ" կանչեցին, և ա-նունը դրին Շապուհ այսինքն Արքայորդի (320)։

[2] Այն ատենները քրիստոնէութիւնը Պարսկաս-տանի մէջ ալ սկսեր էր ծաղկիլ, և օրէ օր եկեղե-ցիները կը բազմանային. աս բանիս չդիմացան մո-գերը. Շապուհ Որմզդեան թագաւորելուն պէս զինքը յորդորեցին որ քրիստոնեաները ջնջէ. ան ալ սաստիկ հալածանք հանեց հաւատացելոց վրայ,

---

[1] Շապուհ Երկայնակեաց ինչ կերպով սկսաւ թագաւորել։

[2] Քրիստոնէից դէմ ինչ հալածանք հանեց։

բիւրաւոր մարդիկ նահատակեց, և շատ եկեղեցի-ներ կործանեց, մանաւանդ երբոր իր քոյրն ալ (կամ ինչպէս ոմանք կ'ըսեն՝ իր մայրը) դարձաւ քրիստոնեայ եղաւ (328)։

Բայց ետքը տեսնելով Շապուհ թէ որչափ ինքը քրիստոնեաները չարչարէ՝ անոնք այնչափ իրենց հաւատքին մէջ կը հաստատուին, դադրեցուց հալածանքը, մանաւանդ երբոր Մեծն Կոստանդիանոս իրեն բարեկամական թուղթ գրելով յորդորեց որ քրիստոնէից վրայ աղէկ աչքով նայի։

[1] Երբոր մեր Խոսրով Թագաւորը պալատներ շինելու ետևէ էր, Շապուհ Սանատրուկ Արշակունիէն դրդուած՝ ծածուկ մարդ խրկեց Կովկասու բնակչացը, զանոնք ոտք հանեց ու ձեռքի տակէ անոնց օգնեց որ Հայաստանի վրայ դիմեն (350)։ Գնացին յաղթուեցան Հայերէն. և Խոսրով Թագաւորը իմանալով որ աս բանս Շապհոյ դրդութեամբը եղեր է, հետը դրած դաշինքը աւրեց, անոր տուած հարկն ալ կայսեր տուաւ, ու անկէ շատ մը օգնական զօրք առաւ։

[2] Շապուհ երբոր լսեց թէ Խոսրով մեռեր է ու անոր Տիրան որդին կայսեր գնացեր է որ թագաւոր պսակուի, իր Ներսեհ եղբայրը շատ զօրքով Հայաստան խրկեց որ երթայ Տիրանայ տեղը Հայոց վրայ թագաւորէ։ Բազմութեամբ զօրաց անոր առջևն ելաւ Արշաւիր Կամսարական, և

---

1 Հայաստանի վրայ ինչպէս գրգռեց հիւսիսային ազգերը։

2 Արշաւիր Կամսարական ինչպէս յաղթեց Շապհոյ զօրացը։

թէպէտ երկու կողմէն ալ շատ ջարդ եղաւ, բայց վերջապէս Հայք զօրացան ու Պարսիկները հալածեցին (383)։

1 Տիրան Հայաստան որ դարձաւ, հաշտութիւն ըրաւ հետը Շապուհ, ու անկէց հարկ առնելով գոհ եղաւ. ետքը անոր աղաչանքովը երկու Հայաստանէն հիւսիսականքը հալածեց, ու շատ զօրքով Միջագետք ու Պաղեստին անցաւ տիրեց (360)։ Վրան զօրք խրկեց Կոստանդիանոս, զարնուեցան բանակները, երկու կողմն ալ անպարտելի մնացին, իրարու հետ հաշտութիւն ըրին, և Շապուհ ետ դարձաւ։

2 Յուլիանոս կայսրը շատ զօրք ժողվեց, Պարսից վրայ պատերազմի ելաւ, և երբոր Եփրատայ մօտեցաւ, Պարսիկները գետին վրայի կամուրջը կտրեցին. Տիրան անոնց վրայ վազեց, ցրուեց փախուց, ու կամուրջը նորէն շինելով Հռովմայեցւոց զօրքը անդին անցուց (362)։ Յուլիանոսի մեռնելէն ետքը անոր յաջորդը Յովիանոս հաշտութիւն ըրաւ Շապհոյ հետ, ու Մծբինը Միջագետաց ուրիշ քանի մը քաղաքներուն հետ անոր տուաւ։

3 Յովիանոս երբոր մեռաւ, Վաղենտիանոսի ատենը Շապուհ դաշինքը աւրեց ու զօրք ժողվեց որ Յունաց վրայ պատերազմի երթայ. Հայաստանի քովէն անցնելու ատենը միտքը գալով որ

---

1 Շապուհ ի՞նչ կերպով հաշտութիւն ըրաւ Հայոց ու Յունաց հետ։
2 Յուլիանոսի արշաւանքը ի՞նչպէս վերջացաւ։
3 Վաղենտիանոսի ատենը ի՞նչ ըրաւ Շապուհ։

Տիրան իրեն հետ ըրած դաշանցը դէմ Յուլիանոսի օգներ էր, խաբէութեամբ ուզեց զինքը բռնել, ու բարեկամական թուղթ մը գրեց որ գայ մէյմը տեսանուի. Տիրան գնաց, Շապուհ ալ բռնեց զինքը, նախ զօրացը առջեւը յանդիմանեց, ետքը աչուըները հանեց, զինքը Կուաշ աւանը խրկեց, տեղը թագաւորեցուց անոր որդին Արշակ երկրորդը, նախարարներէն ալ շատ պատանդներ առնելով որ չապստամբին՝ Յունաց վրայ գնաց (363)։

[1] Ինչուան Բիւթանիա հասաւ, ու չկրցաւ Շապուհ յաղթութիւն մը ընել. բայց ուզելով ցուցընել թէ Պարսիկները կրնան յաղթել Յունաց, ծովուն քով սիւն մը կանգնել տուաւ՝ վրան առիւծի արձան մը, ոտքին տակն ալ գիրք մը գրած, որով կ'ուզէր ըսել թէ Պարսիկք առիւծի պէս զօրաւոր են, և կրնան Յոյները իրենց իշխանութեան տակը առնել. իսկ Յոյնք իմաստութիւն միայն ունին։ Անկէ ետքը սկսաւ Շապուհ Փոքր Ասիան ասպատակել, և բնակչացը շատ վնաս հասուց. ինչուան որ Վաղենտիանոս կայսրը վրան շատ զօրք խրկեց, զինքը անկէ հալածեց։

[2] Դարձաւ Շապուհ Պարսկաստան, նորէն սկսաւ քրիստոնեաները չարչարել ու շատ մարդ նահատակեց, որոնց մէջ ամենէն անուանի է

---

[1] Յունաց վրայ երթալով ինչուան ո՞ւր հասաւ Շապուհ։

[2] Շապհոյ երկրորդ հալածանքին ատեն նահատակուողներուն մէջ ամենէն անուանին ո՞վ եղաւ։

տուրքն Սարգիս քաջ զօրավարը, որ արևը չպաշտելուն համար գլխատուեցաւ։

[1] Քիչ ատենի մէջ Շապուհ բաները կարգաւորելէն ետքը՝ միտքը դրաւ որ նորէն Յունաց վրայ արշաւէ. Տիգրանակերտին առջևէն անցնելու ատեն ուզեց խաղաղութեամբ ներս մտնել, քիչ մը ժամբու պաշար առնուլ. Անգոմկ նահապետը անոր դէմ դռները գոցեց ու Պարսից հետ պատերազմելով շատ մարդ ջարդեց անոնցմէ։ Սաստիկ բարկացաւ Շապուհ, բայց չուզելով հոն շատ ուշանալ, սպառնացաւ որ՚ի դարձին պատժէ Հայերը. հասաւ Յունաստան, մեծամեծ յաղթութիւններ ըրաւ, շատ տեղերու տիրեց, շատ ալ գերի առած եկաւ Տիգրանակերտը պաշարեց։ Տիգրանակերտցիք իրենց առջի յաղթութեանը վրայ վստահացած, դէմ կենալու պատրաստուլէն զատ՝ պարիսպներուն վրայ ալ ելած՝ Պարսից զօրացը նախատինքներ կուտային։ Բարկացաւ Շապուհ, Յունացմէ գերի բռնած զինուորները կանչեց, խոստացաւ որ եթէ քաջութեամբ պատերազմին ու Տիգրանակերտն առնուն՝ զիրենք կ՚ազատէ։ Զօրքը սիրտ առաւ, բաբաններով պարիսպը ծեծեցին, փլուցին, ներս մտան ու շէնքերուն կրակ տալով քաղաքացիքը անխնայ թրէ անցուցին (370)։

[2] Քանի մը տարի ետքը Շապուհ Հայոց նա-

---

1 Շապուհ ի՞նչպէս պաշարեց ու առաւ Տիգրանակերտը։

2 Ի՞նչ կերպով ձեռք ձգեց Շապուհ մեր Արշակ թագաւորը։

*խաբարներէն գրգռուած՝ Ալանոզան զօրավարը խրկեց մեր Արշակ թագաւորին վրայ որ բռնէ իրեն բերէ ։ Շապուհ Արշակը պալատի մը մէջ բնակեցուց պատուով, և հրամայեց անոր՝ որ գրէ Փառանձեմ թագուհւոյն որ իրեն գայ. Ինքը Շապուհ ալ գունդ մը զօրք խրկեց Հայաստան ու նախարարները հրաւիրեց որ Փառանձեմը տանուն՝ Պարսկաստան գան ։ Նախարարները հաւկըցան անոր չար միտքը, խրկած զօրքը ջարդեցին, իրենց ամուր տեղերը քաշուեցան, Փառանձեմն ալ Արտագերս բերդը մտաւ ։*

1 *Աս որ լսեց Շապուհ շատ բարկացաւ. մէկէն հրամայեց որ Արշակայ տղաքները երկըթէ շըղթաներով կապեն ու Խուժաստան տանին, Անյուշ բերդը կապեն. ուրացող Մերուժանը ու Վահան Մամիկոնեանն ալ շատ զօրքով Հայաստան խրկեց, որ եկան Արտագերս բերդը պաշարեցին առին, մէջինները Փառանձեմին հետ Ասորեստան տարին ու զամէնքն ալ ցից հանեցին ։*

2 *Մեծին Թէոդոսի մեռնելէն ետքը հաշտութիւն ըրաւ Շապուհ Արկադէոսի հետ, աս պայմանով որ Հայաստանի արևելեան մասը Պարսից հարկատու ըլլայ. և իր բաժնին վրայ թագաւոր դրաւ Արշակունի Խոսրով իշխանը ։ Բայց ետքը վրան ապստամբութեան կասկած առնելով մարդ խրկեց որ իրեն գայ. երբոր յանձն չառաւ Խոսրով, Շապուհ վրան շատ զօրքով իր Արտաշիր որդին խաւրեց, որ բռնեց զանիկայ շղթայակապ*

---

1 *Ի՞նչպէս խրկեց զինքը Անյուշ բերդը ։*
2 *Խոսրովը ի՞նչպէս բռնեց ։*

տարաւ. Անյուշ բերդը փակեց, ու տեղը Հայոց վրայ Թագաւոր գրաւ անոր Վռամշապուհ եղբայրը :

[1] Իսկ ինքը Շապուհ ծերացած՝ եօթանասուն տարեկան մեռաւ : Իրեն պէս Թագաւորաց մէջ երկար ատեն Թագաւորութիւն ընող մարդ չէր եղած, անոր համար ալ Երկայնակեաց ըսուեցաւ :

## ԳԼՈՒԽ Է.

Պատմութիւն Սասանեանց՝ Վռամ Կրմանէն մինչեւ Յազկերտ Գ Վերջին Թագաւորը (390-652) : Վռամ Կրման կամ Կրմանշահ. — Յազկերտ Ա. — Վռամ Բ. — Հայաստանի մէջ եղած խառնութիւնները. — Յազկերտ Հալածող. — Յունաց երկիրը եղած արշաւանքը. — Հանած հալածանքը. — Ղեւոնդեանց ու Վարդանանց նահատակութիւնը. — Որմզդապ ու Պերոզ. — Պերոզին Հեփթաղաց դէմ եղած պատերազմը. — Վաղարշ. — Կաւատ Պերոզեան. — Ջամասպ. — Կաւատին երկրորդ անգամ Թագաւորելը. — Ամիդ քաղաքը պաշարելն ու առնուլը. — Խոսրով Նուշիրուան. — Յունաց ու Հայոց դէմ եղած պատերազմները. — Իր կառավարութիւնը. — Որմիզդ Բ. — Խոսրով Աբրուզ. — Հայրապատութիւնը. — Մօրիկ կայսեր մահուանը համար եղած վրէժխնդրութիւնը. — Տարօնոյ Մուշեղ Իշխանին հետ եղած պատերազմը. — Հերակլին հետ եղած պատերազմը. — Յազկերտ Վերջին. — Սասանեանց Թագաւորութեան կործանումը :

2 ՎՌԱՄ ԿՐՄԱՆ (390-401) : Շապհոյ որդին Արտաշիր երբոր մեռաւ, տեղը Թագաւորեց որ-

---

1 Քանի՞ տարի Թագաւորեց Շապուհ :
2 Շապուհ Երկայնակեացին ո՞վ յաջորդեց :

դին Վռամ Կրման կամ Կրմանշահ, որ հօրը կենդանութեան ատեն Կրմանայ երկիրը Թագաւոր դրուեր էր։ Շատ սէր ցուցուց Կրման Հայոց վրայ. մեր Վռամշապուհ Թագաւորին հետ ալ բարեկամացաւ, անոր եղբայրը Խոսրովը Անյուշ բերդէն հանեց ու պատուով պահեց։ Եւ ինքը Վռամ տասնըմէկ տարի խաղաղաւէտ Թագաւորութիւն քշելէն ետքը մեռաւ (401)։

¹ ՅԱԶԿԵՐՏ Ա. (401-421)։ — Յազկերտի Թագաւորութեանը տասնըհինգերորդ տարին երբոր մեր Վռամշապուհ Թագաւորը մեռաւ, Նախարարաց խորհրդովը սուրբն Սահակ գնաց Յազկերտէն խնդրեց որ Խոսրովը Հայաստան դարձընէ։ Յանձն առաւ Թագաւորը. բայց երբոր Խոսրով Ճամբան մեռաւ, Յազկերտ ուզելով որ Հայոց Նախարարները քրիստոնէական հաւատքէն դարձընէ, չուզեց իր բաժնին մէջ նոր հայ Թագաւոր դնել. այլ շուտ մը իր Շապուհ որդին Թագաւորեցուց ու հոն ղրկեց. իսկ ինքը սկսաւ քրիստոնեաները չարչարել ու շատ մարդ մարտիրոս ըրաւ, ինչուան որ սրբոյն Սահակայ ու Մարութա եպիսկոպոսին աղաչանքովը դադրեցուց հալածանքը։

² Հալածանքը դադրեցընելէն ետքը անկողին ընկաւ Յազկերտ. Շապուհ լսելուն պէս՝ Հայաստանէն շուտ մը Պարսկաստան գնաց, հօրը Թագաւորութիւնը առաւ, բայց չկրցաւ վայելել. վասն զի Թէպէտ նոյն օրերը Յազկերտ մեռաւ, սակայն

¹ Յազկերտ Ա. ինչպէս վարուեցաւ Հայոց հետ։
² Յազկերտին յաջորդ ով եղաւ։

ինքն ալ հօրը ծառաներէն սպաննուեցաւ (421) :

1 ՎՌԱՄ Բ (421-441) : — Վռամ Թագաւորելուն պէս՝ քրիստոնէից վրայ սաստիկ հալածանք մը հանեց, ան պատճառաւ Յունաց կայսեր Փոքր Թէոդոսին հետ ալ մէջերնին պատերազմ բացուեցաւ, որովհետև Վռամին ձեռքէն փախչող քրիստոնեաները սիրով կ'ընդունէր Թէոդոս. բայց երբոր հաշտութիւն ըրին, Վռամ իր բարկութիւնը Հայոց վրայ Թափեց, որ Պարսից զօրքը ջարդեր էին, ու տակնուվրայ ըրաւ երկիրը : Ետքը տեսնելով որ Հայաստան աւերակ կը դառնայ ու իրեն հարկ տուող չմնար, հաշտութիւն ըրաւ Նախարարաց հետ, ու Վռամշապհոյ որդին Արտաշէսը Հայոց Թագաւոր դրաւ, անունն ալ փոխեց իր նախնոյն Արտաշիր Սասանեանին անունովը Արտաշիր դրաւ : Բայց ետքը Նախարարաց ամբաստանութեանը հաւատալով՝ սուրբ Սահակը բռնեց բանտ դրաւ, Արտաշիրին ձեռքէն ալ Թագաւորութիւնը առաւ, զինքը Խուժաստան քշեց, ու Արշակունեաց Թագաւորութիւնը վերցնելով Հայաստան Վեհմիհրշապուհ անունով Պարսիկ մարզպան մը խրկեց (428) : Ետքերը խաղաղ կեանք մը անցուց Վռամ, ու քանիմէկ տարի Թագաւորելէն ետև մեռաւ (441) :

2 ՅԱԶԿԵՐՏ Բ ՀԱԼԱԾՈՂ (441-458) : — Յազկերտ հօրը Թագաւորութիւնը տակնուվրայ ըրաւ,

---

1 Վռամ Բ ի՞նչպէս ըրաւ Թագաւորութիւնը :
2 Յազկերտ Բ ի՞նչ կերպով սկսաւ Թագաւորութիւնը :

քրիստոնէից դէմ սաստիկ հալածանք հանեց իր չարամիտ Միհրներսեհ հազարապետին խորհրդովը, ու զամէնքը կ'ուզէր կրակապաշտութեան դարձընել: Միտքը դրեր էր որ բոլոր աշխարհիս տիրէ. Յունաց կայսրէն միայն քիչ մը կը վախնար, զանիկայ ալ խոնարհեցընելու համար անհամար զօրքով վրան յարձըկեցաւ ու շատ գաւառներ աւրեց ապականեց:

1 Թէոդոս կայսրը Յազկերտին հետ պատերազմելու կարողութիւն չունենալով՝ անոր դրած ծանր ծանր պայմանները յանձն առաւ ու հետը հաշտութիւն ըրաւ: Յազկերտ Տիզբոն որ դարձաւ, սաստիկ հրաման հանեց որ իր տէրութեանը մէջ գտնուողները իր հաւատքը ընդունին, և կրակին ու արեգակը Աստուծոյ տեղ չպաշտողները չարաչար տանջանքներով սպաննուին: Մեր Հայաստանին վրայ ալ՝ աւելի հայրենատեաց Վարազվաղան ու Վասակ իշխաններուն գրգռելովը՝ շատ չարիք հասուց, ինչուան որ սրբոց Վարդանանց ու Ղեւոնդեանց արիւնովը սրտին գազանութիւնը քիչ մը հանդարտեցաւ: Տասնըինը տարի ատանկ արիւնահեղ Թագաւորութիւն ընելէն ետքը մեռաւ Յազկերտ որ Հալածող ըսուեցաւ (458):

2 ՈՐՄԶԴԱՏ, ՊԵՐՈԶ (458-485): — Յազկերտի մահուընէն ետքը երկու տարի անդադար իրարու հետ կռուեցան իր երկու որդիքը Որմզդատ և Պերոզ. վերջապէս Պերոզ յաղթող ելլելով՝ հօրը

---

1 Քրիստոնէից դէմ ինչ հալածանք հանեց:
2 Հալածող Յազկերտին ով յաջորդեց:

աթոռը նստաւ ։ Այս երկու եղբարց կռուոյն ժամանակը Աղուանից Թագաւորը Վաչէ ապստամբեցաւ Պարսից Թագաւորութենէն․ շատ զօրքով վրան գնաց Պերոզ որ նուաճէ, բայց չարաչար յաղթուեցաւ, ու հաշտութիւն ուզեց ընել հետը ։ Յանձն չառաւ Վաչէ․ նորէն շատ զօրք վարձեց Պերոզ ու վրան պատերազմի գնաց․ և տեսնելով որ Աղուանից երկրին կէսն ալ ոտնակոխ ընելով չկրնար Վաչէն խոնարհեցընել, պատերազմը դադրեցուց ու հետը հաշտութիւն ըրաւ (461)։

[1] Պերոզ Հայոց նախարարներուն ազատութիւն տուաւ որ իրենց հայրենիքը դառնան ։ Ետքը Հեփթաղներուն վրայ պատերազմի ելաւ, որ հիւսիսային լեռընցի հոնաց մէկ ցեղն էին․ անոնք փախչիլ ձևացընելով՝ տարին Պերոզը զօրքովը լեռներու մէջ փակեցին ու ոչխարի պէս չորս կողմէն զանոնք պիտի ջարդէին ։ Նեղար Պերոզ յուսահատած կը մտածէր, Հեփթաղաց Թագաւորը մարդ խրկեց անոր որ “ Եթէ զիս քեզի տէր ճանչնաս, ինծի երկրպագութիւն ընես ու երդուըննաս որ մէյմըն ալ մեզի հետ չես պատերազմիր՝ անվնաս կը թողում որ երթաս ,,։ Այս նախատինքը յանձն առաւ Պերոզ, ու Թագաւորին կամքը կատարեց (481)։

[2] Պարսկաստան դառնալէն ետքը լսեց Պերոզ թէ Վահան Մամիկոնեան կը յորդորէր նախարարները որ Պարսիկները իրենց երկրէն հալածեն․ բարկացաւ, անոր Վարդ եղբայրը բանտ դրաւ, Վահանին վրայ ալ շատ զօրք խրկեց որ կենդանի

---

1 Պերոզ ինչպէս յաղթուեցաւ Հեփթաղներէն ։
2 Հայոց հետ ինչ պատերազմ ունեցաւ ։

բռնեն զանիկայ կուսակցացը հետ իրեն բերեն ։ Եւակէ ետև խրկած անհամար զօրքերը չկրցան յաղթել քաջին Վահանայ, որ երեսուն հոգւով հազարաւոր Պարսից մէջ մտան, հարիւրաւոր հոգի գետինը փռեցին, ու Շապուհ մարզպանին բոլոր զօրքը սարսափեցուցին (483) ։

[1] Հազիւ թէ վրան երկու տարի անցաւ, ուխտադրուժ Պերոզ թագաւորը Հեփթաղաց հետ ըրած երդումը ոտքի տակ առնելով նորէն անոնց վրայ պատերազմի ելաւ, բոլոր զօրքը ջարդուեցաւ, ինքն ալ իր երեսուն որդւոցը հետ մէկտեղ ընկաւ մեռաւ (485) ։

[2] ՎԱՂԱՐՇ (485-488) ։ — Վաղարշ իր Պերոզ եղբօրը յաջորդելով Հայաստանը խաղաղեցուց, Վահանը կանչեց, շատ սիրով խօսեցաւ հետը, խնդիրքը կատարեց ու Հայաստանի վրայ զինքը մարզպան ու սպարապետ դրաւ ։ Այսպիսի խաղաղասէր բնաւորութեանը հետ քիչ մըն ալ զինուորական հանճար չունէր Վաղարշ որ Հեփթաղներուն դէմ ելլէր ու հարկ չտար անոնց. ուստի նախարարները զինքը թագաւորութենէ ձգեցին, ու տեղը Պերոզի որդին Կաւատը դրին (488) ։

[3] ԿԱՒԱՏ ՊԵՐՈԶԵԱՆ (488-531) ։ — Կաւատ Վահան Մամիկոնեանը իր մարզպանութեանը մէջ հաստատեց. բայց ետքը մոգերուն դրդութեամբը

---

1 Ի՞նչ կերպով մեռաւ Պերոզ ։
2 Պերոզին ո՞վ յաջորդեց ։
3 Կաւատ ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը ։

քրիստոնէից դէմ հալածանք հանեց, ու ամէն տեղ մոգեր խրկեց որ երթան կրակատուններ շինեն: Աս բանիս համար քաջն Վահան Պարսիկցմէ ապստամբեցաւ, անոնց զօրացը վրայ յարձակեցաւ ու շատը ջարդեց: Կաւատ անձամբ ճամբայ ելաւ որ Հայերէն վրէժն առնու. ան միջոցին չորս կողմի ազգերն ալ սկսան Պարսկաստանի վրայ արշաւել. և Կաւատ կարծելով որ անոնց ապստամբութեանը պատճառ իր նախարարներն են, երբոր սկսաւ զանոնք նեղել, զինքը թագաւորութենէն ձգեցին, Անյուշ բերդն աքսորեցին ու տեղը Ջամասպ իշխանը թագաւորեցուցին (497):

[1] Կաւատայ թագուհին իր երկանը վրայ մեծ սէր ունենալով՝ բանտապետին հետ բարեկամացաւ, անոր պիտոյքը անձամբ կը տանէր ու զինքը կը հոգար. գիշեր մըն ալ իր կանացի հագուստը անոր հագուեցուց ու բերդէն դուրս հանեց. Կաւատ ալ պատրաստ կեցած քառաձի կառքին մէջ հեծաւ, Հեփթաղաց քովը գնաց, անոնց թագաւորին աղջիկն իրեն կին առաւ, շատ զօրքով եկաւ Ջամասպը վռնտեց ու նորէն թագաւորութեանը տիրեց:

[2] Անկէց ետքը Կաւատ Յունաց Անաստաս կայսեր վրայ պատերազմի գնաց, որ ուզած տուրքը չէր տուած, ու եկաւ Ամիդ կամ Տիգրանակերտ (Տիարպէքիր) քաղաքը պաշարեց (502): Կայսրը շատ ընծաներով Հռուփինոս իշխանը խրկեց և ա-

---

1 Կաւատայ թագուհւոյն վրայ ի՞նչ կը պատմուի:
2 Ի՞նչ կերպով տիրեց Կաւատ Տիգրանակերտ քաղաքին:

ղաչեց որ իր սահմաններէն դուրս ելլէ · Կաւատ բռնեց պանիկայ կապեց, ու քաղաքին պաշարումը աւելի սաստկացուց ։ Բայց յիսուն հազարի չափ մարդ կորսնցընելէն ետև՝ երբոր յուսահատած ետ դառնալու կը մտածէր, զինուորին մէկը պարսպային քովերը պտըտելու ատեն ստորերկրեայ ծածուկ ճամբայ մը գտաւ, յանկարծ գիշերանց անկէ ներս վազեցին Պարսիկք, քաղաքը առին, ութսուն հազար հոգի ջարդեցին, և զամէնքն ալ թրէ պիտի անցընէին՝ թէ որ ծեր յոյն քահանային մէկը իր ճարտարութեամբը կատղածը չդադրեցընէր. “ Տէր արքայ, ըսաւ Կաւատին, քեզի պէս մեծազօր թագաւոր մը յաղթուողները սպաննել տալով իր փառքը կը պակսեցընէ ։ -- Ուրեմն ինչու համար իրենց յամառութեամբը համբերութիւնս հատցուցին ,, ըսաւ թագաւորը ։ Պատասխան տուաւ ծերունին. “ Վասն զի Աստուած կ'ուզէր որ աւելի քու քաջութեամբդ տիրես աս քաղաքիս քան թէ մեր վատութեամբը ,, ։ Աս արիական և միանգամայն շողոքորթ պատասխանով յաղթականին բարկութիւնը իջաւ (Ց03) ։

¹ Հոն գունդ մը պահապան զօրք դրաւ Կաւատ, ու անցաւ Միջագետքը գնաց և Հռուփինոս իշխանը՝ որ չըլթայակապ հետը կը պտըտցընէր՝ խրկեց որ երթայ տեսածները կայսեր պատմէ ։ Քիչ ատենէն մեռաւ Կաւատ, ու իրեն յաջորդ թողուց Խոսրով որդին (Ց31) ։

---

¹ Կաւատ ինչպէս մեռաւ, և ով յաջորդեց իրեն ։

1 ԽՈՍՐՈՎ ՆՈՒՇԻՐՈՒԱՆ (531-579) : — Այս պատերազմասէր թագաւորը աթոռը նստելուն պէս՝ Յունաց վրայ պատերազմի ելաւ, ու անոնց շատ տեղերուն տիրեց. Սարգսուպոլիս քաղաքն ալ պաշարեց առաւ, և բնակչաց վնաս չընելու համար ուզեց որ սրբոյն Սարգսի եկեղեցւոյն արծաթեղէնները իրեն տան : Բերողներուն հարցուց Խոսրով թէ ուրիշ բան մնա՞ց. երբոր ըսին թէ սրբոյն Սարգսի ոսկերաց մասունքը միայն մնացին՝ ան ալ ուզեց առնել. ան ատեն պարսպին վրայ շատ մը վահանաւոր սպառազէն զօրքեր երեւցան. սոսկաց Խոսրով, իմացաւ որ սրբոյն Սարգսի գունդն է անիկայ, գովեց քրիստոնէից հաւատքը ու ետ դարձաւ :

2 Յուստինիանոս կայսրն ու Խոսրով մէկզմէկ խոնարհեցընելու մտքով շատ տարիներ բիւրաւոր մարդկանց արիւնը թափելէն ետքը ուզեցին հաշտութիւն ընել, ու յիսուն տարուան զինադադարում ըրին : Բայց երբոր Սուրէն Ճիհր պարսիկ մարզպանը սկսաւ Հայերը չարչարել, անոնք ալ Յուստինիանոս կայսեր դիմեցին, և իրմէ զօրք առած՝ գնացին Դուին քաղաքին մէջ Սուրէն Ճիհր մարզպանը, զօրքն ու բոլոր մոգերը սպաննեցին : Այս լուրն որ առաւ Խոսրով մէկէն պատերազմի պա-

---

1 Խոսրով Նուշիրուան ի՞նչպէս սկսաւ թագաւորութիւնը :

2 Յուստինիանոս կայսեր հետ ի՞նչ պատերազմներ ունեցաւ :

տրաստութիւն տեսաւ. Նախ Հայաստանի վրայ դիմեց, ու շատ անգամ Վարդան երկրորդ Մամիկոնեանին հետ զարնուելէն ետքը՝ բոլոր Յունաց տէրութեանը մէջ ապստամբ սփռեց, մէկ գիշերուան մէջ Մելիտինէն առաւ, այրեց, ու բոլոր փոքր Ասիան տակնուվրայ ըրաւ: Աս բաներուս վրայ սրտին ցաւէն Յուստինիանոս կայսրը խելքը կորսնցուց. իրեն յաջորդը Տիբերիոս ջանաց Խոսրովին բարկութիւնը իջեցընել ու հետը հաշտութիւն ըրաւ:

1 Այսպիսի յաջողութեանց ատենը յանկարծ հիւանդացաւ Խոսրով. շուտ մը Պարսկաստան գնաց, և երբոր տեսաւ որ պիտի մեռնի, սկսաւ այնչափ ձոխութեանն ու յաղթութեանցը վրայ ափսոսալ որ երազի մը պէս անցան գնացին. “ Ես զանոնք բռնեցի, կ՚ըսէր, և անոնք զիս թողուցին ”. և ինչպէս որ թէ մեր և թէ օտար ժամանակակից պատմիչները կը վկայեն, նոյն ատենը Աստուծոյ շնորհքովը ճանչցեր է Խոսրով ճշմարտութեան սուրբ հաւատքը ... 

Պատերազմասիրութեանը հետ ուսումնասէր ալ էր Խոսրով, Պղատոնի ու Արիստոտելի շատ գրուածքները բերնուց սերտեր էր, և ասով Կիւրոսէն ու Դարեհէն աւելի վեր եղաւ: Արդարասիրութեանը համար Արդար ըսուեցաւ, վեհանձնութեանը համար ալ Նուշիրուան այսինքն Վեհանձն:

---

1 Խոսրովու վերջը ի՞նչպէս եղաւ:

[1] ՈՐՄԻԶԴ Բ (579–598)։ — Թէպէտ հօրը քաջութիւնը չունէր Որմիզդ, սակայն չուզեց կայսեր հետ հաշտութիւն ընել. Տիբերիոս վրան Մօրիկ հայկազն զօրավարը խրկեց, որ գնաց Որմիզդին յաղթեց, զինքը հալածեց, ու շատ քաղաքներ առաւ ձեռքէն։ Որմիզդ բազմութեամբ զօրաց Վահրամ զօրավարը խրկեց Յունաց վրայ. բայց երբոր ան ալ յաղթուեցաւ, բարկացաւ վրան Որմիզդ, ու զանիկայ նախատելու համար՝ կանացի հագուստ մը ընծայ խաւրեց անոր։ Իսկ Վահրամ որ արդէն զօրացը ջարդուելուն նեղացեր էր, աս նախատանաց վրայ աւելի զայրացաւ, բոլոր զօրքը Թագաւորին դէմ գրգռեց, ու ծանր խօսքերով նամակ մը գրեց անոր՝ վերնագիրը այսպէս դնելով. "Որմզդայ դստեր Խոսրովու խընդալ"։ Բայց ան միջոցին Պարսկաստանի մէջ խռովութիւն մը ելլելով՝ Որմիզդը Թագաւորութենէն ձգեցին, աչուըները հանեցին, զինքը բանտ դրին ու տեղը անոր Խոսրով որդին Թագաւորեցուցին (592)։

[2] ԽՈՍՐՈՎ Բ ԱՊԸՐՈՒԶ (592-628)։ — Խոսրով Բ Թագաւորելուն պէս՝ զհայրը մխիթարելու համար անոր ընծաներ խրկեց. երբոր արհամարհեց ու մերժեց զանոնք Որմիզդ, բարկացաւ Խոսրով, ու հրաման տուաւ որ սպաննեն Որմիզդը։

---

1 Խոսրովին յաջորդը Որմիզդ ի՞նչպէս ըրաւ Թագաւորութիւնը։

2 Խոսրով Բ ի՞նչպէս Թագաւորեց։

Աս հայրապետութեան վրայ զօրքը բարկացան, ու Վահրամայ դէմ պատերազմի գնացած ատեննին Թագաւորը Թողուցին, Վահրամի կողմն անցան : Խոսրով մտածեց որ Թագաւորէ մը օգնութիւն խնդրէ . բայց չկարենալով մէկու մը վստահիլ՝ միմիակ անծանօթ տեղ մը գնաց, ձիէն իջաւ, սանձարձակ Թողուց զձին որ ուր որ երթայ՝ ինքն ալ ետեւէն երթայ, միանգամայն քրիստոնէից աստուծոյն կ'աղաչէր որ ձիուն ընթացքը աղէկ տեղ մը ուղղէ . լաւ ալ ըլլալով որ սուրբն Սարգիս նեղութեան ատեն ամենուն օգնութիւն կը հասնի՝ անոր դիմեց : Ձին դէպ 'ի Փոքր Հայք երթալով, գնաց Խոսրով հանդիպեց յոյն իշխանին ընկաւ . Մօրիկ կայսրը խոստացաւ անոր օգնել, ու շատ զօրքով երկու քաջ զօրավարներ խրկեց : Անոնց օգնութեամբը գնաց յաղթեց Խոսրով Վահրամին, ու նորէն Թագաւորութիւնը ձեռքն առնելով Յոյն զօրացը առատ պարգեւ բաժնեց, Մօրիկ կայսեր ըրած բարեացն ալ փոխարէն շատ քաղաքներ տալէն զատ, սուրբն Սարգսի օգնութեանը յիշատակ՝ անոր եկեղեցւոյն ոսկիէ քարերով զարդարած խաչ մը խրկեց, ու ետ դարձուց նաեւ ան փառաւոր խաչը՝ որ իր պապը Խոսրով Ա. յափշտակեր էր սուրբն Սարգսի վկայարանէն (592) :

[1] Երբոր լսեց Խոսրով որ Փոկաս իր բարերար Մօրիկ կայսրը մեռցընելով տեղը անցեր է, սաստիկ բարկացաւ, վրան պատերազմի ելաւ, անոր

---

1 Փոկասու վրայ ինչ պատճառաւ գնաց Խոսրով Բ :

կօրացը մեծ ջարդ տուաւ, գնաց ինչուան Քաղկեդոնն ալ առաւ ու ամբաւ աւարով ետ դարձաւ ։ Ետքը (604) տասըհազար զօրքով իր Միհրան քեռորդին խրկեց որ երթայ Տարօնոյ Մուշեղ իշխանը բռնէ իրեն բերէ, որովհետև իր Յունաց վրայ պատերազմի գնացած ատենը Մուշեղ չէր ուզած հետը գալ. բայց Մուշեղ խորագէտ Գայլ Վահանին ձեռքովը կոտրեց Պարսից զօրքն ու անոնց ամէն ջանքը պարապ հանեց (608) ։

¹ Խոսրով Հերակլ կայսեր թագաւորելը լսելուն պէս՝ իր Խոռեամ փեսան շատ զօրքով Յունաց վրայ խրկեց. Խոռեամ ամէն անցած տեղերը տակնուվրայ ընելով հասաւ ինչուան Պաղեստին, Երուսաղէմ քաղաքն առաւ, յիսուն հազար մարդ ջարդեց, երեսուն հազար գերի բռնեց, Քրիստոսի Տէառն մերոյ սուրբ Խաչն ալ առաւ Պարսկաստան տարաւ, և իր մեհենին մէջ դրաւ (614)։ Ետքը երբոր լսեց որ Հերակլ կայսրը անհոգ կեցած է, անհամար զօրքով վազեց նորէն, ու կայսերութեան գաւառները ոտնակոխ ըրաւ ։ Կայսրը դեսպան խրկեց, ուզեց հետը հաշտութիւն ընել, և խնդրեց որ սուրբ Խաչը ետ դարձընէ ։ Բայց երբոր Խոսրով խստութեամբ մերժեց զանոնք ըսելով որ եթէ հաշտութիւն կ'ուզես՝ նախ քրիստոնէութիւնը թող, Հերակլ բոլոր ուժովը վրան պատերազմի ելաւ, ու շատ անգամ յաղթեց անոր. և երբոր չէր ուզեր Խոսրով խոնարհիլ, հաշտութիւն ընել, Կաւատ որդին պալատին մէջ

---

¹ Հերակլի ատենն ի՞նչ արշաւանք ըրաւ ։

զէնքը զարկաւ սպաննեց (628), կայսեր հետ հաշտութիւն ըրաւ, ու սուրբ Խաչը ետ դարձուց։

[1] ՅԱԶԿԵՐՏ ՎԵՐՋԻՆ (629–652)։ — Խոսրովու մահուընէն ետքը իշխանները իրարու ձեռքէ կը յափշտակէին թագաւորութիւնը, ինչուան որ Խոսրովին թոռը տասնուերկու տարեկան Յազկերտ երրորդը թագաւորեցուցին։ Ասոր ատենը Արաբացիք զօրանալով, շատ տեղերու տիրելէն ետքը գնացին Պարսկաստանն ալ առին, Սասանեանց թագաւորութիւնը կործանեցին, Յազկերտն ալ փախչելու ատենը բռնեցին սպաննեցին (652)։

---

[1] Խոսրով Աբրուէզին ո՞վ յաջորդեց։



## ԳԼՈՒԽ Ը.

Պատմութիւն Գաղղիոյ՝ Կլոթարիոսէն ինչուան Պեպինոս կարճահասակ (561–752)։ — Պատմութիւն Սպանիոյ՝ Վեսիգոթաց ժամանակը (476–710)։ — Պատմութիւն Իտալիոյ՝ Լոմպարտացւոց ատենը (591–712)։ — Սլաւեանք։ Կլոթարիոսի որդիքը. — Աւստրասիա և Նեւստրիա. — Բրունեհոլտ և Փրետեգոնտա. — Արքաներ հազարապետները. — Եբրոյինոս. — Լեգերիոս եպիսկոպոսը. — Պեպինոս Հերիստալ. — Ռենֆրուա. — Կարոլոս Մարթել. — Կարլովինգեանք. — Վամբայի առաջին յաջորդները. — Լեովիգիլդ. — Ռեքարէդ. — Գոթացւոց դարձը. — Սիսեբուտ. — Սուինթիլա. — Հռոդերիկոս. — Վեսիգոթաց թագաւորութեան կործանումը. — Աւթարիոյ յաջորդները. — Ագիլուլֆ. — Երիաթի պատն. — Հռոթարիս օրէնսդիր. — Կրիմոալտ. — Քունիպերթ. — Ալաքիս բռնաւորը. — Քունիպերթի յաղթութիւնը. — Իրեն յաջորդները. — Լուիթփրանդ. — Դիտիէրոս. — Լոմպարտացւոց թագաւորութեան կործանումը. — Սլաւեանք. — Պոհեմիոյ ու Լեհաստանի թագաւորութիւնները և Լիտուանիէ իշխանութիւնները։

1 ԿԼՈԹԱՐԻՈՍԻ ՅԱՋՈՐԴՆԵՐԸ։ — *Գաղղիոյ թագաւորութիւնը 561ին Կլոթարիոսի չորս որդւոցը մէջ բաժնուեցաւ. Սիգեբերտոս Աւստրասիան կամ Արեւելեան Գաղղիան առաւ, Քիլպերիկոս Սուասոնը, Կոնթրան՝ Պուրկոյնը և Օռ-*

---

1 *Կլոթարիոսի ո՞վ յաջորդեց։*

լեանը, Քարիպերթին ալ Փարիզը : Քարիպերթ շուտ մեռնելով՝ տէրութիւնը Սուասոնի թագաւորին թողուց, որ անկէ ետքը Նեւստրիոյ կամ Արեւմտեան Գաղղիոյ թագաւոր ըսուեցաւ :

1 Ան ատեն բացուեցաւ Աւստրասիացւոց ու Նեւստրացւոց կռիւը, որուն պատճառը աս եղաւ : Սպանիոյ Գոթացւոց Աթանագիլդ թագաւորը երկու աղջիկ ունէր, Բրունեհօլտ կամ Պրիւնհոյ և Կալսուինթա. ատոնք երկուքն ալ Գաղղիոյ թագաւորաց հետ կարգուեցան. Բրունեհօլտ Սիգեբերտոսին հետ, Կալսուինթան ալ Քիլպերիկոսին : Բայց Քիլպերիկոսի պալատը Փրեդեգոնտա անունով սպասաւոր կին մըն ալ կար՝ որ ձեռքէ տալէ կը ջանար թագուհի ըլլալու, և աս փափաքին հասնելու համար ամէն չարիք կը մտածէր : Օր մը Կալսուինթա անկողնի մէջ մեռած գտնուեցաւ. վասն էրիկը Քիլպերիկոս քանի մը օր լացաւ վրան ու ետքը իրեն կին առաւ Փրեդեգոնտան, որուն ան սպանութեանը պատճառ ըլլալը ամէնքը գիտէին (567) : Պրիւնհոյ իր քրոջը մահուան վրէժխնդրութեամբը վառուած՝ Սիգեբերտը պատերազմի գրգռեց. ան ալ գնաց Նեւստրիոյ մէջ շատ յաղթութիւններ ըրաւ : Քիլպերիկոս Թուռնէ քաղաքին մէջ պաշարուած՝ քիչ մնաց որ թագաւորութեանը հետ կեանքն ալ կորսնցընէր. Փրեդեգոնտայի մարդիկը Սիգեբերտը սպաննեցին, ու Պրիւնհոն գերի բռնեցին. բայց անոր որդին Քիլդեբերտ Բ Աւստրասիացւոց

1 Աւստրասիացւոց ու Նեւստրիացւոց պատերազմին պատճառը ինչ էր :

քովը փախաւ ու հոն թագաւոր պսակուեցաւ (575) ։

[1] Փրետեգոնտա յուսալով որ իր Կլոթարիոս Բ որդւոյն անունովը ինքը կը թագաւորէ, իր Էրիկը Քիլպերիկոսը սպաննել տուաւ. անկէց ետքը Բրունեհոլտի վրայ պատերազմի ելաւ, փառաւոր յաղթութիւն մը ըրաւ, յաղթանակով Փարիզ մտաւ ու բոլոր թշնամեացը թրով ու թոյն տալով յաղթելէն ետև մեռաւ ։ Բրունեհոլտ թէպէտ իր ոխերիմ թշնամւոյն ձեռքէն ազատեցաւ, բայց չկրցաւ հանգիստ ապրիլ ։ Փրետեգոնտայի որդին Կլոթարիոս բռնեց զինքն ու իրեք օր տանջել տալէն ետքը՝ ուղտի մը վրայ նստեցուցած՝ բանակին մէջ կիսամեռ պտըտցընել տուաւ, ու ողջ ողջ ձիու մը պոչէն կապել տալով մարմինը կտոր կտոր ըրաւ ։ Երբոր այսպիսի աղէտալի մահուամբ ու թշնամեայ Բրունեհոլտ թագուհին և իր երկու թոռները մեռան, Կլոթարիոս Բ բոլոր Փրանկաց վրայ թագաւոր եղաւ (613) ։

[2] Ինքը Կլոթարիոս Բ ալ երբոր մեռաւ (628), որդին Դագոբերտոս կամ Տակոպեր իրեք մեծամեծ թագաւորութեանց ալ տիրեց, այսինքն Նեւստրիոյ, Աւստրասիոյ և Պուրկոյնի ։ Բոլոր խռովարարները իրմէ վախնալով հնազանդեցան, և Կլովիսի ցեղէն թագաւոր մը չէր եղած որ իրեն պէս իշխանութիւնը ամենուն պատկառելի ընէր, ու անոր չափ պերճութիւն բանեցընէր ։ Բայց քիչ ատենէն ինքզինքը զեղխութեան ու անգթու-

---

1 Բրունեհոլտ ի՞նչպէս մեռաւ ։
2 Կլոթարիոս երկրորդին ո՞վ յաջորդեց ։

թեան ալ տուաւ , արդարութիւնը մոռցաւ , ժողովրդեան վրայ ծանր տուրքեր դրաւ , ու սաստիկ յաղթուեցաւ Վինոք ըսուած Սլաւեան ազգէն , որ Պոհեմիոյ մէկ կտորին տիրելով հոն իրենց թագաւորութիւն հաստատեցին : Թագաւորութեանը վերջի տարիները Վասկոններուն յաղթեց Տակոպէր , Ակուիտանիոյ մէջ ելած խռովութիւնը դադրեցուց , ու Պրեթոններուն հետ դաշինք դրաւ որ իր նախագահութիւնը ընդունեցան :

1 Տակոպերի մահուընէն ետքը (638) , Մերովեան ցեղին վատ ու զեղխ թագաւորները արժանապէս պատմութեան մէջ Դատարկապորտ Թագաւորք ըսուեցան : Իրենց տեղը Հազարապետք արքունեաց ըսուած իշխանները տիրապետելով մէյմէկ թագաւորի պէս ընկճեցին բոլոր մեծամեծները , որպէս զի միայն իրենց ձեռքը մնայ իշխանութիւնը , որ իրենց որդւոցը իբրև ժառանգութիւն կուտային : Տակոպերի որդւոցն ու անոնց յաջորդացը ատենը Աւստրասիոյ հազարապետները նորէն սկսան Բրունեհոլտի ու Փրեդեգոնտի կռիւները :

2 Եբրոյինոս կամ Էպրուէն անունով խելացի մարդը ան ատեն հազարապետ էր արքունեաց , սակայն չկրցաւ երկար ժամանակ միապետական իշխանութիւնը բանեցընել . աւստրասիացի մեծամեծները թագաւոր մը ուզեցին որ առջիններուն պէս իրենց ձեռքին տակն ըլլայ . Կլովիս երկրորդին Քիլտերիկոս որդին բերին ու Աւստրասիոյ թագաւոր անուանեցին : Ան ատենը Ջանաց Ե-

---

1 Տակոպերէն ո՞վ յաջորդեց :
2 Ո՞վ էր Եբրոյինոս :

Եբրոյինոս որ դէմ Նեւստրիոյ ու Պուրկոյնի վրայ տիրապետէ. բայց ըրած բռնաւորութիւններուն համար բոլոր մեծամեծները ոտք ելան ։ Օթէօն քաղաքին Լեգերիոս անունով եպիսկոպոսը ապըստամբներուն գլուխ կեցած՝ բռնաւորին դէմ ելաւ ։ Առջի բերան յաղթեց Եբրոյինոս, բայց ետքը յաղթուելով եկեղեցի մը փախաւ. կեանքին խնայեցին, մազերը կտրեցին ու զինքը վանք մը գրին, և Նեւստրիոյ ու Պուրկոյնի թագաւորութիւնները Աւստրասիոյ Կիլդերիկոս Բ թագաւորին տուին ։

[1] Կիլդերիկոսի ձեռքը իշխանութիւն անցնելուն պէս, մեծամեծաց յոյսը պարապ հանեց, սկսաւ ամենուն վրայ բռնութիւն ընել. Լեգերիոս եպիսկոպոսն ալ Եբրոյինոսի գրուած վանքը փակեց ։ Աս երկուքը բանտին մէջ քիչ մը ատենի համար իրարու հետ հաշտուեցան ու Կիլդերիկոսի դէմ դաւակցութիւն մը պատրաստեցին. Թագաւորը որսի գացած ատենը դաւակիցները ետեւէն հասան, և կնոջը ու որդւոցը հետ սպաննեցին զինքը ։ Եբրոյինոս ու Լեգերիոս գերութենէ ազատեցան ու նորէն իրարու դէմ թշնամի եղան ։ Վերջապէս Եբրոյինոս արիւնահեղ պատերազմէ մը ետքը իր ահաւոր թշնամւոյն յաղթեց, աչուըները հանեց ու զինքը սպաննեց (680) ։

[2] Անկէց ետքը համարձակ սկսաւ Եբրոյինոս ուզած բռնութիւններին ընել ։ Նեւստրիոյ և Պուր-

---

1 Կիլդերիկոս ի՞նչ բռնութիւններ ըրաւ ։
2 Եբրոյինոս ի՞նչ անգթութիւններ ըրաւ ։ — Ի՞նչպէս մեռաւ ։

կոյնի մեծամեծներէն շատը Աւստրասիա փախած ըլլալով՝ Պեպինոս Հերիստալ դքսին աղաչեցին որ Եբրոյինոսէն վրէժը հանէ ։ Լաթոֆայ ըսուած քաղաքին մէջ սաստիկ զարնուեցան, և դարձեալ յաղթող եղաւ Եբրոյինոս. բայց չկրցաւ յաղթութեանը պտուղը վայելել ։ Վասն զի Երմանֆրոս իշխանը իմանալով որ վրան մահուան վճիռ պիտի ելլէ, զարկաւ թուրը Եբրոյինոսին գլուխը պատռեց, Աւստրասիա փախաւ ու Պեպինոս դքսէն մեծ պատիւ ընդունեցաւ (681) ։ Եբրոյինոս աւանց թագաւորական գաւազանի ու թագի քսան տարի թագաւորեց այնպիսի իշխանութեամբ՝ որ իրմէ առաջ եղած թագաւորներէն մէկն ալ չէր ունեցած ։

1 Եբրոյինոսէն ետքը Նեւստրիոյ մէջ քաղաքական կռիւները շատցան. աքսորուած իշխանները նորէն սիրտ առին, Պեպինոս Հերիստալէն աղաչեցին և որոշեցին որ մէկ արշաւանք մըն ալ ընեն ։ Պեպինոս ան պատերազմին սպարապետ ընտրուեցաւ, Նեւստրիացւոց դէմ մեծ յաղթութիւն մը ըրաւ, Թիէրրի թագաւորնին ալ գերի բռնեց ու բոլոր Փրանկաց երկիրը ինքը սկսաւ կառավարել (687) ։

2 Անկէց ետքը Պեպինոս ճարտարութեամբ բռնեց ան թագաւորներն որ թագաւորի անունը միայն ունէին, ու բերդի մը մէջ փակեց ։ Ժողովքի

---

1 Եբրոյինոսի մահուընէն ետքը Նեւստրիոյ վիճակը ինչպէս եղաւ ։

2 Պեպինոս ինչպէս վարուեցաւ իր ատենի վատ թագաւորներուն հետ ։

օրերը զանոնք եզան կառքի վրան նստեցուցած իր առջևը քշել կուտար, որպէս զի իր հրամանները մտիկ ընեն: Այս կերպով թագաւորեցին Թիւդերիք Գ., Կլովիս Գ., Քիլդեբերտ Գ. և Տակոպերտ Գ.:

[1] Պեպինոս Հերիստալ քսանևեօթնամեայ Փրանկաց վրայ իշխելէն ետև երբոր մեռաւ (714), Նևստրիացւոց հազարապետը Ռէնֆրուա՝ Դանիէլ անունով մէկը վանքէն հանեց (որ Քիլդերիկոս երկրորդին որդին է կ'ըսէին) և թագաւորեցուց, ջանաց ալ որ ձորէն Աւստրասիան նուաճէ: Բայց Աւստրասիացւոց իշխանները իրենց գլուխ դրին Պեպինոսի Կարոլոս որդին, որ Ռէնֆրուային յոյսը փճացուց (717):

[2] Աւելի ահաւոր թշնամի եղան Փրանկաց տէրութեանը Արաբացիք, որ Ափրիկէի և Սպանիոյ տիրելով դէպ 'ի Գաղղիա քալեցին, հեղեղի պէս Պիրենեան լեռներէն անցան, Նարբոնիան նուաճեցին, Պորտոն այրեցին, Ակուիտանիան կողոպտեցին ու բնակիչքը թրէ անցուցին. Արելաս (Արլ), Նիմ, Աւենիոն քաղաքներն ալ առին ու Մ'ահմէտի դրօշը բոլոր Փռովանս գաւառին կիսակործան եկեղեցիներուն վրայ կանգնեցին:

Ակուիտանիոյ դուքսը Կարոլոսի դիմեց. ան ալ մէկէն հրաման մը հանեց բոլոր Նեւստրիոյ, Աւստրասիոյ և արևմտեան Գերմանիոյ զունդերուն որ քովը գան. անոնք վազեցին եկան, և Արաբացւոց դէմ Փուաթիէի դաշտին մէջ ճակատեցան:

---

1 Պեպինոս Հերիստալին ո՞վ յաջորդեց:
2 Արաբացիք ինչպէս արշաւեցին Գաղղիա: — Փուաթիէի պատերազմը ինչպէս եղաւ:

Եօթը օր երկու բանակները առանց պատերազմե֊լու մէկզմէկ դիտեցին. վերջապէս Սարակինոսնե֊րը որ աւելի շատուոր էին, նշան տրուելուն պէս՝ պատերազմի սկսան ու Փրանկաց վրայ վազեցին: Անոնք իրենց ձիերուն վրայ անշարժ կեցած՝ և ծանր զրահներով պաշտպանուած, երկար ատեն Սարակինոսաց նետերուն առջևը ամուր կեցան. երբոր Կարոլոս ալ պատերազմի նշան տուաւ, Գերմանացիք ու Փրանկները իրենց կացիններովը ու Թուրերովը ցորենի պէս սկսան հնձել Արա֊բացիները. անոնց սպարապետը Աբդրահման ըն֊կաւ մեռաւ, և Գաղղիացիք փառաւոր յաղթու֊թիւն կանգնեցին (732):

1 Փուաթիէի պատերազմին մէջ Կարոլոսին ցը֊ցուցած դիւցազնական քաջութեանը համար ա֊նունը Մարթէլ դրին որ Ուռն կը նշանակէ. վասն զի Սարակինոսաց անանկ ուժով զարկաւ կ՚ըսէին, ինչպէս որ ուռը սալին վրայ կը զարնեն. ինքը Կա֊րոլոս ալ Թագաւորի անուն չառաւ, ան նոր մակ֊անունը աւելի փառաւոր սեպելով, և մեռնելու ատենը Գաղղիան իր որդւոցը մէջ բաժնեց՝ քսանը֊եօթը տարի զանիկայ կառավարելէն ետքը (741):

2 Քարլոման կամ Կարլոմանոս և Պեպինոս կարճահասակ իրենց հօրը տէրութիւնը մէջերնին բաժնեցին. Կարլոմանոս Աւստրասիան առաւ, բայց քիչ ատենէն հրաժարեցաւ ու վանք մը քա֊

---

1 Կարոլոս ի՞նչ պատիւ ընդունեցաւ Արաբացւոց դէմ ըրած յաղթութեանը փոխարէն:

2 Կարոլոս Մարթելլին որդիքը ինչպէս բաժնեցին մէջերնին իրենց հօրը տէրութիւնը:

շուեցաւ. իսկ Պեպինոս առջի բերան Նեւստրիոյ Հազարապետութեամբ գոհ եղաւ, ուր Քիլդերիկոս Գ կը թագաւորէր. բայց 752ին Քիլդերիկոսի մազերը կտրեց, զանիկայ վանք մը դրաւ ու ինքզինքը թագաւոր անուանեց։ Այսանկով Կարլովինկեանք կամ Կարոլոսեանք Կլովիսին ժառանգները իշխանութենէն ձգեցին, և Մերովեանց ցեղը Քիլդերիկին մահուամբը վերջացաւ։

1 ՍՊԱՆԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ՎԻՍԻԳՈԹ ԹԱԳԱՒՈՐԱՑ ԱՏԵՆԸ։ — Ըն Վիսիգոթ թագաւորաց ատենը որ Վալլիայի յաջորդեցին՝ Սպանիոյ պատմութեան մէջ ոչ մեծութիւն կը տեսնուի և ոչ խելք սորվելու բան մը։ Բոլոր ան միջոցին անդադար կռիւ էր թագաւորներուն ու ազնուականաց մէջ, և ան դիպուածներուն ատենը քանի մը անուն հազիւ կը գտնուի որ միտք պահելու արժանի ըլլայ։

Եւրիկ թագաւորին ժամանակը (476) Վիսիգոթաց թագաւորութեանը ամենէն ընդարձակ ժամանակն է. գրեթէ բոլոր Սպանիա աս թագաւորին ձեռքը ըլլալէն ետքը, ան երկրին վրայ ալ կը տիրէր՝ որ Լուար ու Հռոդանոս գետերուն և Ովկիանոսի մէջտեղը կ'իյնայ. բայց երբոր անոր որդին Ալարիկոս Բ յաղթուեցաւ Կլովիսէն ու պատերազմին մէջ մեռաւ, Վիսիգոթները Գաղղիոյ մէջ որչափ երկիրներ որ ունէին՝ գրեթէ ամենն ալ կորսնցուցին։ Երբոր Ալարիկոսի

---

1 Վալլիայի յաջորդ Վիսիգոթ թագաւորաց ատենը Սպանիա ի՞նչ վիճակի մէջ էր։

որդին Ամալարիկոս իր հպատակներէն սպաննուե֊
ցաւ Պարսելոնա քաղաքը 531ին, Վալլիայի ցեղն
ալ իրեն հետ լմընցաւ, և Թագաւորութիւնը մէկ֊
մը աս մէկմը ան ցեղին անցնելով, և ընտրութեամբ
ըլլալով, կռիւ, անկարգութիւն և ապանութիւն֊
ներ Սպանիայէն չպակսեցան:

1 Ամալարիկոսի առաջին յաջորդները բռնա֊
կան մահուամբ մեռան: Լէովիգիլդ, որ առաջ
իր Լիուպա եղբօրը հետ, ետքը մինակ Թագաւո֊
րեց (571), յաղթող պատերազմներով իր տէրու֊
թիւնը զօրացուց. Կրանատայի լեռներէն Յոյները
հալածեց, Կանտաբրիացիներն ու Վասկոնները
նուաճեց, և Սուեւեանց Թագաւորութիւնը վեր֊
ջացուց (585):

2 Ռեքարետոս՝ Լէովիգիլդի որդին, ուզելով
ցուցընել թէ ինքն ալ իրաւցընէ հօրը պէս Թա֊
գաւոր է, անոր պէս Թագաւորական վերարկու
կը հագնէր, ձեռքը գաւազան կը բռնէր ու գլու֊
խը Թագ կը դնէր, և Թոլէտոյ քաղաքին անունը,
ուր որ ինքը սովորաբար կը կենար, Թագաւորական
քաղաք դրաւ: Աս Թագաւորը բոլոր իր ժողովրդո֊
վը քրիստոնեայ եղաւ, և անոր համար ազնուա֊
կանները իրեն դէմ ապստամբեցան: Ռեքարետոս
քաջութեամբ նուաճեց ապստամբները, և Յու֊
նաց ու Վասկոններուն յաղթելով փառաւորա֊
պէս լմընցուց իր Թագաւորութիւնը (601): Բայց
իրմէ ետքը եկող Թագաւորները անոր քաջու֊
թիւնը չունեցան ինչուան Սիսեբուտ:

---

1 Ամալարիկոսի յաջորդներուն մէջ ով եղաւ ա֊
նուանի:

2 Ռեքարետոսի վրայ ինչ կը պատմուի:

[1] Անիկայ իր աթոռին պատիւ ըրաւ իրեն արիասիրտ Թագաւոր, զօրավար ու բանաստեղծ. արեւու եւ լուսնի խաւարմանը վրայ բանաստեղծութիւն մը շինեց, քաջութեամբ պատերազմեցաւ Վասկոն կամ Պասք ըսուած ազգին հետ, Կանտաբրիոյ մէկ մասը նուաճեց, նաւեր շինել տալով գնաց Աֆրիկէի մէջ Թանճէրի ու Սեպտէի փրկեց, ու Սպանիոյ մէջ Յունաց ձեռքը տեղ չթողուց (620)։

Սիսեբուտի երկրորդ յաջորդը Սուինթիլա բոլորովին նուաճեց Կանտաբրացիքն ու ողորմածութեանը համար հայր աղքատաց ըսուեցաւ (630)։

[2] Գոթացւոց վերջին Թագաւորն եղաւ Հռոդերիկոս, որուն սաստիկ Թշնամի էին Հրեայք ու իշխանաց շատը։ Հռոդերիկոս երբոր նախատինք մը ըրաւ իշխանի մը մէկուն աղջկանը, իշխանը վրէժ առնելու համար Արաբացիքը Սպանիա կանչեց։ Արաբացւոց Թարիգ կուսակալը Աֆրիկէէն ճամբայ ելաւ, Գադեսի նեղուցէն անցաւ, Կալպէ լեռան վրայ ելաւ (որ անկէց ետքը իր անունովը Ճէպէլ-իւլ-Թարիգ այսինքն Լեռան Թարիգայ ըսուեցաւ, եւ հիմայ Ճիպրալթար կամ Ճիպիլթէռռա կ'ըսուի), Քորտովայի քով Հռոդերիկոսին հետ զարնուելով յաղթեց Հռչակաւոր Քսերէսի պատերազմին մէջ՝ որ իրեք օր քշեց, Հռոդերիկոս ալ ան պատերազմին մէջ մեռաւ (711)։ Ասանկով վերջացաւ Վիսիգոթաց Թագա-

---

1 Սիսեբուտ ինչ բանի համար անուանի է։
2 Վիսիգոթաց Թագաւորութիւնը երբ եւ ինչ կերպով վերջացաւ Սպանիայէն։

ւորութիւնը Սպանիոյ մէջ՝ երկուհարիւր իննսուն տարի տեւելէն ետքը :

[1] ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԻՏԱԼԻՈՅ՝ ԼՈՄՊԱՐՏԱՑԻ ԹԱԳԱՒՈՐԱՑ ԱՏԵՆՆԵՐԸ : — Լոմպարտացւոց տիրապետութենէն ետքը Իտալիոյ պատմութիւնն ալ Սպանիոյ պատմութեանը պէս կռուով լեցուն է. վասն զի թագաւորները անդադար կը կռուէին որ դքսերը նուաճեն : Երբոր 591ին Աւթարիս մեռաւ, Լոմպարտացիք անոր Թէոդելինտա կնոջը խոստացան որ զով որ իրեն փեսայ ընտրէ՝ զանիկայ թագաւոր ճանչնան. Թէոդելինտա իմաստուն թագուհին ալ Ագիլուլֆ անունով մէկը ընտրեց, որ քիչ մը հանդարտեցուց ժողովուրդը, և իրեն իշխանութիւնը պատկառելի ըրաւ (605) : Աս Ագիլուլֆ թագաւորը Մեծին Գրիգորի պապին ջանքովը բոլոր ժողովրդովը հանդերձ դարձաւ ուղղափառ եղաւ. ան ատենը սուրբ քահանայապետը Քրիստոսի Տեառն մերոյ խաչափայտին մէկ գամը թագաւորին ընծայեց, ան ալ առաւ, թագ մը շինել տուաւ անով՝ որ ըսուեցաւ Երկաթի պսակ, ու անկէց ետքը ան թագով կը պսակուէին Իտալիոյ թագաւորները, որ և ինչուան հիմայ կեցած է, ու Միլանի քով Մոնցա ըսուած քաղաքը կը պահուի :

[2] Ինչուան ան ատենը Լոմպարտացիք աղէկ

---

1 Լոմպարտացւոց տիրապետութենէն ետքը Իտալիա ի՞նչ վիճակի մէջ էր : — Երկաթի պսակին սկզբնաւորութիւնը ի՞նչպէս եղաւ :

2 Ո՞վ եղաւ Լոմպարտացւոց օրէնսդիրը :

օրէնքներ չունէին. Հռոթարիս երբոր թագաւորեց 636ին, անոնց օրէնքներ դրաւ : Փաւիա քաղաքը ազգային ժողով մը ընելով՝ օրինաց գիրք մը հրատարակեց, որ ետքը Կրիմուալտ թագաւորը նորոգեց ու կատարելագործեց 662ին ատենները : Աս Կրիմուալտը, և իր Հռոմուալտ որդին, որ Բենեւենտի դուքս էր, արևելեան կայսեր Կոստանդ երկրորդին յարձակմանը քաջութեամբ դէմ կեցան. ան ալ Լոմպարտացւոց բան չկարենալով ընել՝ իր կատաղութիւնը Հռոմին վրայ դարձուց, և սոսկալի անգթութիւններ ըրաւ Սիկիլիոյ մէջ :

[1] Քանի մը տարի ետքը Քունիպերթի թագաւորութեան ատենը (686) Տրիդենտոնի (Թրենթոյի) դուքսը Ալաքիս մեծ շփոթութիւն ձգեց թագաւորութեան մէջ. Քունիպերթին դէմ ապստամբելով՝ յանկարծակի անոր երկիրները ոտնակոխ ըրաւ. բայց Քունիպերթ Փաւիայի եպիսկոպոսին օգնութեամբը իրեն քով հաւատարիմ մնացած մարդիկը ժողվեց ու Ալաքիսի դէմ գնաց :

[2] Ան միջոցին որ երկու բանակները դիմացէ դիմաց կեցած էին ու պիտի զարնուէին իրարու հետ, Փաւիայի եկեղեցւոյն սարկաւագներէն մէկը Քունիպերթին մօտեցաւ, “Տէր արքայ, ըսաւ, մեր կեանքը քու վրադ է. թէ որ դուն մեռնիս, Ալաքիս ամէնքնիս ալ կը ջարդէ. ինծի տուր քու զրահներդ, ես անոր դէմ կ'երթամ ու

---

1 Ալաքիս ի՞նչ անգթութիւններ ըրաւ :
2 Ի՞նչպէս մեռաւ :

հետը կը կռուիմ,,: Թագաւորը տուաւ իր պահները, և պատերազմը սկսաւ. Ալաքիս կարծելով թէ ան սարկաւագը Թագաւորն է, շիտակ վրան վազեց ու սպաննեց զանիկայ. բայց երբոր գլուխն ալ կտրեց ու կուլանկէն իմացաւ որ սարկաւագ մըն է, սաստիկ բարկացաւ ու կանչեց. «Երդում կ'ընեմ որ եթէ Աստուած յաղթութիւն տայ ինծի, եկեղեցականներու ջարդած մարմիններով մէկ ջրհոր մը լեցընեմ,,: Բայց Քունիպերթ անդադար սիրտ կուտար իրեններուն. երկու կողմէն ալ ամենայն սաստկութեամբ պատերազմեցան, ու խիստ շատ մարդ ջարդուեցաւ. վերջապէս Ալաքիս բռնաւորն ալ ինկաւ մեռաւ, և իր զօրքը փախչելու ատեն Ատտա գետին մէջ խեղդուեցան:

[1] Քունիպերթի յաջորդներուն մէջ անուանի մարդ մը չկայ: Աւսփրանտ անունով Պաւարիացին 712ին թագաւորեց Լոմպարտացւոց վրայ. քիչ ատենէն անոր տեղը անցաւ Լուիթփրանտ որդին, որ երեսունուերկու տարի փառաւոր թագաւորութիւն ըրաւ, տէրութիւնը կարգաւորեց, ապստամբ դքսերը նուաճեց ու Յունաց ձեռքէն շատ երկիրներ առաւ (749):

[2] Երբոր Լուիթփրանտի յաջորդը Աստոլֆ մեռաւ (756), տեղը թագաւորեց Դեզիդերոս Լոմպարտացւոց վերջին թագաւորը. անիկայ Գաղղիոյ վրայ իշխանութիւն մը ունենալու համար՝ իր

---

1 Քունիպերթի յաջորդներուն մէջ ո՞վ եղաւ անուանի:

2 Լոմպարտացւոց թագաւորութիւնը ի՞նչ կերպով վերջացաւ:

աղջիկը Մեծին Կարոլոսի հետ կարգեց (770) : Վրան տարի մը չէր անցած, Մեծն Կարոլոս կնոջմէն բաժնուեցաւ : Դիդիերոս բարկացաւ իր աղջկանը եղած նախատանացը վրայ, ու ետեւէ եղաւ որ Ադրիանոս Ա պապը Մեծին Կարոլոսի Կարլոմանոս եղբօրորդին Փրանկաց Թագաւոր օծէ . յանձն չառաւ քահանայապետը, և Դիդիերոս սկսաւ Եկեղեցւոյ երկիրները ոտնակոխ ընել : Ան ատենը Ադրիանոս Մեծին Կարոլոսի դիմեց, ան ալ գնաց Փաւիա քաղաքին տիրեց, բոլոր դքսերը իրեն հնազանդեցուց, Լոմպարտացւոց Թագաւոր պսակուեցաւ, նորէն ընծայեց պապերուն ան երկիրները որ իր հայրը Պեպինոս ընծայեր էր, և ինքն ալ անոնց վրայ ուրիշ երկիրներ ալ աւելցուց . իսկ Դիդիերոսը վանքի մը մէջ փակեց, հոն մեռաւ անիկայ, և Լոմպարտացւոց Թագաւորութիւնը երկուհարիւր տարի քշելէն ետև կործանեցաւ (774) :

[1] ՍԼԱՒԵԱՆՑ ԱՌԱՋԻՆ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ : — Սլաւեանք կամ Սարմատացիք, որ Սկիւթացւոց ու Գերմանացւոց բնակած երկիրներուն մէջտեղուանքը բնակող ազգ մըն էին, վեցերորդ դարուն մէջ սկսան անուն հանել : Ատեն անցնելով աս ազգերը մեծամեծ տէրութիւններ կանգնեցին այնպիսի տեղուանք՝ ուր առաջ անտառներ ու դաշտեր միայն կային : Աս տէրութիւններուն գլխաւորներն եղան Լեհաստան, Պոհեմիա և Ռուսաստան : Սլաւեանք իրենց երկիրներէն ելլե-

---

[1] Սլաւեանք ե՞րբ սկսան անուանիլ ըլլալ :

լով՝ իրեք բաժնուեցան, ու անանկ առաջ քալեցին. անոր համար ալ իրեք մեծամեծ ձիւղեր կը բաժնուին :

1 ա, Հիւսիսային Սլաւեանք : — Ասոնց վրայ ստոյգ բան մը չգիտցուիր. միայն այսչափս յայտնի է որ Իլմէն լճին վրայ Սլաւեանսք քաղաքը շինեցին, ետքն ալ Քիեվ քաղաքը՝ Բորիսթենէս կամ Տնեբեր գետին վրայ : Գրեթէ նոյն ատենները Ռոքսոլան ըսուած ազգը, որ Ռոս ու Ալան ազգերէն խառնուրդ մըն էր, Սլաւեանց հետ միացաւ ու գնաց Նովկորոտ քաղաքը շինեց, որ ետքը շատ անուանի եղաւ :

2 բ, Արեւմտեան Սլաւեանք : — Ասոնք Վենտ ալ կ'ըսուին, ու հինգերորդ և վեցերորդ դարերուն ատենները Էլպա գետին ու Պալթիկ ծովուն մէջտեղը ընկած երկիրները բնակեցան : Ասոնց գլխաւոր ցեղերն էին Փոմերանիացիք, որ ծովեզերքը բնակեցան, և Չեհք ու Լեհք կամ Պոհեմիացիք ու Պոլոնիացիք :

3 Չեհերը 550ին ատենները Բոյացւոց երկրէն Մարկոմանները հալածեցին. իրենք անոնց տեղը բռնելով Պոհեմիացիք ըսուեցան, և Փրակայի հասարակապետութիւնը հաստատեցին. ետքը Փրեմիսլաւ անունով մէկը իրենց իշխան կամ Թագաւոր դրին : Պոլոնիացիք իրենց Լեհ անունով իշխանին առաջնորդութեամբը Քիեվի կողմերէն ելան, Փողնանիա ու Կնեժէն քաղաքները շինե-

---

1 Հիւսիսային Սլաւեանց վրայ ի՞նչ գիտելիք կայ :
2 Արեւմտեան Սլաւեանք որո՞նք էին :
3 Չեհք ու Լեհք ի՞նչ ժողովուրդներ էին :

ցին, և ան եղաւ Լեհաստանի Թագաւորութեան սկզբնաւորութիւնը։ Քրաք անունով իրենց առաջին Թագաւորն ալ հիմնեց Քրաքով կամ Քրաքովիա քաղաքը։

¹ Դ, Հարաւային Սլաւեանք։ — Ասոնք Դանուբի եզերքը բնակեցան, ու Աւարներէն նուաճուեցան. բայց երբոր 626ին անոնց յաղթեցին, Հերակլ կայսրէն հրաման առին ու Լիւրիկէ ըսուած երկիրը բնակեցան։ Ասանկով սկսան Խռուաթներուն, Դալմատացւոց, Սլաւեանց, Պոսնացւոց ու Սերուիացւոց իշխանութիւնները։

## ԳԼՈՒԽ Թ.

Պատմութիւն Արաբացւոց՝ Մահմէտին ծննդէնէն մինչեւ իր մահը (570–632)։ Աշխարհագրութիւն Արաբիոյ. — Յեկտանեանք և Իսմայէլացիք. — Մահմէտի ծնունդը. — Իրեն Հերա լեռը քաշուիլը. — Իսլամ. — Մահմէտի քարոզութեան սկիզբը. — Ցուցուցած հրաշքները. — Մեդինէի բնակիչներուն իրեն հետեւիլը. — Մեքքէի պատերազմը. — Դեսպանութիւնները. — Մութայի պատերազմը. — Մեքքէի առումը. — Մահմէտի մահը. — Ղուրան (570–632)։

² Ափրիկէի ու Ասիոյ մէջտեղը կ'իյնայ Արաբիա ըսուած երկիրը, որ Թերակղզւոյ մը ձև ունի, և մեծ մասը աւազուտ անապատ է, տեղ տեղ ալ խիճերով լեցուն անբեր երկիրներ. ան անապատ-

---

¹ Հարաւային Սլաւեանք որո՞նք էին։
² Արաբիան ի՞նչ երկիր էր։

ներուն մէջ քանի մը տեղ միայն կղզիի պէս հողեր կան կանաչ բոյսերով զարդարուած , որ ոազիս կ'ըսուին : Երեք մաս կը բաժնուի Արաբիան . հիւսիսային արեւմտեան կողմինը կ'ըսուի Հիճազ կամ Ապառաժ Արաբիա . անոր մէջն են Պետրա ու Եաթրէպ կամ Մետինէ քաղաքները . նմանապէս Մէքքէ քաղաքը որ քարուտ տեղ մը շինուած է : Մէջտեղի մասը Նէճտ ըսուած ահագին դաշտն է , և հոն գրեթէ անդադար կը փչէ սամում ըսուած խորշակը , այսինքն տաք ու ծծմբային հովը , որով ուղտերը երբեմն ծովու ալիքներուն պէս կը բարձրանան ու բազմաթիւ ճանապարհորդները մէջերնին կը թաղեն . իսկ հարաւային արեւմտեան մասին մէջ Հնդկաց Ովկիանոսին ծովեզերքը Եմէն կ'ըսուի . անկէց կ'ելլեն ազնիւ խահուէ , խնկեղէն ու տեսակ տեսակ համեմներ . այնչափ գեղեցիկ ու բարեբեր է աս երկիրը , որ ինչուան ան տեղի ծովուն գոլորշիքն ալ անուշահոտ է կ'ըսեն Արաբացիք . անոր համար հիները Երջանիկ Արաբիա գրեն աս երկրիս անունը :

[1] Աս թերակղզւոյն բնակիչները թէ Արաբացի կ'ըսուին և թէ Սարակինոս : Ամէնքն ալ մէկ ցեղէ են , այսինքն Սեմայ ցեղէն կուգան , բայց մէջերնին տարբերութիւններ ալ շատ ունին . ոմանք Եբերայ Յեկտան որդւոյն սերունդը կը սեպուին , ոմանք ալ Աբրահամու Իսմայէլ որդւոյն . և ասոնք (ինչպէս նաև երբեմն ալ բոլոր Արաբացիք՝) Հագարացիք ալ կ'ըսուին՝ Իսմայէլի մօրը Հագարայ անունովը : Վեցերորդ դարուն ատենները Յեկ-

---

[1] Արաբիոյ բնակչացը վրայ ի՞նչ գիտելիք կայ :

տանեանք Եմէնի բարեբեր երկիրը կը բնակէին ու վաճառականութեամբ և աշխատանքով կ'ապրէին. Իսկ Իսմայելացիք յափշտակութեան սովորած ըլլալով աւազակութեան ետևէ էին. ասոնք են որ ինչուան հիմա ալ Պէտէվի կամ Վրանաբնակ կ'ըսուին, և ասոնց մէջ ծնաւ Մահմէտականաց օրէնսդիրը Մահմէտ կամ Մուհամմէտ ։

1 Ծնաւ Մահմէտ Մէքքէ քաղաքը 570ին. իրեն ցեղը Գուրէյշեանք կ'ըսուէր, ու Իսմայելի տասուերկու որդւոցը Գուրէյշ անունով մէկուն սերունդը կը սեպուէր ։ Հինգ տարեկան եղած ատենը որբ մնաց Մահմէտ, և իր բոլոր հարստութիւնը հինգ հատ ուղտ ու մէկ աղախին մըն էր. ուստի պէտք եղաւ որ կարաւաններուն մէջ ծառայութիւն ընէ. բայց երբոր քսանըհինգ տարեկան եղաւ, Խատիճէ անունով հարուստ այրի կնկան մը հետ կարգուեցաւ, որով ինքն ալ հարըստացաւ (595) ։

2 Անկէց ետքը առանձին տեղ մը քաշուեցաւ ու սկսաւ մտածել թէ արդեօք ինչ հնարք ընէ որ Արաբիոյ այլ և այլ ժողովուրդները իրարու հետ միացընելով մէկ տէրութեան ու մէկ հաւատքի հպատակեցընէ ։ Այն ատենները Արաբիոյ մէջ չորս տեսակ կրօն կար. մէյմը կռապաշտութիւն, որուն գլխաւոր տեղը Մէքքէ քաղաքն էր, և անոր մէջն էր Քէապէ ըսուած տաճարը որ Աբրահամ շինած

---

1 Մահմէտի ծնընդեանն ու տղայութեանը վրայ ինչ կը պատմուի ։

2 Մահմէտ ինչ կերպով ուզեց Արաբացիները մէկ ազգ ընել ։

է կ՚ըսէին. ուր և շատ տարիներէ 'ի վեր ամէն տեղերէ ուխտաւորներ կ՚երթային որ մէջի սև քարը համբուրեն, և կ՚ըսէին թէ աս սև քարը երկրիս առաջին մինչուկն է եղեր՝ երկնքէն ընկած, անոր ալ մէջ տեղը Աստուծոյ խօսքը կայ եղեր: Երկրորդ կրօնն էր Զրադաշտայ կրօնքը կամ Մոգութիւն, որուն հետևողները երկնային մարմնոց երկրպագութիւն կ՚ընէին. երրորդը Հրէութիւն, որ Կարմիր ծովուն եզերքը ծաղկած էր. չորրորդը Քրիստոնէութիւն, որ անապատին մէջի ճգնաւորաց քաղաքութեամբը ան տեղուանքն ալ տարածուած էր:

[1] Մահմէտ ինքզինքը մարգարէ հաւատացընելու համար՝ ամէն բանէ առաջ նայեցաւ որ ծածկապահութեան, ուսման, ու առանձնութեան ետևէ ըլլայ. ամէն տարի Մէքքէէն իրեք մղոն հեռու Հերա ըսուած լեռանը վրայ այրի մը մէջ կը քաշուէր ու ամբողջ ամիս մը հոն կը կենար. դուրսն ալ անանկ ձայն հանել տուած էր թէ ինքը Աստուծոյ կամ հրեշտակներու հետ կը խօսի: Տասնըհինգ տարի աս ճամբան բռնելէն ետքը՝ երբոր տեսաւ որ ժողովուրդը իր վրայ սկսեր է համարում առնել, ձայն հանեց թէ Գաբրիէլ հրեշտակը երևցեր է իրեն. և աս բանս աս կերպով կը պատմեն Մահմետականք: Մէկ գիշեր մը որ Մահմէտ իր այրին մէջ աղօթքի կեցեր էր, յանկարծակի հրեշտակը երևցաւ իրեն լուսաւոր կերպարանքով ձեռքը Իսլամի կամ հաւատոյ գիրքը բռնած, և ըսաւ. “Ըռ՛ւտ կարդա աս գիրքը”: Մահմէտ

---

[1] Ինքզինքը մարգարէ հաւատացընելու համար ինչ ճամբայ բռնեց:

պատասխան տուաւ թէ “ կարդալ չեմ գիտեր ,, · ան ատեն Գաբրիէլ անոր մազերէն բռնեց ու իրեք անգամ զինքը գետինը զարկաւ · երրորդ անգամուն Մահմէտ ոտք ելաւ տեսաւ որ կարդալ սորվեր է ։

[1] Անկեց ետքը դարձաւ Մէքքէ քաղաքն ու սկսաւ ամենուն պատմել աս գլխուն եկած բանը ։ Ամենէն առաջ իր կինը հաւտաց խօսքին, ետքը իր բարեկամները Օսման, Ալի և Ապուպէքիր · անոնց մէ ետքը իրեն հետևողներուն թիւը շուտով սկսաւ աւելնալ, և ամէն մարդ հրապարակները կը ժողվուէր որ լսէ թէ ինչ հրաշալի բաներ անցեր են աս նոր առաքեալին գլխէն, որուն իրենց բառովը ռէսուլ կ'ըսէին ։ Օրինակի համար կը պատմէին թէ ծառերը իրեն դիմացը կ'ելլէն եղեր, քարերը իրեն բարև կուտան, մատովը դպած տեղէն ջրեր կը ցատքեն եղեր · լուսինը անգամ մը երկընքէն իջեր քովը եկեր ու հետը խօսեր է, մանաւանդ թէ շապիկին վզէն մտեր ու թևէն ելեր է · ան ալ բաւական չէ, ինչուան երկինքը ելեր է Մահմէտ, հրեշտակները տեսեր ու Աստուծոյ աթոռոյն դպեր է եղեր ։ Ասոնք և ասոնց նման չլսուած ու խելքէ չանցած բաներ շատ կան Տաճկաց հատիս կամ սիւննէ ըսուած գրքերուն մէջ ։

[2] Գուրէյշեանք տեսնելով որ Մահմէտին անունը օրէ օր մեծնալու վրայ է, վախցան իրմէ; ու սկսան թէ զինքը և թէ իր կուսակիցները հալածել · իսկ Մահմէտ անոնց սպառնալիքները

1 Որո՞նք եղան իրեն առաջին հաւատացողները ։
2 Մահմէտի դէմ կեցողները որո՞նք եղան ։

բանի տեղ չդնելով Մէքքէի մեծ հրապարակը ելաւ ու սկսաւ քարոզել թէ կռապաշտութիւնը պէտք է ջնջուի, և ամէն մարդ դառնայ մէկ Աստուած մը պաշտելու հաւատքը ընդունի: Օր մը երբոր քաղաքին հիւսիսային կողմը լեռան մը վրայ կեցեր էր, տեսաւ որ անդիէն վեց ուխտաւոր կուգան, որ Եաթրէպ քաղաքէն Քեապէ կ'երթային. քովերնին մօտեցաւ, և այնպիսի ճարտասանութեամբ խօսեցաւ հետերնին որ մէկէն 'ի մէկ դարձի եկան. քաղաքին որ դարձան, իրենք սկսան ան նոր վարդապետութիւնը քարոզել, և այնչափ կուսակիցներ ունեցան որ Եաթրեպի բնակիչները Մահմետին առաջարկեցին որ իրենց քաղաքը գայ բնակի. Մահմէտ ալ չէ ըսաւ ու հոն գնաց, և անկէց ետքը Եաթրէպ քաղաքը ըսուեցաւ Մէտինէթ-ուն-նէպի, այսինքն քաղաք Մարգարէին, կամ պարզ Մետինէ:

¹ Անգամ մըն ալ երբոր Մէքքէ դարձեր էր՝ աշակերտները ժողվելու համար, Գուրէյշեանք շատ սաստիկ խոստացան Մահմետին գլուխը իրենց բերողին: Մահմէտ հազիւ թէ փախչելու ատեն ունեցաւ. իր ետևէն ընկնողներուն ձեռքէն ազատելու համար՝ իրեք օր Թոր ըսուած լեռան այրին մէջ պահուըտած կեցաւ. հասան զինուորները այրին բերանը ու քիչ մնացեր էր որ ներս մտնէին, մէյմըն ալ տեսնեն որ երկու աղաւնի հոն բոյն շիներ ու մէջը հաւկիթ ածեր են, մամուկներն ալ բոյն շիներ ու այրին բերանը գոցեր են. աս տեսնելով ըսին իրարու, որ եթէ մէկը մտած ըլլար

---

¹ Մէքքէէն ինչպէս փախաւ Մահմէտ:

հոս, ու աղաւնիի հաւկիթները կը կոտրտէին ու մամուկի բոյնը կ'աւրուէր. ասանկով անցան գնացին: Մահմետին ալ փախուստէն կը սկըսին համրել Մահմետականք իրենց Թուականը՝ որ Հիճրէթ այսինքն Փախուստ կ'ըսուի, և կը սկսի Քրիստոսի 622 Թուականին, յուլիսի 16ին:

1 Անկէց ետքը Մահմետ տեսնելով որ խօսքով չկրնար շատ մարդ դարձընել՝ զէնքի ձեռք զարկաւ: Մետինէի տիրելէն ետքը Մէքքէի վրայ գնաց, Պէտր ըսուած տեղը Գուրէյշեանց յաղթելէն ետև՝ Ուհուտ լեռան քովը անոնցմէ յաղթուեցաւ, Թէպէտ և իրեն Ալի և Էօմէր զօրավարները մեծամեծ քաջութիւններ ըրին: Ան պատերազմին մէջ եօթանասուն Մահմետականք մեռան, և երկու կողմէն ալ սոսկալի անգթութիւններ եղան: Գուրէյշեանց կանայքը մեռելներուն քթերն ու ականջները կտրտեցին, և անոնցմով իրենց վզնոց ու ապարանջանք շինեցին. ուրիշ անգամ մըն ալ Մահմետականք Խորայխ ըսուած Հրեաներուն յաղթելով անոնցմէ եօթը հարիւր հոգի ողջ ողջ Թաղեցին Մետինէի հրապարակին մէջ:

2 Մէկ կողմանէ Մահմետ սա Ճամբով այլ և այլ ժողովու րդները իր հաւատքին կը դարձընէր, մէկ կողմանէ ալ օտար Թագաւորաց դեսպաններ խաւրելով կը յորդորէր զանոնք որ իր վարդապետութիւնը ընդունին: Պարսից Թագաւորը Խոսրով Բ արհամարհանօք պատռեց Թուղթը. Յու-

---

1 Ի՞նչ պատերազմներ ըրաւ:
2 Օտար տէրութեանց հետ ի՞նչպէս վարուեցաւ:

նաց կայսրը Հերակլ ընծաներ տուաւ դեսպան-ներուն ու խոստմունքներով եւ ճամբեց զիրենք · իսկ Եգիպտոսի իշխանն ու Եթովպիոյ Թագաւորը Մահմետի հաւատքն ընդունեցան :

1 Բայց ամէն բանէ աւելի Մահմետին յաջո-ղութիւն տուողը իրեք անուանի Գուրէյշեանց դարձը եղաւ, որ էին Խալէտ, Ամրու և Օսման, որ իրեքն ալ իրենց քաջութեամբը հռչակուած էին : Ասորւոց երկրին մէջ Մութա ըսուած տեղը առնցմով պատերազմ ըրաւ Մահմէտ, ու քանի մը հազարով Յունաց երեսուն հազար զօրքը հա-լածեց · Խալէտ ալ իրեն քաջութեանցը համար ըսուեցաւ Սուսէր սուսէրացն Աստուծոյ : Քիչ ա-տենէն Մահմետականք Մէքքէին ալ տիրեցին · ան պատերազմին մէջ Խալէտ իր ձեռքովը Գուրէյ-շեանցմէ քսանըութը հոգի սպաննելէն ետքը՝ քաղաքը մտաւ, ու Մահմէտի հրամանին ալ դէմ՝ բոլոր բնակիչքը թրէ անցուց : Ըն ատենը Քեա-պէի մէջ եղած իրեք հարիւր կուռքերն ալ կոր-ծանեցին (630) :

2 Մահմէտ իր հաւատքին տարածուիլը տեսնե-լու ժամանակ չունեցաւ · վասն զի Մէքքէէն Մե-տինէ դարձած ատենը մահը վրան հասաւ · կ'ըսեն թէ հրեայ կին մը այնպիսի թոյն տուեր է իրեն որ կամաց կամաց ազդելով վերջապէս զինքը գերեզ-ման տարաւ : Իսկ արաբացի պատմիչները Մահ-մետի մահը աս կերպով կը պատմեն : Երբոր տե-սաւ մարգարէն որ օրէ օր տկարանալու վրայ է,

---

1 Իր գլխաւոր զօրավարները որո՞նք էին :
2 Ի՞նչպէս մեռաւ Մահմէտ :

իր աներոջը Ապուպէքիրին յանձնեց որ անկեց ետքը հրապարակական աղօթքը իր տեղը անիկայ ընէ, մզկիթին մէջն ալ աս խօսքերովս վերջին բարեւը տուաւ ժողովրդեան. «Թէ որ ես ձեզմէ մէկը ծեծեր եմ, ահա գաւազան, թող ինքն ալ զիս ծեծէ. թէ որ մէկուն բան մը պարտական եմ, ահա քսակս, ուզածին չափ թող առնէ»: Բազմութեան մէջէն մէկը ելաւ, իրեք դահեկան առնելիք ունիմ ըսաւ, ու մէկէն վճարեցին իրեն: Երբոր Մահմէտ անկեց իր տունը դարձաւ, մահուան հրեշտակը Եզրայէլ գնաց դուռը զարկաւ և հրաման ուզեց որ ներս մտնէ, հրամանը առնելէն ետքը ներս մտաւ, Մահմէտ ալ մէկէն 'ի մէկ հոգին անոր ձեռքը տուաւ: Ժողովուրդը աս մարդուն վրայ այնպիսի մեծ համարում ունէր որ երկար ատեն չհաւատաց թէ մեռեր է (632):

[1] Մահմէտին Գաբրիէլ հրեշտակէն առած գիրքը կամ Իսլամը Ղուրան ալ կ'ըսուի, որ ընթերցուած կը նշանակէ. աս գիրքը Մահմէտ չգրեց կ'ըսեն, հապա իրեն յաջորդը Ապուպէքիր, որ հիճրէթի երեքտասաներորդ տարին Սայիտ անունով մէկուն ապսպրեց որ Ղուրանին ցրուած կտորները մէկտեղ հաւաքէ. վասն զի կ'ըսէ եղեր թէ, հրեշտակը ան գրքին թերթերը զատ զատ բերեր է ու ալստորնոցք գրուեր են ոչխարներու, թիակներու, ձերմակ քարերու և կամ արմաւենի տերեւներուն վրայ: Իսկ Ղուրանին նիւթերը Հրէից ու քրիստոնէից վարդապետութիւններովը խառն են առանց մասնաւոր կապակցութեան և ոճի

[1] Ղուրանը ինչ է:

մը. կ'ըսեն թէ մէկ հայ կամ յոյն ճգնաւոր մը (որուն անունը ոմանք Սարգիս կ'ըսեն) և մէկ հրեայ քարոզիչ մը սորվեցուցեր են Մահմետին Աւետարանն ու Մովսէսի հինգ գիրքը:

[1] Ղուրանին վարդապետութեան հիմը, որուն վրայ կեցած է նաև Մահմետականաց հաւատքը՝ աս է. "Ուրիշ Աստուած չկայ, բայց եթէ մէկ Աստուած, և Մահմէտ իր մարգարէն է". անկեց'ի զատ հաւատալու է մարգարէից, հրեշտակաց, Աստուծոյ արդարութեանը, անմահութեան հոգւոյ, յարութեան մեռելոց, ու վերջին դատաստանի: Վեց մարգարէք եկեր են աշխարհք՝ ճշմարտութիւններ բերելու, որ են Ադամ, Նոյ, Աբրահամ, Մովսէս, Յիսուս, Մահմէտ: Արդար է Աստուած, ուրեմն մեղաւորաց պատիժ և արդարոց վարձք պիտի տայ. արդարոց վարձքը դրախտը պիտի ըլլայ, որ ամէն տեսակ փափկութեան և հեշտութեան տեղ է կ'ըսեն. իսկ մեղաւորաց տեղը դժոխքն է՝ եօթը կարգ շտեմարան բաժնուած. առաջինին մէջն են մեղաւոր Մահմետականները, երկրորդին մէջ ուրացողները, երրորդին մէջ քրիստոնեայք, չորրորդին մէջ հրեաները: Աս չորսին մէջն ալ չարչարանք չկայ, իսկ անոնցմէ ետքիններուն մէջ ամէն տեսակ տանջանք կը գտնուի: Հինգերորդ դժոխքին մէջն են մոգերը, վեցերորդին մէջ կռապաշտները, իսկ եօթներորդին մէջ ամէն հաւատքէ կեղծաւորները, և անոնց տանջանքները ամէնէն սոսկալի է:

---

[1] Ղուրանին վարդապետութեան գլխաւոր մասունքը որո՞նք են:

1 Ղուրանին նայելով մէկ մահմետական մը դրախտի կամ արքայութեան արժանի ըլլալու համար՝ աղօթք պիտի ընէ, պահք պիտի պահէ և ողորմութիւն պիտի տայ, օրը հինգ անգամ աղօթք պիտի ընէ, միշտ երեսը դէպ 'ի Մէքքէ դարձուցած : Պահքը պիտի պահէ՝ Մահմետին Հէրա լեռը քաշուելուն յիշատակ : Ամէն տարի իր եկամուտին հինգերորդ մասը աղքատաց պիտի բաժնէ . ասկէ զատ քանի մը տեսակ միս ուտելէն, գինի և անոր նման ըմպելիքներ խմելէն պիտի զգուշանայ : Մահմետ ըսեր է Ղուրանին համար որ եթէ դժոխքը և աշխարհքս մէկտեղ գան՝ այնպիսի գրուած մը հանելու համար, անոր մէկ տունն ալ չեն կրնար շարադրել :

2 Մահմետ իր վարդապետութիւնը Արաբացւոց բնաւորութեանն ու կարծիքներուն յարմարցուցեր էր . անոր համար զարմանք չէ որ այնչափ աշակերտներ ունեցաւ . վասն զի պատերազմի սէրը և աշխարհիս վրայ ամէն դիւրութեան և հեշտութեան ետեւէ ըլլալը իր հաւատքին հիմունքն էին : Յայտնի է որ քրիստոնէութիւնը բոլորովին անոր հակառակ ճամբով հաստատուեցաւ ու տարածուեցաւ, այսինքն մարտիրոսներու արեամբը ոռոգուեցաւ, հալածանքներու մէջ հաստատուեցաւ, և ամէն տեղ խոնարհութիւն, եղբայրսիրութիւն և սրբութիւն քարոզելով բոլոր աշխարհք տարածուեցաւ :

---

1 Ի՞նչ բարեգործութիւններ կը պատուիրէ Ղուրանը :

2 Մահմետ իր վարդապետութիւնները ի՞նչ սկզբան վրայ հիմներ էր :

## ԳԼՈՒԽ Ժ.

Պատմութիւն Արաբացւոց՝ Մահմէտի մեռնելէն մինչեւ Ումմեանց սկիզբը։ Աբուպէքիր։ — Սիւննի եւ Շիի աղանդները։ — Խալէտ զօրավարին Ասորւոց երկրին տէրելը։ — Արաբացւոց Հայաստան մտնելը։ — Դամասկոսի պաշարումը։ — Էօմէր ամիրապետ։ — Երմուքի պատերազմը։ — Երուսաղէմի առումը։ — Ամրու Եգիպտոսին կը տիրէ։ — Աղեքսանդրիոյ պաշարումը։ — Զայիտ Պարսկաստանի կը տիրէ։ — Օսման։ — Ալի։ — Խռովութիւնք։ — Ալիի մահը։ (632-660)։

1 *Մահմէտ մեռնելուն պէս երկպառակութիւնը սկսաւ։ Մարգարէն իրեն յաջորդ ընտրեր էր իր Այիշէ կնկան հայրը Աբուպէքիրը* (632)։ *Ալի Մահմետի եղբօրորդին ու փեսան, չուզեց զանիկայ յաջորդ ճանչնալ. Արաբացւոց քանի մը ցեղերն ալ մէջերնին խօսք դրին որ Աբուպէքիրէն բաժնուին։ Էօմէր աս խռովութիւնը դադրեցուց, Աբուպէքիրին կողմն անցաւ ու սպառնացաւ որ ով որ անոր կողմը չբռնէ՝ թրէ պիտի անցընէ։ Տասը ամսէն Ալին ալ հնազանդեցաւ, բայց այնչափ ատեն դէմ կենալովը նոր աղանդ մը ձեւացեր էին իրեն հետեւողները։*

2 *Ան ատենէն մահմետականութիւնը երկու աղանդ բաժնուեցաւ. ոմանք ըսուեցան* Սիւննի *այս-*

1 *Մահմետին ով յաջորդեց։*

2 *Մահմետականութիւնը գլխաւոր քանի՞ աղանդ բաժնուեցաւ։*

ինքն Օրէնսաւորք, որ առաջին երեք ամիրապետներուն օրինաւոր յաջորդութիւնը կ'ընդունին, և ոմանք Շիյի այսինքն Հերձեալք, որ ան չեն ընդունիր, Ումէրը կը նզովեն ու զանիկայ սպաննողը սուրբի տեղ կը դնեն. ինչուան հիմայ ալ Պարսիկները Շիյի կ'ըսուին ու Ալիի կողմն են, իսկ Թուրքերն ու Օսմանցիք՝ Ումէրի, ուստի և Սիւննի կ'ըսուին: Մէկ աղանդ մըն ալ անոնք էին որ Արաբիոյ մէջ նորէն կ'ուզէին շէյխերուն կառավարութիւնը մտցընել. բայց Խալէտ տասըհազար հոգի ջարդեց անոնցմէ, և խռովութիւնը հանդարտեցաւ: Անկէց ետքը հաւատքի պատերազմը սկսաւ, և Ապուպէքիր այսպիսի յայտարարութեամբ հրատարակեց ժողովրդեան իր կամքը. “ Յանուան Աստուծոյ գթածին և ողորմածի, կ'ուզեմ զձեզ Ասորւոց երկիրը խրկել որ մեր հաւատքին համար պատերազմիք ”: Եւ երբոր զօրքը ժողվուեցան, ըսաւ անոնց. “ Չըլլայ թէ պատերազմէն փախչիք. խնայեցէք արմաւենիներուն, ցորենի արտերուն, պտղաբեր ծառերուն. տուած խօսքերնիդ պահեցէք ”:

[1] ԱՍՈՐԻՈՑ ԵՐԿՐԻՆ ՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ: — Հրամայեց Ապուպէքիր իր զօրացն որ դէպ 'ի Ասորւոց երկիրը արշաւեն. և զօրավարներն էին Իպու-Իւպէյտէ և Խալէտ. Հասան Բասորա քաղաքին քով ու սա մէկ խօսքը միայն ըսին բնակչաց. “ Կամ հաւատքնիդ կ'ու-

---

[1] Ասորւոց երկրին ի՞նչ կերպով տիրեցին Արաբացիք:

բանակը և կամ Թուրին բերանը կ'երթանք ,,: Մատնութեամբ քաղաքն առին, ու անկէ գնացին Դամասկոսը (Շամ) պաշարեցին, և հոն Խալէտ, Ամրու, Յէզիտ արաբացի զօրավարները զարմանալի քաջութիւններ ըրին : Յոյնք եօթանասուն հազարով բանակ մը Ճամբայ դրեր էին Դամասկոսին պաշտպանութեան հասնելու : Խալէտ իր վստահներէն իմանալով վազեց ան բանակին առջեւը ելաւ (633) : Պատերազմը խիստ սաստիկ եղաւ, բայց Յոյնք վերջապէս փախչելու ստիպուեցան, յիսուն հազար քաջ մարդիկ դաշտին երեսը մեռած ձգելէն ետև : Երկու ամիս ալ դիմացաւ Դամասկոս ու ետքը անձնատուր եղաւ աս պայմանով որ բնակչաց կեանքին վնաս մը չըլլայ : Սակայն Խալէտ այնչափ ատեն դէմ կենալնուն վրայ բարկացած՝ զամէնքն ալ կ'ուզէր ջարդել, հազիւ Թէ իրենները սիրտը առին :

[1] Դամասկոսի առնուած տարին Ապուպէքիր մեռաւ ու տեղը անցաւ Էօմէր (634)․ ասոր ատենն ալ Արաբացիք իրենց աշխարհակալութիւնները առաջ տանելով առին Եմեսա (Հէմս), Պաալպէք (Հելիուպօլիս) քաղաքներն ու Ստորին Ասորիքը :

[2] Հերակլ կայսրը Ասորւոց երկիրը ազատելու համար վերջին ջանքը Թափեց ; ուստի Մանուէլ պատրիկը չորս հազար հոգւով խրկեց որ երթայ Արաբացիքը անկէց հալածէ : Մանուէլ ան ար-

---

1 Ապուպէքիրին ով յաջորդեց :

2 Յոյնք կրցա՞ն Արաբացւոց արշաւանքին դէմն առնուլ :

չաւանիքը յաղթող կերպով ընելու համար վաթսուն հազար ալ արաբացի զօրք վարձեց, ըսելով թէ «Ադամանդը ադամանդով կը կտրուի»։ Խալէտ անոր յոյսը պարապ հանեց։ Երկու բանակները իրարու դէմ ճակատեցան Երմուկ գետին եզերքը՝ Տիբերիադայ լճին քով, և կռիւը իրեք օր քշեց. երրորդ օրը Յոյնք խիստ քիչ մնացած ըլլալով ձգեցին փախան (636)։

[1] Շուտ մը գնաց Խալէտ Երուսաղէմը պաշարեց։ Քաղաքացիք Սոփրոնիոս պատրիարքին օրինակովը ու խօսքերովը յորդորուած՝ քաջութեամբ դէմ կեցան. և այս իրենց քաջութիւնը անօգուտ չեղաւ. վասն զի անով անձնատուր ըլլալու ատեն քանի մը ազատութիւններ ձեռք ձգեցին։ Էօմէր ամիրապետը ուղտի մը վրայ նստած՝ եկաւ Մեծինէէն անձամբ Երուսաղէմ գնաց որ քաղաքին բանալիները ընդունի. հրաման տուաւ քրիստոնեայ քաղաքացւոց որ իրենց հաւատքը պահեն, բայց Սողոմոնի տաճարին տեղը մզկիթ մը շինել տուաւ։

[2] Հերակլ կայսրը Անտիոք քաղաքն էր՝ երբոր Երուսաղէմի առնուելուն գոյժը առաւ. եկաւ մայր եկեղեցին գնաց, խորանին առջեն ընկաւ, մեղքերուն վրայ լացաւ, և բազմութեան առջևը զրուցեց որ Աստուծոյ կամքը դէմ պատերազմ ընելը անօգուտ է։ Քիչ ատենէն Բերիա (Հալէպ) քաղաքն ալ առին Արաբացիք ու Անտիոքին քով հասան։ Կայսրը փախաւ, և Անտիոք քաղաքը

---

1 Երուսաղէմին ինչպէս տիրեցին Արաբացիք։
2 Անտիոք ինչ կերպով առնուեցաւ։

աւարառութենէն ինքզինքը ազատելու համար՝ երեք հարիւր հազար ոսկի տուաւ, նոյնպէս ալ Կեսարիան երկու հարիւր հազար ոսկի տուաւ, և բոլոր Ասորւոց երկիրը Յունաց ձեռքէն ելաւ (638) :

[1] Ասորւոց երկրին տիրելէն ետքը Հայաստան վազեցին Արաբացիք, ու Տարօնոյ և Բասենոյ գաւառները ոտնակոխ ընելով Դուինի քաղաքը պաշարեցին առին, տասներկու հազար մարդ ջարդեցին, պալատները այրեցին ու երեսունհինգ հազար հոգի գերի տարին (640) : Անկէց ինչուան Բագրատունեաց թագաւորութեան սկիզբը Հագարացւոց ամիրապետները իրենց կողմանէ կուսակալ մը կը դնէին Հայաստան, որ և ոստիկան կ'ըսուէր :

[2] ԵԳԻՊՏՈՍԻ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ: — Եգիպտոսը նուաճողն ու մահմետականութեան դարձընողը Ամրու զօրավարն եղաւ, որ երիտասարդութեան ատենը Մահմետի ոխերիմ թշնամին էր : Մէյմը որ աս աղանդը ընդունեցաւ, արաբացի ձիաւորաց մէջ մտաւ, և իր յանդուգն քաջարութեամբը մեծ պատուոյ հասաւ : Եգիպտոսի տիրապետութիւնը այնպիսի գործ մըն է, որ նմանը խիստ քիչ եղած է : — Ամրու չորս հազար հոգւով հին Փղշտացւոց երկիրը Գազա քաղաքն էր՝ երբոր Իօմէրէն թուղթ մը առաւ : Առանց

---

1 Արաբացիք Հայաստանի ինչպէս տիրապետեցին :

2 Ամրու ինչ կերպով առաւ Եգիպտոսը :

Նաւմակը բանալու հրաման տուաւ իրեններուն Եգիպտոսի վրայ երթալու . և երբոր սահմանագլուխը հասան , ան ատենը ամիրապետին Թուղթը բացաւ ու իր պզտիկ գունդին կարդաց . “ Թէ որ դեռ Ասորւոց երկիրն ես , ելիր անկէ , յոյսդ Աստուծոյ ու եղբարցդ վրայ դիր ու մտիր Եգիպտոսի սահմանը ” : Ասով զամէնքը քաջալերեց Ամրու , գնաց Պեղուսիոնի վրայ յարձըկեցաւ , ու ամսէ մը առաւ : Անկէց Մեմփիսի վրայ վազեց. ու մէկ յարձակմամբ մատնութեամբ առաւ , և ան Փարաւոնեանց հին մայրաքաղաքին քովը յաղթութեան փողոփ ըսուածը շինեց , որ է հիմակուան Գահիրէն :

[1] Անկէ ետքը Աղեքսանդրիոյ վրայ դարձուց Ամրու իր զօրութիւնը : Աղեքսանդրիան Եգիպտոսի ամենէն աւելի հարուստ քաղաքն էր , ուր չորս հազար պալատ կար կ'ըսեն , չորս հազար բաղնիք ու չորս հարիւր Թէատրոն : Բոլոր զօրքերնին հոն ժողվեր էին Յոյնք . պարիսպներն ալ ահագին բարձրութիւն ու ամրութիւն ունէին : Առաջին յարձակմանց մէջ Արաբացիք յաղթուեցան , բայց օր մը Ամրու չորս հոգի միայն հետն առած՝ միջնաբերդը մտաւ . թշնամիները մէկէն վրան վազեցին որ զինքը կտոր կտոր ընեն . Ամրուին քովիններէն մէկը իր արթնութեամբը զօրավարը ազատեց . անոր երեսին ապտակ մը զարկաւ ու ըսաւ . “ Դուն Տաճկաց մէջ ամենէն վերջինն ես . Թո՛ղ որ քու տէրերդ խօսին ” : Աս խօսքով Յոյնք կարծեցին որ Ամրուն գերի մըն է ,

---

[1] Աղեքսանդրիոյ ի՛նչպէս տիրեց :

ու քաջութեանը վրայ պարծենալով՝ Թագաւորին որ ելլէ երթայ․ անիկայ ալ քաղաքին տիրեց, ու գրեց ամիրապետին․ "Արեւմուտքին մեծ քաղաքը մերն է"։ Այն քաղաքը առնելու համար քսանուերեք հազար հոգի կորսնցուցեր էր։ Հերակլ կայսրը երբոր Աղեքսանդրիոյ առնուիլը լսեց, սրտին ցաւէն մեռաւ (640)։

¹ Ամրու ուսումնասէր ըլլալով՝ ուզեց Պտղոմեանց յիշատակը՝ որ Աղեքսանդրիոյ գրատունն էր ազատել․ ան գրատան մէջ հինգհարիւր հազար հատոր գիրք կար կ'ըսեն։ Ամիրապետին խորհուրդ հարցուց աս բանիս համար․ վայրենամիտ Օմէր պատասխան տուաւ․ "Թէ որ աս գրքերուն մէջ Ղուրանին մէջի բաները կան, ատոնք անօգուտ են, իսկ թէ որ հակառակ բաներ կան մէջերնին, վնասակար են․ այրել տուր"։ Ցաւելով կատարեց Ամրու ան հրամանը, և ան հին գիտութեանց գանձովը ամիսներով Աղեքսանդրիոյ բաղնիքները տաքցան։

² ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ (636)։ — Այն ատեններն որ Խալէտ Ասորւոց երկիրն և Ամրու Եգիպտոսի տիրելու հետ էին, Պարսկաստան կործանելու վրայ էր։ Խոսրով երկրորդէն ետքը չորս տարուան մէջ եօթը թագաւոր նստեր էր հոն․ Օմէր յարմար ատեն սեպեց իրենց մարգարէին խօսքը կատարելու, որ երբոր Պար-

---

¹ Աղեքսանդրիոյ գրատան այրիլը ինչ կերպով եղաւ։

² Պարսկաստանի ո՞վ տիրեց և ինչ կերպով։

սից Թագաւորը Թուղթը պատռեր էր՝ կանչելու էր, «Աստուած ալ ասանկ պատառէ անոր Թագաւորութիւնը»։ Էօմէրին փոխանորդը Զայիտ երեսուն հազար զօրքով Պարսկաստան մտաւ. ան միջոցին բնակիչներն ալ իրենց Արզումա Թագուհին վար ձգելով՝ տեղը դրեր էին Յազկերտը, որ տասնուերկու տարեկան տղայ էր։ Ռոստամ փոխարքան հարիւր քսան հազար զօրք ժողվեց, Սասանեան Արտաշիրին հագուստը հագաւ ու գնաց Գատեսիէ քաղաքը որ իր հայրենիքին ու հաւատքը պաշտպանէ։ Չորս օր պատերազմելէն ետքը՝ Արաբացիք Պարսից բանակին տիրեցին, փոխարքան սպաննեցին ու Պարսիկները հալածեցին, ցրուեցին, և աս իրենց յաղթութեանը յիշատակ՝ Տիգրիս ու Եփրատ գետերուն իրարու հետ խառնուած տեղը Պասրա քաղաքը շինեցին։

[1] Իսկ Յազկերտ, որ Մարաց երկիրը փախեր էր, նորէն զօրք ժողվելու ետեւէ կ'ըլլար։ Զայիտ անոր դէմ գնաց, Ճամբուն վրայ Տիզբոն քաղաքին տիրեց, որ Սասանեանց մայրաքաղաքն էր, հիմնայատակ քանդեց, ու անոր տեղը կանգնեց Քիւֆա քաղաքը։ Անկէց առաջ երթալով երկու անգամ Պարսից հետ զարնուեցաւ ու յաղթեց անոնց. և երկրորդ յաղթութիւնը, որ Նէհավէնտ քաղաքին քով եղաւ՝ այնչափ փառաւոր էր որ ըսուեցաւ յաղթութիւն յաղթութեանց։ Ասանկով բոլոր ան կողմերուն տիրեց Զայիտ՝ ինչուան Կասպից ծովը (642)։

---

[1] Զայիտ ինչ պատերազմ ըրաւ վերջին Յազկերտին դէմ։

1 Երկու տարի ետքը նոր ամիրապետը Օսման (644-655), որ Էօմէրին յաջորդեր էր, հրաման հանեց ու ըսաւ թէ ով որ երթայ Սասանեանց թագաւորութեան մնացած կտորին տիրէ՝ ան երկրին կուսակալութիւնը իրեն կուտամ: Ահնաֆ զօրավարը գնաց շատ զօրքով տիրեց երկրին. Յազկերտ ալ Չինաց Թայցոնկ կայսեր պալատը փախաւ. Չինացիք իրեն թաթար զօրաց գունդ մը տուին, բայց ան Թաթարները Յազկերտին դէմ դարձան, ու զինքը մատնեցին: Անոնց ձեռքէն ազատելու համար պէտք եղաւ որ փախչի ու Մուրղապ գետէն անդին անցնի. գետին եզերքը որ հասաւ, ջաղացպանի մը աղաչեց որ զինքը դիմացը անցընէ, և իր ոսկիէ ականակապ ապարանջանները անոր տալ խոստացաւ: Գեղացին ան բաներուն յարգը չգիտնալով անոնց տեղը քիչ մը ստակ խնդրեց: Երբոր Թագաւորը ան մարդուն հետ խօսելով ատեն կ'անցընէր, թշնամիները հասան ետևէն ու զարկին սպաննեցին զինքը: Աս կերպով մեռաւ Սասանեանց վերջին Թագաւորը, ու Պարսից երկրորդ թագաւորութիւնը կործանեցաւ (652):

2 Ան ատենները Օսման ամիրապետը սկսեր էր անգթութիւններ ընել. ծեր ու արդիւնաւոր մարդկանց պաշտօնները կ'առնէր և իր ազգականներուն ու բարեկամներուն կուտար. աս բաներուն համար ժողովուրդը խռովութիւն մը հանեց

---

1 Սասանեանց թագաւորութիւնը ինչ կերպով վերուցին Արաբացիք:

2 Օսման ինչպէս ըրաւ ամիրապետութիւնը:

ու սպաննեց զինքը Մետինէ քաղաքին մէջ (655)։ Անոր տեղը ընտրուեցաւ Ալի, բայց ապստամբները չխոնարհեցան, ամիրապետն ալ անոնց դէմ գնաց, Պասրայի քով սաստիկ պատերազմի մը մէջ անոնցմէ եօթանասուն հոգի իր ձեռքովը սպաննեց ու խռովութիւնը դադրեցուց։

[1] Այն խաղաղութիւնը քիչ ատեն տևեց. վասն զի այն ժամանակները Արաբացւոց մէջ զօրաւոր ցեղ մը կար՝ Մէքքէի ազնիւ շէրիֆներէն այսինքն իշխաններէն եկած. աս ցեղը Իւմմեան կ'ըսուէր։ Ցեղին գլխաւորը Մուավիէ՝ տեսնելով որ զինքը յանկարծ Ասորւոց երկրին կուսակալութենէն ձգեցին, Ամրուին հետ միաբանեցաւ, որ Օսմանին երեսէն ընկած էր. երկուքը մէկտեղ զօրք ժողվեցին ու սկսան պատերազմիլ, և հարիւր տարի որ Արաբացիք մէկզմէկ ջարդեցին կատաղութեամբ։ Ալի հոն ալ շատ քաջութիւն ցըցուց, և մէկ անգամ մը չորս հարիւր ապստամբ մէկէն սպաննեց կ'ըսեն։ Բայց վերջապէս իրեք մահմետականք խօսք դրին որ աս կռիւը դադրեցընելու համար իրեք գլխաւորներն ալ թրէ անցընեն, այսինքն Ամրուն, Մուավիեն և Ալին։ Աս մոլեռանդ թրերնին թունաւորեցին, բայց Ալին միայն կրցան սպաննել (660)։

---

1 Ալի ամիրապետը ի՞նչպէս զօրացաւ, ու ի՞նչ կերպով մեռաւ։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Պատմութիւն Արաբացւոց՝ Խալիֆանց ամիրապետութենէն ինչուան անոնց ինկալը (660-780)։ Խալիֆանք. — Մուավիէ. — Կոստանդնուպօլսոյ պաշարումը. — Յանոֆան հօր. — Եզիտ. — Մրուան. — Աբտիւլ Մէլիք. — Արաբացիք Ափրիկէի նուաճեն. — Վալիտ Ա. — Արաբացիք Սպանիոյ նուաճեն. — Սիւլէյման Ա. — Էօմէր Բ. — Մրուան Բ. — Արաբացւոց Գաղղիա վազելը. — Թուռի պատերազմը. — Խալիֆանց ինկալը. — Պաղտատու և Քորտովայի ամիրապետութիւնները։

*[1] Ալին մեռնելէն ետքը Մուավիէն, որ Գուրէյշեան ցեղէն էր ու Մահմետին դէմ շատ թշնամութիւն ալ ըրած էր՝ ամիրապետ եղաւ* (660), *և իր կառավարութիւնը աղէկ չէր։ Աշխատեցաւ որ Ափրիկէն ու Կոստանդնուպօլիսը Ղուրանին հպատակեցնէ, բայց ոչ մէկը կրցաւ համոզել և ոչ մէկալը։ Ափրիկէն ան ատենն ալ արևելեան կայսրութեան մէկ մասն էր. Ակպահ զօրավարը տասը հազար ձիաւորով ելաւ Դամասկոսէն ու Ափրիկէի բոլոր հիւսիսային կողմէն անցնելով հասաւ Ատլանտեան Ովկիանոսին եզերքը՝ Քանարեան կղզեաց դիմացը։ Երբոր Յոյները ետևէն հասան, Գայրուան ըսուած տեղը դաղթական մը թողուց՝ հին Կարքեդոնի մօտ, ու ինքը պատերազմի մէջ մեռաւ, քովիններն ալ ջարդուեցան։ Չիւպէյիր*

---

*1 Մուավիէ ի՞նչպէս ըրաւ ամիրապետութիւնը։*

զօրավարը անոր վզէժը հանել ուզեց, ու ինքն ալ նոյն փորձանքին հանդիպեցաւ։

¹ Բայց Արաբացւոց աչքը աւելի Կոստանդնուպօլսոյ վրայ էր։ Ամիրապետին որդին Եզիտ բազմաթիւ նաւերով գնաց ան մեծ քաղաքը պաշարեց 668ին։ Քաղաքին պաշտպանողն էր Կալլինիկոս Ճարտարապետը. անիկայ Ասորւոց Հելիոպօլիս քաղաքը ծնած էր, և իր Ճարտարութեամբը տեսակ մը սոսկալի կրակ հնարեր էր, որուն առջևը բան չէր դիմանար. վասն զի ջրով ոչ միայն չէր մարեր, հապա աւելի ալ կը բորբոքէր. միայն եղով կը մարէր. աս էր յունական հուր ըսուածը։ Պարիսպներուն վրայէն աս կրակը Յոյնք ջրի պէս վար կը թափէին՝ երբեմն երկըթէ ամաններով, երբեմն նետերով՝ որոնց վրայ խծուծ պլլած էր, և կիյնալու ատեն այնպիսի ձայն ու արագութիւն կ'ունենար որ կայծակ կը կարծուէր։ Կալլինիկոս առաջ իր գիւտը ամիրապետին առաջարկեր էր. բայց տեսնելով որ անիկայ արհամարհեց, Յունաց կայսեր ընծայեց, ան ալ սիրով ընդունեցաւ։ Արաբացւոց նաւատորմիղը երևնալուն պէս՝ ան յունական հրոյն չդիմանալով՝ յիսուն մղոնէն աւելի ետ քշուեցաւ։ Արաբացիք ալ տեսնելով որ գլուխ ելնել չէլլեն, երեսուն հազար մարդ կորսընցընելէն ետքը՝ իրենց երկիրը դարձան, և Յունաց կայսեր հարկատու ըլլալը յանձն առին։

---

¹ Եզիտ ի՞նչ կերպով Կոստանդնուպօլսոյ վրայ գնաց ու ետ դարձաւ։ — Ի՞նչ էր յունական հուրը։

1 Եզիտ ամիրապետին իշխանութեանը առաջին տարին (680) մեծ ապստամբութիւն մը եղաւ, բայց շուտով նուաճուեցաւ. ապստամբներուն գլուխն էր Ալիի որդին Հիւսէյին, որ Եզիտի հինգհազար ձիաւորներէն պաշարուեցաւ իրեններովը հանդերձ, ու երեսունուիրեք տեղէն վիրաւորուելով մեռաւ: Անով Ալիին ցեղը գրեթէ վերջացաւ անոր միջոցին, թէպէտ և ետքը նորէն փառաւորուեցաւ. բայց Եզիտ անով ալ իր տէրութիւնը չկրցաւ ամբողջ պահել, վասն զի Մուխթար անունով արաբացին Պարսկաստանի տիրեց, Աբտուլլահ անունով մէկն ալ Մէքքէն ու Եգիպտոսը Եզիտի ձեռքէն առաւ:

2 Մրուան (683) թէպէտ քիչ ատեն թագաւորեց, բայց Եգիպտոսը նորէն ձեռք ձգեց. իր որդւոյն Աբտիւլ Մէլիքին իշխանութեան ատենը (685) կռիւները դադրեցան, և Արաբացիք նոր նոր աշխարհակալութիւններ սկսան ընել:

3 ԱՐԱԲԱՑԻՈՑ ԱՓՐԻԿԷԻ ՏԻՐԵԼԸ: — Եգիպտոսի Հասան անունով կուսակալին հրամայեց ամիրապետը (692) որ երթայ Ափրիկէն նուաճէ. ան ալ քառասուն հազար զօրքով շիտակ Կարքեդոնի վրայ

---

1 Եզիտի ատեն իրեն դէմ ի՞նչ ապստամբութիւններ եղան: — Ո՞վ էր Հիւսէյին, ու ի՞նչպէս մեռաւ:

2 Մրուանի և իր որդւոյն ամիրապետութեանը ատեն ի՞նչ աշխարհակալութիւններ ըրին Արաբացիք:

3 Ի՞նչ կերպով տիրեցին Արաբացիք Ափրիկէի:

գնաց՝ որ Յունաց տէրութեան կեդրոնն էր ան կողմերը: Արաբացիք պարիսպներէն վեր ելան, առին քաղաքն ու հիմնայատակ կործանեցին. անկէց ետքն ալ հետզհետէ ուրիշ շատ քաղաքներու տիրեցին: Լեւոն կայսեր իրենց վրայ խրկած Յովհաննէս պատրիկին ալ յաղթեցին. անով Յոյնք չկրցան անկէց ետքը Ափրիկէն պաշտպանել: Արաբացիք սկսան պատերազմիլ Մուղրիններուն այսինքն Մաւրիտանացւոց և Պէրպէրներուն հետ. ասոնք վայրենի ու կատաղի ժողովուրդներ էին, որ Բարբարոս (Պարպարըըշ) ալ կ'ըսուէին, և ցորենն ու գարին առանց ալիւր ընելու կ'ուտէին. իրենց քաջ Թադուհին Գահինէ Արաբացւոց դէմ ելաւ, ու Հասանը վռնտեց. բայց Հասանին յաջորդը Մուսա Մաւրիտանացւոց ներքին կռիւները առիթ առնելով յաղթեց Գահինէին, Մուղրիններէն երեք հարիւր հազար գերի ծախեց, և ասանկով բոլոր Ափրիկէի տիրեց:

[1] Ան ատենները Աբտիւլմէլիք ամիրապետը մեռաւ, ու տեղն անցաւ որդին Վալիտ (707–715): Երկրորդ տարին Մուսա կուսակալը մարդ խրկեց անոր ու հրաման ուզեց որ Սպանիա անցնի, և պատճառը աս էր: Յուլիանոս անունով կոմսը Գոթացւոց Հռոդերիկոս թագաւորէն նախատինք մը կրած ըլլալով գլուխ քաշեց անոր դէմ, ու Արաբացւոց դիմեց որ օգնեն իրեն. Արաբացիք սիրով և ուրախութեամբ անոր խնդիրքը ընդու-

---

[1] Ի՞նչ պատճառաւ յորդորուեցան Արաբացիք Սպանիա անցնելու:

նեցան, ամիրապետն ալ յօժարութեամբ հրաման տուաւ Մուսայի որ ուզածը կատարէ։

¹ ԱՐԱԲԱՑԻՈՑ ՍՊԱՆԻՈՑ ՏԻՐԵԼԸ (710)։ — Մուսա մէկէն հրամայեց իր զօրապետներէն Թարիգ անունով մէկուն որ երթայ Սպանիոյ ծովեզերքը աչքէ անցընէ. անիկայ ալ հինգ հարիւր ձիաւորով անցաւ Կալպէ ըսուած ժայռին մօտ ու Սպանիա ելաւ։ Ան ատենները բոլոր Սպանիա Հռոդերիկոս Թագաւորին իշխանութեանը տակն էր, որ Գոթացի ժողովրդովը հանդերձ իրենց նախնեաց քաջութիւնները մոռցած ըլլալով իրենք զիրենք մեղկութեան ու զեղխութեան տուած էին։ Թոլետոյի մէջ, որ իրենց մայրաքաղաքն էր, հին տուն մը կար՝ որուն մէջը մարդ չէր բնակեր, վասն զի կ'ըսէին թէ սատանաներ կան մէջը. կը պատմէին թէ օր մը Թագաւորը համարձակեր է ան տանը մէջ մտնալ, ու պղնձէ դուռ մը խորտակելէն ետքը յանկարծակի մէկ մեծ սրահի մը մէջ գտնուեր է. հոն շատ մը արձաններ տեսեր է օտար հագուստներով ծածկած, մէկուն ձեռքն ալ մերկ թուր մը՝ վրան աս խօսքերս գրած եբրայեցերէն. "Սպանիոյ վերջի օրը հասեր է"։ Այսպիսի պատմութիւնները չինծուած ալ ըլլան նէ կը վկայեն թէ Գոթացիք ալ կը տեսնէին որ իրենց թագաւորութիւնը կործանելու մօտ է։

² Թարիգ զօրապետին հինգ հարիւր Արաբա-

---

¹ Սպանիա անցնող առջի արաբացին ո՞վ եղաւ։ — Ան ատենները Գոթացիք ի՞նչ վիճակի մէջ էին։

² Քսերեսի պատերազմը ի՞նչպէս եղաւ։

ցիները բոլոր այն կողմերը համարձակ յառաջելէն ետքը դարձան իրենց հայրենակցացը, գովելով պատմեցին Սպանիոյ հարստութիւնն ու բնակչաց բարքը։ Ան ատենը որոշուեցաւ որ նորէն արշաւանք մը ընեն։ Արաբացիք սա անգամ առջինէն տասնպատիկ աւելի բազմաթիւ էին. Գոթացւոց Թագաւորն ալ բոլոր իր ազնուականները քովը ժողվեր էր, և էին հարիւրհազար հոգի։ Թարիգ զարնուեցաւ անոնց հետ Քսերէս քաղաքին քովը, և Գոթացիք քանի մը ժամ պատերազմելէն ետքը ձգեցին փախան։ Հռոդերիկոս Թագաւորն ալ (որ մարգարտէ պսակ դրած գլուխը, վրան ոսկեթել վերարկու մը առած և փղոսկրէ կառքի մը վրայ մեծկութեամբ պառկած էր) Կուատալքիվիր (Վատը-էլ-քեպիր) այսինքն Մեծ գետ ըսուածին մէջ խեղդուեցաւ. ասանկով վերջացաւ Գոթացւոց ետքի Թագաւորութիւնը (711)։

[1] Թարիգ առաջ երթալով տիրեց նաև Թոլետոյի. Մուսան ալ իր փոխանորդին փառացը նախանձելով եկաւ հասաւ, պաշտօնէն ձգեց զինքը ու սուտ պատճառանքով մը իր զինուորներուն առջևը ծեծել տուաւ։ Բոլոր Սպանիա հնազանդեցաւ Արաբացւոց. միայն Կանտաբրիացւոց երկիրը՝ Աստուրիա ազատ մնաց, վասն զի Քսերեսի քով եղած պատերազմէն ետքը Պելագիոս անունով քաջ զօրավարը հոն փախաւ, ու նոր Թագաւորութիւն մը հաստատեց։

---

[1] Սպանիոյ ո՛ր մասը ազատ մնաց Արաբացւոց տիրապետութենէն։

1 Անկէց ետքը Մուսա Պիրենեան լեռներէն անդին անցաւ, որ Սեպտիմանիա (Լանկտոք) ըսուած գաւառն ալ նուաճէ. որովհետեւ հոն ատենը անիկայ ալ Գոթացւոց թագաւորութեան մասն էր: Քարքասոն քաղաքէն եօթը հատ արձան վերցուց՝ որ թափծու արծաթէ էին, եւ Նարբոնա (Նարպոն) քաղաքը սիւն մը կանգնեց՝ իբրեւ իրենց աշխարհակալութեանցը սահման. վասն զի անդ միջոցին ամիրապետը ղրկեր Դամասկոս կանչեց, անիկայ ալ գնաց, Մէքքէ ապաստանեցաւ ու հոն մեռաւ:

2 Արեւելք նորանոր յաղթութիւններ կ'ընէին Արաբացիք: Կութէյպա անունով սպարապետը ինչուան Չինու տէրութեան սահմանները հասաւ. Գասըմ անունով մէկն ալ Հնդկաստանի մէջ տարածեց մահմետականութիւնը: Բայց արեւմուտք Մուսային կանգնած սիւնը կարծես իրաւցընէ Արաբացւոց աշխարհակալութեանը սահման եղաւ, ու անկէց ետքը իրենց բանակը սկսան ձախող երթալ:

3 Սիւլէյման եւ Էօմէր Բ ամիրապետներուն ժամանակը (715–720) քանի մը անգամ նորէն ուզեցին Արաբացիք Կոստանդնուպօլսոյ տիրել, բայց չկրցան. վասն զի յունական կրակը մեծ զէնք



1 Արաբացիք Պիրենեան լեռներէն անդին ինչուան ո՞ւր հասան:

2 Արեւելքի կողմերը ի՞նչ աշխարհակալութիւններ կ'ընէին Արաբացիք:

3 Երկրորդ անգամ ի՞նչ կերպով Կոստանդնուպօլսոյ վրայ վազեցին ու ետ դարձան:

էր անոնց դէմ. մէկ արշաւանքին ատենը միայն Միւսլիմ անուանով արաբացին հազար ուղտը հարիւր նաւ կորսնցուց: Արեւմուտք ալ Արաբացւոց բանակը հետզհետէ գէշ կ'երթային, 719ին ատենը ուզեցին Սպանիոյ Աստուրիա գաւառը մտնել, բայց քաջն Պեղագիոս ու իր ընկերները յաղթեցին անոնց, և վաթսուն հազար հոգի զահանջէ տեղերէ վար նետելով սպաննեցին: Այս յաղթութեան յիշատակը ինչուան հիմա կը կատարեն Սպանիացիք՝ Քովատոնկա ըսուած տեղը Աստուածածնայ եկեղեցւոյն ուխտի երթալով:

¹ Բայց ամենէն աւելի Մրուան Բ ամիրապետութին ժամանակը (720-750) Արաբացիք մեծամեծ ձախորդութիւններ ունեցան: Սպանիոյ իշխանները (Էմիրները) իրենք զիրենք ի խալիֆաթայց թագաւորներու ժառանգ անուանելով շատ ատենէ 'ի վեր կ'ապստամբէին, որ Սեպտիմանիոյ տիրեն: Էլպէմա անուանով էմիրը առաջինն եղաւ որ աս դիտաւորութիւնը ուզեց կատարել, Քարքասոն քաղաքին քով մեծ պատերազմ մը ըրաւ Թուլուզի Եւդէոս (Էօտ) կոմսին դէմ ու հոն զարնուեցաւ մեռաւ: Յաջորդ տարիներն ալ Արաբացիք դունդդունդ բաժնուած ասպատակեցին Ալուերնիա (Օվէրն), Փրովանս, Լիոն և Պուրկոյն գաւառները, ու շատ քաղաքներ ու վանքեր կործանեցին. 732ին ալ Աբդուլռահման էմիրը չորս հազար հազով Պիրենեան լեռներէն ասդին անցաւ ու Եւդէոս կոմսին յաղթեց: Անիկայ Աւստրա-

---

¹ Մրուան Բ ամիրապետութին ատենը Սպանիոյ մէջ ինչ ձախորդութիւններ ունեցան Արաբացիք:

տիոյ Կարոլոս Մարթէլ դքսին քովը փախաւ. Կարոլոս ալ զօրք ժողվեց որ Արաբացւոց դէմ կենայ. Թուլու քաղաքին մօտ դնաց անոնց դիմացը ելաւ:

¹ Եօթը օր երկու բանակները դիմացէ դիմաց կեցան ու մէկզմէկ կը դիտէին. ութերորդին էմիրը նշան տուաւ պատերազմի ու ձիաւորներովը առաջ վազեց: Փռանկաց զօրքերը որ ծանր ու անթա-փանցելի զէնքերով, զրահներով զարդարուած էին, պարսպի մը պէս շարուած ըլլալով Արա-բացւոց յարձակմունքէն չվախցան, և պատերազմը ինչուան իրիկուն քշեց: Կարոլոս վտանգաւոր տեղուանքը միշտ գտնուելով անդադար Փռանկաց քաջութիւնը կը վառէր. վերջապէս քրիստոնէից մէջէն աղեղնաւորին մէկը մահացու վէրք մը տուաւ Աբդուլռահմանին, և Արաբացիք իրենց գլխաւո-րին մահը տեսնելով բանակնին քաշուեցան: Եր-կրորդ օրը Աւստրասիոյ դուքսը Կարոլոս Մարթէլ կ'ուզէր բանակին վրայ վազել, ու տեսաւ որ Ա-րաբացիք ձգեր փախեր են. կ'ըսեն թէ ան պա-տերազմին մէջ երեք հարիւր եօթանասունըհինգ հազար հոգի մեռած են Արաբացւոցմէ:

² Այս ձախորդութիւններուս վրայ աւելցան նաև ներքին երկպառակութիւնները: Մահմե-տականք Իւմմեանց յաջորդները անիրաւ յափշտակիչ սեպելով սկսեր էին ետեւէ ըլլալ որ Մահ-մետի օրինաւոր ժառանգները տիրապետեն: Ալի

---

1 Թուլու քաղաքին քովի պատերազմը ի՞նչպէս եղաւ:
2 Մահմետականաց մէջ ի՞նչ հերձուած ելաւ ան ատենները:

ցեղէն զատուեցան, ու Աբբասեանց կողմը սկսան բռնել, որ Մահմետի Աբբաս կամ Ապպաս անուանով հօրեղբօրը ցեղէն էին։ Այս բաժանմունքը քաղաքական պատերազմի պատճառ եղաւ 746ին. Իւմմեանք իրենց նշան առին ճերմակ գոյնը, Աբբասեանք սեւը. ճերմակները յաղթուեցան, և Մրուան Եգիպտոսի մէջ նիզակով մը զարնուելով մեռաւ։

[1] Նոյն միջոցին ութսուն Իւմմեանք ալ կոչունքի մը հրաւիրուած ըլլալով հոն ջարդուեցան։ Էպիւլ-Ապպաս անունով մէկը ամիրապետ ընտրուելով յայտնի ըսաւ թէ քանի որ Մուավիէի ցեղէն մէկ հոգի ալ ողջ է, իմ իշխանութիւնս հաստատուն չեմ սեպեր. և սակայն ան խեղճ ազգատոհմէն մէկ կտրիճ մը կրցաւ ազատիլ, որ Ապտիւր-րահման կ'ըսուէր։ Ասիկայ Եփրատայ քովերէն ինչուան Ափրիկէի Ատլաս լեռները հալածուելով Սպանիա գնաց, ու հոն տեղի Արաբացիք զինքը ամիրապետ անուանեցին. ասով անկէց ետքը երկու ամիրապետութիւն ունեցան Արաբացիք, մէկը Պաղտատու մէջ արևելք, և մէկալը Քորտովայի մէջ արևմուտք (750).

---

[1] Սպանիոյ ամիրապետութեան սկիզբը Ի՞նչպէս եղաւ։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Քրիստոնէութեան տարածուիլը արեւմուտք և արեւելք: Բարբարոսաց դարձը. — Մահմետականութիւն. — Սուրբ Հայրք. — Վանքեր. — Հերետիկոսութիւնք. — Լեւոն Իսաւրացի. — Պատկերամարտից հալածանքը Իտալիոյ մէջ. — Գրիգոր Բ և Գրիգոր Գ պապերը. — Պապերուն ժամանակաւոր իշխանութիւնը. — Լոմպարդացւոց վերջին Թագաւորները. — Պապերուն եկեղեցական իշխանութիւնը:

[1] Բարբարոսաց արշաւանքէն առաջ ալ հռովմէական տէրութեան ամէն գաւառներուն մէջ տարածուած էր քրիստոնէութիւնը. անկէց 'ի զատ նաև ան ազգերուն մէջ մտած էր՝ որ հռովմայեցւոց տէրութենէն դուրս էին, ինչպէս Հայաստան, Սկիւթիա, Արաբիա, Եթովպիա: Գոթացիք, Սուեւիացիք, Վանդալք, Լոմպարտացիք և Պուրկինեօնները իրենց արշաւանքին ատենը՝ արիոսական քրիստոնեայ էին, կամ անկէց ետքը եղան. իսկ Փրանկներն ու Սաքսոնները դեռ կռապաշտ էին: Աս բարբարոս ազգերուն շատերը սաստիկ հալածանքներ հանեցին ու մեծամեծ անգթութիւններ ըրին ուղղափառաց դէմ. բայց Եկեղեցին իր քարոզութեանցը քաղցրութեամբն ու իր վարդապետութեան սրբութեամբը զանոնք կակղցուց ու սրտերնին շահեցաւ. ուստի Սուեւիացիք 551ին, Գոթացիք 587ին, Պուրկինեօնները

---

[1] Բարբարոս ազգաց դարձը ինչ կերպով եղաւ:

517ին, Լոմպարտացիք 602ին ուղղափառ հաւատքը ընդունեցան: Փրանկները իրենց Կլովիս Թագաւորին հետ մկրտուեցան, քրիստոնեայ եղան. Իրենցմէ եկաւ այլ Անկղիացիք որ Իռլանտա ու Կալէդոնիա կը բնակէին, ու Անկղօսաքսոն բռնած ազգը: Պատրիկիոս (Փէթրիք) անունով սուրբ Սկովտիացի մը որ հովուի մը տղայ էր, Իռլանտայի մէջ քրիստոնէութիւնը տարածեց, և ան կղզիէն ելան եօթը քան քարոզիչներ որ գնացին Հռենոս գետին եզերքը միացած կռապաշտութիւնները քշեցին: Անկղօսաքսոն՝ կամ ընդհանուր անունով Անգղիացի բռնած ժողովուրդը դարձնողն եղաւ Մեծն Գրիգոր Ա պապը Օգոստինոս անունով սուրբ կրօնաւորի մը ձեռքովը. մէկ օրուան մէջ Քէնթի թագաւորը և երկու հազար Սաքսոնիացի մէկէն մկրտուեցան: Ան քարոզիչներէն եօթը ելաւ սուրբն Վոնիֆակիոս Գերմանիոյ առաքեալը, որ իր փառաւոր կեանքը մարտիրոսութեամբ լմնցուց:

¹ Արևելքի մէջ քրիստոնէութիւնը արդէն օր առաջ կ'երթար: Արդէն չորրորդ դարուն սկիզբները Հայաստան ու Վրաստան ազգով ու Թագաւորով քրիստոնեայ եղած էին: Կովկաս լեռներուն քովը եղած ուրիշ ժողովուրդներն ալ Յուստինիանոս Բ կայսրէն հոգևոր առաջնորդներ խնդրեցին, անոնք ալ գնացին ինչուան Ասիոյ ներսերը քրիստոնէութիւնը տարածեցին. իսկ երբոր Յուստինիանոս կայսրը հրաման հանեց որ հեթա-

¹ Քրիստոնէութիւնը արևելքը ի՞նչ վիճակի մէջ էր:

Նոսայ դպրոցները գոցուեցին, ալ անկէց ետքը կռա-պաշտութիւնը մէյմըն ալ չկենդանացաւ։

¹ Մէկ կողմանէ ալ քրիստոնէական կրօնից մեծամեծ վարդապետներ ելլելով, իրենց հաւատքովը ու ճարտասանութեամբ քրիստոնէութեան հաստատութիւն ու պարծանք եղան, և ըսուեցան **Սուրբ Հարք Եկեղեցւոյ**. ասոնց մէջ անուանի են արևելք և արևմուտք սուրբն Աթանաս, սուրբ հայրն մեր Գրիգոր Լուսաւորիչ, սուրբն Յակոբ Մծբնայ, Եւսեբիոս Կեսարացի, Գրիգոր Աստուածաբան Նազիանզացի, սուրբն Բարսեղ Կեսարացի, սուրբն Գրիգոր Նիւսացի, սուրբն Եփրեմ Խուրին ասորի, սուրբն Յովհան Ոսկեբերան, սուրբն Կիւրեղ Աղեքսանդրացի, սուրբն Կիւրեղ Երուսաղեմացի, Լակտանտիոս, Իլարիոն, սուրբն Օգոստինոս և սուրբն Ամբրոսիոս։ Անոր համար այն դարը քրիստոնէական մատենագրութեան ոսկեդարն ըսուեցաւ, և թէպէտ ժողովրդոց խրար անցնելովը մատենագրութիւնն ալ շատ ընկաւ, սակայն այն առաջին նաւակոծութենէն մնացած կտորտանքն ալ ժողովողը Եկեղեցին եղաւ։

² Այն տեններն որ քրիստոնէութիւնը օրէ օր բարբարոս ազգաց մէջ կը հաստատուէր, միանձնական կամ ճգնաւորական կեանքն ալ սկսաւ ծաղկիլ։ Նախ արևելք մանաւանդ Եգիպտոսի

---

¹ Քրիստոնէութեան քաջ վարդապետները որո՞նք եղան։

² Միանձնական կարգերը ո՞ր ատեն և ինչ կերպով սկսան ծաղկիլ։

կողմերը սկսաւ յառաջանալ՝ Մեծին Անտոնի և իր աշակերտաց օրինակովը. եօթը հինգերորդ դարուն սկիզբները սուրբն Ոնորատոս Եգիպտոսէն գալով Եւրոպա՝ վանքեր հաստատեց Գաղղիոյ մէջ, և անկէց ելան քաջ քարոզիչներ, երևելի գիտուններ ու ճարտար երկրագործներ ։ Երբոր այսպիսի կրօնաւորական ընկերութիւնները խիստ շատցան, հարկ եղաւ զանոնք մէկ կարգի ու կանոնի մը տակ ձգել. Եւրոպայի մէջ աս պարծանքը Իտալացւոյ մը պահուած էր՝ որ եղաւ սուրբն Բենեդիկտոս ։

[1] Սուրբն Բենեդիկտոս 529ին Բենեդիկտեան ըսուած կրօնը հիմնեց Հռոմին մօտ Կասինեան լեռը՝ խիստ կանոններով. աս կանոնները Մեծն Գրիգոր պապը հաստատեց, և ատոնք եղան բոլոր արևմտեան վանքերուն ալ կանոն ։ Բենեդիկտեանք մեծամեծ օգուտներ ըրին հաւատոյ, մարդկութեան, ու գրականութեան, և իրենց բարի օրինակովը ժողովրդոց բարքին վրայ մեծ ազդեցութիւն ըրին. իրենց ջանքովը պահուեցան և ինչուան հիմայ մնացին Յունաց և Հռովմայեցւոց հին ու երևելի գրուածները ։

[2] Բայց Եկեղեցին մէկ կողմանէ մեծամեծ յաղթանակներով փառաւորուած ատենը՝ մէկալ կողմանէ սաստիկ ցաւեր ալ ունեցաւ զանազան հերձուածոց կամ հերետիկոսութեանց պատճառաւ ։ Հերձուած կամ հերետիկոսութիւն կ'ըսուէին ան մոլո-

---

1 Բենեդիկտեանց վրայ ի՞նչ գիտելիք կայ ։
2 Ա՞ն ատեններ ի՞նչ հերձուածներ կային եկեղեցւոյ մէջ ։

րութիւնները որ հակառակ կ'ելլէին սուրբ գրոց ու եկեղեցական աւանդութեանց: Գլխաւոր հերետիկոսները կամ աղանդաւորներն էին ան ատենները Արիոսականք, Մանիքեցիք, Նեստորականք, Եւտիքականք, Պետրագեանք և մանաւանդ Պատկերամարտք՝ որ մեծամեծ վնասներ ըրին, ինչպէս որ յաջորդ պատմութենէն ալ կ'իմացուի:

[1] Արևելեան կայսերք ինչուան ան ատենները երբեմն հերետիկոսութիւններու օգնած էին, բայց իրենք հերետիկոսապետ չէին եղած. Լևոն Գ Իսաւրացին Պատկերամարտից գլուխը եղաւ: Կ'ըսեն թէ քանի մը Հրեաներ գուշակեր էին իրեն որ ատենով կայսր պիտի ըլլայ. ուստի երբոր խօսքերնին կատարուեցաւ, անոնց հաճոյանալու համար սկսաւ պատկերներուն և արձաններու դէմ ելլել և զանոնք կործանել. աս բանիս համար հրովարտակ մըն ալ հանեց 726ին: Պապը և պատրիարգները անոր դէմ բողոքեցին: Կոստանդնուպօլսոյ ժողովուրդը ոտք ելաւ ապստամբեցաւ. բայց Լևոն անոնց մտիկ չըրաւ, որչափ պատկերներ ու եկեղեցւոյ զարդեր որ գտաւ՝ Կոստանդնուպօլսոյ հրապարակին մէջ այրել տուաւ. դէմ կեցող կրօնաւորները սրը թրով, ոմն կրակով սպաննեց. ան պատճառաւ մեծ կրակ մըն ալ ելաւ, որով սրբոյն Սոփիայ Եկեղեցւոյն գրատունն ալ այրեցաւ՝ երեսուներկու հազար հատոր գրքերով:

---

[1] Պատկերամարտից աղանդը ինչպէս սկսաւ:

1 Լեւոնի հրովարտակը երբոր Իտալիա անցաւ, բոլոր ժողովուրդը անոր դէմ կեցաւ, սակայն մեծամեծներն ու իշխանները հակեցան որ կայսեր հրամանը 'ի գործ դնեն: Գրիգոր Բ պապը բարկացաւ ասոր բաներուն համար, ժողովուրդներն ալ ոտք ելան. բայց որը սպաննուեցաւ, որը աքսորուեցաւ: Ռաւեննայի կուսակալը Պօղոս ուզեց որ պապը իշխանութենէն ձգէ, թէպէտեւ անիկայ անդադար կը յորդորէր ժողովուրդը որ կայսեր հաւատարիմ մնան: Լոմպարտացիք և Հռովմայեցիք զէնք առին. Ռաւեննայի բնակիչները Պօղոս կուսակալը սպաննեցին, ու Լոմպարտացւոց Լուիթփրանտ թագաւորը սիրով ներս առին. բոլոր Պենտապոլիս ըսուած գաւառը նոյն ատենը ոտք ելաւ, և Հռովմայեցիք պապը իրենց գլուխ ճանչցան՝ հին ատենի դքսերուն տեղը: Ասանկով զօրացաւ պապերուն ժամանակաւոր իշխանութիւնը:

2 Նոր կուսակալը Եւտիքիոս Վենետիկեցւոց օգնութեամբը գնաց Ռաւեննայի և ուրիշ մէկ քանի քաղաքներուն նորէն տիրեց, և Լոմպարտացւոց հետ միացաւ որ Հռովմայ վրայ երթայ. Գրիգոր Բ Լուիթփրանտին առջեւն ելաւ, և երկնաւոր թագաւորին կողմանէ հետը խօսելով անանկ շարժեց սիրտը, որ Լոմպարտացւոց թագաւորը ոչ միայն Հռոմը պաշտպանեց, այլ և հանեց

---

1 Լեւոնի հրովարտակը Իտալիոյ մէջ ինչ խռովութիւններու պատճառ եղաւ:

2 Լուիթփրանտ թագաւորը ինչ կերպով գնաց Հռոմ Գրիգոր Բ պապին ատենը:

որբայն Պետրոսի գերեզմանին վրայ դրաւ իր կամարը, թուրը, ոսկի թագ մը և արծըթէ խաչ մը:

[1] Գրիգոր երկրորդին յաջորդեց Գրիգոր Գ., գիտուն և ճարտար քահանայապետը, որ իր բարեգործութեանցը համար Հռովմայեցւոց շատ սիրելի եղաւ: Իր նախորդին պէս քաջութեամբ բողոքեց պատկերամարտից հերձուածին դէմ, և սպառնացաւ նաև կայսրը բանադրելու՝ թէ որ հալածանքները չդադրեցընէ: Լեւոն Իսաւրացին աս սպառնալեաց վրայ բարկացած՝ Մանէս դուքսը շատ նաւերով վրան խրկեց. բայց ան նաւատորմիղը փոթորկէ մը Ադրիական ծովուն մէջ ջարդուեցաւ, և անկէց ետքը մէյմըն ալ Յոյնք Հռովմայ և Իտալիոյ վրայ տիրելու յոյս չունեցան:

[2] Քիչ ատենէն ետքը Լուիթփրանտ գնաց Հռովմայ դքսութեան չորս քաղաքներուն տիրեց, վասն զի պապը չէր ուզեր անոր ձեռքը մտնել Սպոլեթոյի դուքսը՝ որ Հռոմ ապաւիներ էր: Պապը Լուիթփրանտին դէմ Կարոլոս Մարթելէն օգնութիւն խնդրեց, անիկայ ալ երբոր կը պատրաստուէր երթալու որ Եկեղեցւոյ իրաւունքները պաշտպանէ, մահը վրան հասաւ: Երբոր Լեւոն Իսաւրացին ու Գրիգոր Գ. մեռան (741), Լուիթփրանտ սրտին մէջ դեռ ոխ ունենալով՝ նորէն սկսաւ Հռոմայ վրայ երթալ: Զաքարիա պապը շատ եկեղեցականներով անոր առջեւն ելաւ, սիր-

1 Յոյնք ի՞նչ կերպով յոյսերնին կտրեցին Իտալիոյ տիրելէն:

2 Լուիթփրանտ ի՞նչպէս նորէն թշնամացաւ ու հաշտուեցաւ պապերուն հետ:

որ առաւ, ու հետը քսան տարուան համար հաշտութիւն ըրաւ։

[1] Լուիթփրանտին տեղը Լոմպարտացւոց թագաւոր նստաւ Հիլտեպրանտ որ վեց ամիս թագաւորեց, և ախտերովը ու անզգուշութիւններովը միայն անուանի եղաւ։ Հռադկիս (Ռաչիս) իր յաջորդը քսանամեան հաշտութիւնը աւրեց. բայց պապէն յանդիմանուելով և մարդկային իրաց ընդունայնութիւնը տեսնելով՝ թագաւորութիւնը իր Աստոլփոս եղբօրը թողուց ու ինքը վանք մը քաշուեցաւ։ Աստոլփոս տիրապետութեան սիրով գնաց Իտալիան, Հռաւեննան և ուրիշ գաւառներ Յունաց ձեռքէն առաւ. ետքը իր պահանջմունքներուն ալ չափ չդնելով՝ ելաւ Հռոմն ալ ուզեց իրեն իր երկրին մէկ մասը։ Ստեփանոս Բ. քահանայապետը իր իրաւունքը պահելու համար՝ Փրանկաց Պեպինոս թագաւորէն օգնութիւն խնդրեց։ Յաղթուեցաւ Աստոլփոս և խոնարհեցաւ, ինչպէս որ ետքը պիտի տեսնենք։

Ասանկով քրիստոնէութեան հետ մէկտեղ Հռովմայ քահանայապետաց իշխանութիւնն ալ ընդարձակուեցաւ։ Իրաւ է որ կայսերաց ժամանակին ալ Հռոմայ անունը մեծ էր, բայց պապերուն հզօր և միանգամայն մարմնաւոր իշխանութեամբը Հռոմ՝ աւելի մեծ անուն հանեց արևելք և արևմուտք։

---

[1] Լուիթփրանտի յաջորդները պապերուն հետ ինչպէս վարուեցան։

# ԳԼՈՒԽ ԺԳ.

Պատմութիւն Գաղղիոյ՝ Պեպինոս Կարճահասակէն ինչուան Մեծին Կարոլոսի մահը (752-814)։ Պեպինոս Կարճահասակ. — Ասպուլֆոսի դէմ պատերազմը. — Պեպինոսի քաջութիւնը. — Ակուիտանիոյ պատերազմը. — Պեպինոսի մահը. — Իր որդիքը. — Մեծին Կարոլոսի միայն թագաւորելը. — Սաքսոններուն դէմ պատերազմը. — Լոմպարդացւոց թագաւորը Դեսիդերոս. — Սաքսոններուն դէմ նոր արշաւանքներ. — Անոնց նուաճումը. — Արեւմտեան կայսերութեան նորոգումը. — Իրենէ թագուհին. — Պաղտատու ամիրապետը. — Նիկեփորոս կայսեր դեսպաններուն ընդունելութիւնը. — Մեծին Կարոլոսի վերջին տարիները. — Իր մահը։

*[1] Պեպինոս Կարճահասակը դեռ նոր նստեր էր Մերովմեանց աթոռը (752) երբոր Ստեփանոս Բ Հռոմայ քահանայապետը Ալպեան լեռներէն անցաւ, ու գնաց Փրանկաց նորապսակ թագաւորէն՝ Լոմպարտացւոց Աստուլփոս (Աստոլֆ) թագաւորին դէմ օգնութիւն խնդրելու, վասն զի անիկայ անխնայ տուրքեր ձգեր էր Հռովմայեցւոց վրայ ու անոնց երկիրները ոտնակոխ ըրեր էր։ Մեծ պատուով ընդունեցաւ Պեպինոս քահանայապետը, և խօսք տուաւ որ իրեն պաշտպանութիւն ընէ. դեսպան խրկեց Աստոլֆին ու յորդորեց զինքն որ Հռովմայ երկրին մէջ՝ ալ չդըպչի, ըրած վնասներուն ալ փոխարէնն հատուցումն*

---

[1] *Պեպինոս ի՞նչ պատճառաւ Իտալիա գնաց։*

ընէ : Լոմպարտացւոց թագաւորը մտիկ չըրաւ . Պեպինոս ալ վրան պատերազմի ելաւ, մտաւ Լոմպարտիա, ու յաղթեց Աստոլֆին, ան ալ խոստացաւ որ իրմէ պահանջուած պայմանները հաւատարմութեամբ կատարէ : Բայց երկու տարի ետքը երբոր բրած խոստմունքը չպահեց՝ նորէն Իտալիա մտաւ Պեպինոս, երկրորդ անգամ յաղթեց Աստոլֆին, Հռավեննան ու Պենտապոլիսը անոր ձեռքէն առաւ ու պապին տուաւ, որով Հռոմայ դքսութեանը հետ մէկտեղ ծայրագաւառները որոնք Պետրոսի կամ պետրոսեան Եկեղեցւոյ ըսուածը ձեւացան (756) :

¹ Պեպինոս Գաղղիա դառնալուն պէս ուզեց իր թագաւոր պսակուելուն համար հանդէս մը ընել ժողովրդեան . երբոր ինքը հանդէսին մէջ երեւցաւ, հասակին կարճութեանն ու մարմնոյն հաստութեանը վրայ շատերը սկսան ծիծաղիլ : Պեպինոս հրամայեց որ խոշոր ցուլ մը բերեն ու անոր առջեւը կատաղի առիւծ մը արձըկեց : Մէկէն ցատքեց առիւծը ցուլին վիզը պլլուեցաւ, գետին ձգեց զանիկայ ու խղդելու մօտ էր : Երբոր ամէնքը սարսափած կը նայէին, իջաւ Պեպինոս դահէն, իր վրայ ծիծաղողներուն դարձաւ ու ըսաւ . " Ձեր մէջէն ո՞վ կրնայ երթալ սա սոսկալի պատերազմողները իրարմէ բաժնել " : Անոնք իրարու երես նայելէն ետքը ըսին . " Տէր արքայ, աշխարհիս վրայ մարդ չկայ որ այդպիսի բանի սիրտ ընէ : — Ուրեմն ես պիտի ընեմ " ըսաւ Պեպի-

---

¹ Պեպինոսին վրայ ի՞նչ նշանաւոր քաջութիւն կը պատմուի :

նաս , Թուղթը ձեռքը իջաւ կրկէսը , ու ներկաւ զար-հուրանքով սարսեցին ու ծռեցին գլուխները գե-տինը ձգեց . Թուղթը պատառեանը գրաւ , ելաւ կըր-կէսէն , ու նորէն աթոռը նստելու ատենը դար-ձաւ ըսաւ իշխաններուն բարձր ձայնով . “ Ուրեմն կրնա՞մ ես ձեր տէրն ըլլալ . լաւ չէ՞ք որ Դաւիթ դեռ տղայ եղած ատենը սպաննեց հսկայ Գողիա-թը , և ի՞նչպէս Աղեքսանդր կարճ հասակովը իր յաղթահասակ զօրավարներէն աւելի քաջութիւն կ՚ընէր ,, ։ Ամէնքը ոտքն ընկան , ու Պեպինոսը իրենց տէր և թագաւոր կանչելով թողութիւն խնդրեցին ։

1 Աստոլֆին յաղթելու համար դժուարու-թիւն չքաշեց Պեպինոս . բայց Ակուիտանիան նուաճելու համար նոյն դիւրութիւնը չունեցաւ ։ Ակուիտանիան Պիրենեան լեռանց ստորոտը ընդ-արձակ երկիր մըն էր , և մէջի բնակիչներն էին Գասք , Վասք կամ Կասքոնք , և անոնց իշխանն էր Կուայֆեր կամ Վայֆր ըսուած դուքսը ։ Աս Վայֆրին հայրը Հունալտ իշխանութենէն հրա-ժարելով վանք մը քաշուեր էր . ինքն ալ ամենուն վրայ տիրապետելու մտքով սկսաւ իր երկիրը ըն-դունիլ փախստական Փրանկները ու եկեղեցինե-րուն ընծայ տրուած երկիրները կը գրաւէր ։ Պե-պինոս մարդ ղրկեց , ըսաւ Վայֆրին որ եկեղե-ցիներէն առած երկիրները ետ դարձընէ . երբոր անիկայ մտիկ չըրաւ , վրան պատերազմի ելաւ

1 Ակուիտանիոյ պատերազմին պատճառն ի՞նչ էր ։ — Ի՞նչպէս մեռաւ Պեպինոս ։ — Յա-ջորդը ո՞վ եղաւ ։

Պեպինոս, և Պէրրի, Օվէռն ու Լիմուզէն գաւառները ոտնակոխ ըրաւ: Վայֆերին զօրաց թիւը թէպէտև օրէ օր կը պակսէր ու կտրիճ զօրավարները կը մեռնէին, սակայն քաջութեամբը դէմ կեցաւ Պեպինոսին՝ մինչուան որ Կասքօնները թողուցին զէնքը ու Փրանկաց կողմն անցան: Ակուիտանացիք ան ութամեայ պատերազմէն ձանձրացած՝ Պեպինոսի առաջարկութիւնները ընդունեցան, և Վայֆր միշտ աննուաճելի մնալով իրեններէն սպաննուեցաւ: Իսկ Պեպինոս բոլոր երկրին տիրապետեց, ու յաղթանակաւ դարձաւ Սէնթ քաղաքը (768): Քիչ ատենէն հիւանդացաւ, ու թագաւորութիւնը երկու որդւոցը՝ Կարոլոսի ու Կարլոմանոսի մէջ բաժնելէն ետև մեռաւ: Իր շիրմին վրայ աս պարզ տապանագիրը գրին. "Պեպինոս, հայր Մեծին Կարոլոսի":

[1] Այս երկու եղբարց թագաւորութեան ատենը նորէն բացուեցաւ Ակուիտանիոյ պատերազմը. և Կարլոմանոս բոլորովին իր եղբօրը Կարոլոսին յանձնեց ան պատերազմին հոգը: Հունալտ կոմսը վանքէն դուրս ելեր ու որդւոյն մահուան վրէժն առնելու համար բոլոր Ակուիտանիան ոտք հաներ էր. բայց երբոր յաղթուեցաւ, իրենները քովէն հեռացան, ինքն ալ Կասքոնի դքսին քովը փախաւ, որ զինքը պաշտպանելու չափ զօրութիւն չունենալով բռնեց Կարոլոսին ձեռքը տուաւ: Կարլոմանոս 771ին մեռաւ, և բոլոր Գաղղիոյ թագաւորութիւնը Կարոլոսին ձեռքն անցաւ, որ

---

[1] Ակուիտանիոյ պատերազմը ինչպէս վերջացաւ:

իր յաղթութեանցն ու մեծամեծ կատարելութեանցը համար Մեծ ըսուեցաւ ։

[1] Մեծն Կարոլոս իր Թագաւորութիւնը Սաքսոններուն հետ ըրած պատերազմովը սկսաւ ։ Այս ժողովուրդը ինչուան այն ատենը բարբարոս էր, և քրիստոնէութեան թշնամի, այնպէս որ շատ քարոզիչներ սպաններ ու դեռ նոր եկեղեցի մը այրեր էին մէջի քրիստոնեաներովը մէկտեղ ։ Մեծն Կարոլոս աս բաներս գիտնալով վազեց մտաւ Գերմանիա, կործանեց անոնց Հերմանսուլ կուռքը, որ Հերմանին (Արմինիոսին) Վարոսի վրայ ըրած յաղթութեան յիշատակը պահելու համար կանգնած էին, և ան կուռքին տաճարն ալ կործանեց ։

[2] Անկէց շուտ մը դարձաւ Մեծն Կարոլոս Լոմպարտացւոց Դիզիերոս Թագաւորին վրայ, որ Կարլոմանին որդիքը քովը առեր ու գնացեր Հռոմը պաշարեր էր ։ Ալպեան լեռներէն անցան Փրանկները (774) Մեծին Կարոլոսի առաջնորդութեամբը, որ գլուխը երկաթէ սաղաւարտ դրած, թևերը երկաթէ բազպաններ անցուցած, վերէն վար երկաթէ զրահ հագած, ձախ ձեռքը երկաթէ նիզակ, և աջ ձեռքը անյաղթելի թուրը բռնած, բոլոր զօրացը պէս ալ երկաթէ ոտքի ամաններ հագած՝ առաջ կը քշէր ան բազմաթիւ բանակը ։ Իտալիա իջնելուն պէս Ալբոյինոսի հիմնած միապետութիւնը կործանեց, և Միլան

---

[1] Մեծն Կարոլոս ի՞նչ կերպով սկսաւ իր Թագաւորութիւնը ։

[2] Ի՞նչպէս յաղթեց Դիզիերոսի ։

գնաց պսակուեցաւ ան հռչակաւոր երկաթի պսակովը, որ Քրիստոսի Տեառն մերոյ խաչին մէկ գամովը շինուած էր: Սաքսոնիացւոց դքսաւորը Վիթիքինտ կը կարծէր որ Մեծն Կարոլոս գեռփոյ գետին քովերն է. մէյմըն ալ տեսաւ որ անիկայ փոթորկի մը պէս հասեր՝ Գերմանիան կը նուաճէ, ու ոտք ելլելու սկսած ապստամբութիւնները կը զսպէ:

1 Ան արշաւանքէն ետ դառնալու ատենը Սպանիոյ էմիրները գնացին Կարոլոսէն Քորտովայի ամիրապետին դէմ օգնութիւն խնդրեցին: Թագաւորը Պիրենեան լեռներէն անցաւ, ինչուան Իբերոս (Էպրոյ) գետին քով եղած երկիրներուն տիրեց, և նորէն Գաղղիա դարձաւ. բայց Ռոնսվալ բան Վասքոնները շատ նեղութիւն տուին զօրացը ու Ֆրանկաց վերջապահ գունդը ջարդեցին. անոնց մէջ էր նաև հռչակաւոր Օրլանտոյ կամ Ռոլանտ ասպետ իշխանը որ միջին դարու վիպասանութեանց մէջ շատ անուանի է, ու Արիոստոյ և Պոյարտոյ իտալացի բանաստեղծները վրան դիւցազներգութիւններ շինած են:

2 Սաքսոնները նորէն ոտք ելեր էին. Կարոլոս միտքը դրաւ որ վերջին երթայ ու ստիպէ զանոնք որ մկրտուին, քրիստոնեայ ըլլան: Հետզհետէ ութը մեծամեծ եպիսկոպոսարաններ հաստատուեցան անոնց երկիրներուն մէջ, ամէն տեղ քարոզիչներ խրկուեցան ու աւետարանը քարո-

---

1 Սպանիացւոց ինչ օգնութիւն ըրաւ: — Ո՞վ կար ան ատենները անուանի:

2 Սաքսոնները ի՞նչպէս նուաճեց:

շէյխին · բայց երբոր Մեծն Կարոլոս Հռենոսէն անցաւ՝ իր երկիրը դարձաւ, Վիթիքինտ իր ընկերները նորէն ոտք հանեց։ Թագաւորը այնչափ յամառութեանը վրայ բարկացած՝ վազեց մտաւ Սաքսոնիա, Թշնամեացը ետեւէն գնաց ու անոնցմէ չորս հազար հինգ հարիւր հոգի Թրէ անցուց՝ և միտքը դնելով որ ան կոտորածին վրայ ուրիշները կը հանդարտին՝ Պաւարիացւոց ու Աւարացւոց դէմ պատերազմելու գնաց։ Ան միջոցին յարձակեցաւ Վիթիքինտ Փրանկաց վրայ, ու անոնցմէ քսանըչորս հազար հոգի կոտրեց։ Աս գործին որ տեսաւ Մեծն Կարոլոս՝ մտաւ Սաքսոնիա, անտառներն ու գեղերը այրեց, և հարիւր հազար անուոր հանեց տարաւ իր տէրութեանը այլեւայլ կողմերը ցրուեց։ Վիթիքինտ տեսնելով իր հայրենեացը խեղճութիւնը՝ հնազանդեցաւ իր յաղթականին ու մկրտուեցաւ քրիստոնէայ եղաւ (786)։

[1] Մեծն Կարոլոս անկէց ետքը իր տէրութիւնը բարեկարգելու ձեռք զարնելով՝ օրինաց գիրք մը հանեց, որ ամէն տեսակ հրովարտակներու, կանոններու և օրէնքներու հաւաքումն է։ Աքուիսկրանա (Էքսալա-Շափէլ) քաղաքը իր աթոռը հաստատեց, զարդարեց զանիկայ, հոն օտար ազգաց դեսպանները կ՚ընդունէր, ու Իտալիոյ և Անգղիոյ իմաստունները կը ժողվէր։ Լեւոն Գ. Հռոմմայ քահանայապետը զինքը Հռոմ հրաւի-

---

[1] Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ Մեծն Կարոլոս իր տէրութեանը մէջ։ — Ի՞նչպէս նորոգուեցաւ արեւմտեան կայսրութիւնը։

րեց, և Քրիստոսի ծննդեան օրը երբոր Թագաւորը սրբոյն Պետրոսի խորանին առջևը պատարագ կը լսէր, պապը գնաց անոր գլուխը ոսկի Թագ մը դրաւ, զինքը Արևմուտքի կայսր օծեց, երկու արքեպիսկոպոսներ ալ կայսերական ծիրանին հագեցին, ժողովուրդն ալ մէկ բերան “Կեցցէ Կարոլոս Օգոստոս„ կանչելով իրեն երկար կեանք ու յաղթութիւն մաղթեցին (800):

[1] Արևելքի կայսրուհին Իրենէ երբոր լսեց Մեծին Կարոլոսի այնչափ փառաւորուիլը, սկսաւ վախնալ: Մեծն Կարոլոս մտածելով որ արևելքի ու արևմուտքի կայսրութիւնները իրարու հետ միացընէ, ուզեց Իրենէն կին առնուլ, աս առաջարկութեան վրայ խռովեցաւ Կոստանդնուպոլսոյ ժողովուրդը, աթոռէն ձգեցին Իրենէն, հեռաւոր կղզի մը քշեցին. Մեծին Կարոլոսի դեսպանին ալ, որ Հեռոտոնիոս եպիսկոպոսն էր, շատ նախատինքներ ըրին:

[2] Ան ատեններն ուխտաւորները չէին կրնար Երուսաղէմ ուխտի երթալ. Մեծն Կարոլոս դեսպան խրկեց Պաղտատու Հարուն-էլ-Ռաշիտ ամիրապետին, ու խնդրեց որ թող տայ քրիստոնէից որ երթան Երուսաղէմ իրենց Աստուծոյն գերեզմանին վրայ աղօթք ընեն: Ամիրապետը ոչ միայն սիրով կատարեց անոր խնդիրքը, այլ նաև ընծայ խաւրեց իրեն զարմանալի փիղ մը՝ որ իր փղապանին ամէն խօսքին կը հնազանդէր. անկէց 'ի զատ

---

[1] Իրենէ Թագուհւոյն պատմութիւնն ի՞նչ է:
[2] Պաղտատու ամիրապետը ի՞նչպէս վարուեցաւ Մեծին Կարոլոսի հետ:

մէկ միւսինով բանուած անգին ժամացոյց մը . Երուսաղէմի դրօշը , և նոյն իսկ Քրիստոսի սուրբ գերեզմանին բանալիքը :

¹ Երբոր Մեծն Կարոլոս Հեռաստանիոս եպիսկոպոսին նախատանաց վրէժն առնելու կը պատրաստուէր , լսեց որ Իրենէին տեղը Նիկեփորոսը կայսր նստեր ու սիրտը առնելու մտքով իրեն դեսպաններ կը խրկէ : Կարոլոս Յունաց կայսեր դեսպաններուն աչքը վախցընել ուզելով՝ աս հնարքս բանեցուց : Դեսպանները Աքուիսկրանայի պալատն որ մտան՝ առջի սրահին մէջ տեսան գունդրստապետը այսինքն հազարապետը բարձր աթոռի մը վրայ նստած , փառաւոր հագուստներով զարդարուած , և չորս կողմը հազար իշխան ոսկեթել պատմուճաններով կեցած . կ'ուզէին մէկէն իյնալ երկրպագութիւն ընել , բայց իմանալով որ անիկայ թագաւորին պաշտօնեաներէն մէկն է , անցան մէկալ սրահը մտան : Հոն առջինին եղաւ պալատին վերատեսուչը քովի իշխաններովը . դեսպանները ալ չտարակուսեցան ; ծունկի վրայ եկան որ երկրպագութիւն ընեն անոր . քովինները իմացուցին իրենց որ թագաւորը ան չէ : Նոյն բանը պատահեցաւ երրորդ ու չորրորդ սրահին մէջ ալ , ուր կային սենեկապետը հագուած կապուած առջինին եղաւ : Վերջապէս դեսպանները այնչափ փառաւորութենէն արդէն աչքերնին շլացած՝ Մեծին Կարոլոսի առջին որ եկան , անոր վսեմ կերպարանքէն ու ահեղ նայուածքէն իբրև կայ-

---

¹ Նիկեփորոս կայսեր դեսպանները ինչ կերպով ընդունեցաւ Մեծն Կարոլոս :

ծակէ մը զարնուած՝ առանց տարակուսելու ընկան մէկէն երկրպագութիւն ըրին :

[1] Արեւմտեան կայսերութիւնը (որ 324 տարիէն 'ի վեր վերցուեր էր), Մեծին Կարոլոսի վրայ նորոգուելով՝ անոր հանճարովը հիմնուած բաները պահելու համար ալ անոր հանճարին կարօտ էր, բայց իր յաջորդները ամենն ալ հասարակ մարդիկ եղան : Աս գիտնալով Մեծն Կարոլոս՝ իր կենացը վերջի տարիները շատ տխուր գուշակութիւններով անցուց : Կը մտածէր որ սկսած գործքը անկատար պիտի թողու, և այնչափ քաշած աշխատանքը, նեղութիւնն ու պատերազմները բանի պիտի չգան : Իր անդրանիկ որդին Կարոլոս, որուն վրայ էր բոլոր յոյսը, իրմէ առաջ գերեզման գնաց. նմանապէս Իտալիոյ վրայ կուսակալ դրած Պեպինոս որդին ալ մեռաւ :

[2] Օր մը Մեծն Կարոլոս Նարպոնեան Գաղղիոյ ծովեզերեայ քաղաքներէն մէկուն մէջ կեցած ատենը կը տեսնէ որ շատ մը Աքանտինաւիացի ծովու աւազակներու նաւեր կուգան նաւահանգըստին կը մօտենան, մէկէն զօրքը կը վազեն զանոնք կը հալածեն. բայց Կարոլոս ձեռքը ծնօտին դրած՝ պատուհանէն Ովկիանոսին վրայ կը նայէր ու կուլար : Քովը կեցող իշխաններէն մէկն ալ չէր համարձակեր հարցնելու թէ ինչու կուլայ : Թագաւորը երկար ատեն լուռ կենալէն ետքը, կը

---

1 Մեծն Կարոլոս ինչպէս անցուց իր կենացը վերջի տարիները :

2 Աս կողմանէ ինչ մասնաւոր բան կը պատմուի վրան :

դառնայ անոնց. «Գիտէք բարեկամք, ինչու համար սաստիկ դառնապէս կուլամ, կ՚ըսէ. անոր համար չեմ լար որ իբր թէ աս ողորմելի աւազակները կարենան պիտի ինծի վնաս մը հասցընել. հապա կը մտածեմ թէ սոնք որ իմ կենդանութեանս ատեն կը համարձակին ինչուան այսչափ մօտենալու, մեռնելէս ետքը ի՞նչ պիտի չընեն. հիմակուընէ կը գուշակեմ յաջորդացս ու անոնց ժողովրդեանը քաշելու նեղութիւնները»:

[1] Տեսնելով Կարոլոս որ իր վախճանը մօտեցեր է, իշխանները ժողվեց, անոնց առջեւ իր Լուդովիկոս որդին յաջորդ դրաւ, ու սրտաշարժ խրատներ տալէն ետքը իր ձեռքովը անոր գլուխը թագ դրաւ, և աս եղաւ իր վերջի խօսքը. «Ի ձեռս քո տէր աւանդեմ զհոգի իմ»: Մեծազօր թագաւորի կեանք անցուց Կարոլոս, ճշմարիտ քրիստոնէի մը պէս ալ վախճանեցաւ եօթանասուներկու տարեկան՝ 814ին:

[2] Ըստ սովորութեան մարմինը լուացին, փառաւոր կերպով զարդարեցին, Աքուիսկրանայի մէջ իր շինած մայր եկեղեցին տարին, ոսկի աթոռի մը վրայ նստեցուցին, թուրը քովէն կախած, գլուխը թագ, ձեռքը աւետարան, և առջեւը թագաւորական դաւազանին ու պապէն օրհնուած ոսկի վահանը: Քանի մը ժամ մարմինը ասանկ կենալէն ետև, նոյն եկեղեցւոյն մէջ թաղեցին՝ վրան ոսկեզօծ կամարակապ շիրմով, որուն վրայ իր պատկերովը աս տապանագիրը գրեցին. «Աս

---

[1] Ի՞նչ կերպով մեռաւ Մեծն Կարոլոս:
[2] Թաղման հանդէսն ինչպէս եղաւ:

քարիս տակն է Կարոլոսի մարմինը, մեծ և ուղղափառ կայսեր, որ փառաւորութեամբ մեծցուց և երջանկութեամբ կառավարեց Փրանկաց Թագաւորութիւնը քառասուն եօթը տարի ,, :

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Պատմութիւն Գաղղիոյ՝ Բարեմիտ Լուդովիկոսէն մինչեւ Փիլիպպոս Ա (814-1070): Լուդովիկոս Բարեմիտն. — Որդւոցը ապստամբութիւնը. — Ֆէփէրնին ըրած պատերազմը. — Քաղած նախափինքը. — Նորէն Թագաւորելը. — Մահը. — Կայսերութեան բաժնուիլը. — Կարոլոս Յոյրն. — Քաջն Եւդէոս. — Կարոլոս Պարզամիտն. — Ռողլոն Նորմանդացին. — Մեծն Հուգոն. — Լոթարիոս. — Հուգոն Քաբէթ. — Քաբէթեանք. — Ռօբէրդոս. — Բանադրուիլը. — Մահը. — Ողորմածութիւնը. — Բարեպաշտութիւնը. — Հենրիկոս Ա. — Փիլիպպոս Ա. — Կալուածական իշխանութիւն :

[1] Լուդովիկոս Ա (814) որ չափազանց բարեսըրտութեանը համար Տէպօնէր այսինքն Բարեմիտ ըսուեցաւ, քաղցրաբարոյ և բարեպաշտ մարդ էր, բայց կառավարութեան շատ յարմար չըլլալով հազիւ կրնար հօրմէն առած ժառանգութիւնը պահել: Տէրութիւնը որդւոցը մէջ բաժնեց. Լոթարիոսը կայսերութեան յաջորդ ընտրեց, Պեպինոսը Ակուիտանիոյ վրայ Թագաւոր դրաւ և Լուդովիկո-

---

[1] Լուդովիկոս Բարեմիտն ի՞նչ կերպով բաժնեց իր տէրութիւնը :

ալ, որ Գերմանիկոս այսինքն Գերմանացի ըսուեցաւ, Պաւէրայի Թագաւոր անուանեց :

[1] Բայց երբոր Լուդովիկոս իր Ցուդիթ կնոջէն ունեցած Կարոլոս որդւոյն ալ (որ ետքը Կարոլոս Ճաղատ ըսուեցաւ) ուզեց մաս մը տալ ու զինքը Գերմանիոյ վրայ Թագաւոր դրաւ, իրեք եղբայրքը Լոթարիոս, Պեպինոս և Լուդովիկոս աս բանիս վրայ բարկացած՝ հօրերնուն դէմ պատերազմի ելան : Լուդովիկոս Բարեպաշտ որ աշխարհիս մէկ մեծ մասին տէր էր, իր որդիքը սանձելու համար օգնական մը չգտաւ : Ցուդիթը բռնեցին վանք մը փակեցին . Թագաւորն ալ ինքիրմէ ուրիշ վանք մը քաշուեցաւ : Բայց անմիաբանութիւնը շուտով սկսաւ ան եղբարց մէջ . ամբոխականներն ալ տեսնելով որ իրենց յոյսը պարապ ելաւ, նորէն կայսեր դարձուցին իր Թագուհին ու կայսերութիւնը :

[2] Քանի մը տարի ետքը նորէն աս իրեք եղբայրքը հօրերնուն դէմ միացան, ու Բասիլէայի ու Սթրասպուրկի մէջտեղն եղած Ռոթֆելտ անունով դաշտերուն մէջ ճակատեցան : Ան գիշերը՝ որ երկրորդ օրը պատերազմի պիտի սկսէր՝ բոլոր կայսեր քովի եղող մարդիկը, իշխանք, պաշտօնեանք, զօրականք, ամէնքն ալ գիշերանց թշնամւոյն բանակը անցան : Լուդովիկոս արթընցաւ տեսաւ որ քովը կինն ու իր պզտիկ որդին, և քանի մը հաւատարիմ ծառաները միայն մնացեր են . Հար-

---

1 Որդիքը ինչ պատճառաւ ու ինչպէս ապստամբեցան իրմէ :

2 Ռոթֆելտ դաշտին պատերազմը ինչ վերջ ունեցաւ :

կադրեցաւ որդւոցը անձնատուր ըլլալ։ Այս ամօթապարտ մատնութեան տեղը բռնեցաւ Դաշտ ՆԵՆԳՈՒԹԵԱՆ։

[1] Լոթարիոս ինքզինքը կայսր անուանել տալէն ետքը՝ տարաւ իր հայրը Սուասոն քաղաքը վանք մը գրաւ․ կ՚ուզէր անոր վրայէն նորէն թագաւորելու յոյսը բոլորովին ալ վերցընել, բայց հայրասպանութեան սոսկալի անունէն վախնալով՝ այսպիսի չարահնար գիւտ մը մտածեց։ Քոմփիէնը ըսուած քաղաքին մէջ ժողով մը գումարեց (833)․ հոն Լուդովիկոս ապաշխարողի հագուստով եկաւ, իրեն վրայ ձգած յանցանքներուն կարդացմունքը խոնարհութեամբ մտիկ ըրաւ, որ ասոնք էին՝ թէ Աստուծոյ իրեն յանձնած տէրութիւնը աղէկ չկառավարեց, մեծ պահոց մէջ պատերազմ ըրաւ, և ասոր նման բաներ։ Ամէն ըսածներուն ինքզինքը յանցաւոր խոստովանեցաւ Լուդովիկոս, և իր յանցանացը ցանկը դողդըղալով ստորագրեց։ Ան ատեն ապերախտ որդը հրամայեց անոր որ կայսերական զարդերը վրայէն հանէ, զէնքն ու թուրը վար դնէ և քուրձ հագնի։ Հնազանդեցաւ Լուդովիկոս, եկեղեցիէն դուրս վռընտուեցաւ ու դատապարտուեցաւ որ բոլոր կեանքը վանք մը քաշուած անցընէ։

[2] Այսպիսի գործողութիւնէն ետքը Լոթարիոս դեռ վախնալով որ ձեռքը գերի մատնուած հայրը յանկարծ չփախչի, հետը առաւ զինքը ինչուան

---

1 Լոթարիոս իր հօրը հետ ինչպէս վարուեցաւ։
2 Նորէն ինչ կերպով թագաւորեց Լուդովիկոս Բարեմիտն։

Աքուիսկրանա տարաւ, վանքի մը մէջ փակեց։ Ծերունի Թագաւորին այնպիսի խեղճութիւնն ու անարգութիւնը տեսնելով ամենուն սիրտը շարժեցաւ, այնպէս որ ժողովուրդը սկսաւ հայրատանջ որդւոյն դէմ ձայնը բարձրացընել, ինչուան որ Լոթարիոսի բոլոր կուսակիցները քովէն հեռացան, ինքն ալ ձգեց փախաւ. Լուդովիկոսը վանքէն հանեցին ու նորէն Թագաւոր ըրին։

[1] Քիչ ատենէն երբոր իր համանուն Լուդովիկոս որդին ապստամբեցաւ, ու զանիկայ Նուաճելու կ'երթար, ճամբան սրտին ցաւէն հիւանդացաւ ու քիչ օրէն վախճանեցաւ Բարեմիտն Լուդովիկոս աս խօսքերս ըսելով. “ Կը ներեմ որդւոյս, բայց գիտնայ որ ինքը եղաւ մահուանս պատճառ, և թէ Աստուած հայրասպան որդիքը կը պատժէ ,, (840)։

[2] Լոթարիոս իբրև անդրանիկ իր հօրը յաջորդելով՝ երբոր սկսաւ եղբարցը վրայ ալ իշխանութիւն բանեցընել, Լուդովիկոս և Կարոլոս բարկացան, ոտք ելան ու Օքսէրի քով Ֆոնթընէի դաշտերուն մէջ արիւնահեղ պատերազմ մը ըրին, ուր հարիւր հազար հոգի մեռան կ'ըսեն (841)։ Լոթարիոս յաղթուեցաւ, հաշտութիւն խնդրեց, և տէրութիւնը մէջերնին բաժնեցին. Կարոլոս Ճաղատ՝ Գաղղիան ու Ակուիտանիան առաւ. ամբողջ Գերմանիան ինչուան Հռենոս գետը՝ Լուդովիկոս Գերմանիկոսի ընկաւ. Լոթարիոսն ալ Իտալիան, Փռովանսը, Պուրկոյնի մէկ մասն ու

---

1 Ի՞նչպէս մեռաւ։
2 Լուդովիկոս Բարեմտին ո՞վ յաջորդեց։

Լորէն գաւառը առաւ։ Եւ ահա անկէց կը սկսին Գաղղիոյ, Գերմանիոյ ու Իտալիոյ նոր թագաւորութիւնները (843)։

[1] Կարոլոս Ճաղատ ամենևին քաջութիւն չունենալով՝ չկրցաւ Գաղղիան Սարակինոսաց ու Նորմանտացւոց արշաւանքներէն ազատել (877)։

[2] Լուդովիկոս Թլուատ (Լը Պէկ), Լուդովիկոս Գ և Կարլոմանոս թագաւորներուն ատենները ալ Նորմանտացիք իրենց աւարառութիւններէն ետ չկեցան, և առջևնին դէմ կեցող միայն Անժուի կոմսը Հռոբերտոս հզօր ըսուածը եղաւ՝ որ Գափեթեան ցեղին նախահայրը կը սեպուի։ Ան ատեն իշխանները Գաղղիոյ թագաւորութիւնը Գերմանիոյ կայսեր Կարոլոս Ցոյր (Լը Կրոյ) ըսուածին տուին (885) որ Մեծին Կարոլոսի թոռն էր, յուսալով որ աս զօրաւոր թագաւորը թշնամեաց ձեռքէն ազատէ զիրենք, բայց յոյսերնին պարապ ելաւ։ Նորմանտացիք գնացին Փարիզը պաշարեցին. Հռոբերտոսի որդին քաջն Եւդէոս (Էօտ) երկու տարի արիութեամբ անոնց դէմ կեցաւ։ Վերջապէս հարիւր հազար զօրքով եկաւ կայսրը, և փոխանակ պատերազմով թշնամիքը հալածելու՝ ստակով հաշտութիւն ըրաւ հետերնին։ Աս նախատալից դաշնադրութեան վրայ ամէնքը բարկացած, թո-

---

1 Կարոլոս Ճաղատն ինչպէս ըրաւ իր թագաւորութիւնը։

2 Կարոլոս Ճաղատին յաջորդացը մէջ ո՞վ եղաւ անուանի։ — Կարոլոս Ցոյրն ինչ պատճառաւ աթոռէն ձգուեցաւ։

ղրկեցին ամէն կողմէն, ու ժողովով ձգեցին աթոռէն վար կայսրը (887):

1 Կարոլոս Ցոյրն Թագաւորութենէն ելնելովը՝ Մեծին Կարոլոսի ազգատոհմն ալ բոլորովին ընկաւ. Գաղղիացի իշխանաց աչքը Փարիզը պաշտպանող Եւդէսոսին վրայ էր, ուստի զինքը Թագաւոր հռչակեցին: Անոր դէմ ոսոխ ելաւ Կարլովինկեան ցեղէն Կարոլոս Գ Պարզամիտն (Լը Սէմփլ) ըսուածը որ սկսաւ իր հայրենի ժառանգութիւնը պահանջել. Եւդէսոսի մահն ալ շուտ վրայ հասնելով Կարոլոսի ընկաւ բոլոր Թագաւորութիւնը (898):

2 Կարոլոս Պարզամիտն շուտով յայտնի ըրաւ որ կառավարութեան յարմարութիւն չունի, և իր անարժան բարեկամները կը կառավարէին զինքը: Ասոր ժամանակը Նորմանտացւոց Ռոլլոն անուանով գլխաւորը եկաւ Նէւստրիայի մէջ բնակեցաւ: Իսկ Նէւստրիա ըսուածն էր Պրեթայնի, Անժուի ու Սոմ գետին մէջ տեղը ընկած երկիրը: Եւ որովհետև Կարոլոս Ռոլլոնին դէմ պատերազմելու կարողութիւն չունէր, իր աղջիկը անոր հետ կարգելով ուզեց զանիկայ իրեն նիզակակից ընել. ու Նէւստրիոյ բարեբեր գաւառը Ռոլլոնին թողուց. ան ալ քիչ ատենէն բարեկարգութեամբ ու շէնքերով զարդարեց ան տեղուանքը որ իր ազգին անունովը Նորմանտիա ըսուեցաւ (911):

---

1 Ո՞վ յաջորդեց Կարոլոս Ցոյրին:

2 Կարոլոս Պարզամիտն ի՞նչպէս ըրաւ Թագաւորութիւնը: — Իր ատենը ի՞նչ նշանաւոր բան պատահեցաւ:

1 Այս դարուն բաժնուելուն պատճառը նոր խռովութիւն մը ըլլալ Կարոլոսի մեծամեծներուն մէջ (922). անոնք գնացին Սուասոն քաղաքը, Թագաւորին առջևը յարդ մը կոտրեցին ու ըսին թէ ասկէց ետքը զքեզ մեզի Թագաւոր չենք ճանչնար։ Գաղղիոյ դուքսը Հռոբերտոս պատերազմի ելաւ Կարոլոսին վրայ, ու ինքը սպաննուեցաւ. բայց իր որդին Մեծն Հուգոս՝ Կարոլոսի զօրացը սաստիկ ջարդ տալով յաղթեց. Կարոլոս՝ Վերմանտուի Հերպերթ անունով կոմսին քովը փախաւ. ան ալ բռնեց զինքը՝ Փերոնի աշտարակին մէջ բանտ դրաւ։ Հուգոս որ իր տէրութեանն ընդարձակութեանը համար Մեծ ըսուեցաւ, իրեն Ռաուլ անունով ազգականը Գաղղիոյ Թագաւոր դրաւ. բայց երբոր անիկայ մեռաւ՝ Անգղիայէն կանչեց Կարոլոս Պարզամտին Լուդովիկոս Դ անունով որդին որ Գաղղիա գալու համար ծովէ անցնելուն պատճառաւը Ծովանցիկ (դ'Ութր-Մէր) ըսուեցաւ։ Երբոր անիկայ ալ մեռաւ (954), անոր որդին Լոթարիոս Թագաւոր պսակուեցաւ։

2 Լոթարիոսի Թագաւորութեան ատենը Մեծն Հուգոս վախճանեցաւ ու տեղը Գաղղիոյ դուքս դրուեցաւ որդին Հուգոս Կապետ *։ Լոթարիոսի

---

1 Կարոլոս Պարզամտին առաջին յաջորդները որո՞նք եղան։

2 Լոթարիոս ինչպէս ըրաւ Թագաւորութիւնը, ու ինչ կերպով մեռաւ։

* Կ'ըսէն թէ Հուգոսին Կապետ ըսուելուն պատճառն ան է որ պզտիկուց սովորութիւն ունի եղեր որ խաղի ատեն ընկերներուն գլխէն գլխարկնին կը քաշէ կը հանէ

Թագաւորութեանը երեսներորդ երրորդ տարին իր կինը Էմմա զինքը Թունաւորեց. բայց ինքն ալ Թունաւորուելով մեռաւ:

¹ Լոթարիոսին յաջորդեց (986) որդին Լուդովիկոս Ե, որ հազիւ տարի մը Թագաւորեց ու իրմով վերջացաւ Կարլովինկեանց ցեղին Թագաւորութիւնը (987), երկու հարիւր երեսունը հինգ տարի քշելէն ետքը:

² Լուդովիկոս Ե որդի չունէր, ուստի Թագաւորութիւնը Կարոլոսին կ՚իյնար, որ Թագաւորին հօրեղբայրն էր ու Լորենի դուքս կ՚ըսուէր: Բայց Հուկոս Կափէթ անոր ատեն չԹողուց. շուտ մը գնաց Նոյոն քաղաքը, իշխանները ժողվեց, ինքզինքը Թագաւոր անուանեց ու Ռեմսի մէջ Թագաւոր օծուեցաւ: Կարոլոս վրան պատերազմի ելաւ. բռնեց զինքը Հուկոս ու բերդի մը մէջ բանտ դրաւ, ուր Կարոլոս քիչ ատենէն սրտին ցաւէն մեռաւ: Ետքը Հուկոս ուզելով իր ազգատոհմին մէջ հաստատել Թագաւորութեան յաջորդութիւնը (որ ինչուան մեր օրերը տեւեց), կենդանութեանը ատեն իր Ռոբերտոս որդին իրեն յաջորդ պսակեց ու քիչ ատենէն մեռաւ (996):

³ Ռոբերտոս, որ Բարեպաշտ ըսուեցաւ, հօրը արիութիւնը չունէր, ու տնական ցաւերու մէջ

---

¹ Լոթարիոսի ով յաջորդեց:
² Լուդովիկոս հինգերորդին յաջորդ ով եղաւ:
³ Ռոբերտոսին վրայ ինչ կը պատմուի:

Եղեր. և որոշհեփն Գևխոտրկին քափփել հ՚ըռէին, ոնկեց
իրեն ալ անոնը Կռոջէն Պրեր էն:

անցուց կեանքը ։ Եկեղեցւոյ օրինաց դէմ իր Բերթա անունով ազգականը կին առաւ. Գրիգոր Ե պապը գրեց իրեն որ բաժնուի կնկանէն. Հռոբերտոս մտիկ չըրաւ, քահանայապետն ալ զինքը բանադրեց ։ Աս բանիս վրայ ժողովուրդը սոսկաց, ու իբր թէ թագաւորը ժանտախտէ բռնուած ըլլար՝ անանկ զինքը ձգեցին հեռացան. քովը միայն քանի մը հաւատարիմ ծառաները մնացին, անոնք ալ դողդըղալով կը ծառայէին իրեն, ու կերակուրին պնակներն ու գործածած ամանները կրակէ կ'անցընէին որ սրբուին ։ Բոլոր երկրին մէջ աստուածային պաշտօնը դադրեցաւ, մարդու մը սրբութիւն չէին տար, մեռելները եկեղեցւոյ մօտ տեղուանք չէին թաղէր, զանգակի ձայն ալ չէր լսուէր, եկեղեցեաց մէջի արձանները տեղերնէն հանուած ու վրանին սև քող մը ձգուած էր ։ Վերջապէս խոնարհեցաւ Հռոբերտոս, հնազանդեցաւ քահանայապետին, Բերթան արձըկեց ու տեղը առաւ Թուլուզի դքսին Կոստանդիա աղջիկը, որ իր ամբարտաւանութեամբը տակնուվրայ ըրաւ արքունիքը, ու իրեն պատճառաւ՝ Հռոբերտոսի Բերթայէն ունեցած որդիքը հօրերնուն դէմ ելան ։

[1] Հռոբերտոսի մահուանը վրայ (1031) բոլոր Գաղղիա ողբաց. յուղարկաւորութեան հանդէսին ատենը աղքատները, այրիներն ու որբերը շատ լացին ։ Աս տեսակ գովեստներուն արժանի էր Հռոբերտոս. ողորմածութեանը չափ չկար. մէկ օրուան մէջ ինչուան հազար աղքատ կը կե-

---

[1] Մահուանը վրայ ինչ ցաւ ցուցուց ժողովուրդը ։

րակրէր . աւագ հինգշաբթի օրն ալ քուրձ հագած ու ծունկ չոքած՝ աղքատներու ոտուըները կը լուար ու վէրքերնին կը դարմանէր ։

[1] Հռոբերտոսի բարեպաշտութիւնն ալ շատ զարմանալի էր . երգեր , շարականներ կը շինէր , ու գլուխը թագ դրած կ'երթար եկեղեցւոյ մէջ կ'երգէր ։ — Ներուած տալն ալ շատ կը սիրէր Հռոբերտոս . անգամ մը պալատի իշխաններէն տասներկու հոգի իրեն դէմ դաւակցութիւն մը ըրեր էին ։ երբոր իմացուեցաւ , տասներկուքն ալ 'ի մահ դատապարտուեցան ։ Հռոբերտոս զանոնք ղրկեց որ խոստովանին , սրբութիւն առնուն , ու ետքը զամէնքն ալ ազատեց ըսելով . “ Չեմ կրնար մեռցընել ան մարդիկն որ դեռ Նոր Քրիստոսի Տեառն մերոյ սեղանին մասնակից եղան ” ։

[2] Հռոբերտոսի թագաւորութեան ատենները (1000) կարծիք կար որ ա՛լ աշխարհիս վերջը հասեր է . վասն զի միջին դարու մէջ կ'ըսուէր թէ Քրիստոսի մարդեղութեան հազարերորդ տարին աշխարհքս պիտի կործանի , և 1000 տարին եղեր էր . ուստի ապաշխարութիւններ կ'ընէին , ստացուածքնին եկեղեցիներու ու քահանայից կը բաժնէին , իշխաններ , զօրավարներ իրենց նշանները , զէնքերը կը ձգէին կ'երթային վանքեր կը քաշուէին . Հռոբերտոս Բ Նորմանտիոյ դուքսը , իր տէրութեանը մէջ կրօնաւորներ բերել տուաւ . Գուլիէլմոս Ե Ակուիտանիոյ դուքսը խարազն հագած՝

---

1 Հռոբերտոսի բարեպաշտութիւնը ի՞նչպէս էր ։

2 Հռոբերտոսի թագաւորութեան ատենը քրիստոնէից մէջ ի՞նչ վախ կամ ի՞նչ կարծիք կար ։

Կոմպոստելայի սուրբ Յակոբայ եկեղեցւոյն ուխտի գնաց :

1 Հռոբերտոսի յաջորդեց որդին Հենրիկոս Ա, որ քաջ ու գործունեայ մարդ էր . բայց առջի բերան շատ դժուարութիւններ քաշեց : Վասն զի իր Կոստանդիա մայրը վրան սէր չունենալով կ'ուզէ եղաւ որ երկրորդ որդին Հռոբերտոսը Թագաւորեցընէ , և անոր կողմը ձգեց Պլուայի , Շարթրի և Ֆիանտրայի կոմսերը . իսկ Թագաւորին կողմը Նորմանտիոյ դուքսը միայն մնաց , որ Հռոբերտոս Մեծագործն կ'ըսուէր , և պատերազմներու մէջ մեծամեծ ու յանդուգն քաջութիւններ ընելուն համար ոմանք նաև Դև անունը կուտային իրեն : Աս դքսին օգնութեամբը ապստամբաց յաղթեց Հենրիկոս , հաշտութիւն խնդրելու ստիպեց Թագուհին , վեհանձնութեամբ ներեց եղբօրը ու Պուրկոյնը անոր տուաւ : Կենդանութեանը ատեն Թագաւոր օծել տուաւ որդին Փիլիպպոսն ու քիչ ատենէն մեռաւ :

2 Փիլիպպոսի Թագաւորութիւնը կը սկսի 1060էն : Աս Թագաւորը դեռ եօթը տարեկան ըլլալով մեծամեծ դիպուածներ պիտի տեսնէր՝ առանց անոնց մասնակից ըլլալու : Առաջինը Նորմանտացւոց Անգղիոյ տիրելն էր , երկրորդը խաչակրաց ելքը : Քիչ ատենէն Նորմանտիոյ դուքսը Անգղիոյ վրայ Թագաւորելով Գաղղիայէն բաժնուեցաւ , և անով սկսաւ Անգղիացւոց ու Գաղղիացւոց թշնամութիւնը :

---

1 Ո՞վ յաջորդեց Հռոբերտոսի :
2 Փիլիպպոս Ա քանի՞ տարեկան Թագաւորեց :

1 ԿԱԼՈՒԱԾԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ : — Առաջները, այսինքն Բարբարոսաց արշաւանքէն առջը երեք տեսակ երկիրներ կային, ինչպէս որ տեսանք, այսինքն ազատ, պարգեւական և հարկատու : Ատեն անցնելով բոլոր աս երկիրները մէյմէկ կալուածներ դարձան, այսինքն այնպիսի ստացուածներ որ իբրև վարձ կամ պարգև՝ մէկուն ժառանգութիւնը կ'ըլլային : Վասն զի ազատ երկրի տէր եղողները, այսինքն անոնք որ ամենևին տուրք չէին տար, ու հարկատու երկիրներու տէրերը, տեսնելով որ իրենք տկար են ու չեն կրնար մինակ պաշտպանել իրենց անձինքն ու ստացուածքը բռնութեան դէմ, նայեցան որ իրենցմէ զօրաւոր մարդու մը պաշտպանութեան տակ մտնեն, և անոր տուին իրենց ստացուածքները իբրև հպատակութեան նշան, երդում ալ ըրին որ հաւատարիմ մնան անոր, իրեն դատաստանին տակը իյնան, մէկ խօսքով՝ անոր ստրուկներն ըլլան :

2 Ստրուկը կամ հպատակը կալուած մը ժառանգելու համար որ առաջ իրեն տիրոջը պէտք եղած պատիւը պիտի տար, այսինքն դիմացը ելլէր գլուխը բաց, առանց գօտիի ու թրի, ծունկ չոքէր ու ըսէր " Ահա աս օրէն ես քու մարդդ եմ՝ բոլոր կենօքս և ընտանեօք ,, : Անկէց ետքը աւետարանին վրայ երդում կ'ընէր ու կ'ըսէր . " Տէր

---

1 Կալուածական իշխանութեան սկիզբն ի՞նչպէս եղաւ :

2 Ստրուկները ի՞նչ կերպով կալուածներու տէր կ'ըլլային :

իմ, ես քեզի հաւատարիմ պիտի ըլլամ ու հաւատարմութեամբ պիտի պահեմ այն երկիրներն որ ահա կը ճանչնամ թէ քուկինդ են ու քեզմէ պիտի առնեմ,,։ Այն ատեն տէրը զինքը կալուածին տէր կ՚ընէր, ձեռքը տալով խուրձ մը խոտ, ծառի ճիւղ մը և ափ մը հող. և անով երկու կողմին մէջ դաշնադրութիւն մը կ՚ըլլար՝ ու իրարու նուիրական ու բարոյական պարտաւորութիւններ կ՚ունենային. այսինքն տէրը պարտական էր միշտ իր հպատակին պաշտպանութիւն ընելու, հպատակն ալ տիրոջը հրամանովը պատերազմի պիտի երթար հետը, պէտք եղած ատենը ստըկով պիտի օգնէր անոր, և դատաստանական վճիռներուն պիտի հնազանդէր։

[1] Դատաստան կտրելու համար տէրը բոլոր իր հպատակները մէկտեղ կը ժողվէր, և օրէնք եղած էր որ ամէն մարդու դատաստանը կտրողն իրեն ընկերները կ՚ըլլային, իսկ վճիռը տէրը կուտար։

[2] Ահա աս կերպով ձևացաւ կալուածական ընկերութիւնը կամ իշխանութիւնը, որով երկրին բոլոր բնակիչները իրարու հետ այնպէս կը կապուէին, որ ամէն մարդ կրնար թէ տէր մը ունենալ և թէ հպատակներ, և այն պարտականութիւններն որ ինքը ունէր տիրոջը, իր հպատակներն ալ իրեն կ՚ունենային։ Բայց որովհետև աս ընկերութիւնը բռնութեամբ ձևացած էր, իրեն օրէնքն ալ բռնութիւնն էր. մէկ օրէնք մը չկար որ անով

---

1 Դատաստանները ինչպէս կը կտրուէին։

2 Կալուածական իշխանութեան աղէկութիւններն ու պակասութիւններն ինչ էին։

ակալը զօրաւորին դէմ պաշտպանութիւն գտնէր ։ Կալուածատիրոջ ձեռքն էր արդարութեան, պատերազմի ու նաև սատակ կտրելու իրաւունքը այնպէս որ միջին դարու կալուածատէրերը գրեթէ մէյմէկ մանր թագաւորներ էին՝ մեր հին ատենի նախարարներուն պէս, ու թագաւորական իշխանութիւնը մէջերնին բաժնած էին ։ Անոր համար է որ Գաղղիոյ Հենրիկոս Ա թագաւորին յաջորդներն ալ անզգայ իրենց հպատակներուն հետ կը պատերազմէին, ինչպէս որ պիտի տեսնենք ։

## ԳԼՈՒԽ ԺԵ·

Պատմութիւն Գերմանիոյ Կարոլոս Ցոյրին ինկածէն ինչուան Թագաւոր դնելու իրաւանց կոխուելը (887-1002)։ Առնուլփոս. — Նորմանդացիք և Սարակինոսք. — Տասներորդ դարուն Թշուառութիւնը. — Լուդովիկոս Մանուկն. — Կոնրադոս. — Սաքսոնեան ցեղը. — Հենրիկոս Հաւորս. — Մաճառք. — Մեծն Ոթոն. — Արևմտեան կայսերութեան նորոգուիլը. — Թագաւոր դնելու իրաւունքը կայսերաց կը փոխուի. — Ոթոն Բ. — Ոթոն Գ ։

[1] Կարոլոս Ցոյրին հետ Մեծին Կարոլոսի կայսերութիւնն ալ փճացաւ (887) ։ Անոր կտորներէն հինգ թագաւորութիւններ ձևացան. այսինքն Գերմանիոյ, Իտալիոյ, Գաղղիոյ, Պուրկոնիի յայսկոյս Ցուրայ և Պուրկոնիի յայնկոյս Ցուրայ, այս-

---

[1] Կարոլոս Ցոյրէն ետքը տէրութիւնը ինչպէս բաժնուեցաւ ։

ինքն մէկը Յուրա լեռնէն ասդին, մէկալը անդին: Տրիբուրի ժողովին մէջ Գերմանիոյ Թագաւոր ընտրուեցաւ Քարինթիոյ դուքսը Առնուլֆոս (Առնուլ) Կարլովինկեան ցեղէն, և Պաւարացիք, Աւստրասիացիք, Սուաբք, Սաքսոնք և Լօրենացիք ընդունեցան զինքը: Քիչ ատենէն մէկալ Թագաւորներն ալ անոր տէրութիւնը իբրև գլխաւոր ճանչցան. Գաղղիոյ Եւդէոս Թագաւորը զանիկայ պատուեց, նոյնպէս ըրին նաև Պուրկոյնի Թագաւորները ու Իտալիոյ Բերենգարիոս Թագաւորը: Այսպիսով հիմնեցաւ գերմանական կայսերութիւնը. Ետքը վերը յիշուած բոլոր ազգերն ալ Գերմանացի Թագաւորաց հպատակ եղան, և միայն Գաղղիա իր անկախութիւնը պահեց:

¹ Առնուլֆոս տասուերկու տարի (887-899) պատերազմ ունեցաւ բարբարոսաց հետ որ չորս կողմէն տէրութիւնը կը նեղէին. հարաւային կողմը՝ Փռովանս գաւառին մէջ Սպանիոյ Սարակինոսները կուգային նաւերով Կրիմոյ ըռնուած ծոցէն ցամաքը կ՚ելլէին ու Ֆրաքսինէ անուանով գեղին մէջ կ՚ամրանային, անկէց Պուրկոյնի գաւառներուն մէջ կը ցրուէին և ինչուան Իտալիոյ սահմանները ասպատակութիւն կ՚ընէին: Արևելքէն Սլաւեանք և Մորաւիացիք կը սպառնային, անոնց ետևէն ալ Հունգարացիք կամ Մաճառք՝ որ Հոնաց ազգին մէկ ցեղն էին: Արևմտեան կողմն էին Նորմանտացիք, որ օրէ օր յանդգնութիւննին կը շատցընէին, և ան միջոցին ոտնակոխ կ՚ընէին Լորէն ըռնուած ընդարձակ երկիրը, որուն մէջ էին

¹ Ի՞նչ պատերազմներ ունեցաւ Առնուլֆոս:

հիմնկուան Լորէն գաւառէն զատ նաև Պելճիա ու Ֆլանտրա նահանգները ։ Ասոնց վրայ գնաց Առնուլփոս , ու տեսաւ որ Տիւլ գետին քով անոնք հողաբլուրներու ու ցցապատնէշներու ետև քաշուած ամէն տեսակ նախատինք կ'ընէին Թագաւորական բանակին ։ Առնուլփոս գնաց իր ձեռքովը Թագաւորական դրօշը քաշեց առաւ , վրանին վազեց ու զանոնք հալածեց ։ Նորմաննտացիք տեսնելով որ Լորէն գաւառին տիրելու յոյս չմնաց , դէպ 'ի Նեւստրիա գնացին ու հոն հաստատեցին իրենց բնակութիւնը ։ Լորէն գաւառը ասս կերպով ազատեցէն ետև , Առնուլփոս Թագաւորութիւն մը ձևացուց զանիկայ , և իր Զուենթիպալտ որդին հոն Թագաւոր դրաւ (891) ։

[1] Երբոր Իտալիոյ Սփոլեթոյ քաղաքին կոմսը Գուիտոն՝ Ֆրիուլի Բերենգարիոս դքսին յաղթելով՝ ձեռքէն դքսութիւնը կ'ուզէր առնուլ , Բերենգարիոս Առնուլփոսին դիմեց , ան ալ գնաց յաղթեց Գուիտոնին . բայց երբոր Գուիտոն մեռաւ , Առնուլփոս Բերենգարիոսին ձեռքէն Ֆրիուլի դքսութիւնն առաւ ու Հռոմ գնաց Փորմոսոս պապէն կայսր օծուեցաւ (896) ։

[2] Տասներորդ դարը Առնուլփոսին մահուամբը կը բացուի (899) ։ Ասիկայ միջին դարու ամենէն տխուր ու ցաւալից ժամանակն է , և կը վերջանայ 1000ին ։ Ան տարին , ինչպէս որ առաջ ալ ըսինք ,

---

1 Իտալիոյ կողմերը ինչ պատերազմ ըրաւ Առնուլփոս ։

2 Տասներորդ դարուն մէջ ընդհանուր ինչ դիպուածներ եղան ։

ամէն տեղ տարածուած ձայն մը կար թէ աշխարհիս վերջը հասեր է : Խրաւցընէ ալ ամէն տեսակ փորձանքներ ու դիպուածներ սա բանիս դուշակութիւն մը կ'ըլլային · մէկ դիէն սովով, ժանտամահով ժողովուրդները կը ջարդուէին, մէկալ դիէն Սարակինոսք, Նորմաննացիք, Մաճառք պատերազմով Եւրոպան տակն ու վրայ կ'ընէին : Եկեղեցականաց մէջ ալ սիմոնականութիւնը շատցեր էր · ուստի հաւատացեալք տրտում տխուր և գրեթէ յուսահատութեան մէջ ընկած՝ կը սպասէին որ օր մը առաջ վերջին դատաստանը հասնի :

[1] Ան ատենները Լուդովիկոս Դ, որ դեռ եօթը տարեկան տղայ էր, հօրը Առնոլփոսի տեղը Գերմանիոյ աթոռը անցաւ որով և Մանուկ ըսուեցաւ : Նոյն ատենը զանազան դքսութիւններ ձեւացան Սաքսոնիա, Ֆրանքոնիա, Սուապիա և Պաւերիա · Մաճառներն ալ հին ատենի Պաննոնիա ըսուած երկրին մէջ իրենց բնակութիւնը հաստատեցին · քիչ ատեննէն տեղերնին նեղ գալով արշաւեցին դէպ 'ի Գերմանիա, Իտալիա և Գաղղիա : Լուդովիկոս շատ պատերազմներ ըրաւ անոնց դէմ · բայց վերջապէս ան պատերազմներէն մէկուն մէջ ինքն ալ զարնուեցաւ մեռաւ, և իրմով բոլորովին վերջացաւ Մեծին Կարոլոսի ան ցեղը՝ որ Գերմանիոյ մէջ թագաւորեր էր (911) :

[2] Ազգային ժողովը որ Տրիբուր քաղաքը ժողվուեր էր, Ֆրանքոնիոյ Կոնրադոս անունով դուքս-

---

1 Լուդովիկոս չորրորդին թագաւորութեան ատենը ինչ երևելի դիպուածներ եղան :

2 Լուդովիկոս չորրորդին ով յաջորդեց :

որ Թագաւոր ընտրեց . ան ալ իր քիչ տարենի Թագաւորութիւնը Գերմանիացի պարոններուն հետ կռիւ ընելով անցուց , ինչուան որ անոնք աւելի զօրացան , զօրքը ջարդեցին , զինքն ալ սպաննեցին : Կոնրադոս ինքը իրեն յաջորդ որոշեր էր Հենրիկոս Սաքսոնիացին . աս Հենրիկոսը մականուամբ Հաւորս ըսուեցաւ , վասն զի Թռչուն որսալու հետ եղած ժամանակը բերուեցան իրեն Թագաւորական Թագ , գաւազան և ուրիշ զարդեր (919) .

¹ Հենրիկոս Հաւորս Լորէն գաւառը նորէն առաւ , Ալզացիան անկէց բաժնեց՝ Սուապիային հետ միացուց , և ապստամբները նուաճեց : Սակայն Հունգարացիք օրէ օր Գերմանիոյ մէջ առաջ կ'երթային , ինչուան Թուրինգիա գաւառը մտեր էին , և Հենրիկոսին սաստիկ հիւանդ եղած ատենը արձակ համարձակ բոլոր երկիրը տանակոխ ըրին : Թագաւորը շատ մը տուրք տալով հազիւ կրցաւ զանոնք երկրէն հեռացընել : Բայց երբոր առողջացաւ , ան նախատանաց վրէժն առնելու մտքով զօրք ժողվեց ձիաւոր ու հետևակ գունդեր պատրաստեց , բերդեր շինեց , ու այլևայլ արտօնութիւններ տալով գեղացւոց՝ անոնց ինը մասին մէկը հոն ժողվեց : Եւ որովհետև Սլաւեանք և Դանիք (Տանիմարքացիք) իր երկիրը արշաւելու կը պատրաստուէին , Պրանտեպուրկի , Միսնիոյ , Շլեզվիկի մարգրիզութիւնները * հաստատեց , և

---

¹ Հենրիկոս Հաւորս ինչպէս ըրաւ Թագաւորութիւնը :

* Մարգրիզութիւն կամ սահմանակալութիւն կ'ըսուէին տէրութեան մը սահմանները՝ ուր մէջը զօրք կը կենար :

Պոհեմիան տանակոխ ըրաւ։ Վերջապէս 933ին երբոր Հունգարացիք գնացին հարկը պահանջելու, Հենրիկոս Մերսեպուրկի քով հետեւորնին պատերազմեցաւ ու անոնցմէ քառասուն հազար մարդ ջարդեց։ Այս մեծ յաղթութեան յիշատակը միշտ մնացեր է Գերմանացւոց սրտին մէջ, և ինչուան հիմայ տարեդարձը կը կատարեն։

[1] Ոթոն Ա., որ Մեծ ըսուեցաւ (936–973), որդի և յաջորդ էր. Հաւորս Հենրիկոսին, բայց իր հօրմէն աւելի ճարտար գտնուեցաւ։ Այս թագաւորը, որ Մեծին Կարոլոսի կը նմանցընէին, Գերմանիոյ կայսերութեան բուն հիմնադիրը կը սեպուի։ Թագաւոր պսակուելու փառաւոր հանդէսէն ալ կ'իմացուէր թէ որչափ պիտի մեծնայ իրեն թագաւորութիւնը։ Տրեւիրիք, Կողոնիա ու Մոգունտիա (Մայնցա) քաղաքներուն արքեպիսկոպոսները իրարու ձեռքէ կ'ուզէին առնուլ զինքը օծելու պատիւը. բայց Մոգունտիոյ եպիսկոպոսը մէկալներուն յաղթեց։

[2] Ոթոն ամէն բանէ առաջ նայեցաւ որ իր թագաւորութիւնը ներսէն խաղաղէ։ Պալատական կոմսեր հաստատեց՝ իբրև իրեն մէյմէկ տեղակալ, որ դքսերուն կարած դատաստանները նորէն կըրնային քննել։ Ետքը ուզելով որ հզօրուած հպատակներուն իշխանութիւնը չափաւորէ, քաղաքներու և կոմսութիւններու իշխանութիւնը եպիսկոպոսներու յանձնեց՝ ժամանակաւոր իշխանութիւն տալով անոնց. ասով ան քաղաքները՝ ուր

---

[1] Ո՞վ էր Մեծն Ոթոն։
[2] Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ։

որ եպիսկոպոսներ կը նստէին՝ գաւառներու ու կոմսերու իշխանութեանը տակ չէին. և ան ատենը Ձեւացան Մոգունտիոյ, Տրեւիրի և Կողոնիոյ եկեղեցական իշխանութիւնները։ Թագաւորը մէկ կողմանէ աս բաներուս զբաղած, մէկալ կողմանէ բարբարոսաց դէմ ելլելու կը պատրաստուէր. Գոհեմիոյ ու Տանիմարքայի բնակիչներն ալ կը յորդորէր որ մկրտուին ու քրիստոնեայ ըլլան։

1 Բայց ան ատեններու ամենէն երևելի գործողութիւնը Արևմտեան կայսերութեան երրորդ անգամ նորոգուիլն եղաւ, ասոր ալ պատճառը Իտալիոյ խռովութիւններն էին։ Վասն զի քանի որ Լոմպարտացւոց թագաւորներն ընկան, ան գեղեցիկ երկիրը անդադար երկպառակութեանց մէջ էր՝ հիւսիսային կողմը Ֆրիուլի, Սպոլեթոյի դքսերը և Իվրէայ մարգիզը թագաւորութեան ետևէ էին. մէջ տեղուանքը Թոսքանայի, Կամերինոյի ու Ֆերմոյի մարգիզները իրարու հետ կը կռուըտէին. հարաւային կողմն ալ Նեապոլսոյ և Ամալֆիի դքսերը, Բենեւենտի, Սալեռնոյի ու Կապուայի իշխանները իրարու դէմ թշնամութիւն կ'ընէին։ Հռովմայեցիք պապերուն իշխանութեանը տակ ըլլալով ալ՝ յոյս ունէին որ նորէն բոլոր աշխարհիս տիրեն. մտքով կը ջանային իրենց հիւպատոսներ ու տրիբուններ ալ ընտրել։ Ազնուականները հին ատենի պատրիկներուն պէս հրապարակը կ'ելլէին՝ քահանայապետաց ընտրութեանը վրայ կը խօսէին, որպէս զի անով զանա-

1 Արևմտեան կայսերութեան երրորդ անգամ նորոգուիլն ինչպէս եղաւ։

ղան իրաւունքներ ստանան սուրբ աթոռոյն առջևը :

¹ Այս ներքին երկպառակութեանց վրայ աւելցան օտարականաց վնասներն ալ. մէկդին Յոյնք որ Լոմպարտիոյ վիճակին կամ թեմին տիրած էին. մէկդին Սարակինոսք, որ Սիկիլիոյ, Քորսիքայի ու Սարտենիոյ կ'իշխէին. մէկալ դին ալ Մաճառները, որ համարձակ ամէն տեղ կը վազէին կը զարնէին, ու մէկը չկար որ անոնց դէմ կենար : Այս խռովութեանց ժամանակները շատ քաղաքներու բնակիչներ իրենց գլխաւոր քաղաքին չորս դին պարիսպ քաշեցին ու գրեթէ մոռնալով որ ատենով Իտալիա մէկ թագաւորութիւն եղած է՝ մէյմէկ հասարակապետութիւններ դարձան. անանկով ձեւացան Վենետիկոյ, Փիզայի ու Ճենովայի փառաւոր տէրութիւնները :

² Գերմանիոյ Թագաւորը 951ին նոր աւիթ մը ունեցաւ որ երթայ ան երկպառակութիւնները դադրեցնէ. վասն զի Լոթարիոսի այրին Ադելայիտէ իշխանուհին՝ Իվրէայի Բերենգարիոս Բ մարգիզէն հալածուելով գնաց Կոնոսսա բերդը ապաւինեցաւ, և Ոթոն Թագաւորը իրեն օգնութիւն կանչեց. անիկայ ալ Ալպեան լեռներէն անցաւ, Լոմպարտիոյ տիրեց, Փաւիայի մէջ թագ դրաւ, ու Ադելայիտէի հետ պսակուեցաւ. աս յաջողութիւններով ալ գոհ չըլլալով Սաքսոնիա-

---

¹ Իտալիոյ ներքին կռիւներէն զատ ան ատենները ինչ վնասներ եղան դրսէն :

² Գերմանիոյ Թագաւորը ինչ աւիթ ունեցաւ Իտալիա անցնելու :

ցին Օթոն՝ կայսերական գաւազանը ձեռք ձգելու եռանդ էր. բայց երբոր լսեց թէ իր երկրին մէջ խռովութիւններ ելեր են՝ ստիպուեցաւ ետ դառնալու:

1 Օթոն երբոր Գերմանիա հասաւ, տեսաւ որ բոլոր ազնուականք իրեն դէմ ապստամբեր են. այս ապստամբաց գլխաւորները, Կոնրադոս Լորենացին և Լուդոլփոս Սուապիացին երկու տարի իրեն դէմ կեցան: Վերջապէս Օթոն յաղթեց, իշխանութիւններն ձեռքերնէն առաւ և Լորէնը երկու գաւառ բաժնեց: Հունգարացիք այն խռովութիւններէն օգուտ մը քաղելու միտքով սկսան դէպ 'ի Աւկսպուրկ քաղաքը վազել. վրանին գնաց Օթոն, և հարիւր հազար մարդ ջարդեց անոնցմէ: Այն մեծ յաղթութենէն ետքը Էօսթէրրայխ կամ արեւելեան կուսակալութիւն անունով նահանգ մը որոշեց՝ Պաւերայի դուքսին իշխանութեանը տակը. և աս եղաւ Աւստրիոյ ցեղին սկզբնաւորութիւնը, վասն զի Էօսթէրրայխ կամ Աւստրիա արեւելեան թագաւորութիւն ըսել է (955):

2 Կը մտածէր Օթոն որ նորէն Աւգեան լեռներէն Իտալիա անցնի. այն միջոցին Յովհաննէս ԺԳ պապն ալ՝ որ տասնը ութը տարեկան հազիւ կար, իրեն պաշտպանութիւնը խնդրեց Բերենգարիոսի բռնաւորութեանն ու իշխանասիրութեանը դէմ: Մտաւ Օթոն Իտալիա, Փօյ գետին քովի երկիրներուն տիրեց, և առանց մէկտեղ մը

1 Օթոն Գերմանիա դառնալով ի՞նչ փոփոխութիւններ ըրաւ երկրին բաժանմանը վրայ:

2 Օթոն ի՞նչ կերպով կայսր Արեւմտից ըսուեցաւ:

դիմադրութիւն գտնելու՝ գնաց ինչուան Հռոմ, ու մեծ հանդիսով մտաւ քաղաքը: Պապը զինքը կայսր Արեւմտից անուանեց (962ին, փետրուարի 2ին), Օթոն ալ ասոր երդումն ըրաւ քահանայապետին. "Հռովմէական սուրբ եկեղեցին պիտի պայծառացընեմ, և զքեզ՝ որ զանիկայ կը կառավարես պիտի յարգեմ: Ամենևին ժողով պիտի չընեմ, օրէնք մը պիտի չհրատարակեմ քաղաքին մէջ որ քեզի կամ Հռովմայեցւոց վերաբերի՝ առանց քու հաւանութիւնդ առնելու,,: Ետքը Պեպինոսի ու Մեծին Կարոլոսի պապին տուած պարգեւները ինքն ալ հաստատեց:

[1] Ան ատենէն սկսաւ Արեւմուտքի նորընտիր կայսրը Իտալիոյ իշխանները տկարացընել ու գերմանական տէրապետութիւնը հաստատել: Յովհաննէս ԺԲ պապին բռնած ճամբան աղէկ պատճառ եղաւ իրեն որ միտքը դրածները առաջ տանի, ու պապական իշխանութիւնը իրեն գերի ընէ: Հռոմ եկաւ, ժողով մը ըրաւ ու հոն բոլոր եկեղեցականներէն երդում պահանջեց որ մէյմըն ալ առանց կայսեր հաւանութեան պապ չընտրեն: Դատաստան եղաւ պապին վրայ, իշխանութենէն ձգուեցաւ, ու անոր Օթոնին առաջարկութեամբը ընտրուեցաւ Լեւոն Ը: Տեսան Հռովմայեցիք որ Օթոն սկսաւ դէշի գործածել իր իշխանութիւնը, շատ ջանացին անոր կամացը դէմ կենալու, բայց անոր ուժին դէմ չկրցան կենալ. Յովհաննէս ԺԲ սպաննուեցաւ, և անոր օրինաւոր յաջորդը Բենեդիկտոս Ե աքսորուեցաւ: Նոյն

[1] Պապերուն իշխանութեանը դէմ ինչ ըրաւ:

միջոցին Լեւոն Ը. պապը առ վճիռը հանեց. “ Օ-թոնի Ա կայսեր, որքայի Գերմանիոյ, և յաջորդաց նորա 'ի Թագաւորութիւն Իտալիոյ, մշտընջենաւոր իշխանութիւն տրուած է իրեն յաջորդմը ընտրելու, պապ անուանելու, արքեպիսկոպոսներ ու եպիսկոպոսներ դնելու ”:

[1] Թագաւորութեանը վերջին տարիները Օթոն ուզեց Յովհաննէս ԺԳ. պապը՝ որ Հռովմայեցիք վռնտեր էին՝ նորէն աթոռը դարձընել. Հռովմին քաղաքապետը ծեծել տուաւ, և տրիբունները կախեց: Ետքը Լուիթփրանտ պատմիչը խրկեց Յունաց Նիկեփորոս կայսեր՝ անոր Թէոփանէ աղջիկն ուզելու որ իր որդւոյն հետ կարգէ: Երբոր անի-կայ յանձն չառաւ, գնաց Օթոն Կալաբրիոյ ու Փուլիայի տիրեց, ու Նիկեփորոսը բռնութեամբ իր կամացը խոնարհեցուց (971):

[2] Աս մեծանուն կայսեր յաջորդները Օթոն Բ. Օթոն Գ., (973-1002) շատ կռիւներ ունեցան իրենց հպատակացը ու Իտալացւոց հետ, որոնք կ'ուզէին իրենց վրայէն Գերմանիոյ ծառայութեան լուծը թօթափել: Ան ատենը Սլաւեանք և Հունգարացիք քրիստոնեայ եղան, և Լեհացւոց Պոլէսլաւ դուքսը թագաւորի անուն առաւ (1000): Ութը տարի ետքը անոր օրինակին հետեւեցաւ նաև Հունգարացւոց իշխանը՝ սուրբն Ստեփանոս, ու թագաւոր պսակուեցաւ:

---

1 Յովհաննէս ԺԳ. պապին ինչպէս օգնեց, և Յունաց կայսեր հետ ինչպէս վարուեցաւ:

2 Օթոնի առաջին յաջորդացը ատենը ինչ երևելի դիպուածներ պատահեցան:

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Պատմութիւն Անգղիոյ՝ Տանիմարքացւոց առաջին արշաւանքէն մինչեւ Նորմանդացւոց Անգղիոյ տիրելը (800-1087)։ Տանիմարքացւոց ու Նորմանդացւոց ծագումը. — Մեծն Եգբերտ և իր յաջորդները. — Տանիմարքացւոց աւազակութիւնները. — Մեծն Ալֆրէտ. — Անգղիան աւազակաց յետեէն կ'ազատի. — Եդուարդ Ա. — Էթէլրէտ Բ. — Իր նենգութիւնը. — Տանիմարքացւոց Անգղիոյ տիրելը. — Սուէնոն. — Մեծն Քանուտ. — Եդուարդ Գ. — Հարալդ և Գուլիելմոս աշխարհակալը. — Հասթինկի պատերազմը. — Գուլիելմոսի Անգղիոյ մէջ ըրած աշխարհակալութիւնները. — Մահը։

[1] *Այն երկիրը որ հին պատմութեանց մէջ Կիմբրեան Քերսոնեսոս կ'ըսուէր, և հիմա Դանիք կամ Տանիմարքա ըսուած է, կ'երևնայ թէ խիստ հին ատենէ 'ի վեր անթիւ բարբարոս ժողովուրդներու բնակութիւն եղեր է։ Այն երկրէն ելան Կիմբրացիք, որ իրենց յաղթանդամ հասակովն ու յանդուգն քաջասրտութեամբը Հռովմայեցիքը սարսափեցուցին. անկէց ելան նաեւ Դանիք կամ Տանիմարքացիք ու Նորմանտացիք, որ իրենց ուժին ու քաջութեանը համար մեծ անուն հանեցին, և ասոնք երկու թագաւորութիւն հիմնեցին, մէկը Անգղիոյ՝ միւսն ալ Երկուց Սիկիլեաց թագաւորութիւնը։*

---

1 *Տանիմարքացւոց սկիզբը կամ ծագումը ուսկից է։*

1 Իններորդ դարուն սկիզբները Նորմանեան Գաղղիոյ քաղաքներէն մէկուն պարսպին վրայէն տեսաւ զանոնք Մեծն Կարոլոս, և անոնց իր տէրութեանը վրայ հասցնելու չարիքը մտածելով լացաւ : Իրաւցընէ ան մեծազօր կայսեր մեռնելէն ետև՝ եկան անոնք ու կատաղաբար Գաղղիոյ Էսքոյ գետին բերնէն ինչուան Կասքոնիոյ ծոցին ծայրը եղած երկիրները զարկին կողոպտեցին. 922ին ալ Կարլովինկեանց ձեռքէն առին Նեւստրիան, որ գեղեցիկ երկիր մըն էր, ու անունը դրին Նորմանտիա կամ Նորմաննիա, այսինքն հիւսիսային մարդկանց երկիր :

2 Նոյն միջոցին անոնց մէկ ցեղն ալ, այսինքն Տանիմարքացիք, կը ջանային իրենց հաստատուն բնակութիւն մը գտնել ան երկիրներուն մէջ՝ ուր տիրապետեր էին իրենց դրացի ազգերը, այսինքն Անկղոսաքսոնները : Աս Անգղոսաքսոնները միջերնին աղէկ չէին. եօթը պետութեանց սկիզբէն 'ի վեր անոնց անհաւատար ըլլալուն համար՝ հարկաւ ոմանք ուրիշներէն աւելի զօրաւոր էին. ուստի Ուէսսէքս, Մերսիա և Նորթումպըրլանտ մէկալներուն վրայ տիրած էին. ան միջոցին Ուէսսէքսի թագաւորը Մեծն Եգբերտ մէկալ տէրութիւններուն վրայ տուրք դրաւ, և ըսուեցաւ թագաւոր կամ միապետ Բրիտանիոյ (800–827), և ասանկով Եօթնպետութիւնը վերջացաւ : Ասոր թագաւորութեանը ատենն էր որ Տանիմարքացիք

---

1 Ո՞րք ու ի՞նչ կերպով սկսան Նորմանտացիք իրենց արշաւանքները :

2 Տանիմարքացիք ի՞նչպէս անցան Անգղիա :

Ալբիոնի՝ այսինքն Անգղիոյ ծովեզերեայքը սկսան ե-րեւնալ։

1 Անոր յաջորդ Էթելվուլֆին ժամանակը ա-ւազակներն աւելի բազմութեամբ եկան, սկսան բոլոր երկրին մէջ արշաւել ու զանազան անգթու-թիւններով բնակիչները սարսափեցունել։ Քաղաք-ները կը կողոպտէին, բերդերը կը կործանէին, վանքերը կ'այրէին, և բնակիչքը անխնայ կը ջար-դէին. ծեր, տղայ, էրիկ մարդ, կնիկ մարդ՝ զա-մենքը թրէ կ'անցընէին։ Բայց աւելի կատաղու-թիւննին քրիստոնեայ ժողովրդոց ու քահանայից վրայ կը թափէին, ու կ'ըսէին ծաղրելով. "Մենք անոնց նիզակներու պատարագ մը ըրինք որ առա-ւօտը կանուխ սկսաւ ու գիշերը լմնցաւ"։ Լոն-տրա ու Քէնթըրպըրի քաղաքները կողոպտեցին, և իրենց արշաւանքը աւելի ալ առաջ կը տանէին՝ թէ որ Անկլոսաքսոնները բոլորովին անոնց չյաղ-թէին։

2 Էթելբերտ (857) իր հօրը սկսած յաղթու-թիւնները առաջ տարաւ, գերի բռնեց Ռէննար Լոտպրոկ անուանով ծովու թագաւորը՝ որ Փարիզը կողոպտելուն համար մեծ անուն հաներ էր, ու խժերով և ուրիշ թունաւոր օձերով լեցուն բանտի մը մէջ փակեց։ Ռէննարի որդիքը Ինկուար և Ուպ-պոյ իրենց հօրը ոխակալ գտան մահուանը վրէժն առին։ Նորթումպերլանտի Ալլա թագաւորին

1 Էթելվուլֆին օրերը ինչ յարձակմունք ըրին Տանիմարքացիք։

2 Էթելբերտ ինչպէս յաղթեց Ռէննար Լոտպրոկին։

որ եպիսկոպոսներ կը նստէին՝ դուքսերու ու կոմսերու իշխանութեանը տակ չէին. և ան ատենը հեւացան Մոգունտիոյ, Տրեւիրի և Կողոնիոյ եկեղեցական իշխանութիւնները։ Թագաւորը մէկ կողմանէ աս բաներուս զբաղած, մէկալ կողմանէ բարբարոսաց դէմ ելլելու կը պատրաստուէր. Պօհեմիոյ ու Տանիմարքայի բնակիչներն ալ կը յորդորէր որ մկրտուին ու քրիստոնեայ ըլլան։

[1] Բայց ան ատեններու ամենէն երևելի գործողութիւնը արևմտեան կայսերութեան երրորդ անգամ Նորոգուիլն եղաւ, ասոր ալ պատճառը Իտալիոյ խռովութիւններն էին։ Վասն զի քանի որ Լոմպարտացւոց թագաւորներն ընկան, ան գեղեցիկ երկիրը անդադար երկպառակութեանց մէջ էր՝ հիւսիսային կողմը Ֆրիուլի, Սփոլեթոյի դքսերը և Իվրէայ մարգիզը թագաւորութեան ետևէ էին. մէջ տեղուանքը Թուսքանայի, Գամերինոյի ու Ֆերմոյի մարգիզները իրարու հետ կը կռուըտէին. հարաւային կողմն ալ Նէապօլսոյ և Ամալֆիի դքսերը, Բենեւենտոյի, Սալեռնոյի ու Կապուայի իշխանները իրարու դէմ թշնամութիւն կ'ընէին։ Հռովմայեցիք պապերուն իշխանութեանը տակ ըլլալով ալ՝ յոյս ունէին որ նորէն բոլոր աշխարհիս տիրեն. մտքով կը ջանային իրենց հիւպատոսներ ու տրիբուններ ալ ընտրել։ Ազնուականները հին ատենի պատրիկներուն պէս հրապարակը կ'ելլէին՝ քահանայապետաց ընտրութեանը վրայ կը խօսէին, որպէս զի անով զանա-

---

[1] Արևմտեան կայսերութեան երրորդ անգամ Նորոգուիլն Ի՞նչպէս եղաւ։

ղան իրաւունքներ ստանան սուրբ աթոռոյն առջևը:

1 Այս ներքին երկպառակութեանց վրայ աւելցան օտարականաց վնասներն ալ. մէկդին Յոյնք որ Լոմպարտիոյ վիճակին կամ թեմին տիրած էին. մէկդին Սարակինոսք, որ Սիկիլիոյ, Քորսիքայի ու Սարտենիոյ կ'իշխէին. մէկալ դին ալ Մաճառները, որ համարձակ ամէն տեղ կը վազէին կը զարնէին, ու մէկը չկար որ անոնց դէմ կենար: Այս խռովութեանց ժամանակները շատ քաղաքներու բնակիչներ իրենց գլխաւոր քաղաքին չորս դին պարիսպ քաշեցին ու գրեթէ մոռնալով որ ատենով Իտալիա մէկ թագաւորութիւն եղած է՝ մէյմէկ հասարակապետութիւններ դարձան. ասանկով ձևացան Վենետկոյ, Փիզայի ու Ճենովայի փառաւոր տէրութիւնները:

2 Գերմանիոյ թագաւորը 951ին նոր աւիթ մը ունեցաւ որ երթայ ան երկպառակութիւնները դադրեցընէ. վասն զի Լոթարիոսի այրին Ատելայիտէ իշխանուհին՝ Իվրէայի Բերենգարիոս Բ մարգիզէն հալածուելով գնաց Կոնոսսա բերդը ապաւինեցաւ, և Օթոն թագաւորը իրեն օգնութիւն կանչեց. անիկայ ալ Ալպեան լեռներէն անցաւ, Լոմպարտիոյ տիրեց, Փաւիայի մէջ թագ դրաւ, ու Ատելայիտէի հետ պսակուեցաւ. աս յաջողութիւններով ալ գոհ չըլլալով Սաքսոնիա-

---

1 Իտալիոյ ներքին կռիւներէն զատ ան ատենները ինչ վնասներ եղան դրսէն:

2 Գերմանիոյ թագաւորը ինչ աւիթ ունեցաւ Իտալիա անցնելու:

ցին Ոթոն՝ կայսերական գաւազանը ձեռք ձգելու ատեն էր. բայց երբոր լսեց թէ իր երկրին մէջ խռովութիւններ ելեր են՝ ստիպուեցաւ ետ դառնալու:

[1] Ոթոն երբոր Գերմանիա հասաւ, տեսաւ որ բոլոր ազնուականք իրեն դէմ ապստամբեր են. աս ապստամբաց գլխաւորները, Կոնրադոս Լորէնացին և Լուդոլփոս Սուաբիացին երկու տարի իրեն դէմ կեցան: Վերջապէս Ոթոն յաղթեց, իշխանութիւններին ձեռքերնէն առաւ և Լորէնը երկու գաւառ բաժնեց: Հունգարացիք այն խռովութիւններէն օգուտ մը քաղելու մտքով սկսան դէպ 'ի Աւկսպուրկ քաղաքը վազել. վրանին գնաց Ոթոն, և հարիւր հազար մարդ ջարդեց անոնցմէ: Այն մեծ յաղթութենէն ետքը Իօսթէրրայխ կամ արևելեան կուսակալութիւն անունով նահանգ մը որոշեց՝ Պաւերայի դուքսին իշխանութեանը տակը. և աս եղաւ Աւստրիոյ ցեղին սկզբնաւորութիւնը, վասն զի Իօսթէրրայխ կամ Աւստրիա արևելեան թագաւորութիւն ըսել է (955):

[2] Կը մտածէր Ոթոն որ նորէն Ալպեան լեռներէն Իտալիա անցնի. այն միջոցին Յովհաննէս ԺԳ պապն ալ՝ որ տասնը ութը տարեկան հազիւ կար, իրեն պաշտպանութիւնը խնդրեց Բերենգարիոսի բռնաւորութեանն ու իշխանասիրութեանը դէմ: Մտաւ Ոթոն Իտալիա, Փօյ գետին քովի երկիրներուն տիրեց, և առանց մէկուն մը

---

[1] Ոթոն Գերմանիա դառնալով ի՞նչ փոփոխութիւններ ըրաւ երկրին բաժանմանը վրայ:
[2] Ոթոն ի՞նչ կերպով կայսր Արևմտից ըսուեցաւ:

դիմակալութիւն գտնելու՝ գնաց ինչուան Հռոմ, ու մեծ հանդիսով մտաւ քաղաքը: Պապը զինքը կայսր Արեւմտից անուանեց (962ին, փետրուարի 2ին), Ոթոն ալ աս երդումը ըրաւ քահանայապետին. " Հռովմէական սուրբ եկեղեցին պիտի պայծառացընեմ, և զքեզ՝ որ զանիկայ կը կառավարես պիտի յարգեմ: Ամենեւին ժողով պիտի չընեմ, օրէնք մը պիտի չհրատարակեմ քաղաքին մէջ որ քեզի կամ Հռովմայեցւոց վերաբերի՝ առանց քու հաւանութիւնդ առնելու ,,: Նոյնը Պեպինոսի ու Մեծին Կարոլոսի պապին տուած պարգեւները ինքն ալ հաստատեց:

¹ Ան ատենէն սկսաւ Արեւմուտքի նորընտիր կայսրը Իտալիոյ իշխանները տկարացընել ու գերմանիական տիրապետութիւնը հաստատել: Յովհաննէս ԺԲ պապին բռնած ճամբան աղէկ պատճառ եղեցաւ իրեն որ միտքը դրածները առաջ տանի, ու պապական իշխանութիւնը իրեն գերի ընէ: Հռոմ եկաւ, ժողով մը ըրաւ ու հոն բոլոր եկեղեցականներէն երդում պահանջեց որ մէյմէն ալ առանց կայսեր հաւանութեան պապ չընտրեն: Դատաստան եղաւ պապին վրայ, իշխանութենէն ձգուեցաւ, ու տեղը Ոթոնին առաջարկութեամբը ընտրուեցաւ Լեւոն Ը: Տեսան Հռովմայեցիք որ Ոթոն սկսաւ դէշի գործածել իր իշխանութիւնը, շատ ջանացին անոր կամացը դէմ կենալու, բայց անոր ուժին դէմ չկրցան կենալ. Յովհաննէս ԺԲ սպաննուեցաւ, և անոր օրինաւոր յաջորդը Բենեդիկտոս Ե աքսորուեցաւ: Նոյն

---

¹ Պապերուն իշխանութեանը դէմ ինչ ըրաւ:

միջոցին Լեւոն Ը. պապը սա վճիռը հանեց. “ Ո-Թոնի Ա կայսեր, արքայի Գերմանիոյ, և յաջորդաց նորա 'ի Թագաւորութիւն Իտալիոյ, մշտընջենաւոր իշխանութիւն տրուած է իրեն յաջորդ մը ընտրելու, պապ անուանելու, արքեպիսկոպոսներ ու եպիսկոպոսներ դնելու ”:

[1] Թագաւորութեանը վերջին տարիները Ոթոն ուզեց Յովհաննէս ԺԳ. պապը՝ որ Հռովմայեցիք վռնտեր էին՝ նորէն աթոռը դարձընել. Հռոմին քաղաքապետը ծեծել տուաւ, և ուխտունները կախեց: Ետքը Լուիթփրանտ պատմիչը խրկեց Յունաց Նիկեփորոս կայսեր՝ անոր Թէոփանէ աղջիկն ուզելու որ իր որդւոյն հետ կարգէ: Երբոր անիկայ յանձն չառաւ, գնաց Ոթոն Կալաբրիոյ ու Փուլիայի տիրեց, ու Նիկեփորոսը բռնութեամբ իր կամացը խոնարհեցուց (971):

[2] Աս մեծանուն կայսեր յաջորդները Ոթոն Բ, Ոթոն Գ, (973-1002) շատ կռիւներ ունեցան իրենց հպատակացը ու Իտալացւոց հետ, որոնք կ'ուզէին իրենց վրայէն Գերմանիոյ ծառայութեան լուծը թօթափել: Ան ատենը Սլաւեանք և Հունգարացիք քրիստոնեայ եղան, և Լեհացւոց Պոլեսլաւ դուքսը թագաւորի անուն առաւ (1000): Ութը տարի ետքը անոր օրինակին հետեւեցաւ նաև Հունգարացւոց իշխանը՝ սուրբն Ստեփանոս, ու թագաւոր պսակուեցաւ:

---

1 Յովհաննէս ԺԳ. պապին ինչպէս օգնեց, և Յունաց կայսեր հետ ինչպէս վարուեցաւ:
2 Ոթոնի առաջին յաջորդացը ատենը ինչ երևելի դիպուածներ պատահեցան:

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Պատմութիւն Անգղիոյ՝ Տանիմարքացւոց առաջին արշաւանքէն մինչեւ Նորմանտացւոց Անգղիոյ տիրելը (800-1087): Տանիմարքացւոց ու Նորմանտացւոց ծագումը. — Մեծն Եգբերտ և իր յաջորդները. — Տանիմարքացւոց ասպատակութիւնները. — Մեծն Ալֆրետ. — Անգղիան առաջակայց յետաքէն կ'ազատի. — Եդուարդ Ա. — Էթելրէտ Բ. — Իր նենգութիւնը. — Տանիմարքացւոց Անգղիոյ տիրելը. — Սուենոն. — Մեծն Քանուտ. — Եդուարդ Գ. — Հարոլտ և Գուլիելմոս աշխարհակալ. — Հասթինկի պատերազմը. — Գուլիելմոսի Անգղիոյ մէջ ըրած աշխարհակալութիւնները. — Մահը:

[1] *Այն երկիրը որ հին պատմութեանց մէջ Կիմբրեան Քերսոնեսոս կ'ըսուէր, և հիմա Դանիք կամ Տանիմարքա ըսուած է, կ'երևնայ թէ խիստ հին ատենէ 'ի վեր անթիւ բարբարոս ժողովուրդներու բնակութիւն եղեր է: Այն երկրէն ելան Կիմբրացիք, որ իրենց յաղթանդամ հասակովն ու յանդուգն քաջասրտութեամբը Հռովմայեցիքը սարսափեցուցին. անկէց ելան ետքը նաև Դանիք կամ Տանիմարքացիք ու Նորմանտացիք, որ իրենց ուժին ու քաջութեանը համար մեծ անուն հանեցին, և ասոնք երկու թագաւորութիւն հիմնեցին, մէկը Անգղիոյ՝ միւսն ալ Երկուց Սիկիլեայց թագաւորութիւնը:*

---

[1] *Տանիմարքացւոց սկիզբը կամ ծագումը ուսկից է:*

[1] Իններորդ դարուն սկիզբները Նորմանեան Գաղղիոյ քաղաքներէն մէկուն պարսպին վրայէն տեսաւ զանոնք Մեծն Կարոլոս, և անոնց իր սերունդներուն վրայ հասցնելու չարիքը մտածելով լացաւ։ Իրաւցընէ ան մեծազօր կայսեր մեռնելէն ետև՝ եկան անոնք ու կատաղաբար Գաղղիոյ Էսքոյ գետին բերնէն մինչուան Կաքոնիոյ ծոցին ծայրը եղած երկիրները զարկին կողոպտեցին. 922ին ալ Կարլովինկեանց ձեռքէն առին Նէւստրիան, որ գեղեցիկ երկիր մըն էր, ու անունը դրին Նորմանտիա կամ Նորմանդիա, այսինքն Հիւսիսային մարդկանց երկիր։

[2] Նոյն միջոցին անոնց մէկ ցեղն ալ, այսինքն Տանիմարքացիք, կը ջանային իրենց հաստատուն բնակութիւն մը գտնել ան երկիրներուն մէջ՝ ուր որ տիրապետեր էին իրենց դրացի ազգերը, այսինքն Անկլոսաքսոնները։ Աս Անկլոսաքսոնները մէջերնին աղէկ չէին. եօթը պետութեանց սկիզբէն 'ի վեր անոնց անհաւասար ըլլալուն համար՝ հարկաւ ոմանք ուրիշներէն աւելի զօրաւոր էին. ուստի Վէսսէքս, Մերսիա և Նորթումպերլանտ մէկալներուն վրայ տիրած էին. ան միջոցին Վէսսէքսի թագաւորը Մեծն Եգբերտ մէկալ պետութիւններուն վրայ տուրք դրաւ, և ըսուեցաւ թագաւոր կամ միապետ Բրիտանիոյ (800-827), և առանձնակալ Եօթնապետութիւնը վերջացաւ։ Ասոր թագաւորութեանը ատենն էր որ Տանիմարքացիք

---

1 Ե՛րբ ու ինչ կերպով սկսան Նորմանտացիք իրենց արշաւանքները։

2 Տանիմարքացիք ինչպէս անցան Անգղիա։

Ալբիոնի՝ այսինքն Անգղիոյ ծովեզերքը սկսան երևնալ:

[1] Անոր յաջորդ Էթելվուլֆին ժամանակը աւազակներն աւելի բազմութեամբ եկան, սկսան բոլոր երկրին մէջ արշաւել ու զանազան անգթութիւններով բնակիչները սարսափեցնել: Գաւառները կը կողոպտէին, բերդերը կը կործանէին, վանքերը կ'այրէին, և բնակիչքը անխնայ կը ջարդէին. ծեր, տղայ, էրիկ մարդ, կնիկ մարդ՝ զամէնքը թրէ կ'անցընէին: Բայց աւելի կատաղութիւննին քրիստոնէայ ժողովրդոց ու քահանայից վրայ կը թափէին, ու կ'ըսէին ծաղրելով. “ Մենք անոնց նիզակներուն պատարագ մը ըրինք որ առաւօտը կանուխ սկսաւ ու գիշերը լմնցաւ ”: Լոնտրա ու Քէնթըրպըրի քաղաքները կողոպտեցին, և իրենց արշաւանքը աւելի ալ առաջ կը տանէին՝ թէ որ Անկղոսաքսոնները բոլորովին անոնց չյաղթէին:

[2] Էթելբերտ (857) իր հօրը սկսած յաղթութիւնները առաջ տարաւ, գերի բռնեց Ռէնեար Լոտպրոկ անուանով ծովու թագաւորը՝ որ փարիզը կողոպտելուն համար մեծ անուն հաներ էր, ու իժերով և ուրիշ թունաւոր օձերով լեցուն բանտի մը մէջ փակեց: Ռէնեարի որդիքը Ինկուար և Ուպպոյ իրենց հօրը այնպիսի դառն մահուանը վրէժն առին: Նորթըմպըրլանտի Ալլա թագաւորին

1 Էթելվուլֆին օրերը Ի՞նչ յարձակմունք ըրին Տանիմարքացիք:

2 Էթելբերտ ի՞նչպէս յաղթեց Ռէնեար Լոտպրոկին:

յաղթելով՝ չարաչար տանջանքներ տուին անոր․ կողերը ճմլեցին, թոքը դուրս քաշեցին և արիւնլուայ եղած վէրքերը աղով տրորեցին: Նորթումպերլանտը աւազակաց ձեռքը մնաց․ միայն Թամիզ գետին հարաւային կողմը եղած երկիրը ազատ մնացեր էր անոնց արշաւանքներէն: Տանիմարքացի Կոթրուն զօրավարը գնաց հոն, ու յաղթեց Էթելրետի որդւոյն Մեծին Ալֆրետի, որ փախաւ գնաց ճահիճներու մէջ կղզի մը քաշուեցաւ (875):

[1] Ան միջոցին որ Անգղիա աւազակաց լուծին տակը նուաճուած էր, իր թագաւորներէն վերջինը Մեծն Ալֆրէտ (Ալփրետոս) հովուի մը տնակին մէջ փակուած ու ինչուան ան հովուին կնկանն ալ անծանօթ մնացած, իր աշխատանքովը կ'ապրէր, կերած հացն ալ ինքը կ'եփէր: Քանի մը տարի այսպիսի չարքաշ կեանք անցընելէն ետև, 878ին երբոր լսեց որ Տանիմարքացիք յաղթուեր են, ուզեց անձամբ երթալ անոնց բանակը քննել: Սրնգահարի հագուստով մտաւ հոն, և ամէն բան լաւ մը դիտելէն ետքը դարձաւ, իր ընկերները ոտք հանեց, անոնց ժողովուելու տեղ որոշեց Վէմ Եգբերտի ըսուած տեղը: Ամէնքը վազեցին եկան, և Տեւոնի ըսուած կոմսութեան մէջ թշնամեաց յաղթելով՝ իր նախնեացը աթոռը նորէն ձեռք ձգեց: Կոթրուն Մերսիա գնաց քաշուեցաւ, և երդում

[1] Մեծն Ալֆրէտ աթոռէն ընկած ըլլալով ինչ կեանք անցուց, ու ինչ կերպով նորէն թագաւորեց:

ըրաւ որ ա՛լ Անգղիան հանգիստ թողու, և ինքը քրիստոնեայ եղաւ։

¹ Ալֆրէտ որ աս կերպով հայրենիքը ազատեց գերութենէ՝ բարբարոս չէր. Հռոմ մեծցած կրթուած էր Լեւոն Դ պապին ձեռքին տակը։ Եւրոպայի մէջ ճամբորդութիւններ ընելով շատ բանի վրայ տեղեկութիւն առեր էր. այլևայլ լեզուներ կը խօսէր, և հին երևելի հեղինակաց գիրքերը մասնաւոր ուշադրութեամբ կարդացեր էր։

² Երբոր իր հայրենիքը ազատեց ու խաղաղացուց, սկսաւ դրսի յարձակմանց դէմ ալ զանիկայ ամրացընել, և միանգամայն Անկլոսաքսոն ազգը կրթել։ Լոնտրա քաղաքը մեծցուց, ամրացուց, և թագաւորութեանը մայրաքաղաքը ըրաւ. հոն նաւեր շինել տուաւ՝ ծովեզերքը պաշտպանելու, և Անգղիան զանազան կոմսութիւններ բաժնեց։ Անկէց զատ հին վճիռները ժողվեց, անոնցմով օրինաց գիրք մը շարադրեց, դպրոցներ բացաւ ու ամէն տեղէ իմաստուն մարդիկ հոն բերել տուաւ Մեծին Կարոլոսի ըրածին պէս. ինքն ալ գրականութեան ետևէ կ՚ըլլար ու գրքեր կը շարադրէր. ժողովուրդն ու եկեղեցականները կրթելու համար ուսումնական գրքեր ու եկեղեցական պատմութիւններ լատին լեզուէ սաքսոներէն կը թարգմանէր։ Կ՚ուզէր որ ամէն ազատ մարդկանց որդիքը գրել կարդալ գիտնան։ Իր եկամուտքը շատ խելքով կը մատակարարէր, և անոնց մէկ մասը աղքատաց, եկեղեցիներու ու վանքերու կը բաժ-

---

¹ Ի՞նչ կատարելութիւններ ունէր Ալֆրէտ։

² Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ Անգղիոյ մէջ։

նէր. մինչուան Երուսաղէմի քրիստոնէից ալ ողոր-մութիւն կը խրկէր։ Ժամանակին ալ իրեք մասն բաժնած էր Ալֆրէտ, և որովհետև ժամացոյց չունէր՝ վեց հաւասարաչափ մոմեր եռնէ եռն վառելով օրուան քսանըչորս ժամը կը չափէր։ Քսանըչորս ժամուան իրեքին մէկը կերակուրի, քունի ու մարմնոյ կրթութեան կ'անցընէր, եր-կրորդ մասը գործողութեանցը, երրորդն ալ ուս-ման։ Այսպէս Անգղիացիք խաղաղացած ու բար-բարոսութենէ ելած՝ իրենց Ալֆրէտ թագաւո-րին Մեծ անունը տուին։

¹ Եդուարդ (900) Մեծին Ալֆրէտի որդին, առաջին իշխանն եղաւ որ Անգղիոյ թագաւոր ըսուեցաւ։

² Ասոր յաջորդներէն Եդգար թագաւորը՝ որ խաղաղասէր ըսուեցաւ, աւազակները հալածե-լէն զատ ամէն ջանք ըրաւ որ անկարգութիւննե-րը վերցընէ. դատաստանները ինքը անձամբ կը կտրէր, գողերը կը պատժէր, երկրին ամէն կողմը պտըտելով՝ հարկաւոր տեղերը կ'ամրացընէր։ Գայլերը այնչափ շատցեր էին Անգղիոյ մէջ որ եր-կիրը անապատ կը դարձընէին. Եդգար վարձ խոս-տացաւ գայլ սպաննողին. ազնուականաց ալ հրա-մայեց որ իւրաքանչիւրը տարին տասը հատ գայ-լու գլուխ կամ մորթ բերեն իրեն. ասանկով քիչ ժամանակի մէջ երկիրը այն վնասակար գազաննե-րուն ձեռքէն ազատեցաւ։ Ետքը սկսաւ Եդգար եկեղեցականները բարեկարգել, և Տունսթան

¹ Եդուարդայ վրայ ի՞նչ գիտելիք կայ։
² Եդգար ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ։

արքային յանձնեց այս աշխատանքը՝ զինքը Քէնթըրպըրիի արքեպիսկոպոս անուանելով։ Զարմանալի խմաստութեամբ կատարեց իր պաշտօնը ան սուրբ քահանան, և Անգղիոյ լուսաւորութեանը մեծ պատճառ եղաւ։

1 Եդգար (975) երկու որդի թողուց՝ Եդուարդ և Էթելրէտ. տասնութը տարեկան էր Եդուարդ Բ երբոր իրեն յաջորդեց. բայց խորթ մայրը Էթելրէտ որդւին թագաւորեցընելու համար՝ զինքը որսի մէջ սպաննել տուաւ։ Եդուարդ Բ ան պըզտիկութեանը մէջ ցուցըցած սրբութեանցը համար Մարտիրոս ըսուեցաւ, ու սրբոց կարգն անցաւ։

2 Էթելրէտին թագաւորութեան ատենը (978), նորէն յարձակեցան Տանիմարքացիք ու սկսան Բրիտանիայի ծովեզերքը կողոպտել, ինչուան որ Էթելրէտ տասը հազար լիտր արծաթ տալով հաշտութիւն ըրաւ հետերնին։ Այս յաջողութեամբ սիրտ առած Տանիմարքացիք՝ 1002ին նորէն եկան կրկին աւարը առին։ Ան ատենը Էթելրէտ դքսէն օգնութիւն մը գտնելու համար Նորմանտիոյ Հուքարտոս դքսին աղջիկը իրեն կին առաւ։ Այս խնամութեամբ ալ ինքզինքը բաւական զօրացած չսեպելով՝ նենգութիւն մը ըրաւ, որ իր կորստեանը պատճառ եղաւ։ Հրամայեց որ յանկարծ ատեն մը օր Անգղիա գտնուած բոլոր Տանիմարքացիները սրէ անցունեն։ Նորվեկիոյ Սուէնոն թագաւորին

---

1 Եդգարին ով յաջորդեց ։

2 Էթելրէտ ինչ անգթութիւն ըրաւ Տանիմարքացւոց դէմ ։

քոյրն ալ զաւկըններովը սպաննուեցաւ . բայց մեռնելէն առաջ սա խօսքս ըսաւ թէ " Աստուած զձեզ պիտի պատժէ , և եղբայրս իմ վրէժս պիտի հանէ ,, :

1 Իրաւցընէ Սուէնոն գնաց մտաւ Անգղիա և չորս տարի ասպատակ ըրաւ երկիրը՝ ամէն տեղ ալ քաղաքներն ու գեղերը այրելով : Ետքը իր տեղը հոն Թուրքիլ անունով վայրենամիտ մարդը խաւարեց : Աս Թուրքիլին ալ եղբայրը սպաննուած ըլլալով , գնաց Քէնթըրպըրի քաղաքը պաշարեց առաւ : Բնակիչները եկեղեցիները փախան ապաւինեցան՝ յուսալով որ ազատին . բայց Թուրքիլ եկեղեցւոյն չորս կողմը փայտ դիզեց ու կրակ տուաւ , որով եօթը հազար հոգի այրեցան : Էթելրէտ քառասուներութը հազար լիտր արծաթ տալով հազիւ կրցաւ Թուրքիլը անկէց հեռացընել :

2 Ան ատենը Սուէնոն միտքը դրաւ որ բոլորովին տիրապետէ Անգղիոյ : Շատ մը նաւեր պատրաստեց ու Հըմպըր գետին բերնէն ինչուան Թամիզ գետը հասաւ : Էթելրէտ սարսափած՝ իր կինն ու որդիքը առաւ Նորմանտիա փախաւ . Սուէնոն ալ մտաւ Լոնտրա , և ինքզինքը թագաւոր անուանեց (1014) :

3 Սուէնոնի որդին Մեծն Քանութ՝ իմաստուն կառավարութեամբը ամենուն սիրելի էր , եղած

---

1 Սուէնոն ի՞նչ կերպով վրէժխնդրութիւն ըրաւ Տանիմարքացւոց կոտորածին համար :
2 Ի՞նչպէս թագաւորեց Անգղիոյ վրայ :
3 Սուէնոնի ո՞վ յաջորդեց : — Մեծն Քանութ ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը :

վտանգներուն դարման ըրաւ, Անգղիացւոց առջի օրէնքները հաստատեց, քրիստոնէութիւնը ծաղկեցուց, կախարդութիւնը արգիլեց, և հրաման հանեց որ անկէց ետքը արեգակը, լուսինը, կրակն ու ջուրը պաշտել չըլլայ: Անգղիացի Կանուտին անունով քաջ կոմսին աղջկանը հետ կարգուելով բոլորովին ժողովրդեան աչքը մտաւ, այնպէս որ անցնելու ատենը կը կանչէին. "Կանուտոյ օրհնութիւնը Քանութին վրայ ըլլայ":

[1] Այսպիսի զարմանալի դիպուած մըն ալ կը պատմեն Քանութին վրայ: Օր մը պալատականները հետ ծովեզերքը պտըտելու ատեն՝ անոնք սկսան զինքը գովել, ըրած աշխարհակալութիւնները կը մեծցընէին, Ովկիանոսի անհուն տարածութեանը նայելով կ՚ըսէին թէ դու ասոր ալ տէրն ես: Քանութ որ աղէկ գիտէր այնպիսի շողոքորթ խօսքերէ չխաբուիլ, ուզելով հասկըցընել անոնց թէ ըրածնին շողոքորթութիւն ըլլալը կ՚իմանայ, վերարկուն հանեց, ծալլեց ու վրան նստաւ. և որովհետև ծովուն մակընթացութեան ատենն էր, ըսաւ ծովուն. "Կը տեսնես որ տէրդ առջևդ է, մտիկ ըրէ ըսածիս. կը հրամայեմ քեզի որ ալիքներդ բռնես որ ոտուըներս չգան չթրջեն": Պալատականք սկսան իրարու երեսը նայիլ թէ յանկարծ խելքը կորսնցուց, ինչ եղաւ թագաւորը: Ջուրը բարձրացաւ ու եկաւ ինչուան թագաւորին ոտուըները թրջեց: Ան, ատենը մէկէն ելաւ Քանութ, պալատականացը դառնալով ըսաւ.

---

[1] Քանութին վրայ ինչ մասնաւոր դիպուած կը պատմուի:

«Կը տեսնէք, ինչպէս ծովուն տէրն եմ՝ ես, և ինչպէս անիկայ աղէկ կը հնազանդի ինծի »։

1 Քանութի մահուընէն ետքը (1036) որդիքը Հարալտ և Հարտոք-Քանութ իրենց անմիաբանութեամբն ու անկարողութեամբը թողուցին որ սաքսոնեան կողմին մարդիկը զօրանան, անոնք ալ օտարականները վռընտեցին ու Էթելրեդի որդին Եդուարդ երկրորդը կանչեցին (1042)։ Եդուարդ Նորմանտիոյ մէջ մեծցած ըլլալով, հոնտեղի սովորութիւններն ու լեզուն հետը բերաւ, և բոլոր վստահութիւնը Նորմանտացւոց վրայ դրաւ. Կ'ըսեն թէ մեռնելու ատեն ալ զաւակ չունենալով թագաւորութիւնը կտակով Գուլիելմոսի թողեր է, որ Նորմանտիոյ դուքսն էր։ Թէպէտ և կարգուած էր Եդուարդ Գ., բայց ժուժկալութեանը համար Խոստովանող ըսուեցաւ, ու սրբոց կարգն անցաւ։

2 Եդուարդ մեռնելուն պէս՝ տէրը Կոտուինի որդին Հարալտ՝ ինքզինքը թագաւոր անուանել տուաւ, և ամենևին Նորմանտիոյ դքսին ըրած բողոքներուն միտք չըրաւ։ Գուլիելմոս ձայն մը հանեց թէ Հարալտ օր մը նաւաբեկութեամբ Նորմանտիոյ ծովեզերքը ելնալով, երդում ըրեր էր իրեն որ Եդուարդին մեռնելէն ետև ամենևին յաջորդութեան ետևէ չըլլայ. և հիմա երդմանը դէմ ընելուն համար Աղեքսանդր Բ. պապէն անոր բանադրանք բերել տուեր էր։

---

1 Ո՞վ յաջորդեց Քանութին։
2 Եդուարդ Խոստովանողին յաջորդ ո՞վ եղաւ։

1 Գուլիէլմոս տեսնելով որ աս խօսքերով չկըր-նար զուրիշները համոզել, բռնութիւնը ձեռք ա-ռաւ, և նոյն իսկ Հարոլտին եղբայրը Թոսթիկ՝ որ Նորթումպէրլանտի կոմս էր՝ իրեն նիզա-կակից ըրաւ, անիկայ ալ Նորվեկիոյ Հարոլտաս թագաւորը իրեն օգնութիւն կանչեց : Պատերազ-մը սկսելուն պէս նետով մը չարաչար վիրաւորուե-ցաւ Հարոլտաս, և Թոսթիկ զօրավար եղաւ Նոր-վեկիացւոց, որ սկսեր էին տկարանալ. բայց քիչ ատենէն ինքն ալ ընկաւ մեռաւ, զօրքը ցրուեցան, և յաղթութիւնը Սաքսոններուն մնաց :

2 Այն միջոցին Գուլիէլմոս հարիւր հազար հո-գւով ու երեք հազար նաւով Ճամբայ ելաւ Նոր-մանտիայէն ու Անգղիա հասաւ, և հետը տարեր էր պապին նուէրքը, Եկեղեցւոյ դրօշ մը և մէկ մատանի մը ազնիւ ադամանդէ, ադամանդին մէջն ալ սրբոյն Պետրոսի մէկ մազը դրած : Մէկ դի-պուած մը հանդիպեցաւ ցամաք ելած ատենը որ ամենուն միտքը շատ շփոթեց : Ինքը Գուլիէլմոս ամենէն առջը ելաւ ցամաքը, ու յանկարծ ոտքը սահելով վար ընկաւ. ասոր վրայ ամէնքը սկսան շշնջել, ոմանք ալ կանչեցին թէ “ Աստուած պա-հէ զմեզ, ասիկայ գէշ նշան է ”. բայց զօրքը ձեռուըններ երկընցուց, ու երկու ձեռքն ալ մէյ-մէկ քիչ աւազ առած կանչեց. “ Ինչո՞ւ կը զար-

---

1 Գուլիէլմոս ի՞նչ կերպով ձեռք ձգել ուզեց Անգղիոյ թագաւորութիւնը :
2 Ի՞նչպէս անցաւ Անգղիա, և ի՞նչ մասնաւոր դիպուած պատահեցաւ այն միջոցին :

մանայք, ես աս երկիրը ձեռքովս բռնեցի, Աստուծով բոլորն ալ ձեզի պիտի ըլլայ ”:

[1] Հարալտ Նորվեկիացւոց վրայ ըրած յաղթութենէն ետքը դառնալու վրայ էր․ առանց զօրացը ժամանակ տալու որ հանգչին՝ Նորմանտացւոց առջևը վազեց, և Հասթինկս քաղաքին մօտ հասաւ անոնց: Պատերազմը սկսաւ, ու երկու կողմին ալ կատաղութեանը չափ չկար․ Գուլիելմոսի զօրքը Սաքսոններուն վրայ կը յարձըկէին կանչելով “ Աստուած է մեր օգնականը ”․ անոնք ալ դիմացէն “ խաչն Քրիստոսի ” կը կանչէին, ու քաջութեամբ զանոնք կը վանէին: Այս անկարծելի դիմակալութեան վրայ խռովեցաւ Գուլիելմոս․ իր հեծած ձիերէն իրեքը վիրաւորուած ինկան մեռան, և ստիպուեցաւ հետևի պատերազմելու․ երբոր տեսաւ թէ իր Նորմանտացւոց կատաղութիւնը Սաքսոններուն յամառ քաջութեանը առջև կը տկարանայ, յանկարծ հնարք մը մտածեց: Հրամայեց իրեններուն որ փախչիլ ձևացընեն․ թշնամիք ալ մէկէն յարձակեցան որ փախչողները ջարդեն․ ան ատենը շուտ մը ետ դարձուց զօրքը, միացուց իր ասպետները, ու ցրուած թշնամին ջարդեց փախուց: Այն մեծ պատերազմին մէջ Հարալտ թագաւորն ու յիսուն հազար Անկլոսաքսոնք մեռան, և Անգղիա Նորմանտացւոց իշխանութեան տակն ինկաւ (1066):

[2] Գուլիելմոս յաղթանակով Լոնտրա գնաց ուր

1 Հասթինկսի պատերազմը ի՛նչպէս եղաւ:

2 Գուլիելմոս ի՛նչ կերպով սկսաւ ընել իր թագաւորութիւնը: — Ո՞վ եղաւ իրեն դէմ կեցող:

Թագաւոր պսակուի, ու հին արքեպիսկոպոսնե-րէն ու ազգին գլխաւորներէն հաւատարմութեան երդում առաւ։ Առջի բերան յաղթուողներուն սիրտը շահելու աշխատեցաւ, ու անոնց շատ մը արտօնութիւններ տուաւ. բայց երբոր ինքը Նոր-մանտիա գնաց, իր տեղապահները ժողովուրդը սաստիկ նեղելով՝ բոլոր երկրին մէջ ելլելու պատ-ճառ եղան։ Շուտ մը ետ դարձաւ Գուլիելմոս, ու անգութ վրէժխնդրութիւն մը ըրաւ, ամէն տեղ Թրով ու կրակով առաջ երթալով՝ տուները կը կոր-ծանէր, մարդիկն ու անասունները Թրէ կ'անցը-նէր, և բոլոր երկիրը ամայավայր կ'ընէր։ Աս սոս-կալի կոտորածէն ու աւերմունքներէն սարսա-փած ինչուան ամէնէն կատաղի ապստամբները խոնարհեցան, Թողութիւն խնդրեցին։ Մէկը միայն կ'ընդդիմանար ու յաղթականին մեծ անհան-գըստութիւն կուտար. և անիկայ էր քաջն Հե-րուարտ՝ Անգղիացւոց դիւցազնը, որ անմատչելի ճահիճներու մէջ ամրացած՝ ատեն ատեն Թշնա-մեաց վրայ կը յարձըկէր ու կը ջարդէր զանոնք՝ առանց ինքը վնասուելու։ Կը տեսնար Գուլիելմոս որ իր ամէն ջանքը պարապ կ'ելլէ անոր մարդուն դէմ որ Անգղիոյ վերջին պաշտպանն էր, և միտքը դնելով որ յաւերժահարսերը անոր պաշտպանու-Թիւն կ'ընեն՝ չուզեց հետը պատերազմիլ. երդում առաւ անկէց ու հայրական ժառանգութիւնը ա-նոր տուաւ։

[1] Ասանկով երբոր բոլոր Թշնամիները հնազան-դեցուց Գուլիելմոս, Աշխարհահոլ կամ Տէրէտէրահոլ

---

1 Գուլիելմոս ինչ կարգաւորութիւններ ըրաւ։

րստացաւ, և սկսաւ անկէց ետքը յաղթուողներուն երկիրներն ու հարստութիւնը մէկուն մէկալին բաժնել: Եպիսկոպոսութիւններն ու աբբայութիւնները մէկուն մէկալին տուաւ. երկիրը վաթսուն հազար կալուած զատեց ու Նորմանտացւոց բաժնեց. իսկ ինքը իրեն համար առաւ հազար չորս հարիւր երեսունուերկու տուն, Ռօբէրտոս եղբայրը հարիւր վաթսունուերեք, Օտոյ եղբայրն ալ չորս հարիւր յիսուն: Բայց բոլոր աս կալուածատէրերը ինչ առանձնաշնորհ ալ մեծութիւն ունենային՝ Թագաւորին իշխանութեանը տակն էին:

1 Իսկ յաղթուող Անկղոսաքսոնները բոլորովին ազգութիւննին կորսնցուցին. վասն զի ազգութեան իրաւունքէն զանոնք զրկեց Գուլիէլմոս և ստրուկներու կարգն անցուց: Ամէն իրիկուն մութը կոխելուն պէս զանգակը կը զարնուէր, ու ամէն մարդ իր տանը կրակները պէտք մարէր: Արգիլեց որ մէկը որսորդութեան չկարենայ ելնել. Սաքսոն մը թէ որ նապաստակ մը մեռցնէր, պատիժը ան էր որ մէկէն աչքը կը հանէին:

2 Գուլիէլմոսի թագաւորութեան վերջին տարիները Հռոբերտոս որդին Գաղղիոյ Փիլիպպոս Ա թագաւորին գրգռութեամբ հօրը դէմ ապստամբեցաւ: Բարկացաւ Գուլիէլմոս ու Փիլիպպոսի վրայ պատերազմի ելաւ. գնաց Գաղղիոյ Մանթ քաղաքն առաւ ու այրեց. բայց ինքն ալ ձիէն վար իյնալով վիրաւորուեցաւ ու մեռաւ (1087):

---

1 Անկղոսաքսոններուն հետ ինչպէս վարուեցաւ:

2 Գուլիէլմոս ինչպէս մեռաւ:

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Պատմութիւն Իտալիոյ, Սարակինոսաց արշաւանքէն ինչուան Երկուց Սիկիլիայց թագաւորութեանը Սուաբիացւոց ձեռքն անցնիլը. — Ծովեզերեայ հասարակապետութիւնները՝ իրենց սկիզբէն մինչև իրարու հետ կռուիլը (827-1194)։ Իտալիոյ վիճակը. — Սարակինոսաց աշխարհակալութիւնները. — Սալեռնոյի դպրոցը. — Նորմանդացի ուխտաւորները. — Տրենկոյ և իր եղբարքը. — Թանքրետին որդիքը. — Հռոբերտոս Կիսքար՝ Փուլիայի դուքսը. — Ռոճեր Սիկիլիոյ կոմսը. — Ռոճեր Բ Երկուց Սիկիլիայց թագաւորը. — Նոր տէրութեան իյնալը. — Սուաբիացւոց ձեռքը անցնիլը. — Ծովեզերեայ հասարակապետութիւնք, այսինքն Վենետիկ, Ճենովա և Փիզա։

¹ ԻՏԱԼԻԱ. — *Քանի որ Հռովմէական կայսերութիւնը ընկեր էր՝ Իտալիա անդադար օտար ազգաց արշաւանքներուն ոտնակոխ կ'ըլլար։ Լոմպարտացւոց յաջորդեցին Փրանկները, և Փրանկներուն՝ Գերմանացիք. իսկ թէ անոնք ալ բաւական չէին, Կոստանդնուպօլսոյ կայսերքը կը ջանային միշտ Իտալիոյ մէջ տեղ ունենալ ու արևելքի հետ միացնել։ Իրենց ձեռքն էին Փուլիա ու Քալապրիա գաւառները, որ ամէնքը մէկէն Վիճակ կամ Թէմ Լոմպարտիոյ կ'ըսուէին, ու անոր կառավարը պատրիկ մըն էր, որ կատապան ալ կ'ըսուէր։ Անդին*

---

¹ *Հռովմէական կայսրութեան իյնալէն ետքը Իտալիոյ վիճակը ի՛նչպէս էր։*

Բենեւենտոյի Լոմպարտացիք ալ հարաւային կողմերը տիրած՝ կը ջանային որ ինքնագլուխ ըլլան. շատ մըն ալ ծովեզերեայ քաղաքներ, ինչպէս Կոյեթա, Նափոլի, Ամալֆի՝ մէյմէկ հասարակապետութիւններ ձեւացեր էին, և իրենց վաճառաշահութեամբն ու հարստութեամբը իրենց մօտ եղած ժողովուրդներուն վրայ վախ կը ձգէին: Եւ որովհետեւ հաստատուն մէկ իշխանութիւն մը չկար, Փլորենտիա, Լուքքա, Մանթուա և Բէճճիոյ քաղաքներն ալ իրենք զիրենք կը կառավարէին:

1 Այնպիսի անիշխանութեան ու շփոթութեան ատեն Սարակինոսներն ալ յարձակեցան Իտալիա: Ասոնք 827ին ատենները Ափրիկէի ծովեզերքէն եկեր ու Սիկիլիա կղզւոյն տէրեր էին. Նէապօլսեցիք (Նափոլիի բնակիչները) անոնցմէ օգնութիւն ուզեցին Լոմպարտացւոց դէմ. անոնք ալ եկան Պարի ու Տարենտոն քաղաքները առին, ու Կարոլեան գետին եզերքը բնակեցան: Անկէց ուղեցին դէպ 'ի հիւսիս առաջ գալ որ Հռոմին տիրեն. Գրիգոր Դ պապն ալ Ոստիայի նաւահանգիստը ամրացուց. բայց Սարակինոսները քսան տարիի չափ ետքը (847ին) երեւցան ան տեղուանքը, Հռոմ քաղաքին արուարձանները ու սրբոյն Պետրոսի և Պօղոսի եկեղեցիները այրեցին. և թէ որ Լեւոն Դ պապը քաջութեամբ անոնց դէմ չելլէր, աւելի մեծ աւերմունքներ պիտի ընէին:

---

1 Սարակինոսները երբ և ինչ պատճառաւ արշաւեցին Իտալիա:

[1] Քիչ ատեններ ծովեզերեայ հասարակապետութիւնները միացան Սարակինոսաց դէմ ու հալածեցին զանոնք: Յովհաննէս Ժ. պապը 917ին ատենները Կարիլեանի քով բնակած Սարակինոսներուն վրայ գնաց, և յունական կրակով, ու Բենեւենտո և Նափոլի քաղաքներուն բնակիչներէն օգնութիւն առնելով՝ լերան մը վրայ զանոնք պաշարեց ու կէս մը կրակով՝ կէս մ'ալ անօթութեամբ ջարդեց: Տասը տարի ետքը Սարակինոսները աս բանին վրէժը առնելու համար յանկարծակի Փիզա քաղաքին դիմացը գտնուեցան, ու քիչ մնաց որ պիտի տիրէին քաղաքին. բայց մէկ կին մը իմանալով շուտ մը գնաց զանգակները զարկաւ, ու քաղաքացիք ոտք ելան հալածեցին զանոնք:

[2] Սակայն մահմետականները անով ալ չյուսահատեցան Իտալիոյ տիրելէն. 1016ին Սալեռնոյ քաղաքին վրայ գնացին ու սաստիկ պաշարմամբ առին. բնակիչներն ալ Թրէ պիտի անձնէին, բայց անոնք շատ ստակ տալով ազատեցան: Ան միջոցին որ հարկապահանջները փողոցէ փողոց պտըտելով ստակ կը ժողվէին, քառասուն Նորմանտացի աղքատ ուխտաւորներ վրայ հասան, որ Երուսաղեմի կողմերէն նոր դարձեր էին. ասոնք Սալեռնացւոց վատութիւնը երեսնուն զարկին, ու յորդորեցին որ զէնք առնեն. "Մենք ձեզի կ'առաջնորդենք" ըսին: Յարձակեցան գիշերանց

---

1 Յովհաննէս Ժ. պապը ինչ յաղթութիւն ըրաւ Սարակինոսաց վրայ:

2 Սալեռնոյ քաղաքը ինչպէս ազատեցաւ:

Սարակինոսաց վրայ, անոնք ալ յանկարծակիի գալով շուտ մը նաւերը մտան ու ձգեցին փախան. իսկ Նորմաննացի կորիճները աղէկ վարձատրութիւն առնելէն ետքը գնացին իրենց հայրենակիցներուն պատմեցին թէ հարաւային կողմերը երկիր մը կայ՝ ուր քաջութիւն ընելը շատ դիւրին է և աւարը հարուստ։

1 Ասոր շատ չանցաւ, Տրէնկոյ անուանով Նորմաննացի մը իր չորս եղբայրներովը ու իրեք հարիւր ծառաներովը Սալեռնոյի կողմերը գնաց։ Պարի քաղաքէն հարուստ վաճառական մը զանոնք ընդունեցաւ, ու իրեն սակովը Յունաց դէմ խրկեց. անոնցմէ մէկը որ Ռայնուլֆ կ'ըսուէր, Աւերսա բերդին տիրեց. Կոնրադոս կայսրն ալ ան բերդին իշխանութիւնը անոր տուաւ. աստնկով սկսաւ Երկուց Սիկիլեայց թագաւորութիւնը։

2 Քանի մը տարի ետքը (1037) Թանքրէտ Հօթվիլէն իրեք որդիքը այսինքն Գուլիէլմոս Երկաթաբազուկ, Տրոկոն և Հոմֆրոս ան կողմերը գնացին, և Յունաց հետ մէկտեղ հալածեցին Սարակինոսները Սիկիլիայէն։ Վասն զի Գուլիէլմոս մենամարտութեամբ սպաննեց Թշնամեաց զօրապետն ու ազատեց Սիկիլիան։ Աւարը բաժնելու ատեն Յոյնք չէին ուզեր իրենց նիզակակիցներուն բաժին հանել. Նորմաննացիք ալ անոնց դէմ դարձան, ու սկսան պատերազմիլ. առջի զարնուած-

---

1 Նորմաննացիք ինչ կերպով հաստատուեցան Իտալիոյ մէջ։

2 Երկուց Սիկիլեայց թագաւորութեան սկիզբն ինչպէս եղաւ։

քէն մէջ իրենք հազար երկու հարիւր հոգի էին, իսկ Յոյնք յիսուն հազար. ուստի Յունաց պատրիկը յաղթութեանը վրայ տարակոյս չունենալով մարդ խրկեց Նորմանտացւոց ու ըսաւ. «Թող կուտամ ձեզի որ փախչիք, միայն թէ աս երկրէն դուրս ելլէք»։ Ըն ատեն Նորմանտացւոց մէկը՝ ուժին կողմանէ անուանի՝ որ Հուկոն Թուտէք-սԹիֆֆէր կ'ըսուէր, դեսպանին ձիուն գլխուն բռնցքի զարնելէն ու ձին սպաննելը մէկ ըրաւ. պատերազմը սկսաւ, և Նորմանտացիք յաղթեցին. անով Փուլիա գաւառը իրենց եղաւ, Գուլիէլմոս՝ կոմսի պատուանուն առաւ ու բոլոր գաւառը տասուերկու կոմսութեան բաժնեց՝ կալուածական կառավարութեամբ. գաւառին գլխաւոր քաղաքն ալ եղաւ Մէլֆի։

[1] Գուլիէլմոսի մեռնելէն ետքը (1046), եղբայրը անցաւ անոր տեղը Դրոկոն. սակայն Յոյնք եկեղեցւոյ մը մէջ սպաննեցին։ Անդէն Հոնֆրուա կը պատրաստուէր որ եղբօրը վրէժը հանէ, անդին Թանկրետին երկու որդիքն ալ, այսինքն Ռոճէր և Հռոպէրտոս Կիսքար վրայ հասան ու իրենց օգնական եղան։ Հռոպէրտոս որ յաղթանդամ, կտրիճ ու քաջասիրտ մարդ մըն էր, հինգ ձիաւորով ու երեսուն հետեւակով գնաց Ապենինեան լեռներուն վրայ հին բերդերու մէջ ամրացաւ և անկէց սկսաւ ասպատակութիւններ ու յափշտակութիւններ ընել, որպէս զի իր զօրացը զէնք, ձի ու ստակ գտնէ։ Աս Նորմանտացիք Իտալիոյ պատուհաս մը սեպուեցան. ուստի Գերմանիոյ և ա-

---

[1] Գուլիէլմոս ի՞նչ քաջութիւններ ըրաւ։

Արեւելքի կայսերքը, Լեւոն Թ. պապը և շատ իտալական քաղաքներ դաշնակցութիւն մը ըրին մէջերնին անոնց դէմ, բայց օգուտ մը չտեսան: Պապը Ձիվիթելլա ըսուած տեղը յաղթուեցաւ, Բենեւենտ քաղաքը փախաւ ու գերի ընկաւ. բայց Նորմանտացիք անոր առաքինութիւններուն վրայ զարմացած՝ դիմացը ընկան երկրպագութիւն ըրին, ու խնդրեցին որ իրենց յաղթութեամբ ձեռք ձգած կամ՝ ձեռք ձգելու երկիրները իրենց թողու, պապն ալ հաւանեցաւ. ասանկով պապերը Երկուց Սիկիլեայց Թագաւորութեան վրայ ժամանակաւոր իշխանութիւն մը ունենալ սկսան:

1 Երբոր Հոնֆրուա մեռաւ (1057), Հռոբերտոս ինքզինքը անուանեց դուքս Փուլիոյ, Քալապրիոյ և Սիկիլիոյ. իր Ռոճեր եղբայրն ալ Սիկիլիոյ կոմս ըրաւ: Բայց որովհետեւ ասխկայ ալ ոչ ստակ ունէր և ոչ զինուոր, իր եղբօրը օրինակին հետեւելով՝ բարձր տեղուանք ամրացած՝ ճանապարհորդներուն վրայ կը յարձակէր, գեղերը կը զարնէր ու ձի և ստակ կը ժողվէր. ետքը Հռոբերտոս Կիսքարին հետ միաբանած՝ սկսաւ ետեւէ ըլլալ որ տէրութիւն մը կանգնէ. ինքը երեք հարիւր ձիաւոր միայն ունէր ան ատենը. անոնք հետը առած գնաց Սիկիլիա՝ ու Մեսինա և Թրանի քաղաքները առաւ: Սարակինոսները անհամար զօրքով գնացին զինքը Թրանիին մէջ պաշարեցին. քաղաքին բնակիչներն ալ իրեն դէմ գլուխ վերցուցին.

---

1 Գուլիելմոսին ով յաջորդեց: — Ի՞նչ առթով սկսան պապերը Երկուց Սիկիլեայց վրայ իշխանութիւն ունենալ:

բայց Ռոճեր զարմանալի քաջութեամբ պատերազմեցաւ։ Օր մը երբոր քաղաքէն դուրս յարձակեր էր, Արաբացւոց գունդ մը զինքը պաշարեց ու քիչ մնաց որ պիտի բռնէր. ձին սպաննուեցաւ, բայց ինքը ոտք ելաւ, իրեններուն նշան տուաւ որ ետ քաշուին, և երեսը դէպ 'ի Թշնամիները բռնած՝ ձիուն համետն ալ կռնակը առած քաշուեցաւ ազատեցաւ։ Եղբը Իտալիոյ ծովեզերեայ քաղաքներուն օգնութեամբը Թրանի քաղաքն ալ պաշարմանէ ազատեցաւ։

1 Նորմանտացիք իրենց քաջութեամբը Սարակինոսաց վրայ յաղթանակելէն ետքը հարկադրեցան Յունաց հետ ալ պատերազմելու։ Կոստանդնուպոլսոյ կայսրը նաւատորմիղ մը խրկեց Պարի քաղաքին օգնելու, որ պաշարուած էր, որպէս զի Լոմպարտիոյ Թեմին դէմ մնացած կտորները պաշտպանէ։ Ռոճեր շուտ մը նաւակ մտաւ, շտկեց դէպ 'ի նաւատորմիղը, ծովակալին նաւուն մօտեցաւ, բռնեց, ու մէկալները քշեց հալածեց։ Այսպիսի քաջասրտութիւնը տեսնելով Յոյնք և Սարակինոսք՝ Իտալիայէն և Սիկիլիայէն հրաժարեցան, և անկէց ետքը Ռոճեր սկսաւ իր կոմսութեան իրաւունքներն ու իշխանութիւնը բանեցընել (1074)։

2 Ան միջոցին Հռոբերտոս Գիսքար Նէապոլսոյ Թագաւորութիւնը բոլորովին նուաճեց, Սալեռ-

---

1 Յունաց հետ ինչ պատերազմ ունեցան Նորմանտացիք։

2 Հռոբերտոս ինչ յաղթութիւններ ըրաւ Յունաց դէմ։

նոյ, Պարի, Օթրանթ քաղաքներն առաւ, և յանդուգն խորհրդով կը մտածէր որ արևելքի կայսերութեան ալ տիրէ։ Մակեդոնիոյ Դիւրրաքիոն (Տուրացցոյ, Տիւրրաձ) բռնուած քաղաքը անցաւ. և թէպէտ շատ դէմ կեցաւ անոր Մակեդոնացի պահապան դուքսը, բայց Հռոբերտոս տիրեց, և յաղթութիւնը առաջ տանելու վրայ էր. ան միջոցին Ալեքս կայսրը Գերմանիոյ Հենրիկոս Դ. թագաւորին առաջարկեց որ Իտալիան նորէն նուաճելու օգնէ իրեն։ Հռոբերտոս վազեց Գերմանացիները հալածեց, Գրիգոր Է պապը ազատեց, ու դարձաւ նորէն Յունաց վրայ դնաց։ Երկու անգամ Քորֆուին դիմացը յաղթուելէն ետքը՝ մեծ նաւական պատերազմի մը մէջ յաղթեց Յունաց, և ան օրը տասնուերեք հազար Վենետակեցի ու Բիւզանդացի նաւաստիներ մեռան։ Երբոր Հռոբերտոսի մարդիկը ուրախութեամբ լեցուած՝ աշխարհակալութեան մէջ իրենց նաւերովը առաջ կ'երթային, ինքը փոխադրական հիւանդութենէ մը բռնուեցաւ ու Կեփաղենիա (Քեֆալոնիա) կղզւոյն մէջ մեռաւ եօթանասուն տարեկան (1084)։

[1] Հռոբերտոսի որդիքը Ռոճէր և Գուլիելմոս յաջորդեցին իրեն 1084էն մինչուան 1127երորդ տարին, ու զաւակ չթողուցին. իսկ Սիկիլիոյ մէջ 1101էն Ռոճէր Բ հօրը աթոռը նստեր ու անոր քաջութիւնը ժառանգեր էր։ Երբոր Գուլիելմոս մեռաւ, Ռոճէր իր տէրութեանը հետ միացուց Փուլիան և Քալապրիան, և Անակղետոս Բ պապէն Սի-

---

[1] Հռոբերտոսի ով յաջորդեց։

Սիկիլիոյ և հարաւային Իտալիոյ Թագաւոր կոչուեցաւ : Կայսեր ձեռքէն ալ Կապուան ու Նէապոլիսն առնելով՝ տէրութիւնը աւելի մեծցուց :

[1] Ան կողմանէ երբոր ամենևին վախ չունեցաւ, միաքը դրաւ որ վրէժխնդիր ըլլայ Սարակինոսներուն ու Յոյներուն որ Իտալիոյ ծովեզերքը պաշարկութիւն կ՚ընէին : Մէկ պատերազմով հին Կարքեդոնական Ափրիկէն և Մաւրիտանիան (որ են Թունուզ և Ճէզայիր) իր ձեռքը անցան, և քանի որ ողջ էր՝ իրեն հնազանդ մնացին : Քիչ ատենէն գնաց Աթէնք, Թեբէ, Կորնթոս քաղաքները կողոպտեց, ու Գաղղիոյ Լուդովիկոս Եօթներորդ Թագաւորը ազատեց Յունաց ձեռքէն, որ ընդդէմ դաշանց բանտը պահեր էին զինքը :

[2] Ռոճերէն ետքը (1154) սկսան Նորմանտացիք առջի քաջութիւննին կորսնցընել. անոր որդին Գուլիելմոս Ա և Թոռը Գուլիելմոս Բ չկրցան Սարակինոսաց յաղթել : Թանքրետոսին մանչ ազգ օրինաւոր ճիւղը 1189ին վերջացաւ, և Գերմանիոյ կայսրը Հենրիկոս Զ նայեցաւ որ ինքը տիրէ ան ժառանգութեանը. ուստի չորս տարուան մէջ Սուապիոյ ցեղին իշխանութեանը հետ միացուց Երկուց Սիկիլեայց Թագաւորութիւնը (1194) :

[3] ԾՈՎԵԶԵՐԵԱՑ ՀԱՍԱՐԱԿԱՊԵՏՈՒԹԻՒՆՔ : Իտալիոյ ատանկ տակնուվրայ եղած ատենը, քանի

---

[1] Ռոճեր ի՞նչ արշաւանքներ ըրաւ :

[2] Ռոճերին ո՞վ յաջորդեց :

[3] Իտալիոյ ծովեզերեայ հասարակապետութիւնները որո՞նք էին :

մը ազատ միացած քաղաքներ իրենց անկախութիւնը հաստատեր ու իրենց ոյժը ծովու վրայ թափեր էին։ Ասոնց մէջ աւելի անուանիներն էին Վենետիկ, Ճենովա ու Փիզա։

1 Վենետիկ քաղաքը հինգերորդ դարուն մէջ Ատտիղասին ձեռքէն փախչողները եկեր հիմներ էին, և կամաց կամաց Կոստանդնուպոլսոյ կայսերաց պաշտպանութեամբը մեծցեր էր։ Իններորդ դարուն մէջ Վենետիկեցիք սկսան իրենց դուքս ընտրել և օրէ օր մեծնալ. վասն զի մէկ կողմանէ Յունաց անստոյգ պաշտպանութեանը տակն էին, մէկալ կողմանէ Գերմանիոյ կայսերաց։ Դքսութեան հաստատուելէն ետքը տիրեցին Վենետիկեցիք նաև Լիւրիկէի, Ռակուզայի, Քափոտիստրիայի ու Դաղմատիոյ։ Մորոզինի ու Քոլոփրինի ցեղերուն հակառակութեամբը քիչ մը ատեն Վենետիկեցւոց յառաջադիմութիւնը արգիլուեցաւ. բայց երբոր խաչակիրները սկսան շարժիլ, անոնք ալ նորէն ոյժ առին։

2 Ճենովա ու Փիզա քաղաքներուն հասարակապետութիւնները Վենետիկէն ալ հին են. վասն զի Հռովմայեցւոց ատենէն 'ի վեր կային. Ճենովա կամ Գենուա՝ Լիկուրիոյ մէջ, Փիզա կամ Պիսա՝ Ետրուրացւոց երկիրը։ Ասոնք երկուքն ալ չափաւոր մեծութեամբ քաղաքներ էին, և քանի որ Իտալիա խռովութիւն ու երկպառակութիւն չըլ-

---

1 Վենետկոյ հասարակապետութիւնը ինչպէս ձևացաւ։

2 Ճենովայի ու Փիզայի հասարակապետութիւնները ինչպէս ձևացան։

լար՝ չէին կրնար մեծնալ: Երբոր Կարոլոս Ցոյրն ընկաւ թագաւորութենէն (887), Ճենովացիք կայսերաց զօրութիւնը արհամարհելով՝ հիւպատոսներ ընտրեցին իրենց ու ծերակոյտ մը հաստատեցին. նոյնպէս ըրին նաև Փիզացիք. ետքը երկուքն ալ իրենց աչքը դէպ 'ի ծով դարձուցին. և որովհետեւ Սարակինոսներուն ձեռքն էին ան ատենը Քորսիքա ու Սարտենիա կղզիները, Ճենովացիք ու Փիզացիք նաւեր պատրաստեցին որ անկէց զանոնք հալածեն: Փիզացիք 1080ին տիրեցին Սարտենիայի, Ճենովացիք ալ Քորսիքայի. բայց աս երկու հասարակապետութիւնները քիչ ատենէն սկսան իրարու հետ թշնամանալ ան կղզիներուն պատճառաւը, և մեծամեծ պատերազմներ ունեցան իրարու հետ՝ որ ետքը պիտի պատմենք:



## ԳԼՈՒԽ ԺԸ.

Պատմութիւն Գերմանիոյ և Իտալիոյ՝ Հենրիկոս երկրորդէն մինչև Վորմսի դաշնակցութիւնը (1002–1122)։ — Սլաւեան ցեղութիւններ (840–1058)։ Հենրիկոս Բ. — Ֆրանքոնիոյ ցեղը. — Կոնրադոս Բ. — Հենրիկոս Գ. — Հենրիկոս Դ. — Գրիգոր Է. — Իր դիտաւորութիւնները. — Բարեկարգութիւնները. — Կայսեր բանադրուիլը. — Որդւոցը ապստամբութիւնը. — Հենրիկոս չորրորդին մահը. — Հենրիկոս Ե. — Վորմսի դաշնակցութիւնը. — Ռուսաստան. — Ռուրիկ. — Օլեկ. — Իկոր. — Յունաց հետ ըրած պատերազմները. — Սվիատոսլաւ. — Վլատիմիր. — Եարոսլաւ. — Լեհաստան. — Փիաստ և իր առաջին յաջորդները։

1 ԳԵՐՄԱՆԻԱ ԵՒ ԻՏԱԼԻԱ։ *Լեւոն Ը պապը Գերմանիոյ կայսերաց տուած ազատութիւններուն հետեւանքը չէր կրցած գուշակել, այնպէս որ կայսրը իրաւունք ունեցեր էր իր ուզած մարդը սրբոյն Պետրոսի աթոռը նստեցընելու՝ մատը մատնի անցընելով ու եպիսկոպոսական գաւազան տալով։ Յայտնի էր որ աս բանս՝ շատ անկարգութեանց պատճառ կրնար ըլլալ։*

2 *Ոթոն Գ. կայսրը 1002ին մեռեր ու իրեն յա-*

---

1 *Գերմանիոյ կայսերք ինչ մասնաւոր արտօնութիւն ունէին։*

2 *Հենրիկոս Թագաւորը ինչ պատերազմներ ունեցաւ։*

Չորդ Թոռներ էր Հենրիկոս Բ Պաւերայի դուքսը , որ Հենրիկոս Հաւտորսին Թոռան Թոռն էր ։ Ամէն կողմանէ յայտնի կ'երեւնար որ սա Թագաւորութիւնը շատ դժուարութիւններով լեցուն պիտի ըլլար ։ Իր ընտրութեանը հակառակ կեցաւ Սուապիոյ ցեղէն Հերմանն իշխանը , և շատ աշխատեցաւ որ կալուածական պատերազմները նորէն գրգռէ ։ Իտալիոյ մէջ Իվրէայի մարգիզը Հարտուինն՝ Գերմանացւոց իշխանութիւնը արհամարհելով Փաւիայի մէջ Թագաւոր պսակուեցաւ . Գերմանիոյ արեւելեան կողմերն ալ Մորաւիացիք ու Լեհացիք ոտք ելլելու վրայ էին ։ Լեհացիք աւելի ահաւոր էին . վասն զի իրենց Պոլեսլաւ Թագաւորը միտքը դրեր էր որ իր իշխանութեան տակը առնէ Էլպա ու Օտէր գետերուն մէջտեղի բոլոր երկիրները , ուր առաջ Սլաւեանք կը բնակէին . արդէն Լուսացիան ու Միսնիան առեր էր ։ Փրակայի ալ տիրեց ։ Հենրիկոս դէպ 'ի սն կողմը դարձաւ , և քանի մը յաղթութիւններ ըրաւ , այնպէս որ Լեհացիք ստիպուեցան Պոհեմիայէն քաշուելու , բայց ուրիշ ինչ երկիրներու որ տիրեր էին՝ զանոնք ձեռքէ չհանեցին ։

[1] Հենրիկոս անկեց ետքը Իտալիա անցաւ ։ Ան երկրին բաները շտկուելու պէս չէին . վասն զի Սարակինոսաց յափշտակութեանը վրայ՝ այլեւայլ քաղաքներուն խռովութիւններն ալ աւելցեր էին ։ Բենեդիկտոս Ը պապը Հռոմէն քշուած , և Միլանի արքեպիսկոպոսութիւնը Հարտուինին բըռնութեանը մատնուած՝ կայսեր օգնութիւնը խըն-

1 Հենրիկոս ինչ կերպով կայսր օծուեցաւ ։

դրեցին ։ Հենրիկոս առանց պատերազմի հասաւ ինչուան Հռոմին դռները ու հոն մտաւ ։ Պապը զինքը սրբոյն Պետրոսի եկեղեցւոյն աստիճաններուն վրայէն ընդունեցաւ ու ըսաւ իրեն. " Կ'ուզե՞ս ըլլալ եկեղեցւոյ պաշտպան և ամէն բանի մէջ ինծի ու յաջորդացս հաւատարիմ „ ։ Թագաւորը երդում խօսք տուաւ, Բենեդիկտոս ալ զինքը կայսր օծեց (1014) ։

[1] Աս Թագաւորը կենացը վերջերը ուզեց կրօնաւոր ըլլալ. և օր մը Գաղղիոյ Վերտէօն քաղաքը վանքի մը մէջ պտըտելու ատենը, Սաղմոսերգութեան աս խօսքը զուրցեց. " Այս է հանգիստ իմ, յաւիտեանս յաւիտենից 'ի սմա բնակեցայց, զի հաճեցայ ընդ սա „ ։ Աբբան աս խօսքերս լսելով իրեն դարձաւ հարցուց թէ " Կրնա՞ս Քրիստոսի նման մինչև 'ի մահ հնազանդիլ. — Այո է իմ փափաքս ալ, ըսաւ կայսրը ։ — Ուրեմն ես ալ քեզ կրօնաւոր կ'ընեմ ու հոգւոյդ խնամքը վրաս կ'առնում, բայց կ'ուզեմ որ ինչ որ քեզի ըսեմ ան ընես ։ — Կ'ընեմ, ըսաւ կայսրը. — Բարի է. ուրեմն ես որ հիմայ քու մեծաւորդ եմ, կը հրամայեմ նորէն քեզի որ ժողովուրդդ կառավարես, և որչափ որ կարելի է խաղաղութիւն ու հանդարտութիւն պահելու ջանաս „ ։ Հնազանդեցաւ կայսրը և կրօնաւոր ըլլալու փափաքը թողուց ։

[2] Հենրիկոս երկրորդին մահուընէն ետքը (1024) կայսերական աթոռը երկու ամիս պարապ մնաց ։ Մեծամեծները չուզելով անկէց ետքը Սաքսոնիոյ

---

[1] Վրան ինչ մասնաւոր դիպուած կը պատմուի ։
[2] Հենրիկոս երկրորդին ով յաջորդեց ։

դքսերուն զօրաւոր չեղէն իրենց վրայ Թագաւոր դնել, ուզեցին Ֆրանքոնիոյ Կոնրադոս Սալեան * իշխանը Թագաւորեցընել։ Երբոր անոնք հոն ընտրութեան զբաղած էին, անդին Իտալացիք Հռոմ մէջ կայսերական պալատը կործանեցին ու Ակուիտանայի դքսին մէկը Թագաւորեցուցին։ Վազեց Կոնրադոս Հռաւեննայ, Փաւիա, Լուքքա ու Փարմա քաղաքները պատժելու. ետքը Յովհաննէս ԺԹ պապին կայսր օծել տուաւ ինքզինքը ու Անուերսայի կոմսութիւնը Ռայնուլֆ անունով Նորմաննացւոյն տուաւ։ Աս կոմսութենէն որ Իտալիոյ մէջ հիմնուած առաջին Նորմաննացի տէրութիւնն էր, որ մը Նէապօլսոյ ետքի Թագաւորութիւնը պիտի ելլէր (1028)։

1 Կոնրադոս Գերմանիա որ դարձաւ, պարոններուն այսինքն մեծամեծներուն հանած ապըստամբութիւնը նուաճեց, և Լեհերը ստիպեց իր նախագահութիւնը ընդունելու։ Պուրկոնի Թագաւորութիւնն ալ միացուց կայսերութեան հետ, որ ան ատենէն սկսաւ Էյոէր գետէն ինչուան Հռոդանոս գետը տարածուիլ։

2 Կոնրադոսին յաջորդեց Հենրիկոս Գ. որ Սեւլանուեցաւ (1039)։ Ասոր Թագաւորութեան ա-

---

1 Կոնրադոս ինչ վիճակի մէջ գտաւ Գերմանիան։

2 Կոնրադոսի յաջորդ ով եղաւ։ — Հենրիկոս Գ. կայսեր ատենը ինչ երևելի դիպուածներ եղան։

* Սալա գետին քովերը ծնած ըլլալուն համար Սալեան ըսուեր էր։

ատենը հանդիպած երևելի դիպուածներն են մէյմը Պոհեմիոյ Վլատիսլաւ դքսին դէմ ըրած յաղթութիւնը, մէյմը Մաճառի Անդրա թագաւորին դէմ ըրածը, մէյմըն ալ Իտալիոյ արշաւանքը. իսկ Իտալիա երթալուն պատճառն ան էր որ Հռոմ մեծամեծ խռովութիւններ կային, և իրեք պապ իշխանութիւնը իրարու ձեռքէ առնելու կ'աշխատէին: Յովհաննէս Ի Լատերանոս սուրբ Յովհաննէս եկեղեցին կը նստէր. Գրիգոր Զ՝ սուրբ Մարիամ Աւագն ըսուած եկեղեցին. Սեղբեստրոս Գ Վատիկանոս սուրբ Պետրոս եկեղեցին: Հենրիկոս Սուտրի քաղաքին մէջ ժողով մը ըրաւ, իրեք պապերն ալ ձգեց ու անոնց տեղը Պամպէրկի եպիսկոպոսը դրաւ, որ ըսուեցաւ Կղեմէս Բ; և սուաքինի մարդ ըլլալով Եկեղեցւոյ մէջ սկսաւ բարեկարգութիւններ ընել:

[1] Ան միջոցին Հենրիկոս Գ մեռաւ (1056), ու տեղը անցաւ իր տասը տարեկան որդին Հենրիկոս Դ՝ մօրը խնամակալութեանը տակ: Աս թագուհին մեծամեծներու սիրտը շահելու համար շատ ազատութիւններ տուաւ անոնց, բայց վախճանին չհասաւ. վասն զի Կոլոնիոյ արքեպիսկոպոսը և Պաւերայի դուքսը առին ձեռքէն թէ որդին և թէ խնամակալութիւնը. թէպէտ իրենք ալ հարկադրեցան քիչ ատենէն իրենցմէ ճարտար մարդու մը խոնարհելու, որ էր Ատալպերթ անունով Պրեմայի արքեպիսկոպոսը: Անիկայ թագաւորին կիրքերը սնուցանելով բոլոր կառավարութիւնը ձեռք առաւ, ու սկսաւ բռնութիւններ

---

[1] Հենրիկոս երրորդին ով յաջորդեց:

ընել. եկեղեցական պաշտօնները որո՛ւն որ ուզէր սուղ սուղ կը ծախէր. վանքերու ստացուածքները կ'առնէր՝ իշխաններու և եպիսկոպոսներու կը բաժնէր. ետքը պատերազմ՛ ալ բանալ տուաւ Հենրիկոսին Սաքսոնիոյ դէմ, ու բոլոր ան երկիրը սոսկալի բարբարոսութիւններով ոտնակոխ ըրաւ: Բայց իրեն ալ պատիժը հասեր էր:

¹ Գրիգոր Է պապը իրեն հանճարովը, առաքինութեամբն ու քաջութեամբը պիտի ազատէր Եկեղեցին այնպիսի կայսերութեան մը ձեռքէն: Աս պապին առջի անունն էր Հիլտեպրանտ, ու պապ ըլլալէն առաջ ալ Հռոմայ քահանայապետներուն խորհրդական էր. 1073ին երբոր Աղեքսանդր Բ մեռաւ, Հռոմայեցիք զինքը ընտրեցին պապ, կայսրն ալ ան ընտրութիւնը հաստատեց, թէպէտ և ետքը զղջացաւ. վասն զի Գրիգոր պապը մէկէն սկսաւ միտք դնել թէ ինչ կերպով Եկեղեցւոյ հոգեւորական իշխանութիւնը աշխարհական բռնութենէն ազատ ընէ, և միանգամայն եկեղեցականաց բարքը շտկէ,

² Աս անուանի քահանայապետին իմաստուն կարգադրութիւններովը իրաւցընէ եկեղեցականք շատ շտկուեցան, ու ամենուն առաքինութեան օրինակ եղան: Ետքը ժողով մըն ալ ըրաւ Հռոմ՛ 1074ին, և անոր մէջ սիմոնականութիւնը դատապարտեց, ուրիշ ժողովով մըն ալ նզովք դրաւ ան աշխարհականաց վրայ որ եկեղեցականաց թոշակ կուտային, ինչպէս նաև թոշակը

---

¹ Գրիգոր Է պապը ինչպէս ընտրուեցաւ:
² Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ:

ընդունող եկեղեցականաց վրայ ։ Լատերանու ժողովոյն աս հռչակաւոր վճիռը կայսեր ալ խըրկեց , պատուիրելով որ սիմոնականութիւնը դադրեցընէ , ու եպիսկոպոսներուն մատանի ու գաւազան խրկելով իշխանութիւն տալէն ետ կենայ ։ Անանկով սկսաւ ժառանգաւորութեան կամ պաշտօնատրութեան կռիւը պապերուն ու կայսերականաց մէջ ։

1 Հենրիկոս ան ատենը Սաքսոնիացւոց դէմ պատերազմի զբաղած ըլլալով խօսք տուաւ որ հնազանդի պապին , բայց յաղթութենէն ետքը ամէն բան մոռցաւ ։ Երբոր պապը սաստիկ խօսքերով նորէն յիշեցուց իրեն խոստմունքը , կայսրը ժողովք ըրաւ եպիսկոպոսներով Վորմս քաղաքին մէջ , ու պապը իշխանութենէն ձգեց ․ Րոլանտոս անունով քահանայ մը կայսեր թուղթը քահանայապետին տարաւ , ու տեսաւ որ Գրիգոր Է իրեն կարդինալաց ժողովքին մէջ է՝ դարձաւ ըսաւ ժողովոյն . “ Իմ տէրս կայսրը կը հրամայէ ձեզի , որ իրեն քովը ժողվուիք նոր պապ ընտրելու համար , վասն զի ասիկայ քահանայապետ չէ , հապա գայլ է յափշտակիչ ” ։ Գրիգոր պապը աս նախատանաց պատասխան տալու տեղը՝ նզովեց կայսրը ու իշխանութենէն ձգեց ։

2 Միջին դարու ատենները նզովքը սոսկալի կերպերով կը հրատարակուէր ։ Նզովքին վճիռը գիշեր ատեն կը կարդային ու ետքը բոլոր ճրագները կը մարէին , իմացընել ուզելով թէ ասանկ

---

1 Հենրիկոս Դ ինչպէս վարուեցաւ պապին հետ ։
2 Նզովքը ինչ կերպով կը տրուէր ան ատենները ։

ալ նզովելոյն հոգևոր կեանքը կը մարի . մէկէն 'ի մէկ ամէն մարդ յանցաւորին քովէն կը փախչէր՝ (ինչպէս որ Գաղղիոյ Հռոբերտոս Թագաւորին վրայ տեսանք) իբրև թէ անիկայ բորոտութենէ կամ ժանտամահէ բռնուած ըլլար . երբոր նզովուած մարդը մտնէնար՝ եկեղեցիներուն զանգակները կը լռէին , եկեղեցական երգերը կը դադրէին , և թէ որ Թագաւոր կամ իշխան էր՝ հպատակները իրենց հաւատարմութեան պարտքէն ազատ կը մնային , ու բոլոր Թագաւորութեան մէջ ոչ պատարագ կ'ըլլար և ոչ աղօթք , միայն մեռելոց ու նոր ծնած տղոց համար աղօթք ընելու հրաման կար ։

[1] Հենրիկոսի նզովուիլը Գերմանիոյ մէջ իմացուելուն պէս՝ Սաքսոնիացիք նորէն ոտք ելան . իշխանները ժողվուեցան Տրիբուր քաղաքը ու իմաց տուին Թագաւորին որ եթէ ինչուան մէկ տարի նզովքը արձըկել չտայ , զինքը Թագաւոր չեն ճանչնար . սա այժմ պիտի երթաս ըսին Սփիրա բերդը պիտի քաշուիս ու հոն առանձնական կեանք մը պիտի անցընես՝ ամենևին հրապարակական գործողութեանց չխառնուելով . անկէց 'ի զատ խօսք դրին որ իշխանաց ժողով մը ըլլայ Աւկսպուրկ (Աւկուստա) քաղաքը , և պապը ան ժողովքին մէջ որոշէ յանցաւոր կայսեր վճիռը ։ Հենրիկոս ասոր որոշմունքներուն վրայ սարսափած՝ Իտալիա գնաց , և հետը միայն կինն ու որդին կային . ժամանակն ալ ձմեռ էր , տակաւին ոչ սաստիկ ցուրտը և ոչ ճամբուն դժուարութիւնները

---

1 Հենրիկոս Դ. ինչպէս արձըկուեցաւ նզովքէն ։

արգելք եղան իրեն. վասն զի Թագը վտանգի մէջ էր։ Գրիգոր Է որ Աւկապուրկ երթալու վրայ էր, Ճամբան Կանոսսա ըսուած բերդը կեցաւ Մաթիլտէ կոմսուհւոյն քով, որ հարուստ իշխանուհի մըն էր, ու միջին Իտալիոյ մէկ մեծ մասը իրենն էր։ Հոն իմացաւ պապն որ Հենրիկոս իր ոտքը եկեր է. առջի բերան չուզեց զանիկայ ընդունիլ. բայց ետքը Մաթիլտէի ու Քլիւնիի աբբային աղաչանքովը հրաման տուաւ որ բերդին դաւիթը կարենայ մտնել Հենրիկոս. իրեք օր հոն թողուց զինքը խեղճ վիճակի մը մէջ. վասն զի բրդէ վերարկու մը հագած էր, և ամենևին թագաւորական կերպարանք չունէր։ Բայց վերջապէս չորրորդ օրը պապը քովիններուն աղաչանքին չկարենալով դէմ կենալ, հրաման տուաւ որ Հենրիկոսը առջևը բերեն ու նզովքը արձկեց։

¹ Բայց կայսեր զղջումը սրտանց չէր. Թագաւորութիւնը կորսնցընելու վախուն համար միայն հնազանդեր էր։ Այնչափ անարգանացը վրայ բարկացած՝ Կանոսսայէն ելաւ ու պատերազմի պատրաստուեցաւ։ Իրենց կողմանէ գերմանացի պարոնները ալ Ռուտոլֆոս Սուապիացին թագաւոր ընտրեցին ու զէնքով անոր պաշտպան կենալու պատրաստուեցան։ Պապը նորէն Հենրիկոսը իշխանութենէն զրկեց. բայց անիկայ չյուսահատեցաւ։ Ռուտոլֆին հետ իրեք անգամ զարնուեցաւ, ու երրորդին Վոլսհէյմի քով Կոտֆրուա Պույլիոն (որ Կոնդոպրէ ալ կ'ըսուի և ետքը մեծ անուն հանած է), մահացու վէրք մը տուաւ Ռու-

---

¹ Ի՞նչ վրէժխնդրութիւն բրաւ պապին դէմ։

տոլֆուսին : Այն ատեն իշխանները Հերման անուանով Սուաբիացին դրին կայսր : Հենրիկոս իր նոր ոսոխին հետ պատերազմիլը յանձնեց Փրեդերիկոս Հոհէնշթաուէն իշխանին, մինչ Ալպեան լեռներէն անցաւ Իտալիա, Մաթիլտէ կոմսուհւոյն զօրքերը կոտրեց, ու գնաց Գրիգոր եօթներորդը Հռոմ սուրբ Հրեշտակապետաց ըսուած բերդին մէջ պաշարեց, կրնար ինչուան բռնել ալ պապը թէ որ Հռոբերտոս Կիսքար չվռնտէր իր Նորմանտացիներովը պաշարումը չվերցնէր : Քիչ ատենէն Գրիգոր պապը Սալեռնոյ քաշուեցաւ ու հոն մեռաւ սա նշանաւոր խօսքս ըսելով. " Արդարութիւնը սիրելուս ու անիրաւութիւնը ատելուս համար՝ աքսորանքի մէջ կը մեռնիմ (1085) ,, :

[1] Գրիգոր եօթներորդին յաջորդները Վիկտոր Գ. և Ուրբանոս Բ անոր ճամբան բռնեցին : Ուրբանոսի խորհրդովը Մաթիլտէ թագուհին կարգուեցաւ Վէլֆ Պաւերացւոյն որդւոյն հետ որ կայսեր ոսոխ թշնամիներէն մէկն էր : Ան բաւական չէր. իր Կոնրադոս որդին ալ Հենրիկոսի դէմ ելաւ, և կինը Պերթա երկանէն քաշած նախատանացը վրէժխնդրութիւն ընելու մտքով Իտալիա գնաց : Այս ամէն վտանգներուս ալ դիմացաւ Հենրիկոս Դ. Կոնրադոս հնազանդեցաւ իրեն, բայց անոր եղբայրը կրտսեր Հենրիկոսը քանի մը փառասէր իշխաններէ գրգռուած՝ ինքն ալ ելաւ հօրը դէմ ապստամբեցաւ՝ և երբոր Հենրիկոս ան հայրատեաց որդւոյն դէմ պատերազմելու կը պատ-

[1] Վիկտոր Գ և Ուրբանոս Բ պապերուն ատենը Ինչ ըրաւ Հենրիկոս : — Ինչ կերպով մեռաւ :

տրտմառուէր , իրենները յանկարծ Թողուցին բաժնուեցան քովէն : Այսպատամբ որդին կայսր պսակուեցաւ, Հենրիկոս Դ. աԹոռէն ձգուեցաւ, գնաց Պելճիայի Լիէժ քաղաքը քաշուեցաւ, և այնչափ խեղճուԹեան հասաւ կ'ըսեն՝ որ ինչուան աղաչեր է որ իր կանգնած եկեղեցւոյն գրակարդացուԹեան պաշտօնը իրեն տան . ան ալ չտուին ու անօԹուԹենէն մեռաւ : Թաղման հանդիսին ալ արժանի չեղաւ ան Թագաւորը՝ որ իրեք երկրի Թագաւոր եղած և վաԹսուն պատերազմ ըրեր էր :

[1] Հենրիկոս Ե հայրասպան կայսրն ալ սկսաւ հօրը ըրած պահանջմունքները ընել պապերէն (1106) : Հռոմ գնաց, Պասքալիս Բ պապը բռնեց և ստիպեց զանիկայ որ եպիսկոպոսական իշխանուԹիւն տալու իրաւունքը աշխարհական իշխանուԹեան այսինքն կայսեր ձեռքը Թողու : Բայց երբոր Կալիստոս Բ պապը ընտրուեցաւ՝ կայսեր դէմ նզովք հանեց . ան ալ իր նախորդին խեղճ վախճանը մտածելով հպատակեցաւ Վորմսի ժողովոյն (1122), ու յանձն առաւ Եկեղեցւոյ բանը Եկեղեցւոյն դարձընել : Որոշուեցաւ որ Թագաւորը չկարենայ գաւազան ու մատնի տալով եպիսկոպոս ընել մէկը, միայն իրաւունք ունենայ իբրև Թագաւոր՝ եկեղեցական Թոշակ կապել ուրիշի : Ասանկով Վորմսի դաշնակցուԹեամբը Եկեղեցւոյ իշխանուԹիւնը ազատեցաւ, ու Գրիգոր Է պապին փափաքը կատարուեցաւ :

---

[1] Հենրիկոս Ե ինչ կերպով ըրաւ կայսերուԹիւնը : — ՊաշտօնատուուԹեան կռիւը ինչպէս վերջացաւ :

1 ՍԼԱՒՈՆԱՆ ՑԵՂՈՒԹԻՒՆՔ։ — Ռուսիա կամ Ռուսաստան։ Շուետի Ռուս-Լակէն անունով գաւառին բնակիչները Ռուս կամ Վարեակ ըսուած Նորմանտացւոց պէս լաւագոյն երկիրներ փնտռելով, գնացին դէպ 'ի Սարմատիա կամ Սլաւոնիա ըսուած երկիրը, ուր այն ատենը շատ մը ինքնագլուխ ցեղեր կը բնակէին, ու երևելիներն էին հիւսիսային կողմը Չուտք, և հարաւային կողմը Խազախք և Փեչենեկք ըսուածները (859)։ Մէյմը ետ քշուեցան, բայց ետքը նորէն եկան Րիւրիք, Չինաւ ու Թրուվոր եղբարց առաջնորդութեամբը, և Իլմէն լճին քով բնակութիւններին հաստատեցին։ Րիւրիքին եղբայրները երբոր մեռան, ինքը մինակ ձեռք առաւ իշխանութիւնը. Սլաւեանց հետ պատերազմեցաւ, անոնց Վատիմ իշխանը սպաննեց ու հռչակաւոր Նովկորոտ քաղաքին տիրեց։ Ան ատենը տիրած երկիրները իր զինուորակցացը մէջ բաժնեց, որ պօյար կամ ազնուական ըսուեցան, և Սլաւ անուան տեղը Ռուս անունը դրաւ իրեններուն։

2 Րիւրիք մեռնելու ատենը (879) իր Իկոր որդւոյն խնամակալ դրեր էր Օլեկ անունով ազգականը։ Անիկայ գնաց Քիեվ քաղաքին տիրեց ու իրեն մայրաքաղաք ըրաւ։ Անկէց ետքը սկսան Ռուսք ասդին անդին արշաւանքներ ընել. տասը հազար նաւակ զինեցին, Տնեբեր գետէն Սև ծովը

1 Ռուսաց ազգին ծագումը ուսկի՞ց է։ — Ո՞վ է իրենց առաջին իշխանը։

2 Րիւրիքին ո՞վ յաջորդեց։

իջան, և ութսուն հազար հոգւով Կոստանդնուպօլսոյ պարիսպներուն քով հասան:

Լեւոն իմաստասէր կայսրը անոնցմէ սարսափած՝ տուրք խոստանալով հաշտութիւն ըրաւ հետերնին. ինքը Լեւոն հաւատարմութեան համար սուրբ խաչին վրայ երդում ըրաւ, Ռուսներն ալ իրենց Թուրերուն, և Փեռունին ու Վոլոս անունով աստուածներուն վրայ: Ետքը Օլեկ և իր իշխանները Բիւզանդիոյ դռներուն վրայ վահաննին կախեցին ու անթիւ աւարով ետ դարձան:

[1] Օլեկի մեռնելէն ետքը Իկոր Փեչենեկ ու Տրեվլեան ըսուած ժողովրդոց հետ պատերազմեցաւ, անոնց յաղթեց, և աշխարհակալութեան հոգւով վառուած՝ Օլեկին պէս տասնհազար նաւակ պատրաստեց ու ամէն մեկուն մէջ քառասուն հոգի դրած՝ Յունաց վրայ գնաց: Ճամբան Պափղագոնիոյ, Բիւթանիոյ և Պոնտոսի գաւառները այրելով ապականելով հասաւ մինչեւ Վոսփորոս: Ան ատենը Յոյնք որ անկէց առաջ ընդունած նախատինքնին չէին մոռցած՝ ամէն տեղէ զօրք ժողվեցին, յարձակեցան Ռուսաց վրայ ու անոնց նաւակները հալածեցին: Թէոփանէս պատրիկն ալ շատ մը նաւերով վրայ հասաւ, ու յունական կրակով մեծ ջարդ տուաւ Ռուսաց, այնպէս որ Իկոր հազիւ բանակին չորս մասին մէկովը կրցաւ Քիեվ դառնալ: Երբոր նորէն կը պատրաստուէր Յունաց վրայ յարձըկելու, Կոստանդին Պերփեռուժէն խաղաղասէր կայսրը հետը հաշտութիւն ըրաւ: Իկորին որդին Սվեաթոսլաւ

---

[1] Իկոր ինչ արշաւանք ըրաւ:

945ին յաջորդեց անոր, և հօրը պէս տէրութեան սահմանները ընդարձակեց, բայց տէրութիւնը որդւոցը մէջ բաժնելով ներքին մեծամեծ խռովութեանց պատճառ եղաւ. վասն զի Եարոփոլք իր Օլեկ եղբայրը սպաննեց, Վլատիմիրն ալ զանիկայ մեռուց ու ինքը բոլոր Ռուսիոյ տէր եղաւ (980)։

¹ Այս Թագաւորը, որ Ռուսները մեծին Կարոլոսի կը նմանցընեն, քանի մը բանի կողմանէ իրաւցընէ արժանի է այսպիսի անուան։ Իբրև աշխարհակալ՝ Կարմիր Ռուսիան կամ Կալիցիան նուաճեց, Բուլղարները հարկատու ըրաւ, Լեհաց Մսթիսլաւ Ա Թագաւորին յաղթեց, ու Կոստանդնուպօլսոյ Յոյները սարսափեցուց. և իբրև օրէնսդիր՝ կռապաշտութիւնը իր տէրութենէն ջնջեց։ Ռուսաց Արամազդը կամ Դիոսը Փէրուն կ՚ըսուէր, և ասոր արձանը շատ այլանդակ բան էր՝ Քիեվի հրապարակին մէջ սիւնի մը վրայ դրուած. մարմինը փայտէ էր և գլուխը արծըթէ՝ ոսկի ընչացքներով. ձեռքէն կայծակներ կը թափէին, ոտքին տակն ալ մշտավառ կրակ մը կար՝ որուն մէջ անդադար կենդանի կամ մարդ կը զոհէին։ Վլատիմիր ան սոսկալի հաւատքին տեղը ուրիշ մը ընտրել ուզելով՝ հաւատք քարոզողներ ուզեց իրեք ազգէ. Նախ Բուլղարներուն խրկածները պատմեցին իրեն Մահմետին խոստացած արքայութեանը զուարճութիւնները. բայց անոր վարդապետութիւնը մերժուեցաւ։ Ետքը եկան Հրեայք՝ որ ըսին թէ մէկ Աստուած միայն կայ, միանգա-

---

¹ Վլատիմիր ինչ մեծագործութիւններ ըրաւ։ — Ի՞նչ կերպով քրիստոնեայ եղաւ։

միայն աս ալ ըսին թէ մենք պատժոյ համար բոլոր աշխարհս ցրուած ենք. «Հայրենիք մը կ'ուզեմ ես» ըսաւ Վլատիմիր, ու Հրեայքն ալ Ճամբեց։ Ամենէն ետքը եկան Յոյնք, որ հին և նոր կտակարանի պատմութիւնը պատմեցին, արքայութիւնն ու դժոխքը նկարագրեցին և Վլատիմիրին քրիստոնեայ ըլլալուն փոխարէն արքայութեան փառքը խոստացան։ Վլատիմիր սիրեց ան կրօնքը և խնդրեց Վասիլ կայսրէն որ իր Աննա քոյրը իրեն կնութեան տայ. տանելով բոլոր Ռուսաց ազգը կռապաշտութենէն դարձան քրիստոնեայ եղան (988)։

[1] Ան ատեն Ռուսիոյ մէջ դպրոցներ բացուեցան, թէպէտ և առջի բերան մայրերը չէին ուզեր զաւակնին դպրոց խրկել. վասն զի խեղճերը ագիտութեամբ մտքերնին դրեր էին թէ հոն իրենց զաւկըները պիտի սպաննուին, և գրել կարդալը կախարդութիւն կը սեպէին։ Վլատիմիր՝ որ կռապաշտութեան ատեն այնչափ անգութ ու կատաղի էր, քրիստոնեայ դառնալէն ետքը այնչափ հեզ ու գթասիրտ եղաւ որ ինքզինքը ամէն հպատակներէն աւելի մեղաւոր սեպելով՝ ինչուան աւազակներուն ալ չէր ուզեր պատժել. «Ես ո՞վ եմ որ մարդ մեռցընել տամ» կ'ըսէր, ու Քիեվի արդարասէր և առաքինի մետրապօլիտին կը խաւրէր որ անոնց դատաստանը կտրէ։

[2] Վլատիմիրի մահուընէն ետքը (1015) շատ շփոթութեան մէջ ինկաւ Ռուսաստան։ Աս

---

1 Վլատիմիր քրիստոնեայ ըլլալէն ետքը ի՞նչ ըրաւ։
2 Ո՞վ յաջորդեց Վլատիմիրին։

իշխանը տասուերկու որդիք թողեր էր, անոնք քսան տարի հայրենական ժառանգութեան վրայ կռուեցան: Վերջապէս Ճարոսլաւ Ա յաղթեց ու իրեք կարգ բաժնեց ազգը. առաջին կարգին մէջ էին պոյարները կամ ազնուականները որ տէրութեան գլխաւոր պաշտօնատարքն էին. երկրորդին մէջ զինուորները, վաճառականք և ազատ երկրագործք, երրորդ կարգին մէջ ալ ստրուկները: Աստուածաշունչը յունարէնէ Սլաւեանց լեզուովը թարգմանել տուաւ. օրինաց գիրք մըն ալ հրատարակեց Իրաւունք Ռուսաց ըսուած: Շատ մը յոյն գործաւորներ բերել տուաւ Ռուսաստան, քաղաքներ շինեց, վանքերը շատցուց, երկրագործութիւնն ու գիտութիւնները ծաղկեցուց, և ինքը մեռաւ 1054ին:

[1] ԼԵՀԱՍՏԱՆ: — Լեհաստան իններորդ դարուն մէջտեղուանքը սկսաւ անուանի ըլլալ: Փիասթ անունով մէկը որ գեղացիի մը որդի էր՝ իր խելքովը մեծ անուն հանեց 840ին, և արժանի սեպուեցաւ Լեհաստանի դուքս ընտրուելու. իր յաջորդներն ալ հինգ հարիւր տարիէ աւելի այն իշխանութեանը մէջ մնացին: Ասոնց մէջ գլխաւորներն են Միեցիսլաւ, որ իր կնոջը ձեռքովը բոլոր ազգին հետ քրիստոնեայ եղաւ. Պոլեսլաւ Ա (992), որ թագաւոր ըսուեցաւ, ու մատնութեամբ տիրեց Պոհեմիոյ, թէպէտ ետքը պէտք եղաւ որ ան երկիրը Հենրիկոս Բ կայսեր դարձը-

---

[1] Լեհաստան երբ և ի՞նչ կերպով սկսաւ պայծառանալ:

նէ ։ Կազիմիր, որ քաղաքական խռովութիւններէ փախչելով Գաղղիա քաշուեր էր Քլիւնիի վանքը, և Բենեդիկտոս Թ պապը ստիպեց զինքն որ ելլէ անկէց իր երկիրը դառնայ ու տէրութիւնը խաղաղէ. Բոլեսլաւ Բ որ Քրաքովիոյ սուրբ Ստանիսլաւ եպիսկոպոսը եկեղեցւոյ մէջ սպաննել տալուն համար՝ Գրիգոր Է պապէն բանադրուեցաւ (1058)։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Պատմութիւն Սպանիոյ մահմետական ու քրիստոնեայ թագաւորներուն՝ Իսմայելեանց սկիզբէն ինչուան Ալփոնսոս Զ. (757-1076)։ Իսմայելեանց Սպանիոյ տիրելը. — Կորդովայի ամիրապետութիւնը. — Աբդրահման Ա. — Պելագիոս և իր յաջորդները. — Օվիէտոյի և Լէոնի թագաւորութիւնը. — Հիշամ Ա. — Էլհաքեմ. — Նաւառրայի թագաւորութիւնը. — Փրանկօֆինեթի գաղթականները. — Մեծն Աբդրահման Գ. — Ըրած յաղթութիւնները. — Շէնքերը. — Մահը. — Էլհաքեմ Բ. — Սպանիոյ մէջ ըրած բարէկարգութիւնները. — Էլմանսուր. — Արաբացւոց անիշխանութիւն. — Կաստիլիոյ և Արագոնի թագաւորութիւնները։

[1] Այն ատենն որ արևելք Աբբասեանց ցեղը զօրացաւ և Ումմեանցը վերջացաւ, ասոնցմէ մէկը որ Աբդուրահման կ'ըսուէր, Աֆրիկէի անապատներէն փախչելով ինչուան Սպանիա հասաւ (786)։ Անիկայ Էպուսէֆեանին վերջի յաջորդը ըլլալով

---

[1] Ումմեանք ինչ կերպով տիրեցին Սպանիոյ ։

փառաւոր տէրութիւն մը հիմնեց Սպանիոյ մէջ. և այս տէրութեանը յիշատակ՝ ինչուան հիմա կեցած են այն գեղեցիկ ու հոյակապ ճարտարապետութեամբ շինուած շէնքերու աւերակները : Ըն տանիները Սպանիա շատ ծաղկեցաւ . լեռները գեղերով լեցուեցան , դաշտերը բարեբեր ագարակներով զարդարուեցան , երկրին բնակիչները շատցան , քաղաքները հարստացան , արուեստներն ու գիտութիւնները զարգացան : Մալակիա քաղաքը շատ մեծ վաճառականութիւն կ'ընէր Աֆրիկէի հետ . Սեւիլիայի մէջ վեց հազար գործարան կար մետաքսի . Թոլետօյ , որ Գոթացւոց հին մայրաքաղաքն էր , երկու հարիւր հազար բնակիչ ունէր , նոյնչափ էին նաև Պասսա քաղաքին բնակիչները : Բայց ասոնց մէջ ամենէն երևելին Կորդուբա կամ Քորտովա քաղաքն էր . որ երկու հարիւր ութսուն հազար տուն և վաթսուն հազար պալատ ունէր մէջը :

[1] Աբդուրահման Ա. երեսունուերկու տարի թագաւորեց և բոլոր այն ժամանակին մէջ նայեցաւ որ կուսակալաց ապստամբութիւնները նուաճէ , և Պաղտատի ամիրապետներուն թող չտայ որ նորէն Սպանիա անցնին : Ասանկով թէ մեծութեամբ և թէ իմաստութեամբ իրեն տէրութիւնը հաստատեց . քրիստոնէից հետ քաղցրութեամբ կը վարուէր , վրանին դրած տուրքն ալ արդար ու կանոնաւոր էր : Ասոր իշխանութեան ատենը Մեծն Կարոլոս այլևայլ էմիրներէ յորդորուելով գնաց

---

[1] Աբդուրահման Ա. որչափ ժամանակ թագաւորեց, և ինչ կերպով ըրաւ թագաւորութիւնը :

Էբրոս գետին ու Պիրենեան լեռներուն մէջ տեղը եղած գաւառներուն տիրեց, Սպանիոյ մարզիզութիւնները հաստատեց, ու անոնց վրայ իշխան դրաւ Փամփէլոնայի ու Խաքայի կոմսերը, որ ետքը ատոնք Նաւարրայի ու Արագոնի թագաւորութիւնները հաստատեցին (777)։

[1] Մահուընէն քիչ մը առաջ աս ամիրապետը քրիստոնէից դէմ պատերազմ հրատարակեց. վասն զի Պեղագիոս իր ընկերներովը Աստուրիոյ լեռները քաշուած՝ սպանիական ազատութեան պաշտպան կը կենար։ Անոր յաջորդը Ֆաւիլա երկու տարի թագաւորելէն ետքը՝ աթոռը Ալփոնսոսի թողուց որ Կաթողիկէ ըսուեցաւ (737)։ Ասիկայ Աբբասեանց և Իւմմեանց կռիւը աղէկ առիթ սեպեց, ու գնաց Կալիցիայի ու Նաւարրայի շատ երկրէն տեղերուն տիրեց։ Անոր որդին Ֆրոյիլա տիրեց Ալաւա քաղաքին, Օվիէտոյ քաղաքը շինեց ու թագաւորական աթոռը հոն դրաւ։ Անոր տէրութիւնները թէպէտև մեծնալու վրայ էին, բայց իրենց տկարութիւնը ճանչնալով Մեծին Կարոլոսի պաշտպանութեան տակը մտան։

[2] Քորտովայի Արաբացիներուն վրայ 788էն 'ի վեր կը թագաւորէր Հէշամ Ա., որ իր կառավարութեանը հինգերորդ տարին Մեծին Կարոլոսի ըրած արշաւանացը վրէժը հանեց։ Հէշամին զօրավարը Ապտուլլահ մտաւ Սեպտիմանիա և շատ քաղաքներ կողոպտեց։ Ակուիտանիոյ դուքսը Գ.ու-

---

1 Քրիստոնէից դէմ ինչ պատերազմ ըրաւ։
2 Քորտովայի թագաւորը ով էր և ինչ կը պատմուի վրան։

ընելմոս յաղթեց անոր․ բայց չկրցաւ աւարն ալ ձեռքէն առնուլ։ Այնչափ շատ էր աւարը որ անով Քորտովայի մեծ մզկիթը շինեցին։ Աս մզկիթը աշխարհիս մեծագործ շէնքերէն մէկն է, երկու հարիւր մեթր երկայնութիւն և ութսունութեկու մեթր լայնութիւն ունէր․ հազար իննըսունուերեք սիւնի վրայ կեցած էր, և գիշերը չորս հազար եօթը հարիւր կանթեղ կը վառուէր մէջը։ Նոյնպիսի մեծագործութեամբ կը ջանար Հէշամ Պաղտատու Հարուն-էլ-Ռաշիտէն վեր անցնիլ՝ որ իրեն ժամանակակից էր․ անոր պէս ալ ամէն տեղէ գիտուն մարդիկ կը կանչէր քովը, գիտութիւնները կը ծաղկեցընէր, դպրոցներ կը բանար և կ'ուզէր որ քրիստոնեից տղաքն ալ հոն երթան արաբերէն սորվին։

[1] Երբոր Իշհաքիմ Ա․ ձեռք առաւ տէրութեան կառավարութիւնը (799), Սպանիոյ մէջ երեք անհաւասար իշխանութիւններ կային․ հիւսիսային կողմը՝ Եբրոս գետին մարզիզութիւնները՝ Փրանկաց Թագաւորին իշխանութեանը տակ․ արևելեան հիւսիսային գին՝ Օվիէտոյի իշխանութիւնը, ուր Ալփոնսոս Բ Թագաւորը դեռ նոր գտեր էր սրբոյն Յակոբայ մարմինը ու անոր համար Կոմպոստելա քաղաքը շիներ էր, որ ետքը հռչակաւոր ուխտատեղի եղաւ․ հարաւային կողմն ալ արաբացի ամիրապետը տիրած էր։ Սպանիոյ հիւսիսային կողմը բնակող քրիստոնեայք միայն չէին Իւմմեանց թշնամիները․ այլևայլ քաղաքներ ու իշխաններն ալ կամ Աբբասեանց վրայ աւելի սէր

---

1 Իշհաքիմին ատենը Սպանիա ի՞նչ վիճակի մէջ էր։

մը ունենալով, և կամ ազատասիրութեան հոգւով՝ խռովութիւններ կը հանէին, շատ անգամ ալ տէրերնին ներս կը կանչէին: Ասանկով Իւլհաքիմ Պարսելոնա քաղաքը ու Բալէարեան կղզիները ձեռքէ հանեց, ու այնչափ ունեցած զօրքովը ու բազմաթիւ նաւերովը ալ չկրցաւ նորէն առնուլ: Ինչուան տէրութեան մէջտեղուանքն ալ ապստամբութիւններ ելան. Քորտովայի արուարձաններէն մէկուն բնակիչներուն որ ապստամբեցան, ամիրապետը երեք հարիւր հոգի ցից հանել տուաւ, հազար հինգ հարիւր հոգի ալ Ափրիկէ փոխադրեց, որ գնացին հոն սկսան աւազակութիւն ընել և Անտալուս ըսուեցան (818):

[1] Երբոր այսպիսի աղէտալի դիպուածներով Արաբացւոց իշխանութիւնը իյնալու վրայ էր, Իւլհաքիմին գազանամիտ որդին Աբտըռահման Բ հօրը տեղը անցաւ (822). ասիկայ կուսակալաց անհնազանդութիւնը ու զօրացը յաղթութիւնը տեսնելով՝ որուն բարկութիւնը տէրութեան մէջ եղած քրիստոնէից վրայ թափեց ու վրանին սոսկալի հալածանք հանեց: Այն միջոցին նորէն եկան Նորմանտացիք ու սկսան Լիզպոնա, Քատիս ու Սեւիլլիա քաղաքները կողոպտել: Սակայն թագաւորութեան վերջի տարիները քանի մը յաջողութիւններ ունեցաւ Աբտըռահման. Օվիէտոյի Օրտոնիոյ թագաւորին յաղթեց, ու Փրանկաց ձեռքէն Պարսելոնա քաղաքն առաւ (852):

---

[1] Իւլհաքիմին ո՞վ յաջորդեց:

1 Այն տարիները դիպուած մըն ալ պատահեցաւ որ ետքը քրիստոնէից զօրանալուն մեծ պատճառ պիտի ըլլար : Նաւարրայի կոմսը Ազնար՝ Մեծին Կարոլոսի յաջորդէն գլուխ քաշեց . իր յաջորդն ալ Կարսիա Քսիմենէս՝ Թագաւորի անուն առաւ ու աթոռը Փամփիլոնա քաղաքին մէջ հաստատեց (857) . ասով ամիրապետին նոր թշնամի մը աւելցաւ :

2 Ապտըռահման երկրորդին Մէհէմմէտ որդին քրիստոնէիցմէ ու Նորմանտացւոցմէ յաղթուելով՝ չկրցաւ արգիլել որ Օվիէտոյի Թագաւորը Մեծն Ալֆոնսոս Քոյիմպրայի չառնէ ու ինչուան Լուսիտանիա չհասնի : Իր երկու որդիքն ալ Նաւարրայի Սանչոյ Ա Թագաւորէն շատ անգամ յաղթուեցան : Սակայն ան միջոցին Սարակինոսներէն քանի հոգի նաւակով մը Սպանիայէն Գաղղիոյ Փռովանս գաւառը անցան ու Ֆրաքսինէթ գեղին տիրեցին : Աս գեղը անմատչելի դիրք մը ունենալով՝ ութսունուերկու տարի ձեռքերնին մնաց, ետքը ելան անկէց՝ Հռոդանոս ու Փոյ գետերուն քովերը Պուրկոյն գաւառը, ու ինչուան Սուասլիոյ մէջտեղուանքը ցրուեցան : Բոլոր Ալպեանց տէրեր էին 906ին տարիները, և սրբոյն Մաւրիտիանոսի անուն վանքին մէջ կը կենային . Գաղղիայէն Իտալիա անցնելու ճամբաները բռներ էին, և Հռոմ երթալու ուզող ուխտաւորները

---

1 Փամփիլոնայի Թագաւորութեան սկիզբն ինչպէս եղաւ :

2 Այն տարիները ինչ երեւելի արշաւանք ըրին Արաբացիք :

իշխան, և ութսուն հազար հոգւով Կոստանդնուպօլսոյ պարիսպներուն քով հասան։

Լևոն իմաստասէր կայսրը անոնցմէ սարսափած՝ տուրք խոստանալով հաշտութիւն ըրաւ հետերնին. ինքը Լևոն հաւատարմութեան համար սուրբ խաչին վրայ երդում ըրաւ, Ռուսներն ալ իրենց Թուրերուն, և Փեռունին ու Վոլոս աստուածներուն վրայ։ Ետքը Օլէկ և իր իշխանները Բիւզանդիոյ դռներուն վրայ վահաննին կախեցին ու անթիւ աւարով ետ դարձան։

[1] Օլէկի մեռնելէն ետքը Իկոր Փեչէնէկ ու Տրեվլեան ըսուած ժողովրդոց հետ պատերազմեցաւ, անոնց յաղթեց, և աշխարհակալութեան հոգւով վառուած՝ Օլէկին պէս տասը հազար նաւակ պատրաստեց ու ամէն մէկուն մէջ քառասուն հոգի դրած՝ Յունաց վրայ գնաց։ Ճամբան Պափղագոնիոյ, Բիւթանիոյ և Պոնտոսի գաւառները այրելով ապականելով հասաւ մինչև Վոսփորոս։ Ան ատենը Յոյնք որ անկեց առաջ ընդունած նախատինքնին չէին մոռցած՝ ամէն տեղէ զօրք ժողվեցին, յարձակեցան Ռուսաց վրայ ու անոնց նաւակները հալածեցին։ Թէոփանէս պատրիկն ալ շատ մը նաւերով վրայ հասաւ, ու յունական կրակով մեծ ջարդ տուաւ Ռուսաց, այնպէս որ Իկոր հազիւ բանակին չորս մասին մէկովը կրցաւ Քիեվ դառնալ։ Երբոր նորէն կը պատրաստուէր Յունաց վրայ յարձակելու, Կոստանդին Պերփիւռուժէն խաղաղասէր կայսրը հետը հաշտութիւն ըրաւ։ Իկորին որդին Սվեաթօսլաւ

---

[1] Իկոր ինչ արշաւանք ըրաւ։

945ին յաղթորդեց անոր, և հօրը պէս տէրութեան սահմանները ընդարձակեց, բայց տէրութիւնը որդւոցը մէջ բաժնելովն իրենց մեծամեծ խռովութեանց պատճառ եղաւ. վասն զի Եարոփոլք իր Օլեկ եղբայրը սպաննեց, Վլատիմիրն ալ զանիկայ մեռուց ու ինքը բոլոր Ռուսիոյ տէր եղաւ (980)։

1 Աս Թագաւորը, որ Ռուսները մեծին Կարոլոսի կը նմանցընեն, քանի մը բանի կողմանէ իրաւցընէ արժանի է այսպիսի անուան։ Իբրև աշխարհակալ՝ Կարմիր Ռուսիան կամ Կալիցիան նուաճեց. Բուլղարները հարկատու ըրաւ, Լեհաց Մ՚սթիսլաւ Ա Թագաւորին յաղթեց, ու Կոստանդնուպօլսոյ Յոյները սարսափեցուց. և իբրև օրէնսգիր՝ կռապաշտութիւնը իր տէրութենէն ջնջեց։ Ռուսաց Արամազդը կամ Դիոսը Փէռուն կ'ըսուէր, և ասոր արձանը շատ այլանդակ բան էր՝ Քիեվի հրապարակին մէջ սիւնի մը վրայ դրուած. մարմինը փայտէ էր և գլուխը արծըթէ՝ ոսկի ընչացքներով. ձեռքէն կայծակներ կը թափէին, ոտքին տակն ալ մշտավառ կրակ մը կար՝ որուն մէջ անդադար կենդանի կամ մարդ կը զոհէին։ Վլատիմիր ան սոսկալի հաւատքին տեղը ուրիշ մը ընտրել ուզելով՝ հաւատք քարոզողներ ուզեց իրեք ազգէ. նախ Բուլղարներուն խրկածները պատմեցին իրեն Մահմետին խոստացած արքայութեանը զուարճութիւնները. բայց անոր վարդապետութիւնը մերժուեցաւ։ Ետքը եկան Հրեայք՝ որ ըսին թէ մէկ Աստուած միայն կայ, միանգա-

---

1 Վլատիմիր ի՞նչ մեծագործութիւններ ըրաւ։ — Ի՞նչ կերպով քրիստոնեայ եղաւ։

մայն սա ալ ըսէին թէ մենք պատժոյ համար բոլոր աշխարհս ցրուած ենք. « Հայրենիք մը կ՚ուզեմ ես » ըսաւ Վլատիմիր, ու Հրեայքն ալ ճամբեց: Ամենէն ետքը եկան Յոյնք, որ հին և նոր կտակարանի պատմութիւնը պատմեցին, արքայութիւնն ու դժոխքը նկարագրեցին և Վլատիմիրին քրիստոնեայ ըլլալուն փոխարէն արքայութեան փառքը խոստացան: Վլատիմիր սիրեց ան կրօնքը և խնդրեց Վասիլ կայսրէն որ իր Աննա քոյրը իրեն կնութեան տայ. սանկով բոլոր Ռուսաց ազգը կռապաշտութենէն դարձան քրիստոնեայ եղան (988):

[1] Ան ատեն Ռուսիոյ մէջ դպրոցներ բացուեցան, թէպէտ և առջի բերան մայրերը չէին ուզեր զաւակնին դպրոց խրկել. վասն զի խեղճերը տգիտութեամբ մտքերնին դրեր էին թէ հոն իրենց զաւկըները պիտի սպաննուին, և գրել կարդալը կախարդութիւն կը սեպէին: Վլատիմիր՝ որ կռապաշտութեան ատեն այնչափ անգութ ու կատաղի էր, քրիստոնեայ դառնալէն ետքը այնչափ հեզ ու գթասիրտ եղաւ որ ինքզինքը ամէն հպատակներէն աւելի մեղաւոր սեպելով՝ ինչուան աւազակներն ալ չէր ուզեր պատժել. « Ես ո՞վ եմ որ մարդ մեռցընել տամ » կ՚ըսէր, ու Քիեվի արդարասէր և առաքինի մետրապոլիտին կը խաւրէր որ անոնց դատաստանը կտրէ:

[2] Վլատիմիրի մահուընէն ետքը (1015) շատ շփոթութեան մէջ ինկաւ Ռուսաստան: Աս

---

1 Վլատիմիր քրիստոնեայ ըլլալէն ետքը ի՞նչ ըրաւ:
2 Ո՞վ յաջորդեց Վլատիմիրին:

իշխանը տասուերկու որդիք թողեր էր, անոնք քսան տարի հայրենական ժառանգութեան վրայ կռուեցան: Վերջապէս Ճարոսլաւ Ա. յաղթեց ու իրեք կարգ բաժնեց ազգը. առաջին կարգին մէջ էին պոյարները կամ ազնուականները որ տէրութեան գլխաւոր պաշտօնատարքն էին. երկրորդին մէջ զինուորները, վաճառականք և ազատ երկրագործք, երրորդ կարգին մէջ ալ ստրուկները: Աստուածաշունչը յունարէնէ Սլաւեանց լեզուով թարգմանել տուաւ. օրինաց գիրք մըն ալ հրատարակեց Իրաւունք Ռուսաց ըսուած: Շատ մը յոյն գործաւորներ բերել տուաւ Ռուսաստան, քաղաքներ շինեց, վանքերը շատցուց, երկրագործութիւնն ու գիտութիւնները ծաղկեցուց, և ինքը մեռաւ 1054ին:

1 ԼԵՀԱՍՏԱՆ: — Լեհաստան իններորդ դարուն մէջտեղուանքը սկսաւ անուանի ըլլալ: Փիասթ անունով մէկը որ գեղացիի մը որդի էր՝ իր խելքովը մեծ անուն հանեց 840ին, և արժանի սեպուեցաւ Լեհաստանի դուքս ընտրուելու. իր յաջորդներն ալ հինգ հարիւր տարիէ աւելի այն իշխանութեանը մէջ մնացին: Ասոնց մէջ գլխաւորներն են Միեչիսլաւ, որ իր կնոջը ձեռքովը բոլոր ազգին հետ քրիստոնեայ եղաւ. Պոլեսլաւ Ա. (992), որ Թագաւոր ըսուեցաւ, ու մասնութեամբ տիրեց Պոհեմիոյ, թէպէտ ետքը պէտք եղաւ որ ան երկիրը Հենրիկոս Բ կայսեր դարձը-

---

1 Լեհաստան ե՞րբ և ի՞նչ կերպով սկսաւ պայծառանալ:

նէ ։ Կազիմիր, որ քաղաքական խռովութիւններէ փախչելով Գաղղիա քաշուեր էր Կլիւնիի վանքը, և Բենեդիկտոս Թ. պապը ստիպեց զինքն որ ելլէ անկէց իր երկիրը դառնայ ու տէրութիւնը խաղաղէ. Պոլեսլաւ Բ. որ Կրաքովիոյ սուրբ Ստանիսլաւ եպիսկոպոսը եկեղեցւոյ մէջ սպաննել տալուն համար՝ Գրիգոր Է. պապէն բանադրուեցաւ (1058)։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Պատմութիւն Սպանիոյ մահմետական ու քրիստոնեայ թագաւորներուն՝ Իսմայելեանց ելքէն ինչուան Ալֆոնսոս Զ. (757–1076)։ Իսմայելեանց Սպանիոյ տիրելը. — Կորդովայի ամիրապետութիւնը. — Աբդրահման Ա. — Պելագիոս և իր յաջորդները. — Օվիեդոյի և Լէոնի թագաւորութիւնը. — Հեշամ Ա. — Էլհաքէմ. — Նաւառրայի թագաւորութիւնը. — Ֆրանքօնեէնի գաղթականները. — Մեծն Աբդրահման Գ. — Ըրած յաղթութիւնները. — Շէնքերը. — Մահը. — Էլհաքէմ Բ. — Սպանիոյ մէջ ըրած բարեկարգութիւնները. — Էլմանսուր. — Արաբացւոց անիշխանութիւն. — Կաստիլիոյ և Արագոնի թագաւորութիւնները ։

[1] Այն ատենն որ արևելք Աբբասեանց ցեղը զօրացաւ և Իւմմեանցը վերջացաւ, անոնցմէ մէկը որ Աբդրահման կ՚ըսուէր, Աֆրիկէի անապատներէն փախչելով ինչուան Սպանիա հասաւ (786)։ Անիկայ Էպուսէֆեանին վերջին յաջորդը ըլլալով

---

[1] Իւմմեանք ինչ կերպով տիրեցին Սպանիոյ ։

փառաւոր տէրութիւն մը հիմնեց Սպանիոյ մէջ, և այս տէրութեանը յիշատակ՝ ինչուան հիմա կեցած են ան գեղեցիկ ու հոյակապ ճարտարապետութեամբ շինուած շէնքերու աւերակները ։ Ան ատենները Սպանիա շատ ծաղկեցաւ. լեռները գեղերով լեցուեցան, դաշտերը բարեբեր ագարակներով զարդարուեցան, երկրին բնակիչները շատցան, քաղաքները հարստացան, արուեստներն ու գիտութիւնները զարգացան ։ Մ՚ալակա քաղաքը շատ մեծ վաճառականութիւն կ՚ընէր Աֆրիկէի հետ. Սեւիլիայի մէջ վեց հազար գործարան կար մետաքսի. Թոլետոյ, որ Գոթացւոց հին մայրաքաղաքն էր, երկու հարիւր հազար բնակիչ ունէր, նոյնչափ էին նաև Պասսա քաղաքին բնակիչները ։ Բայց ասոնց մէջ ամենէն երևելին Կորդուբա կամ Քորտովա քաղաքն էր. որ երկու հարիւր ութսուն հազար տուն և վաթսուն հազար պալատ ունէր մէջը ։

[1] Աբդուռահման Ա. երեսուն երկու տարի թագաւորեց և թողուց ան ժամանակին մէջ նայեցաւ որ հաւատակալաց ապստամբութիւնները նուաճէ, և Պաղտատի ամիրապետներուն թող չտայ որ նորէն Սպանիա անցնին ։ Ասանկով թէ մեծութեամբ և թէ իմաստութեամբ իրեն տէրութիւնը հաստատեց. քրիստոնէից հետ քաղցրութեամբ կը վարուէր, վրանին դրած տուրքն ալ արդար ու կանոնաւոր էր ։ Ասոր իշխանութեան ատենը Մեծն Կարոլոս այլևայլ էմիրներէ յորդորուելով գնաց

---

1 Աբդուռահման Ա. որչափ ժամանակ թագաւորեց, և ինչ կերպով ըրաւ թագաւորութիւնը ։

Եբրոս գետին ու Պիրենեան լեռներուն մէջ տեղը եղած գաւառներուն տիրեց, Սպանիոյ մարզիզութիւնները հաստատեց, ու անոնց վրայ իշխան դրաւ Փամփելոնայի ու Խաքայի կոմսերը, որ ետքը ատոնք Նաւարրայի ու Արագոնի Թագաւորութիւնները հաստատեցին (777)։

[1] Մահուընէն քիչ մը առաջ աս ամիրապետը քրիստոնէից դէմ պատերազմ հրատարակեց. վասն զի Պեղագիոս իր ընկերներովը Աստուրիոյ լեռները քաշուած՝ սպանիական ազատութեան պաշտպան կը կենար։ Անոր յաջորդը Ֆաւիլա երկու տարի Թագաւորելէն ետքը՝ աթոռը Ալփոնսոսի թողուց որ Կաթողիկէ ըսուեցաւ (737)։ Ասիկայ Աբբասեանց և Իւմմեանց կռիւը աղէկ առիթ սեպեց, ու գնաց Կալիցիայի ու Նաւարրայի շատ երևելի տեղերուն տիրեց։ Անոր որդին Ֆրոյիլա տիրեց Ալաւա քաղաքին, Օվիէտոյ քաղաքը շինեց ու Թագաւորական աթոռը հոն դրաւ։ Անոր տէրութիւնները թէպէտև մեծնալու վրայ էին, բայց իրենց տկարութիւնը ճանչնալով Մեծին Կարոլոսի պաշտպանութեան տակը մտան։

[2] Քորտովայի Արաբացիներուն վրայ 788էն 'ի վեր կը Թագաւորէր Հէշամ Ա., որ իր կառավարութեանը հինգերորդ տարին Մեծին Կարոլոսի ըրած արշաւանացը վրէժը հանեց։ Հէշամին զօրավարը Ապտուլլահ մտաւ Սեպտիմանիա և շատ քաղաքներ կողոպտեց։ Ակուիտանիոյ դուքսը Գ.ու-

---

1 Քրիստոնէից դէմ ինչ պատերազմ ըրաւ։
2 Քորտովայի Թագաւորը ով էր և ինչ կը պատմուի վրան։

Գիյելմոս յաղթեց անոր․ բայց չկրցաւ աւարն ալ ձեռքէն առնուլ։ Այնչափ շատ էր աւարը որ անով Գորտովայի մեծ մզկիթը շինեցին։ Այս մզկիթը աշխարհիս մեծագործ շէնքերէն մէկն է, երկու հարիւր մեթր երկայնութիւն և ութսուներկու մեթր լայնութիւն ունէր․ հազար ինըսունուերեք սիւնի վրայ կեցած էր, և գիշերը չորս հազար եօթը հարիւր կանթեղ կը վառուէր մէջը։ Այսպիսի մեծագործութեամբ կը ջանար Հէշամ Պաղտատու Հարուն-էլ-Ռաշիտէն վեր անցնիլ՝ որ իրեն ժամանակակից էր․ անոր պէս ալ ամէն տեղէ գիտուն մարդիկ կը կանչէր քովը, գիտութիւնները կը ծաղկեցնէր, դպրոցներ կը բանար և կ'ուզէր որ քրիստոնէից տղաքն ալ հոն երթան արաբերէն սորվին։

[1] Երբոր Էլհաքիմ Ա ձեռք առաւ տէրութեան կառավարութիւնը (799), Սպանիոյ մէջ երեք անհաւասար իշխանութիւններ կային․ հիւսիսային կողմը՝ Եբրոս գետին մարդիզութիւնները՝ Փրանկաց թագաւորին իշխանութեանը տակ․ արևելեան հիւսիսային գին՝ Օվիէտոյի իշխանութիւնը, ուր Ալփոնսոս Բ թագաւորը դեռ նոր գտեր էր սրբոյն Յակոբայ մարմինը ու անոր համար Կոմպոստելա քաղաքը շիներ էր, որ ետքը հռչակաւոր ուխտատեղի եղաւ․ հարաւային կողմն ալ արաբացի ամիրապետը տիրած էր։ Սպանիոյ հիւսիսային կողմը բնակող քրիստոնեայք միայն չէին Իսմայելեանց թշնամիները․ այլևայլ քաղաքներ ու իշխաններն ալ կամ Աբբասեանց վրայ աւելի սէր

---

[1] Էլհաքիմին առենը Սպանիա ինչ վիճակի մէջ էր։

մը ունենալով, և կամ ազատասիրութեան հոգւով՝ խռովութիւններ կը հանէին, շատ անգամ ալ օտարները ներս կը կանչէին : Այսանկով Էլհաքիմ Պարսեղոնա քաղաքը ու Բաղէարեան կղզիները ձեռքէ հանեց, ու այնչափ ունեցած զօրքովն ու բազմաթիւ նաւերովն ալ չկրցաւ նորէն առնուլ : Ինչուան տէրութեան մէջտեղուանքն ալ ապստամբութիւններ ելան . Քորտովայի արուարձաններէն մէկուն բնակիչներն որ ապստամբեցան, ամիրապետը երեք հարիւր հոգի ցից հանել տուաւ, հազար հինգ հարիւր հոգի ալ Ափրիկէ փոխադրեց, որ գնացին հոն սկսան աւազակութիւն ընել և Անտալուս ըսուեցան (818) :

[1] Երբոր այսպիսի աղէտալի դիպուածներով Արաբացւոց իշխանութիւնը իյնալու վրայ էր, Էլհաքիմին գաղանամիտ որդին Աբտըրահման Բ հօրը տեղը անցաւ (822) . ասիկայ կուսակալաց անհնազանդութիւնը ու զօրացը յաղթութիւնը տեսնելով՝ սրտին բարկութիւնը տէրութեան մէջ եղած քրիստոնէից վրայ թափեց ու վրանին տուկալի հալածանք հանեց : Այն միջոցին նորէն եկան Նորմաննացիք ու սկսան Լիսպոնա, Քատիս ու Սիւիլլիա քաղաքները կողոպտել : Սակայն թագաւորութեան վերջի տարիները քանի մը յաջողութիւններ ունեցաւ Աբտըրահման . Օվիէտոյի Օրդոնիոյ թագաւորին յաղթեց, ու Փրանկաց ձեռքէն Պարսեղոնա քաղաքն առաւ (832) :

---

[1] Էլհաքիմին ո՞վ յաջորդեց :

1 Այն ատենները դիպուած մըն ալ պատահե-ցաւ որ ետքը քրիստոնէից զօրանալուն մեծ պատ-ճառ պիտի ըլլար։ Նաւարրայի կոմսը Ազնար՝ Մե-ծին Կարոլոսի յաջորդէն գլուխ քաշեց. իր յա-ջորդն ալ Կարսիա Քսիմենէս՝ թագաւորի անուն առաւ ու աթոռը Փամփելոնա քաղաքին մէջ հաս-տատեց (857). ասով ամիրապետին նոր թշնամի մը աւելցաւ։

2 Ապտրահման երկրորդին Մէհէմմէտ որդին քրիստոնէիցմէ ու Նորմաննացւոցմէ յաղթուե-լով՝ չկրցաւ արգիլել որ Օվիէտոյի թագաւորը Մեծն Ալփոնսոս Քոյիմպրայի չառնէ ու ինչուան Լուսիտանիա չհասնի։ Իր երկու որդիքն ալ Նա-ւարրայի Սանչոյ Ա թագաւորէն շատ անգամ յաղթուեցան։ Սակայն ան միջոցին Սարակինոս-ներէն քանի հոգի նաւակով մը Սպանիայէն Գաղ-ղիոյ Փռովանս գաւառը անցան ու Ֆրաքսինէթ գեղին տիրեցին։ Աս գեղը անմատչելի դիրք մը ունենալով՝ ութսուն ու երկու տարի ձեռքերնին մնաց, ետքը ելան անկէց՝ Հռոդանոս ու Փոյ գե-տերուն քովերը Պուրկոյն գաւառը, ու ինչուան Սուալիոյ մէջտեղուանքը ցրուեցան։ Բոլոր Ալ-պեանց տէրեր էին 906էն տարիները, և սրբոյն Մաւրիտիանոսի ամուր վանքին մէջ կը կենային. Գաղղիայէն Իտալիա անցնելու ճամբաները բըռ-ներ էին, և Հռոմ երթալ ուզող ուխտաւորները

---

1 Փամփելոնայի թագաւորութեան սկիզբն ինչ-պէս եղաւ։

2 Այն ատենները ինչ երևելի արշաւանք ըրին Ա-րաբացիք։

պէտք էր որ կամ շատ ստակ տալով անոնց ձեռքէն ազատէին և կամ ծեծի տակ մեռնէին։ Թուրին ու Մարսիլիա քաղաքները այրեցին, Նիսին բնակչաց մէկ մասը թրէ անցուցին, Ֆրէժիւս և Թուլոն քաղաքները քանդեցին ու ամէն տեղ սարսափ ձգեցին։ Բայց 957ին Փռովանսի կոմսը Գուլիէլմոս գնաց տիրեց Ֆրաքսինէթին, և հարաւային Գաղղիայէն Սարակինոսները հալածելով մեծ անուն հանեց։

[1] Պիրենեան լեռներուն մէկալ կողմը Սպանիոյ մէջ ան միջոցին քաջ ու ճարտարամիտ մարդուն մէկը Իւմմեանց տէրութիւնը նորէն ծաղկեցընելու հետ էր, այսինքն Մեծն Աբտրահման Գ, որ Գորտովայի ամիրապետ էր (911)։ Աս իշխանը պզտիկուց աղէկ դաստիարակութիւն առած էր, ու երևելի վարպետներ ունեցեր էր՝ թէ գիտութեանց և թէ կառավարութեան արուեստը սորվելու համար։ Իշխանութեան հասնելուն պէս նայեցաւ որ կուսակալները քիչցընէ. վասն զի անոնք անդադար ապստամբելով՝ տէրութեան ոյժը կը կոտրէին։ Աս դժուար գործողութիւնը լմնցընելէն ետքը Աբբասեանց ստակը վերուց, և ինքը էմիր-էլ-մումինին պատուանունը առաւ, որ ըսել է Իսլամ հաւատացելոց, և աս անունը ինչուան ան ատենը Պաղտատի խալիֆները միայն կը գործածէին։

[2] Քիչ ատենէն Աբտրահման բոլոր իր ոյժը

---

[1] Սպանիա ի՞նչ վիճակի մէջ էր։

[2] Աբտրահման Գ ի՞նչ պատերազմներ ըրաւ քրիստոնէից դէմ։

հիւսիսային կողմի քրիստոնէից դէմ դարձուց ։ Օվիէտոյի Թագաւորը Օորէտոնիոյ իր աթոռը փոխադրեր էր Լէոն քաղաքը · ասիկայ Արաբացւոց դէմ կենալու համար Նաւարրայի Սանքոյ Թագաւորին հետ միաբանեցաւ . և երկուքը մէկտեղ Սան-Էսթէվան կամ Սուրբ Ստեփանոս ըսուած քաղաքին քով պատերազմ ըրին Արաբացւոց դէմ (916) ։ Արաբացիք ան պատերազմին մէջ յաղթուելով ձգեցին փախան . Սանքոյ Թագաւորն ալ անով գոհ եղաւ, իշխանութիւնը իր որդւոյն Թողուց որ կ'ըսուէր Կարսիա Ա, և ինքը վանք մը քաշուեցաւ ։ Ամիրապետը աս լսելուն պէս նորէն զօրք ժողվեց, յաղթեց քրիստոնէից, Պիրենեան լեռներէն անցաւ, ու Ակուիտանիա ըսուած երկիրը տանակոխ ըրաւ . բայց ետ դառնալու ատենը ծերունի Սանքոյ Թագաւորը վանքէն ելաւ իրեն դէմ ու կողոպուտները ձեռքէն առաւ ։ Ապտրահման աս ձախորդութեան տեղը ուրիշ յաջողութիւն մը ունեցաւ . վասն զի տեսնելով որ ան միջոցին Իտրիսեան ու Ֆաթիմեան ցեղերը Ափրիկէի մէջ իրարու հետ կը կռուըտէին, գնաց տիրեց Սէպտէի, Թանճէրի, Ֆէսի, և բոլոր արևմտեան Ափրիկէի, որ Մաղըրպ կ'ըսուի ։

[1] Մէկ կողմանէ ալ անդադար թշնամութիւն կ'ընէին Արաբացիք քրիստոնէից դէմ, և աս ամիրապետը քրիստոնեայ իշխանաց մէջ եղած խռովութիւնը աւելցընելով անոնց երկիրները մտաւ 927ին ։ Ալփոնսոս երկրորդին Հռամիրոս որդին չկրցաւ իր տէրութիւնը ազատ պահել Արաբա-

---

1 Մաւրիտին ինչպէս տիրեց ։

ցւոց արշաւանքէն, որով իր մայրաքաղաքն ալ, այսինքն Մաարիտ, անոնց ձեռքն ընկաւ։ Անկէց ետքը քանի մը Թագաւորներ միաբանեցան Արաբացւոց դէմ, բայց չկրցան բան մը ընել. և Զամորա քաղաքը որ եօթը պարսպով պատած էր՝ երկար ատեն դէմ կենալէն ետքը առնուեցաւ, քրիստոնեայք ալ Սան-Նսթեվան քաղաքին քովը յաղթուելով հաշտութիւն խնդրեցին (941)։

1 Անկէց ետքը ամիրապետը նայեցաւ որ իր յաղթութեանցը պտուղը վայելէ. ուստի վաճառականութիւնն ու արուեստները շատ ծաղկեցուց։ Միայն Կորտովա քաղաքին մէջ ութսունըհինգ հազար խանութ բացուեցաւ՝ արևելեան հարստութիւններով ու գեղեցիկ բանուածքներով զարդարուած. տասնըեօթը մեծամեծ դպրոցներ կային հոն տղոց համար. եօթանասուն գրատուն, և բժշկութեան վարժարան մը. և ամբողջ Եւրոպայի մէջ առջի բժշկարանն եղաւ, որ քիչ ատենի մէջ մեծ անուն հանեց։ Արևելեան ու արևմտեան կայսերաց հետ ալ բարեկամութեամբ կը վարուէր աս ամիրապետը, և պալատին մէջ անբաւ ճոխութիւն կ'երևցընէր. վասն զի միայն իրեն առանձնական եկամուտը քսանըհինգ հազար իրեք հարիւր միլիոն ֆրանքի կը հասնէր. Զէհրայի պալատը որ ինքը շինեց՝ հազար երկու հարիւր մարմարիոն սիւներու վրայ էր՝ իննըսունըվեց միլիոն ֆրանքով քսանըհինգ տարուան մէջ շինուած։

2 Եւ սակայն աս հարուստ ամիրապետն ալ

---

1 Ի՞նչ մեծագործութիւններ ըրաւ։
2 Ի՞նչ բարոյական զրուցուածք կը պատմուի վրան։

մարդկային բաներուն ունայնութիւնը աղէկ հասկցաւ, այնպէս որ ինքը օր մը տանիկ գրեր է կ'ըսեն. "Հարստութիւն, պատիւ, զուարճութիւն, ամէնն ալ ունեցայ. ամէնն ալ վայելեցի, Թագաւորները ինծմէ կը վախնան ու ինծի կը նախանձին. մարդուս սրտին ուզածը տուաւ ինծի Աստուած. և սակայն այսչափ տարուան ու երևոյթ երջանկութեան մէջ ալ տասնըչորս օր միայն կրնամ համրել իբրև երջանիկ օրեր: Ո՛վ մարդ, մի խաբուիր աս աշխարհքէս": Երբոր աս ամիրապետը մեռաւ, ժողովուրդը փողոցները տրտում տխուր քալելով կը կանչէր. "Մեռաւ մեր հայրը, տաճկութեան թուրը խորտակեցաւ" (961):

[1] Բայց տաճկութեան թուրը դեռ կոտրուած չէր. վասն զի Ապտուրահմանին զօրութիւնը երկու յաջորդներն ալ բաւական ունեցան: Էլհաքիմ Բ. խաղաղասէր և ուսումնասէր մարդ էր. իշխանութեան համնելէն առաջ հին ձեռագիրներ ժողվեր ու հարուստ գրքատուն մը ձևացուցեր էր. ամիրապետ ըլլալէն ետքն ալ շատ մարդիկ խրկեց ամէն տեղի Թագաւորներուն և իշխաններուն, ինչուան Պաղտատ, Ասորիք ու Պարսկաստան, որ գրքեր գնեն կամ օրինակեն: Իր եղբայրը մէկը գրապետ ըրաւ, մէկալն ալ դրան ճեմարաններու վերատեսուչ. երկրագործութեան վրայ ալ մեծ խնամք ունենալով՝ ջրանցքներ ու ջրմուղներ պատրաստել տուաւ որ արտերը դիւրաւ ոռոգուին, անով ամէն տեսակ բերքերով լեցուեցաւ

---

1 Ապտուրահմանին յաջորդները ի՞նչ ճամբայ բռնեցին:

Սպանիա ։ Այն ատենները իր ամիրապետութեան մէջ ութը քաղաք կար առաջին կարգի, այսինքն Քորտովա, Թոլէտոյ, Մէրիտա, Սարակոսա, Վալէնսիա, Կրանատա, Մուրսիա, Սեւիլլիա. ութսուն քաղաք կային երկրորդ կարգի, իրեք հարիւր քաղաք երրորդ կարգի, և հազար երկու հարիւր գեղ՝ Կուատալքիվիր գետին եզերքը շինուած ։

¹ Ամիրապետութիւնը այսպիսի ծաղկած վիճակի մէջ էր երբոր Էլհաքիմ Բ մեռաւ, և անոր յաջորդեց որդին Հէշամ Բ (976) ։ Էլհաքիմին այրին Սուպէյհէ իրեն հաւատարիմ ընտրեց Մէհէմմէտ անունով իշխանը, որ Էլմանսուր կամ Յաղթական ըսուեցաւ ։ Աս մարդը տէրութեան կառավարութիւնը ձեռք առնելով քրիստոնէից դէմ խիստ շատ յաղթութիւններ ըրաւ. Լէոն քաղաքն առաւ, սուրբ Յակոբ Կոմպոստելա քաղաքն ալ կողոպտեց, և յիսունըվեց պատերազմի մէջ յաղթեց Սպանիացւոց. անոնք ալ տեսնելով որ բոլորովին գերի պիտի ըլլան Արաբացւոց, շատը մէկտեղ միաբանած՝ Էլմանսուրին դէմ ելան, մեծ պատերազմ մը ըրին Մետինա-Սէլի ըսուած քաղաքին քովը. Էլմանսուր յաղթուեցաւ, և յուսահատութենէն ինքզինքը սպաննեց (998) ։

² Իր մահուամբը Արաբացւոց տէրութիւնն ալ սկսաւ կործանիլ. վասն զի յաջորդութեան համար ներքին խռովութիւններ ելան. ան միջոցին

---

¹ Էլմանսուր ո՞վ էր և ի՞նչ յաղթութիւններ ըրաւ ։
² Իր մահուընէն ետքը ի՞նչ վիճակի մէջ էին Արաբացիք ։

Ալէվիններուն (այսինքն Ալիի հետևող մահմետա-կաններուն) պահանջմունքներն ալ նորէն սկսե-լով խռովութիւնը շատցուցին ու շատ քաղաքներ ինքնագլուխ եղան: Երեսունուերեք տարի քշեց անիշխանութիւնը, և խաղաղութիւն ըլլալէն ետքը՝ ամիրապետութիւնը տասնուինը թագաւորութիւն բաժնուած գտնուեցաւ, որոնց գլխաւորներն էին Թոլետոյ, Վալէնսիա, Սարակոսա, Մուրսիա, Քորտովա, Կրանատա ու Սեւիլիա քաղաքներուն թագաւորութիւնները (1031):

¹ Ընդին Նաւարրայի թագաւորութիւնը օրէ օր մեծնալու վրայ էր: Մեծն Սանչոյ Գ մեռնելու ատենը թագաւորութիւնը իրեք որդւոցը մէջ բաժնեց (1035). Կարսիա երրորդին ընկաւ Նա-ւարրա, Հռամիրոսին Արակոն, Ֆերտինանտոսին Կաստիլիա: Բիչ ատենէն Ֆերտինանտոս ժառան-գեց նաև Լէոնի թագաւորութիւնը, և ասով Նաւարրա, Արակոն ու Լէոն-Կաստիլիա՝ նոյն ցեղին ձեռքը մնացին:

² Ան միջոցին որ Կարսիա ու Հռամիրոս իրա-րու դէմ կը պատերազմէին՝ Ֆերտինանտոս Արա-բացւոց դէմ պատերազմ մը բացաւ որ երեսուն տարի քշեց: Առաջ Լուսիտանիոյ կողմը գնաց ու շատ տեղերու տիրեց. ետքը Արաբացւոց դէմ դարձաւ: Ան ատենները Կաստիլիացւոց մէջ մեծ

---

¹ Նաւարրայի թագաւորութիւնը ինչպէս զօրա-ցաւ:

² Ֆերտինանտոս ինչ յաղթութիւններ ըրաւ: — Ո՞վ կար ան ատենները Կաստիլիացւոց մէջ անուանի զօրավար:

անունն հանած էր ազնուազգի երիտասարդ մը՝ Ռոտրիկէզ անունով, որ իր զինուորական հմտութեանն ու քաջութեանը համար Սէյիտ կամ Սիտ այսինքն Տէր ըսուեցաւ. Փերտինանտոս Թագաւորը զինքը ասպետ անուանեց, ու անոր ձեռքովը Սարակոսայի ու Թոլէտոյի Թագաւորները իրեն հարկատու ըրաւ:

1 Փերտինանտոսի մեռնելէն ետև, իրեն երկու աղջիկները և իրեք որդիքը Սանչօ, Ալփոնսոս և Կարսիա տէրութիւնը մէջերնին բաժնեցին. ատ պատճառաւ, և մանաւանդ իրեք եղբարց կռիւներուն պատճառաւը, քրիստոնեայք երկար ատեն ոյժ չունեցան Արաբացւոց դէմ պատերազմելու: Կաստիլիոյ Թագաւորը Սանչօ իր Կարսիա եղբօրը ձեռքէն անոր բաժինը առնելէն ետքը՝ քոյրերունն ալ կ'ուզէր յափշտակել. բայց Զամորա քաղաքին պաշարման ատենը սպաննուեցաւ, և Կաստիլիացիք Ալփոնսոսը ճանչցան իրենց Թագաւոր: Կարսիա սկսաւ բողոքել և իր առջի Թագաւորութիւնը կը պահանջէր. Ալփոնսոս բռնեց զանիկայ բանտ դրաւ, և ինքը մինակ Թագաւորելով սկսաւ Արաբացւոց դէմ պատերազմը առաջ տանիլ: Նոյն ատենները (1076) Արագոնի Թագաւորը Նաւառրայի տիրեց. անով Սպանիոյ մէջ երկու քրիստոնեայ Թագաւորութիւններ հաստատուեցան, որ իրենց ուժովը ու միաբանութեամբը սկսան վախ ձգել Արաբացւոց սիրտը, այնպէս որ Ափրիկէի Սարակինոսները պատրաստուեցան նորէն Սպանիա արշաւելու:

---

1 Փերտինանտոսի մահուընէն ետքը ի՞նչ վիճակի մէջ էր Սպանիա:

## ԳԼՈՒԽ Ի.

Պատմութիւն արեւելեան կայսերաց՝ Կոստանդին Կոպրոնիմոսէն մինչեւ Միքայէլ Թրակացի, եւ պատմութիւն Պաղտատու ամիրապետաց՝ Աբբասեանց սէֆֆահէն մինչեւ Էլմէմուն ամիրապետը (741–820)։ Արեւելեան կայսերք. — Կոստանդին Կոպրոնիմոս. — Պապերուն դէմ հալածանքը. — Արտաւաղ հայկազն կիւրապաղատը. — Սիսինիոս զօրավարը. — Կոպրոնիմոսի անգթութիւնները. — Կոստանդին Պորփիւրոժէն. — Իրենէ Թագուհին. — Նիկեփորոս. — Լեւոն Հայկազն. — Բուլղարաց դէմ ըրած պատերազմը. — Բուլար Լեւոնի. — Պապերուն յարգութեանը դէմ ըրածները. — Միքայէլ Թրակացին դաւաճանութիւնը. — Թէոդորոս կայսրուհին. — Լեւոնի մահը. — Միքայէլի Թագաւորելը. — Պաղտատու ամիրապետութիւնը. — Աբբասեանք. — Էլմանսուր. — Հարուն-էլ-Ռաշիտ. — Յունաց դէմ արշաւելը. — Ուսմանց ծաղկեցնելը. — Մեծին Կարոլոսի հետ ունեցած յարաբերութիւնը. — Կուսակալաց ապստամբութիւնը. — Էլմէմուն։

1 *Արեւելեան կայսերաց եւ Պաղտատու ամիրապետաց պատմութիւնները իրարու հետ շատ կապակցութիւն ունին. վասն զի երկուքն ալ նոյն պատճառներով տկարացան ու վերջացան, որ էին ներքին ապստամբութիւններ, մեղկութիւն, չարագործութիւն եւ երկպառակութիւն։ Անոնց աւերէն Թուրքերն եկան ու երկու մեծամեծ տէրութեանց ալ վերջի կործանումը անոնք տուին։*

1 *Կոստանդին Կոպրոնիմոսին առենը կայսրութիւնը ինչ վիճակի մէջ էր։*

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԱՅՍԵՐՔ : — Լեւոն Իսաւրացւոյն որդւոյն Կոստանդին Կոպրոնիմոսի (741) Թագաւորած ատենը, Արաբացիք Ասորւոց երկրին, Պարսկաստանի, Պաղեստինու, Եգիպտոսի, Ափրիկէի և Սպանիոյ տիրելէն ետև՝ քիչ մնաց որ ինչուան Գաղղիոյ ալ պիտի տիրապետէին : Գրեթէ բոլոր Իտալիան կայսերաց ձեռքէն ալ ելեր էր : Այսպիսի վտանգաւոր ժամանակի մէջ որ Կոստանդին պիտի ջանար կայսերական իշխանութիւնը հաստատելու, ինքը պատկերամարտութիւնը և հալածանքը նորոգեց, սաստիկ արգիլեց որ պատկերաց առջևը աղօթք չընեն, որոնց նշխարքները կենդանեաց ոսկորներուն հետ խառնելով այրել կուտար, որպէս զի չկարենան քրիստոնեայք անոնց մոխիրն ալ ժողվել. եկեղեցիները ախոռ ըրաւ ու վանքերը զինուորանոց, կրօնաւորները կը ստիպէր որ աշխարհք մտնեն, շատերն ալ խղդել կուտար :

[1] Արտաւազ հայազգի կիւրապաղատը (որ Կոստանդնին Աննա քոյրը կին առած էր) տեսնելով որ կայսրը Աստուծոյ դէմ ունեցած ատելութեամբն ու քահանաները տանջելովը ամենուն ատելի եղած է, մտածեց որ զանիկայ իշխանութենէն ձգէ ու ինքը տեղը թագաւորէ : Կայսրը իմացաւ անոր միտքը, և որդիքը պատանդ ուզեց : Ան ատեն Արտաւազ ձեռքին տակը ունեցած զօրքովը գնաց կայսեր վրայ : Կոստանդին Թողուց

---

1 Արտաւազ ինչպէս ուզեց Կոպրոնիմոսին տեղը անցնիլ :

Փռիւգիա փախաւ, բայց Սիսիննիոս քաջ զօրավարը անոր պաշտպան եղաւ ։

1 Պատրիարքը ժողվեց Կոստանդնուպօլսոյ ժողովուրդը ու ըսաւ անոնց որ ինքը ականջովը լսեր է Կոստանդինին զՔրիստոս ուրանալը ։ Ժողովուրդը բարկացաւ, Արտաւազը կայսր հրատարակեց՝ ան ալ գնաց պալատին տիրեց, ու քաղաքին մէջ պատկերաց յարգութիւնը հաստատեց ։

2 Քիչ ատենէն Կոպրոնիմոս շատ զօրքով գնաց Արտաւազին հետ պատերազմեցաւ. Սիսիննիոսի ճարտարութեամբը Արտաւազ յաղթուեցաւ, և Կոպրոնիմոս գնաց Կոստանդնուպօլիսը պաշարեց, Արտաւազին նաւերը ջարդեց, անոր Նիկետաս որդին բռնեց, մայրաքաղաքին պարսպացը վրայ հանեց, գլուխը կտրեց, և յարձակմամբ առաւ քաղաքը. Արտաւազն ալ բռնեց, աչուըները հանեց, ու ամենևին անոր կուսակցացը չխնայեց ։ Սիսիննիոսի միջնորդութեամբը խօսք տուեր էր Կոպրոնիմոս որ Անաստաս պատրիարքին կեանքն ու պատիւը պահէ. ձեռք ձգելուն պէս՝ խոստմանը դէմ բռնեց էշու մը վրայ նստեցուցած, պոչն ալ ձեռքը տուած, ձիարձակարանին մէջ նախատանօք պտըտցընելէն ետև աչուըները հանել տուաւ ։

3 Այնչափ ցած ու անգութ վրէժխնդրութիւններուն վրայ՝ Կոպրոնիմոսին ապերախտութիւնը միայն կը պակսէր. Սիսիննիոս զինքը նորէն

---

1 Ի՞նչ կերպով կայսր եղաւ Արտաւազ ։

2 Ի՞նչպէս մեռաւ Արտաւազ ։

3 Կոպրոնիմոս ի՞նչ ապերախտութիւն ըրաւ Սիսիննիոսին դէմ ։

աթոռը նստեցընելուն վրայ հազիւ թէ երկու ամիս անցեր էր, անոր ալ աչուըները հանել տուաւ։ Սակայն ինքն ալ այնչափ ըրած չարեացը պատիժը գտաւ․ չարաչար հիւանդութեամբ մը մեռաւ, և անունը Կալիգուլայի ու Ներոնի անուններուն կարգն անցաւ (775)։ Լեւոն Դ անոր որդին ալ հօրը հետեւեցաւ, ու հօրը պէս ալ մեռաւ (780)։

[1] Կոստանդին Զ շատ պզտիկ ըլլալով՝ տէրութեան կառավարութիւնը անոր Եռինէ կամ Իրէնէ անունով մօրը ձեռքն էր։ Ասիկայ գումարել տուաւ Նիկիոյ երկրորդ ժողովը, ուր իրեք հարիւր եօթանասունըութը եպիսկոպոսունք պատկերամարտից մոլորութիւնը հերքեցին։ Բայց ետքերը մեծամեծ չարագործութիւններովը առջի աղէկութիւնները մոռցընել տուաւ աս փառասէր թագուհին․ վասն զի ինքը մինակ թագաւորելու համար՝ բռնեց որդին բանտ դրաւ ու հրամայեց որ աչուըներն ալ հանեն (799)։ Ան միջոցին էր որ Հառան Մեծին Կարողոսի խրկած դեսպանները, որովհետև անիկայ կ՚ուզէր կ՚ըսեն՝ Եռինէին հետ կարգուելով երկու կայսերութիւնները միացընել։ Աս բանիս ձայնը դուրս ելլելուն պէս՝ Նիկեփորոս պատրիկը ժողովուրդը ոտք հանեց, բռնեց Եռինէն Լեսբոս կղզին քշեց ու ինքը նստաւ աթոռը (803)։ Հոն քիչ ատենէն սրտին ցաւէն մեռաւ Եռինէ։

[2] Նիկեփորոս ալ չկրցաւ կայսերութիւնը վայե-

---

1 Կոստանդին Զ ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը։ — Եռինէ թագուհւոյն վրայ ի՞նչ կը պատմուի։

2 Նիկեփորոս ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը։

ըել: Հարուն-էլ-Ռաշիտ ամիրապետէն յաղթուեցաւ. Բուլղարաց Կրումնոս Թագաւորին վրայ պատերազմի ելաւ, անկէց ալ յաղթուեցաւ ու պատերազմին մէջ ինքն ալ ինկաւ մեռաւ: Իր յաջորդներն ալ իրենց անկարողութեամբը չկարենալով Թշնամեաց դէմն առնուլ, և տեսնելով որ բարբարոսները Կոստանդնուպօլիս կը մօտենան, դարձեալ պատկերամարտութիւնը նորոգեցին, ըսելով որ աս ձախորդութեանց պատճառը պատկերաց յարգութիւնն է:

1 Արևելեան զօրաց քաջ զօրավարը Լեւոն հայկազն կայսր ընտրուելով, բոլոր զօրքովը գնաց Թրակիոյ Մեսեմբրիա (Միսիվրի) քաղաքին քովը Բուլղարաց հետ պատերազմեցաւ: Առջի զարնուածքին Բուլղարաց կատաղութիւնը խիստ սաստիկ էր. զարկին չորս կողմէն ու հալածեցին Յոյները. բայց Լեւոն առաջուց գուշակելով իր զօրացը յաղթուիլը, ընտիր գունդ մը հետն առած՝ բարձր տեղ մը կեցեր էր. երբոր տեսաւ զօրացը փախուստը և Թշնամեացն անոնց ետևէն իյնալով ցրուելը, կանչեց իրեններուն. "Ընկերակիցք իմ՛, ահա հիմա է յաղթութեան ժամանակը. ձեռն է յաղթութիւնը Թէ որ քաջութեանս օգնէք": Աս ըսելով յարձակեցաւ Բուլղարաց վրայ, սոսկալի ջարդ մը տուաւ անոնց, շատ գերի բռնեց, և հարուստ աւարով լեցուած՝ յաղթանակով Կոստանդնուպօլիս դարձաւ:

2 Յաջորդ տարին աւելի բազմութեամբ եկան

---

1 Նիկեփորոսին ով յաջորդեց:

2 Ուրիշ ի՞նչ պատերազմներ ըրաւ Լեւոն Բուլղարաց դէմ:

Բուլղարք. մօտեցած ատեններին Լեւոն վախ ցուցընելով ետ քաշուեցաւ, ու անձնապահ գնդովը աներեւոյթ եղաւ։ Իր բանակին մէջ սարսափը տիրեց. Բուլղարք մտքերնին դնելով որ երկրորդ օրը առանց պատերազմի Յունաց բանակին պիտի տիրեն, նստան կերան խմեցին, գինովցան ու անհոգ կերպով քնացան։ Լեւոն ընտիր գնդով մը ետեւէ անտառը պահուըտեր էր. վազեց ինկաւ անոնց բանակին վրայ, Բուլղարներէն շատը հոն սպաննեց ու իր բանակին ձայն տուաւ. վազեցին անոնք ալ եկան, փախչողներուն ետեւէն ինկան. անոնց Տեւկոմոս թագաւորն ալ մեռաւ, և ան ահաւոր կոտորածէն գրեթէ մէկ Բուլղար մը չազատեցաւ։ Ան յաղթութեան ետեւէն գնաց մտաւ Լեւոն Բուլղարաց երկիրը, զէնք վերցընող մարդիկը թրէ անցուց ու կնիկ մարդիկը գերի ըրաւ։ Մնացած Բուլղարները խնդրեցին որ երեսուն տարուան համար զինադադարումն ընեն. հաւանեցաւ Լեւոն, և ինչուան եօթանասուն տարիէն աւելի ան կոտորածին վախը մտքերնէն չելաւ. տեղւոյն անունն ալ դրին Բլուր Լեւոնի։

1 Լեւոն այսպիսի փառքով կուրցած՝ կարծեց թէ ալ բան մը չկայ որ կարենայ իրեն դէմ կենալ։ Քանի մը շողոքորթ մարդիկ ըսեր էին իրեն որ երկարատեւ թագաւորութիւն մը կ'ունենայ թէ որ պատկերաց պաշտօնը վերցընէ. հաւատաց Լեւոն, եկեղեցիներուն մէջէն պատկերները կործանեց, անոնց յարգութիւն տուողներն ալ չարաչար ծեծել կուտար. Նիկեփորոս պատրիարգը

---

1 Լեւոնի մեծ յանցանքը ինչ եղաւ։

իրեն դէմ խօսելուն համար աքսորեց : Աս բանե-րուս համար Քաղքեդոնի այսինքն Գետնաաբուծ ա-նունը տուին իրեն Ցոյնք, որովհետև բոլոր աս ըրածները՝ տուած խոստմունքներուն դէմ էին :

1 Միքայէլ Թլուատ ըսուած իշխանը Լեւոնի կեանքը վերցընելու համար դաւակցութիւն մը ըրաւ, բռնուեցաւ և վճիռ ելաւ որ ողջ ողջ իր պալատին մէջ այրուի : Եւ որովհետև երկրորդ օրը ծնունդ էր, առաքինազարդ կայսրուհին Թէո-դոսիա վազեց Լեւոնի ոտքը ինկաւ . " Տէր ար-քայ, ըսաւ, մտածէ որ վաղը սրբութիւն պիտի առնես . խաղաղութեան Աստուածը ընդունող բերնէդ արիւնահեղ հրաման մը ի՞նչպէս պիտի ելլէ : Մի՛ պղծեր աս սուրբ օրը այսպիսի սոսկալի պատուհասով . ողորմած է Աստուած, դուն ալ անոր նմանէ . Թէ որ չես կրնար ներել, տալու պատիժդ ուշացուր, որպէս զի եկեղեցւոյ եր-գերուն մէջ մեռնողի մը ձայնը չխառնուի : — Կը կատարեմ խնդիրքդ, ըսաւ կայսրը . բայց թերեւս վճիռը ուշացընելէս՝ քեզի ու որդւոցդ վնաս ըլլայ . իմ հոգիս ալ կ'ազատես, բայց մար-մինս կը կորսնցընես „ :

2 Աս որ իմացաւ Միքայէլ, կանչեց դաւակից-ները, սպառնացաւ անոնց որ եթէ զիս աս գիշեր բանտէն չհանէք, ամէնքնիդ ալ կայսեր կը մատ-նեմ . խօսք տուին իրեն, ու բանտապանը կաշառ-քով որսացին : Սովորութիւն էր որ պալատին քահանաները հոն չէին պառկեր, ամէն առաւօտ

---

1 Միքայէլ Թլուատին դաւակցութիւնը ի՞նչ էր :
2 Ի՞նչպէս սպաննուեցաւ Լեւոն :

կանուխ կ'երթային ու կայսեր առջեւ գիշերային ժամերգութիւնը կ'ընէին · Լեւոն ալ իր ձայնին գեղեցկութեանը վրայ մեծ համարում ունենալով՝ անպակաս հոն կ'երթար, հետերնին կ'երգէր: Միքայէլին բարեկամները քահանայի հագուստին տակը թուրերնին պահած՝ մատրանը մէջ կը պահուըտին: Արեւը ելլելուն պէս ժամերգութիւնը կը սկսի · կայսրը շարական մը երգել սկսելուն պէս դաւակիցները կը վազեն վրան: Քաջասիրտ կայսրը կը վազէ՝ խորանին վրայի խաչը կ'առնու, անով կը կռուի թշնամեացը հետ ու մէկ քանին գետինը կը փռէ · բայց անոնց բազմութենէն կը յաղթուի: Տեսնելով որ զինուորին մէկը թուրը քաշած գլուխը պիտի կտրէ, կ'աղաչէ որ խաչելութեան սիրոյն համար ողորմի իրեն · “Ողորմութեան ատեն չէ, վրէժխնդրութեան ատեն է” կը կանչէ զինուորը, կը զարնէ, ու խաչը բռնած թեւը կը կտրէ կը ձգէ, մէյմըն ալ կը վերցընէ թուրն ու կայսեր գլուխը կը թռցընէ: Հոն մարմնոյն վրայ ամէն կերպ նախատինք ընելէն ետեւ, քաշքըռտելով ալ կ'առնեն կրկէսը կը տանին կը ձգեն որ հասարակ ժողովուրդն ալ ուզած նախատինքն ընէ անոր (820):

[1] Ելաւ Միքայէլ բանտէն, պալատը մտաւ ու թագաւորեց · դեռ շղթաներով կապուած ձեռքը կայսերական գաւազանը տուին, ու մէկէն դարբիններ հասուցին որ ոտքի, ձեռքի շղթաները կտրեն, որովհետեւ անոնց բանալիքն Լեւոն պահեր էր: Երբոր իմացան քաղաքացիք որ կայսրը

[1] Միքայէլ ինչ կերպով թագաւորեց:

սպաննուեր է , ու մահապարտը անոր տեղը Թագաւորեր է՝ ապշեցան մնացին ։ Լսեց Նիկեփորոս պատրիարքն ալ իր աքսորանացը մէջ Լեւոնի մահն ու ըսաւ . " Մեծ Թշնամիէ մը ազատեցաւ եկեղեցին , բայց կայսրութիւնը մեծ Թագաւոր մը կորսնցուց ,, ։

¹ ՊԱՂՏԱՏՈՒ ԱՄԻՐԱՊԵՏՆԵՐԸ ։ — Էպիւլ-Ապպաս (կամ Աբբաս) որ Ումմեանց դէմ ըլլած արիւնահեղութեանցը համար Արիւնարբու ալ ըսուեցաւ , Նոր իշխանութիւն մը հաստատեց՝ որ իր անունովը իշխանութիւն Աբբասեանց ըսուեցաւ , և անոնց ժամանակը արուեստներն ու քաղաքականութիւնը շատ առաջ գնացին Արաբացւոց մէջ (750) ։ Անոր յաջորդը Էպու-Ճաֆեր Էլմանսուր կամ Յաղթական ըսուածը , Տիգրիս ու Եփրատ գետերուն խառնուած տեղը հին Բաբելոնի աւերակներէն քիչ հեռու Պաղտատ քաղաքը շինեց , ու Բաբելոնի պէս մեծագործութիւններով ջանաց զանիկայ զարդարել ։ Իր պալատներուն քովը դպրոցներ շինել տուաւ , գիտուն մարդիկ կանչեց քովը , Յունաց լեզուին հետ փիլիսոփայութիւնն ու աստղաբաշխութիւնն ալ շատ ծաղկեցուց ։ Գիտութեանց վրայ այնչափ հոգ ընելու ատենը՝ միանգամայն կը ջանար որ իր ցեղին իշխանութիւնն ալ հաստատէ . ուստի խռովարարները կը պատժէր ու ապստամբութիւնները կը նուաճէր ։

---

¹ Աբբասեանց իշխանութիւնը ուսկէց սկսաւ ։ — Էլմանսուր ամիրապետը ինչ կարգաւորութիւններ ըրաւ ։

[1] Իր յաջորդը Մուհամմէտ-Մահատի (775) շատ առատաձեռն մարդ էր. Մէքքէ ուխտի գնացած ժամանակը հետը ուղտերով սառ կը տանէր, ճամբուն վրայ ալ ճանապարհորդաց համար ջըրշեղջներ ու իջևաններ շինել կուտար։ Ասոր որդւոցը մէկը՝ որ կ'ըսուէր Հարուն-էլ-Ռաշիտ, ինչուան Կոստանդնուպոլսոյ Նեղուցը գնաց, և Իրենէ Թագուհին հարկադրեցաւ տարին եօթանասուն հազար ոսկի տուրք տալու անոր։

[2] Մուսա-էլ-Հատի (748) խիստ քիչ ժամանակ ամիրապետութիւն ըրաւ, և աթոռը թողուց հռչակաւոր Հարուն-էլ-Ռաշիտին, որուն նման ամիրապետ դեռ չէր եղած։ Նիկեփորոս կայսրը Իրենէ Թագուհւոյն անոր հետ դրած դաշինքը աւրեց, ու մարդ խրկեց ամիրապետին իմացընելու որ ալ տուրք չեմ տար։ Դեսպանները եկան, ընծաներին զուրցելէն ետքը խուրձ մը թուր ցցուցին։ Մէջքի թուրը քաշեց Հարուն, մէկ զարնուածքով մը կտորեց զանոնք ու կանչեց. “Յանուն Աստուծոյ գթածին և ողորմածի, Հարուն-էլ-Ռաշիտ, հրամանատար հաւատացելոց, առ Նիկեփորոս, շուն Հռովմայեցի, որդի մօր անհաւատի։ Թուղթդ կարդացի. պատասխանը ինծմէ պիտի չառնես, պիտի տեսնես”։ Եւ մէկէն հեղեղի պէս իր բազմաթիւ գունդերովը Փոքր Ասիան ծածկեց։ Կայսրը սարսափած՝ խոստացաւ որ հարկը վճարէ. բայց թշնամիք տէրութեան սահմանէն դուրս ելածնուն պէս՝ չուզեց

---

[1] Իր յաջորդին վրայ ի՞նչ կը պատմուի։
[2] Հարուն-էլ-Ռաշիտ ի՞նչպէս ըրաւ ամիրապետութիւնը։

խոստմունքը կատարել։ Ղուտ մը հարիւր երեսունըհինգ հազար Արաբացիք վաղեցին, ու չարաչար յաղթեցին անոր, ինչուան Կոստանդնուպօլիսն ալ կ'առնէին՝ թէ որ տէրութեանը մէջ խռովութիւն ելլելով՝ ամիրապետը ետ դառնալու չստիպուէր։

[1] Բոլոր թշնամեաց յաղթելէն ետեւ Հարուն, սկսաւ գիտութիւններն ու արուեստները ծաղկեցընել։ Ամէն տեղ դպրոցներ բանալ տուաւ, բժշկականութեան, փիլիսոփայութեան, աստղաբաշխութեան, չափաբերական ուսմանց վրայ գրուած շատ գրքեր թարգմանել տուաւ, ու ամէն տեղ աս ուսմունքները տարածեց։

[2] Երբոր Հարուն այսպիսի փառաւորութեան մէջ էր, Մեծին Կարոլոսի դեսպանները եկան ու իր պաշտպանութիւնը կը խնդրէին քրիստոնէից համար։ Հարցուց իմացաւ ամիրապետը կայսեր զօրութիւնը, ու փառաւոր ընծաներով դեսպան ղրկեց անոր, գլխաւոր ընծաներն ալ էին Ճերմակ փիղ մը, Արաբիոյ համեմներու հոտաւէտ խունկեր, մետաքսագործ դիպակներ, Ջրաբաշխական անուաւոր ժամացոյց մը, որ ան ատենը շատ զարմանալի բան էր։ Ասոնցմէ զատ ղրկեց նաեւ Քրիստոսի Տեառն մերոյ գերեզմանին բանալին այսպիսի նամակով մը. "Կարոլոսի իշխանութեանը տակ կը ձգեմ Աբրահամու խոստացուած ու Յեսուայ ցուցուած երկիրը. և ես աս երկրին վրայ իրեն փոխանորդը պիտի ըլլամ։ Երբոր կ'ու-

---

1 Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ։

2 Մեծին Կարոլոսի հետ ի՞նչպէս բարեկամացաւ։

*զէ, Թող դեսպան խրկէ ինծի, տեսնէ թէ տադաւառին եկամուտները աղէկ կը մատակարարեմ թէ չէ,,: Մեծն Կարոլոս ալ մեծ հանդիսով ընդունեցաւ Հարունին դեսպանները, և անոնց Սպանիոյ ձիեր ու ջորիներ, Ֆրիզիայի ազնիւ չուխաներ, և առիւծ ու վագր որսալու համար կատաղի ու թեթեւընթաց շներ տուաւ որ իրենց տիրոջը ընծայ տանին:*

[1] *Սակայն, ինչպէս ամէն երևելի թագաւորաց, ասանկ ալ Հարունին գլխուն շատ դժբաղդութիւններ եկան. Ալի-Իտրիսին յաջորդներէն մէկը 788ին Մաւրիտանիա փախաւ ու հոն Ֆէս քաղաքը շինեց. Թանճերին ու Սեպտէին տիրեց, և Իտրիսեանց իշխանութիւնը հաստատեց: Ութը տարի ետքն ալ Աղլապի որդին Իպրահիմ, որ Ափրիկէի կուսակալն էր, գլուխ քաշեց Հարունէն ու Աղլապեանց իշխանութիւնը հաստատեց, որ Ֆէսի տէրութենէն ինչուան Եգիպտոսի սահմանը իշխեցին, և Գայրուանը իրենց մայրաքաղաք ըրին:*

[2] *Հարունի որդին և յաջորդը Էմին (809), չորս տարիէն ետքը ամիրապետութենէն ձգուեցաւ ու տեղը անցաւ իր եղբայրը Էլմէմուն, որ Դահիր զօրավարին օգնութեամբը թագաւորութիւնը ձեռք բերելուն համար՝ անոր վարձ տուաւ Խորասանի երկիրը. բայց քիչ ատենէն ապստամբեցաւ Դահիր ու Դահիրեանց իշխանութիւնը հաս-*

---

1 *Հարունի ժամանակը ինչ նոր իշխանութիւններ ելան:*

2 *Հարուն-էլ-Ռաշիտին ով յաջորդեց: — Էլմէմունի վրայ ինչ կը պատմուի:*

տատեց ։ Ջեղխութեանն ու շռայլութեանը կողմանէ բոլոր իր նախորդները անցուց Էլմէմուն ։ Հրաշակերտ պալատ մը ունէր, ամենայն հարստութեամբ ու երեւունըութը հազար գորգերով զարդարած · մէջը վեցհարիւր միայն դռնապան կար կ՚ըսեն ։ Պարտէզին մէջ ոսկիէ ու արծաթէ ծառ մը շինել տուաւ, որուն ճիւղերուն վրայ ալ ոսկիէ ու արծաթէ թռչուններ կային, և քանի որ հովը կը զարնէր՝ ան թռչունները կը թռչըտէին, կ՚ըսեն, ու գարնան ատենուան պէս անուշ ձայներով կ՚երգէին ։ Միանգամայն կը ջանար աս ամիրապետը նաև ուսմունքն ու գրագիտութիւնը ծաղկեցնելու ։ Ինքը կ՚ըսէր թէ Իմաստուն մարդիկ մասնաւոր կերպով աշխարհք խրկուած են Աստուծմէ որ մարդուս խելքը կատարելագործեն · և աւելի Յունաց գրքերուն վրայ կը զմայլէր՝ ըսելով թէ Մարդկային մտաց ծայրագոյն կատարելութիւնը անոնց մէջ կ՚երևնայ ։ Ան ատենը բացուեցան Պաղտատի, Պասրայի և Նիւշապուրի հռչակաւոր դպրոցները, և անոնց մէջ շատ ծաղկեցան բժշկութիւն, վիրաբուժութիւն, աշխարհագրութիւն և աստղաբաշխութիւն ։ Մէկ կողմանէ ալ ան դպրոցներուն մէջ Արիստոտելի փիլիսոփայութիւնը գործածուելով, Ղուրանին վրայ շատ տարակոյսներ կ՚ելլէին, և անով նոր նոր աղանդներ զանազան ապստամբութեանց և խռովութեանց պատճառ կ՚ըլլային ։

աթոռը նստեցընելուն վրայ հազիւ թէ երկու ամիս անցեր էր, անոր ալ աչուըները հանել տուաւ: Սակայն ինքն ալ այնչափ ըրած չարեացը պատիժը գտաւ. չարաչար հիւանդութեամբ մը մեռաւ, և անունը Կաւրգոլայի ու Ներոնի անուններուն կարգն անցաւ (775): Լեւոն Դ անոր որդին ալ հօրը հետեւեցաւ, ու հօրը պէս ալ մեռաւ (780):

[1] Կոստանդին Զ շատ պզտիկ ըլլալով՝ տէրութեան կառավարութիւնը անոր Եռինէ կամ Իրէնէ անունով մօրը ձեռքն էր: Անիկայ գումարել տուաւ Նիկիոյ երկրորդ ժողովը, ուր երեք հարիւր եօթանասունըութը եպիսկոպոսունք պատկերամարտից մոլորութիւնը հերքեցին: Բայց ետքերը մեծամեծ չարագործութիւններովը ազնի աղէկութիւնները մոռցընել տուաւ ան փառասէր թագուհին. վասն զի ինքը մինակ թագաւորելու համար՝ բռնեց որդին բանտ դրաւ ու հրամայեց որ աչուըներն ալ հանեն (799): Ան միջոցին էր որ հասան մեծին Կարոլոսի խրկած դեսպանները, որովհետեւ անիկայ կ'ուզէր կ'ըսեն՝ Եռինէին հետ կարգուելով երկու կայսերութիւնները միացընել: Աս բանիս ձայնը դուրս ելլելուն պէս՝ Նիկեփորոս պատրիկը ժողովուրդը ոտք հանեց, բռնեց Եռինէն Լեսբոս կղզին քշեց ու ինքը նստաւ աթոռը (803): Հոն քիչ ատենէն սրտին ցաւէն մեռաւ Եռինէ:

[2] Նիկեփորոս ալ չկրցաւ կայսերութիւնը վայե-

---

1 Կոստանդին Զ ինչպէս ըրաւ կայսերութիւնը: — Եռինէ թագուհւոյն վրայ ինչ կը պատմուի:

2 Նիկեփորոս ինչպէս ըրաւ կայսերութիւնը:

ըել: Հարուն-էլ-Ռաշիտ ամիրապետէն յաղթուեցաւ. Բուլղարաց Կրումնոս Թագաւորին վրայ պատերազմի ելաւ, անկէց ալ յաղթուեցաւ ու պատերազմին մէջ ինքն ալ ինկաւ մեռաւ: Իր յաջորդներն ալ իրենց անկարողութեամբը չկարենալով Թշնամեաց դէմն առնուլ, և տեսնելով որ բարբարոսները Կոստանդնուպօլիս կը մօտենան, դարձեալ պատկերամարտութիւնը նորոգեցին, ըսելով որ աս ձախորդութեանց պատճառը պատկերաց յարգութիւնն է:

¹ Արեւելեան զօրաց քաջ զօրավարը Լեւոն Հայկազն կայսր ընտրուելով, բոլոր զօրքովը գնաց Թրակիոյ Մեսեմբրիա (Միսիվրի) քաղաքին քովը Բուլղարաց հետ պատերազմեցաւ: Առջի զարնուածքին Բուլղարաց կատաղութիւնը խիստ սաստիկ էր. զարկին չորս կողմէն ու հալածեցին Յոյները. բայց Լեւոն առաջուց գուշակելով իր զօրացը յաղթուիլը, ընտիր գունդ մը հետն առած՝ բարձր տեղ մը կեցեր էր. երբոր տեսաւ զօրացը փախուստը և Թշնամեոյն անոնց ետևէն ելնալով ցրուելը, կանչեց իրեններուն. “Ընկերակիցք իմ, ահա հիմա է յաղթութեան ժամանակը. ձեռն է յաղթութիւնը Թէ որ քաջութեամբ օգնէք„: Աս ըսելով յարձակեցաւ Բուլղարաց վրայ, ոսկալի ջարդ մը տուաւ անոնց, շատ գերի բռնեց, և հարուստ աւարով լեցուած՝ յաղթանակով Կոստանդնուպօլիս դարձաւ:

² Յաջորդ տարին աւելի բազմութեամբ եկան

---

¹ Նիկեփորոսին ով յաջորդեց:
² Ուրիշ ինչ պատերազմներ ըրաւ Լեւոն Բուլղարաց դէմ:

Բուլղարք. մօտեցած ատեններին Լեւոն վախ ցուցը-
նելով ետ քաշուեցաւ, ու անձնապահ գնդովը
աներեւոյթ եղաւ: Իր բանակին մէջ սարսափը տի-
րեց. Բուլղարք մտքերնին դնելով որ երկրորդ օրը
առանց պատերազմի Յունաց բանակին պիտի տի-
րեն, նստան կերան խմեցին, գինովցան ու անհոգ
կերպով քնացան: Լեւոն ընտիր գնդով մը ետեւի
անտառը պահուըտեր էր. վազեց ընկաւ անոնց
բանակին վրայ, Բուլղարներէն շատը հոն սպան-
նեց ու իր բանակին ձայն տուաւ. վազեցին ա-
նոնք ալ եկան, փախչողներուն ետեւէն ընկան.
անոնց Տեւկոմոս թագաւորն ալ մեռաւ, և ան
ահաւոր կոտորածէն գրեթէ մէկ Բուլղար մը
չազատեցաւ: Այն յաղթութեան ետեւէն գնաց
մտաւ Լեւոն Բուլղարաց երկիրը, զէնք վերցընող
մարդիկը թրէ անցուց ու կնիկ մարդիկը գերի
ըրաւ: Մնացած Բուլղարները խնդրեցին որ երե-
սուն տարուան համար զինադադարութիւն ընեն.
հաւանեցաւ Լեւոն, և ինչուան եօթանասուն
տարիէն աւելի ան կոտորածին վախը մտքերնէն
չելաւ. տեղւոյն անունն ալ դրին Բլուր Լեւոնի:

[1] Լեւոն այսպիսի փառքով կուրցած՝ կարծեց
թէ ալ բան մը չկայ որ կարենայ իրեն դէմ կե-
նալ: Քանի մը շողոքորթ մարդիկ ըսեր էին իրեն
որ երկարատև թագաւորութիւն մը կ'ունենայ
թէ որ պատկերաց պաշտօնը վերցընէ. հաւատաց
Լեւոն, եկեղեցիներուն մէջէն պատկերները կոր-
ծանեց, անոնց յարգութիւն տուողներն ալ չա-
րաչար ծեծել կուտար. Նիկեփորոս պատրիարգը

---

[1] Լեւոնի մեծ յանցանքը ի՞նչ եղաւ:

իրեն դէմ խօսելուն համար աքսորեց ։ Աս բաներուս համար Քամէլէոն այսինքն Գետնառիւծ անունը տուին իրեն Յոյնք, որովհետեւ բոլոր աս ըրածները՝ տուած խոստմունքներուն դէմ էին ։

1 Միքայէլ Թլուատ ըսուած իշխանը Լեւոնի կեանքը վերցնելու համար դաւակցութիւն մը ըրաւ, բռնուեցաւ և վճիռ ելաւ որ ողջ ողջ իր պալատին մէջ այրուի ։ Եւ որովհետեւ երկրորդ օրը ծնունդ էր, առաքինազարդ կայսրուհին Թէոդոսիա վազեց Լեւոնի ոտքը ընկաւ. “ Տէր արքայ, ըսաւ, մտածէ որ վաղը սրբութիւն պիտի առնես. խաղաղութեան Աստուածը ընդունող բերնէդ արիւնահեղ հրաման մը ի՞նչպէս պիտի ելլէ ։ Մի՛ պղծեր աս սուրբ օրը այսպիսի սոսկալի պատուհասով. ողորմած է Աստուած, դո՛ւն ալ անոր նմանէ. թէ որ չես կրնար ներել, տալու պատիժդ ուշացուր, որպէս զի եկեղեցւոյ երգերուն մէջ մեռնողի մը ձայնը չխառնուի ։ — Կը կատարեմ խնդիրքդ, ըսաւ կայսրը. բայց թերեւս վճիռը ուշացընելէս՝ քեզի ու որդւոցդ վնաս ըլլայ. իմ հոգիս ալ կ՚ազատես, բայց մարմինս կը կորսնցընես ” ։

2 Աս որ իմացաւ Միքայէլ, կանչեց դաւակիցները, սպառնացաւ անոնց որ եթէ զիս աս գիշեր բանտէն չհանէք, ամէնքնիդ ալ կայսեր կը մատնեմ. խօսք տուին իրեն, ու բանտապանը կաշառքով որսացին ։ Սովորութիւն էր որ պալատին քահանաները հոն չէին պառկեր, ամէն առաւօտ

---

1 Միքայէլ Թլուատին դաւակցութիւնը ի՞նչ էր ։
2 Ի՞նչպէս սպաննուեցաւ Լեւոն ։

կանուխ կ'երթային ու կայսեր առջևը գիշերային ժամերգութիւնը կ'ընէին. Լեւոն ալ իր ձայնին գեղեցկութեանը վրայ մեծ համարում ունենալով՝ անպակաս հոն կ'երթար, հետերնին կ'երգէր: Միքայելին բարեկամները քահանայի հագուստին տակը թուրերնին պահած՝ մատրանը մէջ կը պահուըտին: Արևը ելլելուն պէս ժամերգութիւնը կը սկսի. կայսրը շարական մը երգել սկսելուն պէս դաւակիցները կը վազեն վրան: Քաջասիրտ կայսրը կը վազէ՝ խորանին վրայի խաչը կ'առնու, անով կը կռուի թշնամեացը հետ ու մէկ քանին գետինը կը փռէ. բայց անոնց բազմութենէն կը յաղթուի: Տեսնելով որ զինուորին մէկը թուրը քաշած գլուխը պիտի կտրէ, կ'աղաչէ որ խաչելութեան սիրոյն համար ողորմի իրեն. "Ողորմութեան ատեն չէ, վրէժխնդրութեան ատեն է", կը կանչէ զինուորը, կը զարնէ, ու խաչը բռնած թևը կը կտրէ կը ձգէ, մէյմըն ալ կը վերցընէ թուրն ու կայսեր գլուխը կը թռցընէ: Հոն մարմնոյն վրայ ամէն կերպ նախատինք ընելէն ետև, քաշքըռտելով ալ կ'առնեն կրկէսը կը տանին կը ձգեն որ հասարակ ժողովուրդն ալ ուզած նախատինքն ընէ անոր (820):

[1] Եղաւ Միքայել բանտէն, պալատը մտաւ ու թագաւորեց. դեռ շղթաներով կապուած ձեռքը կայսերական գաւազանը առին, ու մէկէն դարբիններ հասուցին որ ոտքի, ձեռքի շղթաները կոտրեն, որովհետև անոնց բանալիքն Լեւոն պահեր էր: Երբոր իմացան քաղաքացիք որ կայսրը

[1] Միքայել ի՞նչ կերպով թագաւորեց:

սպաննուեր է, ու մահապարտը անոր տեղը Թագաւորեր է՝ ապշեցան մնացին։ Լսեց Նիկեփորոս պատրիարգն ալ իր աքսորանացը մէջ Լեւոնի մահն ու ըսաւ. “Մեծ Թշնամիէ մը ազատեցաւ եկեղեցին, բայց կայսրութիւնը մեծ Թագաւոր մը կորսնցուց ,,։

1 ՊԱՂՏԱՏՈՒ ԱՄԻՐԱՊԵՏՆԵՐԸ։ — Էպիւլ-Ապպաս (կամ Աբբաս) որ Իւմմեանց դէմ ըրած արիւնահեղութեանցը համար Արիւնարբու ալ ըսուեցաւ, նոր իշխանութիւն մը հաստատեց՝ որ իր անունովը իշխանութիւն Աբբասեանց ըսուեցաւ, և ասոնց ժամանակը արուեստներն ու քաղաքականութիւնը շատ առաջ գնացին Արաբացւոց մէջ (750)։ Անոր յաջորդը Էպու-Ճաֆէր Էլմանսուր կամ Յաղթական ըսուածը, Տիգրիս ու Եփրատ գետերուն խառնուած տեղը հին Բաբելոնի աւերակներէն քիչ հեռու Պաղտատ քաղաքը շինեց, ու Բաբելոնի պէս մեծագործութիւններով ջանաց զանիկայ զարդարել։ Իր պալատներուն քովը դպրոցներ շինել տուաւ, գիտուն մարդիկ կանչեց քովը, Յունաց լեզուին հետ փիլիսոփայութիւնն ու աստղաբաշխութիւնն ալ շատ ծաղկեցուց։ Գիտութեանց վրայ այնչափ հոգ ընելու առենը՝ միանգամայն կը ջանար որ իր ցեղին իշխանութիւնն ալ հաստատէ. ուստի խռովարարները կը պատժէր ու ապստամբութիւնները կը նուաճէր։

---

1 Աբբասեանց իշխանութիւնը ուսկից սկսաւ։ — Էլմանսուր ամիրապետը ինչ կարգաւորութիւններ ըրաւ։

[1] Իր յաջորդը Մուհամմէտ-Մահատի (775) շատ առատաձեռն մարդ էր. Մէքքէ ուխտի գնացած ժամանակը հետը ուղտերով սառ կը տանէր, ճամբուն վրայ ալ ճանապարհորդաց համար ջրըշեղջներ ու իջևաններ շինել կուտար։ Ասոր որդւոցը մէկը՝ որ կ՚ըսուէր Հարուն-Էլ-Ռաշիտ, ինչուան Կոստանդնուպոլսոյ նեղուցը գնաց, և Իրենէ Թագուհին հարկադրեցաւ տարին եօթանասուն հազար ոսկի տուրք տալու անոր։

[2] Մուսա-Էլ-Հատի (748) խիստ քիչ ժամանակ ամիրապետութիւն ըրաւ, և աթոռը թողուց հօրը կուտոր Հարուն-Էլ-Ռաշիտին, որուն նման ամիրապետ դեռ չէր եղած։ Նիկեփորոս կայսրը Իրենէ Թագուհւոյն անոր հետ դրած դաշինքը աւրեց, ու մարդ խրկեց ամիրապետին իմացընելու որ ալ տուրք չեմ տար։ Դեսպանները եկան, ընելիքնին զուրցելէն ետքը խուրձ մը թուր ցցուցին։ Մէջքի թուրը քաշեց Հարուն, մէկ զարնուածքով մը կտրեց զանոնք ու կանչեց. “ Յանուն Աստուծոյ գթածին և ողորմածի, Հարուն-Էլ-Ռաշիտ, հրամանատար հաւատացելոց, առ Նիկեփորոս, շուն Հռովմայեցի, որդի մօր անհաւատի։ Թուղթդ կարդացի. պատասխանը ինծմէ պիտի չլսնես, պիտի տեսնես ”։ Եւ մէկէն հեղեղի պէս իր բազմաթիւ գունդերովը Փոքր Ասիան ծածկեց։ Կայսրը սարսափած՝ խոստացաւ որ հարկը վճարէ. բայց թշնամիք տէրութեան սահմանէն դուրս ելածնուն պէս՝ չուզեց

---

[1] Իր յաջորդին վրայ ինչ կը պատմուի։
[2] Հարուն-Էլ-Ռաշիտ ինչպէս ըրաւ ամիրապետութիւնը։

խոստմունքը կատարել։ Ըսուած մը հարիւր երեսունըհինգ հազար Արաբացիք վռնտեցին, ու չարաչար յաղթեցին անոր, ինչուան Կոստանդնուպօլիսն ալ կ'առնէին՝ թէ որ տէրութեանը մէջ խռովութիւն ելլելով՝ ամիրապետը ետ դառնալու չստիպուէր։

1 Բոլոր թշնամեաց յաղթելէն ետև Հարուն, սկսաւ գիտութիւններն ու արուեստները ծաղկեցնել։ Ամէն տեղ դպրոցներ բանալ տուաւ, բժշկականութեան, փիլիսոփայութեան, աստղաբաշխութեան, չափաբերական ուսմանց վրայ գրուած շատ գրքեր թարգմանել տուաւ, ու ամէն տեղ աս ուսմունքները տարածեց։

2 Երբոր Հարուն այսպիսի փառաւորութեան մէջ էր, Մեծին Կարոլոսի դեսպանները եկան ու իր պաշտպանութիւնը կը խնդրէին քրիստոնէից համար։ Հարցուց իմացաւ ամիրապետը կայսեր զօրութիւնը, ու փառաւոր ընծաներով դեսպան խրկեց անոր, գլխաւոր ընծաներն ալ էին ճերմակ փիղ մը, Արաբիոյ համեմներու հոտաւէտ խունկեր, մետաքսագործ դիպակներ, ջրաբաշխական անուաւոր ժամացոյց մը, որ ան ատենը շատ զարմանալի բան էր։ Ասոնցմէ զատ խրկեց նաև Քրիստոսի Տեառն մերոյ գերեզմանին բանալին այսպիսի նամակով մը. “ Կարոլոսի իշխանութեանը տակ կը ձգեմ Աբրահամու խոստացուած ու Յեսուայ ցուցուած երկիրը. և ես աս երկրին վրայ իրեն փոխանորդը պիտի ըլլամ։ Երբոր կ'ու-

---

1 Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ։

2 Մեծին Կարոլոսի հետ ի՞նչպէս բարեկամացաւ։

զէ, թո՛ղ դեսպան խրկէ ինծի, տեսնէ թէ ստ դաւառին եկամուտները աղէկ կը մատակարարե՞մ թէ չէ,,: Մեծն Կարոլոս ալ մեծ հանդիսով ընդունեցաւ Հարունին դեսպանները, և անոնց Սպանիոյ ձիեր ու ջորիներ, Ֆրիզիայի ազնիւ չուխաներ, և առիւծ ու վագր որսալու համար կատաղի ու թեթևընթաց շներ տուաւ որ իրենց տիրոջը ընծայ տանին:

[1] Սակայն, ինչպէս ամէն երևելի թագաւորաց, ասանկ ալ Հարունին գլխուն շատ դժբաղդութիւններ եկան. Ալի-Իտրիսին յաջորդներէն մէկը 788ին Մաւրիտանիա փախաւ ու հոն Ֆէս քաղաքը շինեց. Թանճերին ու Սեպտէին տիրեց, և Իտրիսեանց իշխանութիւնը հաստատեց: Ութը տարի ետքն ալ Աղլապի որդին Իպրահիմ, որ Ափրիկէի կուսակալն էր, գլուխ քաշեց Հարունէն ու Աղլապեանց իշխանութիւնը հաստատեց, որ Ֆէսի տէրութենէն ինչուան Եգիպտոսի սահմանը իշխեցին, և Գայրուանը իրենց մայրաքաղաք ըրին:

[2] Հարունի որդին և յաջորդը Էմին (809), չորս տարիէն ետքը ամիրապետութենէն ձգուեցաւ ու տեղը անցաւ իր եղբայրը Էլմէմուն, որ Դահէր զօրավարին օգնութեամբը թագաւորութիւնը ձեռք բերելուն համար՝ անոր վարձ տուաւ Խորասանի երկիրը. բայց քիչ ատենէն ապստամբեցաւ Դահէր ու Դահէրեանց իշխանութիւնը հաս-

---

1 Հարունի ժամանակը ի՞նչ նոր իշխանութիւններ ելան:

2 Հարուն-էլ-Ռաշիտին ո՞վ յաջորդեց: — Էլմէմունի վրայ ի՞նչ կը պատմուի:

տատեց ։ Զեղխութեանն ու շռայլութեանը կողմանէ բոլոր իր նախորդները անցուց Էլմէմուն ։ Հրաշակերտ պալատ մը ունէր , ամենայն հարստութեամբ ու երեսունըութը հազար գորգերով զարդարած . մէջը վեցհարիւր միայն դռնապան կար կ'ըսեն ։ Պարտէզին մէջ ոսկիէ ու արծաթէ ծառ մը շինել տուեր , որուն ճիւղերուն վրայ ալ ոսկիէ ու արծաթէ թռչուններ կային , և քանի որ հովը կը զարնէր՝ ան թռչունները կը թռչըտէին , կ'ըսեն , ու գարնան ատեննուան պէս անուշ ձայներով կ'երգէին ։ Միանգամայն կը ջանար աս ամիրապետը նաև ուսմունքն ու գրագիտութիւնը ծաղկեցընելու ։ Ինքը կ'ըսէր թէ իմաստուն մարդիկ մասնաւոր կերպով աշխարհք խրկուած են Աստուծմէ որ մարդուս խելքը կատարելագործեն . և աւելի Յունաց գրքերուն վրայ կը զմայլէր՝ ըսելով թէ Մարդկային մտաց ծայրագոյն կատարելութիւնը անոնց մէջ կ'երևնայ ։ Ան ատենը բացուեցան Պաղտատի , Պասրայի և Նիւշապուրի հռչակաւոր դպրոցները , և անոնց մէջ շատ ծաղկեցան բժշկութիւն , վիրաբուժութիւն , աշխարհագրութիւն և աստղաբաշխութիւն ։ Մէկ կողմանէ ալ ան դպրոցներուն մէջ Արիստոտելի փիլիսոփայութիւնը գործածուելով , Ղուրանին վրայ շատ տարակոյսներ կ'ելլէին , և անով նոր նոր աղանդներ զանազան ապստամբութեանց և խռովութեանց պատճառ կ'ըլլային ։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Պատմութիւն արևելեան կայսերաց՝ Միքայէլ Թլուատէն մինչև Ռոմանոս Բ, և Պաղտատու ամիրապետաց՝ Էլ-Մէմունէն մինչև Քարմաթացիք (820–973)։ Արևելեան կայսերք. — Միքայէլ Թլուատ. — Թովմաս զօրավարը. — Իրենէոս իշխանը. — Թէոֆիլոս. — Իր քաջարփութիւնը. — Մանուէլ Մամիկոնեան զօրավարը. — Թէոֆիլոս կայսեր պալատը. — Միքայէլ Գ. — Արևելեան հերձուածը. — Փոտ. — Վասիլ արշակունի. — Կոստանդնուպօլիս երթալը. — Կայսերութիւնը. — Ըրած բարեկարգութիւնները. — Սարակինոսաց հետ պատերազմը. — Թէոֆիլակտոս երիտասարդը. — Վասիլին երկրորդ անգամ Սարակինոսաց հետ պարտուիլը. — Լեւոն Զ. — Կոստանդին Զ Պէրփէրօծէն. — Թէոֆիլակտոս պատրիարքը. — Ռոմանոս Բ. — Պաղտատու ամիրապետները. — Մութթասէմ. — Հերետիկոսութիւնք. — Թուրքք. — Քարմաթացիք։

¹ *Միքայէլ կայսրը, որ Թլուատ ըսուեցաւ, աննշան ազգէ էր, և այնպէս տգէտ որ ձի հեծնալէն ու զէնք շարժելէն զատ ուրիշ բան չէր գիտեր. գիտութիւնները կ'արհամարհէր, կ'արգիլէր որ տղոց կարդալ գրել չսորվեցընեն. կրօնքը ոտքի տակ կ'առնէր, ամէն տեսակ անկարգութիւնը օրինաւոր կը սեպէր, Քրիստոսի Տեառն մերոյ յարու-*

---

¹ *Միքայէլ Թլուատ ինչպէս ըրաւ կայսերութիւնը։*

թիւնը առասպել կը համարէր, աստուածապան Յուդան սրբոց կարգը կը դնէր ։

[1] Արեւելեան գնդին զօրավարը Թովմաս շատոնց կ'ուզէր Լեւոն կայսեր մահուան վրէժը հանել, ուստի գլուխ քաշեց Միքայէլի դէմ, և շատ մը կտրիճ երիտասարդներ հետը միացան ։ Իր ճերմակ մազերովը, պատկառելի դէմքովը, վեհանձն առատաձեռնութեամբն ու քաղցր բնաւորութեամբը ամենուն պատկառելի ու սիրելի էր Թովմաս ։ Ճարտարութեանը, քաջութեանն ու պերճախօսութեանը համար ալ արժանի էր կայսերութեան, բայց մէկ սխալմունքով մը կայսերութենէն ալ՝ կեանքէն ալ զրկուեցաւ ։ Ութսուն հազար Սարակինոսաց յաղթելէն ետքը, անոնցմով գնաց Կոստանդնուպօլիսը պաշարեց ։ Երբոր տեսան Յոյնք որ օտարները իրեն օգնութիւն կանչեց, մոռցան անոր կատարելութիւններն ու Միքայէլին կողմանէ հետը պատերազմեցան, յաղթեցին, բռնեցին զինքն ու Միքայէլին ձեռքը տուին. ան ալ իշու մը վրայ հեծցուցած՝ բանակին մէջ պտըտցընելէն ետքը մեռցընել տուաւ ։

[2] Երբոր Սարակինոսները գնացին Սիկիլիոյ տիրեցին, կայսրը կանչելով ըսաւ Իրենէոս իշխանին. « Ուրախակից եմ քեզի որ այնպիսի հեռաւոր կղզի մը կառավարութեան հոգէն ազատեցանք ։ — Թէ որ քանի մը ուրիշ ասանկ երկիրներ ալ կորսնցընելու ըլլանք, ըսաւ Իրենէոս, յու-

---

1 Թովմաս զօրավարին վրայ ինչ կը պատմուի ։

2 Միքայէլ կայսեր անհոգութիւնը ինչ աստիճանի էր ։

սամ որ դուն ալ կայսերութեան հոգէն կ'ազատիս ,,: Ինը տարի թագաւորեց Միքայէլ, ու Կրետէն, Սիկիլիան և Դալմատիան կորսընցուց:

[1] Անոր յաջորդեց որդին Թէոփիլոս: Լեւոնը սպաննողները կը կարծէին որ պատուոյ պիտի հասնին, և Թէոփիլոս զամէնքն ալ բռնեց սպաննել տուաւ. և որպէս զի առուտուրի մէջ խարդախութիւն չըլլայ, շատ անգամ ինքը անձամբ շուկայ կ'իջնար կը պտըտէր: Զօրքը կարգաւորեց, և քաջութեամբ անոնց գլուխը կեցած կը պատերազմէր: Անգամ մը Սարակինոսաց դէմ պատերազմելու ատեն գրեթէ մինակ յարձակեցաւ թշնամւոյն վրայ: Մանուէլ Մամիկոնեան քաջ զօրավարը կայսեր վտանգը տեսնելով, քովը վազեց, “ Կայսր, ըսաւ, աս թուրս քեզի լայն ճամբայ մը պիտի բանայ. չթողունք որ անհաւատները պարծին թէ քովերնին կայսր մը գերի ունին ,,. ու ջանաց որ կայսրը դուրս հանէ: Երբոր տեսաւ որ անիկայ փախչիլը վատութիւն սեպելով չուզեր գալ, թուրը անոր կուրծքին դրաւ, ու “ Եկո՛ւր ետեւէս, կանչեց. իսկ եթէ մեռնիլ կ'ուզես, Մամիկոնէի մը ձեռքէն մեռիր քան թէ Սարակինոսի ,,: Խոնարհեցաւ Թէոփիլոս, իր ազատարարին ետեւէն գնաց, ու բանակին գլուխը կեցած ան աստիճանի վախ ձգեց Արաբացւոց սիրտը, որ մէյմըն ալ չուզեցին հետը պատերազմիլ:

---

[1] Յաջորդը ո՞վ եղաւ, և ինչպէս ըրաւ կայսերութիւնը: — Մանուէլ Մամիկոնեան ինչ քաջութիւն ցուցուց:

1 Թէոփիլոս լսելով Միւթթաւէլ ամիրապետին Պաղտատու մէջ կանգնած շէնքերուն փառաւորութիւնը, չուզեց անկէ վար մնալ. իր մայրաքաղաքին մէջ հոյակապ պալատ մը շինել տուաւ, և զարդարեց անթիւ ոսկիապատ մարմարիոնէ սիւներով և արծաթապատ ընդարձակ աւազաններով, որոնց մէջ տեսակ տեսակ պտուղ կը լեցունէր ու ժողովրդեան բաժնել կու տար. Թող մէջի արձանները, ոսկեզօծ գմբէթները, ոսկի առիւծներն որ ողջ առիւծներու պէս կը մռնչէին, և ան ոսկիէ ծառը՝ որուն ճիւղերուն վրայ ոսկիէ թռչուններ ծածուկ զսպանակներով կը թռչռտէին ու կ'երգէին:

2 Թէոփիլոսի որդին Միքայէլ Գ որ Արբշիռ կամ Գինեմոլ ըսուեցաւ (842), դեռ պզտիկ ըլլալով, իրեն խնամակալ եղաւ Թէոդորա մայրը, որ ամէն ջանք ըրաւ տէրութիւնը բարեկարգելու համար: Բայց երբոր կայսրը քիչ մը տարիքը առաւ, իր Բարդաս հօրեղբօրը գրգռութեամբը մօրը ձեռքէն իշխանութիւնը առաւ, և Ներոնի օրինակին հետեւելով՝ անոր ճամբան բռնեց. անոր պէս կրկեսին մէջ կառք կը վազցնէր, կառավարներուն հետ բարեկամութիւն կ'ընէր և ամէն տեսակ զեղխութեան ետեւէ կ'ըլլար: Իր թագաւորութեան ատենը սկսաւ արևելեան հերձուածը, և Յունաց եկեղեցին Լատինացւոց եկեղեցիէն

---

1 Ի՞նչ մեծագործութիւններ ըրաւ Թէոփիլոս կայսրը:

2 Միքայէլ Գ ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը. — Ի՞նչ անգթութիւններ ըրաւ:

բաժնուեցաւ : Կոստանդնուպօլսոյ սրբակաց Իգնատիոս պատրիարքը իշխանութենէն ձգեց Միքայէլ, անօրինաբար տանջել տալով զանիկայ, ու տեղը դրաւ իր Փոտ անձնապաշտպանը : Նիկողայոս Ա պապը աս լսելուն պէս՝ Փոտը բանադրեց : Փոտ ալ զպապը բանադրեց, որով կատարեալ հերձուած ընկաւ երկու եկեղեցեաց մէջ մինչեւ 1054, անկէց ետքն ալ հերձուածը աւելի հաստատուեցաւ : Այն միջոցին Վասիլ անունով մէկը զկայսրը սպաննեց ու ինքը տեղը անցաւ :

1 Աս Վասիլը, արշակունի ազնուականացի մը որդի, ան Հայերէն էր որ Մակեդոնիոյ Ադրիանուպօլիս (Էտիրնէ) քաղաքը կը նստէին : Բուլղարաց Թագաւորը Կրումնոս երբոր եկաւ ան տեղերուն առրեց, մէկալ գերիներուն հետ զինքն ալ իր երկիրը տարաւ, բայց ան գերիները իր յաջորդաց ժամանակը ազատեցան ու իրենց հայրենիքը դարձան :

2 Ան ատենը Վասիլ քսանըհինգ տարեկան էր. աներկիւղ քաջութիւն ու կարգէ դուրս ոյժ մը ունէր, հասակը բարձր ու տեսքը գեղեցիկ : Քիչ մը ժամանակ Ադրիանուպօլիս քաղաքը ծնողացը քով աշխատելէն ետքը, իր տունը հողայլու բաւական բան չվաստըկելով՝ միտքը դրաւ որ Կոստանդնուպօլիս մայրաքաղաքը երթայ : Ու քիչ ատենէն հոն Թագաւորելու մարդը ոտքով հոն գնաց, իրիկուան դէմ ներս մտաւ առանց ստակի, առանց պաշտպանի, առանց բնակութեան, և եկեղեցւոյ

---

1 Ո՞վ էր Վասիլ :
2 Ի՞նչ կերպով անունն հանեց :

մը դրան առջեւը քնացաւ ։ Վառանգեանք իմանալով ներս առաւ զինքը, ու կայսեր ապարանքներէն մէկուն յանձնեց, ան ալ զինքը իրեն զինակիր ըրաւ ։ Վրան շատ չանցաւ, Վասիլ իր տիրոջը հետ Պեղոպոննէս գնաց ու հոն իր քաջութեան անունը տարածուեցաւ ։

1 Երբոր Կոստանդնուպոլիս դառնալով տէրը Բուլղարաց Թագաւորին դեսպաններին սեղան մը ըրաւ, դեսպանը պարծեցաւ թէ անանկ քաջ ծառայ մը ունիմ որ մէկը չկրնար յաղթել անոր ։ Տէրը կանչեց Վասիլը որ անոր դէմն ելլէ. վազեց Վասիլ ու ան յաղթանդամ Բուլղարին բռնեց ու գետինը զարնելը մէկ ըրաւ ։ Այս յաղթութեան ձայնը բոլոր քաղաքը տարածուեցաւ, և Վասլին անունը ամենուն բերանը անցաւ գովութեամբ ։ Միքայէլ կայսրը ան ատենները փառաւոր ձի մը գնեց. անանկ խստերախ որ մէկ ձիաւոր մը վրան չէր կրնար հեծնալ. խոստացաւ Վասիլ որ ինքը զանիկայ սանձէ. խօսքը կատարեց, ու կայսրը զինքը իրեն ախոռապետ ըրաւ. անկէց ետքը Վասիլ պալատին մէջ խելքովը՝ ու բանակին մէջ քաջութեամբը մեծ անուն հանեց ։

2 Քիչ ատենէն չարախօսները Վասիլը կայսեր աչքէն հանեցին, որ ինչուան զանիկայ սպաննելու պատրաստուեցաւ ։ Իմացաւ Վասիլ, ինքը աճապարեց, ու երբոր գինով պառկած էր Միքայէլ կայսրը՝ զարկաւ զինքը սպաննեց, ու կայսերական պալատին տիրեց ։

---

1 Վրան ինչ մասնաւոր քաջութիւն կը պատմուի ։
2 Ի՞նչ կերպով կայսր եղաւ ։

[1] Իր կայսրութեան ժամանակը Յունաց տէ-րութիւնը նորէն զօրացաւ. տէրութեան գանձը պարպուեր էր. ամէն ջանք ըրաւ Վասիլ անոր լեցընելու. աւելորդ ծախքերը վերուց, ժողովըր-դեան տուրքերը թեթեւցուց, դատաւորաց ան-իրաւութիւնները դադրեցուց, օրէնքները նորո-գեց, կարգաւորեց եւ ժողվեց, ոճի մը վրայ առաւ, որ եւ ըսուեցան Օրէնք Վասիլի, փոքր իշխանու-թեանց ձգեց, Իգնատիոսը նորէն պատրիարգ ըրաւ եւ բոլոր տէրութիւնը խաղաղեց :

[2] Անկէ ետքը սկսաւ Վասիլ զօրքը կարգաւո-րել. տեսաւ որ թէպէտ շատ զօրք կայ, սակայն ամէնքն ալ վատթարած են, անկիրթ, անթօշակ ու անզէն : Առատաձեռնութիւնը լսելով ամէն տեղէ հինաւուրց զինուորները վազեցին եկան. եւ Վասիլ անոնց մէջ կրթութիւն հաստատեց, քաջու-թիւննին վառեց, թոշակնին որոշեց, եւ պատրաս-տուեցաւ արտաքին թշնամեաց վրայ յարձակե-լու. վասն զի Սարակինոսք եկեր տէրութեան գաւառները ոտնակոխ կ'ընէին : Ելաւ վրանին Վասիլ, եւ անձամբ յարձակեցաւ Արաբացւոց մէջ, շատերը ուժքին տակը փռեց, բայց ինքն ալ բազմութենէն պաշարուեցաւ մինակ : Յանկարծ անդրէն անծանօթ զինուորին մէկը զօրքը պատռեց անցաւ, սարսափեցուց թշնամիները, ցրուեց զա-նոնք եւ կայսեր կեանքը փրկեց : Վասիլ մէկէն զօրքը ժողվեց, դիմեց թշնամւոյն վրայ, զարկաւ հալա-

---

[1] Ի՞նչ բարեկարգութիւններ ըրաւ :

[2] Զօրքը ի՞նչպէս կարգաւորեց : — Թէոփիլակ-տոսի պատմութիւնը ո՞րն է :

ծեց զանոնք, և հարուստ աւարով ու գերիներով մայրաքաղաքը դարձաւ: Եւ որովհետև իր երախտագիտութիւնն ալ քաջութեանը պէս գործունեայ էր, ամէն տեղ փնտռել տուաւ զինքը ազատող քաջ զինուորը, և էր անիկայ Թէոփիլակտոս անունով Հայ մը, որուն փառաւոր պարգևներ տուաւ կայսրը ու մեծ պատուոյ հասուց:

1 Վասիլին քաջութիւնը բոլոր արևելք հռչակուելով, շատ քաղաքներ ու իշխաններ ամիրապետին լուծը թօթափեցին ու եկան կայսեր հնազանդեցան: Ինքն ալ չարքաշութեան օրինակովը ու քաջալերութեամբը բոլոր զօրաց սիրտը վառելով. Եփրատ գետէն անդին անցաւ, թշնամեացը յաղթեց ու շատ քաղաքներուն տիրեց:

2 Արաբացիք աս լսելով անմիտ բարկութեամբ Յունաց դէմ ելան. երբոր Յոյնք անոնց կատաղի յարձակմունքէն սարսափած սկսան փախչիլ, Վասիլ քանի մը գունդի գլուխը կեցած՝ թուրը ձեռքը յարձակեցաւ. ետևէն եկող քաջերուն շատը Արաբացւոց թրին բերանը ընկան և կայսրը պաշարուեցաւ. երբոր ալ Վասիլ յուսահատած ինքզինքը կ'ուզէր սպաննել, Յոյնք վախը մէկդի ձգեցին, վազեցին զինքը ազատելու: Սարակինոսաց վրայ դիմեցին, զարկին հալածեցին ու անձնատուր ըլլալ չուզողները թրէ անցուցին: Այն կատարեալ յաղթութենէն ետքը յաղթանակաւ Կոստանդնուպօլիս դարձաւ կայսրը, ու պատրիարքը զինքը դափնիով պսակեց:

---

1 Ի՞նչ արշաւանք ըրաւ Վասիլ:
2 Արաբացւոց դէմ ի՞նչ յաղթութիւն ըրաւ:

ցուց։ Այրի կին մը Մակեդոնիոյ մէջ հիւանդութեանը ատեն զինքը հոգացեր էր. զանիկայ ալ Կոստանդնուպոլիս բերել տուաւ ու պատուեց։ — Իրեն յաջորդեց որդին Լեւոն Զ։

[1] Լեւոն Զ որ շատ ուսումնասէր ըլլալուն համար իմաստասէր ըսուեցաւ (886), հօրը պատերազմասէր հոգին չունենալով, երբոր Բուլղարները, Ռուսք և Արաբացիք վրան յարձակեցան, տէրութեան պաշտպանութիւնը յանձնեց Անդրոնիկոս Դուկաս զօրավարին, և ինքը պալատը քաշուած՝ աստեղաբաշխութեան ետևէ կ՚ըլլար, ու աստղերը դիտելով իր զաւակացը բաղդը կը գուշակէր։

[2] Լեւոն իմաստասէրին յաջորդեցին Աղեքսանդր եղբայրն ու գեռահասակ որդին Կոստանդին Զ Պերփիւրոժէն (911)։ Տարի մը ետև եղբօր Աղեքսանդր մեռաւ, Ռոմանոս Լեկապինոս ծովակալը իր աղջիկը Կոստանդինին հետ կարգեց ու անոր գահակից եղաւ, և գրեթէ ինքը մինակ սկսաւ կառավարել տէրութիւնը. Բուլղարները հաշտութիւն ուզելու ստիպեց, Սեւ ծովուն վրայ ալ Ռուսաց յաղթեց (941)։ Բայց իրմէ ետքը կայսրութիւնը նորէն խեղճութեան մէջ ինկաւ։ Կոստանդին Զ բոլոր տէրութեան հոգը իր կնոջը վրայ թողած՝ ինքը ուսման ետևէ կ՚ըլլար, ու Վասիլ Արշակունւոյն վարքը կը շարադրէր։ Ուրիշ կողմանէ մեծամեծ անկարգութիւններ

---

1 Լեւոն Իմաստասէր ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը։

2 Իր յաջորդները որո՞նք եղան։

կ'ըլլային տէրութեան մէջ. վասն զի Ռոմանոսի որդին Թէոփիլակտոս տասնըվեց տարեկան ատենը պատրիարք ընտրուեցաւ, և սաստիկ ձիասիրութեամբը ժողովրդեան գայթակղութեանը պատճառ կ'ըլլար. երկու հազար ձի կը պահէր, խաղողով և արմաւով զանոնք կը կերակրէր ու ազնիւ հոտաւէտ եղեր կը քսէր վրանին։ Մէկ կողմէն ինքը եկեղեցական իշխանութիւնները կը ծախէր, միւս կողմէն ալ Թագուհին տէրութեան պաշտօնները։ Ռոմանոս Բ 959ին թոյն տուաւ իր հօրը Կոստանդինին ու մեռուց զինքը։

[1] ՊԱՂՏԱՏՈՒ ԱՄԻՐԱՊԵՏՆԵՐԸ։ — Պաղտատու ամիրապետութիւնը ներքին խռովութիւններով տկարացեր էր՝ երբոր Մութթասէմ իր Էլմէմուն եղբօրը աթոռը անցաւ (832)։ Ասիկայ Յունաց Թէոփիլոս կայսեր վրայ Գաղատիոյ մէջ մեծ յաղթութիւն մը ըրաւ, իրեք հարիւր հազար քրիստոնեայ ջարդեց ու երեսուն հազար գերի բռնեց։ Բայց իր երկրին մէջ եղած կրօնական կռիւները աս յաջողութեանցը մեծ արդիւնք եղան։ Պապէք անունով մէկը մահմետականաց բարոյականին դէմ մոլորական վարդապետութիւն քարոզելով մեծ քաղաքական կռիւ մը բացաւ, որուն մէջ շատ Արաբացիք մեռան։ Պապէք բռնուեցաւ, սաստիկ տանջանքներու տրուեցաւ, և անոնց վրայ ծիծաղելով մեռաւ։ Աբբասեանք նորանոր ապստամբութեանց դէմը առնելու համար յիսուն հազար

---

[1] Մութթասէմին օրերը ի՞նչ արշաւանք ըրին Արաբացիք։

Թուրքը զինուորներով գունդ մը կազմեցին. բայց անոնք իրենց ազատութիւնները գէշի բանեցնելով, շատ չանցած տէրերուն վրայ սկսան բռնանալ և ուզածնին ընել տալ անոնց:

[1] Ասանկով ան ատենէն Պաղտատու ամիրապետութիւնը սկսաւ օրէ օր անկարանալ հերձուածոց ու Թուրքերուն զօրանալովը: Ամիրապետը մը աղանդէն որ ըլլար՝ զանիկայ կը պաշտպանէր ու մէկալները կը հալածէր. ատով գանգատները կը շատնային, ու անդադար ապստամբութիւններ կ'ելլէին: Մութէ Վէքիլ ամիրապետը Ալիին ու Հիւսէյինին գերեզմանները քանդեց, և կրօնական պատերազմը աւելի գրգռեց: Շիիները՝ որ Ալիին հետեւողներն են՝ զինք ատէին, ու զինքը սպաննել տուին (861): Նոյնպէս սպաննուեցան նաև իր յաջորդները (862-869):

[2] Այս խռովութեանց ատենը Ահմէտ անունով գերի մը որ Թուլունի որդի կամ իսկ Թուլուն կ'ըսուէր, Եգիպտոսը առք հանեց ու Թուլունեանց իշխանութիւնը սկսաւ. Խորասանի մէջ ալ Սաֆֆէրեանք տիրապետեցին (873):

[3] Պատկէքին մոլորութիւնները նորէն դուրս հանեցին 890ին Ապտուլլահ և իր Քարմաթ անունով աշակերտը: Վրան շատ չանցած, աս Քարմաթը սկսաւ ըսել թէ ես մարգարէ եմ, ու Մահ-

---

[1] Ի՞նչ կերպով տկարացաւ Պաղտատու ամիրապետութիւնը:

[2] Թուլունեանց ու Սաֆֆէրեանց իշխանութիւնները ի՞նչպէս սկսան:

[3] Ո՞վ էր Քարմաթ և ի՞նչպէս զօրացաւ:

մեալ և Յովհաննէս Միկոտչին անդը խրկուած էմ: Պէտէնէկները՝ այսինքն վրանաբնակ Սկիւթացիք քովը ժողվուեցան, և ինքը զօրաց ամէն տեսակ ապատութիւն կուտար: Քարմաթեանք խալիֆաներուն յաղթելով հինգ հարիւր ձիաւորով սիրտ ըրին ինչուան Պաղտատու դուռը երթալու: Միւքթէտիր ամիրապետը դեսպան խրկեց ապստամբաց գլխաւորին. անիկայ արհամարհութեամբ մը դեսպաններուն նայելով ըսաւ. “ Ձեր տէրը իրեք հարիւր հազար զինուոր ունի, բայց ատոնց մէջ իրեք հատ չկրնար գտնել ”: Եւ մէկէն իրեններէն մէկուն հրամայեց որ Թուրը փորը խոթէ, ինքզինքը սպաննէ, ուրիշի մը՝ որ ինքզինքը Տիգրիս գետը նետէ, երրորդի մըն ալ որ բարձր տեղէ մը ինքզինքը գահավէժ ընէ: Իրեքն ալ շուտ մը հրամանը կատարեցին. “ Իրիկուն չեղած, ըսաւ, ձեր զօրավարը իմ շներուս հետ շղթայով պիտի կապուի ”. և իրաւցընէ խօսքը կատարեց: Քարմաթեանք իրենց արշաւանացը մէջ ոչ մէկուն կենացը կը խնայէին, ոչ ստացուածքին և ոչ կրօնական բաներուն. 920ին ասոնք Մէքքէն առին, և երեսուն հազար Տաճիկ թրէ անցուցին. սակայն այնպիսի անգթութիւններով իրենք զիրենք ալ կործանեցին:

[1] Քարմաթեանց մէկը՝ որ Ուպէյտուլլահ կ'ըսուէր, Գայրուանի Աղլապեանքը ու Ֆէսի Իտրիսեանքը կործանեց, ու Ֆաթիմեանց իշխանութիւնը հաստատեց. ասոնց անունը առնուած էր Մահ-

---

[1] Ֆաթիմեանց իշխանութիւնը ինչպէս սկսաւ: — Ո՞վ շինեց Գահիրէ քաղաքը:

մեռաւ Ֆաթիմէ աղջկանը անունէն՝ որ Ալիի կինն էր (908)։ Անոր յաջորդներէն մէկը Էլ-Մուիզ, Սարտենիա կղզւոյն ու Եգիպտոսի տիրեց, և հոն Գահիրէ քաղաքը շինեց, որ Աֆրիկէի ամիրապետներուն մայրաքաղաքը եղաւ (973)։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

Պատմութիւն Արևելեան կայսերաց՝ Ռոմանոս Երկրորդէն մինչև Ռոմանոս Դիոժէն, և Պաղտատու ամիրապետաց՝ Տուղրիլէն մինչև Ալփասլան (973-1072)։ Արևելեան կայսերք. — Ռոմանոս Բ. — Նիկեփորոս. — Չմշկիկ. — Ըրած պատերազմները. — Վասիլ Երկրորդին. — Չմշկիկի մահը. — Վասիլ Բ. — Բուլղարաց հետ ըրած յաղթութիւնը. — Իր յաջորդները. — Զոյի և Թէոդորա. — Խառնակ կռիւներ. — Անիին առումը. — Եւդոկիա Թագուհին. — Սելճուգեանց իշխանութիւնը. — Ռոմանոս Դիոժէն. — Ալփասլանին հետ ըրած պատերազմները. — Գերի իյնալն ու ազատիլը. — Մահը. — Պաղտատու ամիրապետութիւնը. — Ամիրապետք. — Թուրքք. — Տուղրիլ Բէկ. — Ըրած արշաւանքն ու աւերմունքները. — Մահը. — Ալփասլան. — Անի քաղաքին փրկելը. — Որդին արշաւանքները. — Մահը։

1 ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԱՅՍԵՐՔ։ — Ռոմանոս Բ հայրասպան կայսրը կարողութիւն չունէր իր տէրութիւնը ղեկավարելու. ամէն օր բանը գործքն էր կրկէս երթալ, ծերակուտին կոչունք ընել, ժո-

---

1 Ռոմանոս Բ ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը։

ժողովրդեան առատ ստակ բաժնել, գնտակ խաղալ, Վոսփորոսին մէջ վեր վար նաւակով պտըտիլ. վարազ որսալ, և խեղկունները պարով ու երաժշտութեամբ զուարճանալ: Կինը զինքը թունաւորեց, և Նիկեփորոս Փոկաս անունով քաջ զօրավարին տուաւ կայսրութիւնը: Նիկեփորոս՝ Չմշկիկ իշխանին օգնութեամբը գնաց Արաբացւոց ձեռքէն Ասորւոց երկրին մէկ մասը առաւ, իրեք պատերազմով հարիւր քաղաքի տիրեց, և Անտիոքն ալ առնելու վրայ էր. մէյմ' ալ իր կինը Թէոփանէ՝ Չմշկիկին հետ խօսք դնելով մեռուց զանիկայ ու Չմշկիկը կայսր հրատարակեց:

[1] Յովհաննէս Չմշկիկը հայ էր ազգաւ. աթոռը նստելուն պէս առջի գործքն աս եղաւ որ Թէոփանէ թագուհին վանք մը փակեց, և իր քաղցր բնաւորութեամբը, արդարութեամբը, առատաձեռնութեամբը և մանաւանդ յաղթութիւններովը մոռցընել տուաւ ժողովրդեան Նիկեփորոսին սպանութիւնը: Չմշկիկ զօրքն ալ կարգաւորեց, ելաւ Ռուսաց Սվեաթօսլաւ մեծ դքսին վրայ, ու Բուլղարի երկրին մէջ իրեք տարի պատերազմելէն ետքը բոլորովին յաղթեց անոր. Բուլղարաց Փրեսլաւ կամ Մարկիանուպօլիս ըսուած մայրաքաղաքին տիրեց, ու երկիրը իր կայսերութեանը հետ միացուց: Ուզեց նաև Արաբացւոց ձեռքէն երկիրներն ու գերիները ետ առնուլ. Կիլիկիոյ Մոպսուեստիա (Մսիս) քաղաքին քով զարնուեցաւ Երկու հարիւր հազար Արաբացւոց հետ, յաղթեց անոնց, քաղաքին ալ

---

[1] Չմշկիկ կայսրը ի՛նչ յաղթութիւններ ըրաւ:

տիրեց · Տարսոնը սովի բռնելով առաւ · Անտիո֊
քին տիրեց · Բերիա (Հալէպ) քաղաքն ալ անձնա֊
տուր եղաւ, և անոր մէջ շատ դէնք ու պաշար
գտան Յոյնք, հազար չորս հարիւր ջորի և երեք հա֊
րիւր պարկ ոսկի ու արծաթ ։

1 Զմշկիկ հարիւր քաղաքէն աւելի առնելէն
ետքը (որոնց մէջ էր նաև Դամասկոս), Եփրատէն
անցաւ, Սամոսատիա (Սամուսատ), Նփրկերտ
(Մուֆարղին), Ամիդ կամ Տիգրանակերտ (Տիար֊
պէքիր) և Մծբին քաղաքներուն տիրեց · Պաղտա֊
տու վրայ ալ կ'ուզէր երթալ, բայց պաշարը հա֊
տաւ ։ Եա դառնալու ատենը Դամասկոսի քովերը
տեսաւ փառաւոր պալատներ, բարեբեր երկիր֊
ներ ու պարարտ անտառներ, ու զարմանալով
հարցուց թէ որո՞ւն են ասոնք · և երբոր իմացաւ
թէ իր Վասիլ ներքինապետին են եղեր, ըսաւ ·
“ Ուրեմն, Ներքինիին մէկը հարստացընելու հա֊
մար այսչափ ժողովուրդներ իրենց արիւնն ու
ոսկին կուտան, և կայսերք իրենց կեանքը վտանգի
մէջ կը դնեն եղեր ”։

2 Լսեց Ներքինին աս խօսքը, և տեսաւ որ պա֊
լատականները ծիծաղեցան · ինքն ալ քիչ մը անոր
ծիծաղ ձևացուց, բայց սրտին մէջ բարկու֊
թիւնն ու ոխը տիրեց · Նոյն իրիկունը խմելու հա֊
մար կայսեր տուած գաւաթին մէջ թոյն խառ֊
նեց, կայսրը թունաւորեց ։ Յիսուն տարեկան էր
Զմշկիկ, և վեց տարի թագաւորեր էր · կայսե֊

1 Եփրատէն անդին ինչ արշաւանքներ ըրաւ ։
2 Ի՞նչ կերպով մեռաւ ։

րութեան, կործանումը ուշացընելով՝ մեծամեծ զօրավարաց կարգն անցաւ (976)։

[1] Չմշկիկ զաւակ չունէր, ուստի Ռոմանոսի երկու որդիքը Վասիլ Բ ու Կոստանդին Ը մէկտեղ հինգ տարի թագաւորեցին, թէպէտ բոլոր իշխանութիւնը Վասլին ձեռքն էր։ Ինքը Ռուսիոյ Վլատիմիր դքսին հետ կարգեց իր Աննա քոյրը և Ռուսաց քրիստոնէական դաւանութեան օգնեց։ Ետքը բոլոր ույժը Բուլղարաց դէմ դարձուց, որ եօթներորդ դարէն 'ի վեր արձակ համարձակ Յունաց գաւառները աւերակ կ'ընէին։ Քանիցս անգամ հետերնին զարնուելէն ետև վերջապէս նուաճեց զանոնք, թէպէտև անոնց Սամուէլ թագաւորն ալ շատ քաջութիւն ըրաւ։ Վասիլ յանկարծակի վրան հասաւ (1014), տասնըհինգ հազար Բուլղարի աչուըները հանել տուաւ, ու մէկ քանի զօրավարներուն մէկ աչքը հանել տալով՝ հարիւրական Բուլղար գերիներ յանձնեց անոնց որ տանին ետ դարձընեն։ Աս բանիս վրայ Սամուէլ թագաւորը այնչափ տրտմեցաւ որ սրտէն ցաւէն երկու օր ետքը մեռաւ։ Անոր Վլատիսլաւ որդին ալ չկարենալով Յունաց դէմ կենալ, Բուլղարի երկիրը բոլորովին միացաւ արևելեան կայսերութեան հետ 1019ին։

[2] Երբոր Վասիլ Բ Սիկիլիոյ վրայ արշաւելու կը պատրաստուէր, մահը վրայ հասաւ։ Աս Վասիլը ողջայութեան ատենը ծոյլ էր, երիտասարդութեան ատենը անառակ, կատարեալ հասա-

---

[1] Չմշկիկ կայսեր ո՞վ յաջորդեց։
[2] Վասիլ Բ ի՞նչ բնաւորութեան տէր էր։

կին մէջ պատերազմասէր, ծերութեանը մէջ ալ ագահ ու դաժան :

¹ Վասիլ երկրորդէն ետքը Յունաց կայսերութիւնը նորէն իր առջի անհոգութեան մէջն ինկաւ : Երկու քոյր, Զոյի և Թէոդորա, աէրութիւնը կառավարեցին . երկուքն ալ իրենց անարժան տարփածուները ևերկին աթոռը նստեցուցին, որ վատանուն պալատականներ էին (1028-1056) : Կոստանդին Թ. Մոնոմախոս՝ Վեստ Սարգսի մատնութեամբը մեր Անի թագաւորական քաղաքը Գագիկայ ձեռքէն առաւ, ու Կապադովկիոյ մէջ Պիզու քաղաքը անոր տուաւ, Կոստանդնուպոլսոյ մէջ ալ պալատ մը ու թագաւորական գանձէն եկամուտ կարգեց, որով Բագրատունեաց թագաւորութեան կործանմանը պատճառ եղաւ (1045) : Իրեն ատենը Յունաց եկեղեցին Լատինացւոց եկեղեցիէն բոլորովին բաժնուեցաւ : Իրմէ ետքը Միքայէլ Զ. տարի մը միայն թագաւորեց, և անոր նստաւ Իսահակ Կոմնենոս (1057) :

² Ասիկայ մեկէն իր կնկանը (որ Բուլղարաց թագաւորին աղջիկն էր) Օգոստէ անունը տուաւ, գանձին պակասութիւնը լեցուց, պատրիարքն ալ իշխանութենէն ձգեց, որ իրեն ըսեր էր թէ " ինչպէս որ առւին քեզի թագը, անանկ ալ կրնան առնուլ " : Ետքը թագաւորութենէն հրաժա-

---

¹ Վասիլ երկրորդէն ետև կայսերութիւնը որո՞ւ ձեռք անցաւ : — Կոստանդին Մոնոմախոսին ատենը ի՞նչ նշանաւոր դիպուած եղաւ :

² Իսահակ Կոմնենոս ի՞նչպէս ըրաւ կայսերութիւնը :

կ'ըլլային տէրութեան մէջ. վասն զի Ռոմանոսի որդին Թէոփիլակտոս տասնըվեց տարեկան առենը պատրիարք ընտրուեցաւ, և սաստիկ ձիասիրութեամբը ժողովրդեան գայթակղութեանը պատճառ կ'ըլլար. երկու հազար ձի կը պահէր, խաղողով և արմաւով զանոնք կը կերակրէր ու ազնիւ հոտաւէտ իւղեր կը քսէր վրանին: Մէկ կողմէն ինքը եկեղեցական իշխանութիւնները կը ծախէր, մէկալ կողմէն ալ Թագուհին տէրութեան պաշտօնները: Ռոմանոս Բ 959ին թոյն տուաւ իր հօրը Կոստանդինին ու մեռուց զինքը:

1 ՊԱՂՏԱՏՈՒ ԱՄԻՐԱՊԵՏՆԵՐԸ: — Պաղտատու ամիրապետութիւնը ներքին խռովութիւններով տկարացեր էր՝ երբոր Մութթասէմ իր Էլմէմուն եղբօրը տեղը անցաւ (832): Ասիկայ Յունաց Թէոփիլոս կայսեր վրայ Գաղատիոյ մէջ մեծ յաղթութիւն մը ըրաւ, իրեք հարիւր հազար քրիստոնեայ ջարդեց ու երեսուն հազար գերի բռնեց: Բայց իր երկրին մէջ ելած կրօնական կռիւները ատ յաղթութեանցը մեծ արգելք եղան: Պապէք անունով մէկը մահմետականաց բարոյականին դէմ մոլորական վարդապետութիւն քարոզելով՝ մեծ քաղաքական կռիւ մը բացաւ, որուն մէջ շատ Արաբացիք մեռան: Պապէք բռնուեցաւ, սաստիկ տանջանքներու տրուեցաւ, և անոնց վրայ ծիծաղելով մեռաւ: Աբբասեանք նորանոր ապստամբութեանց դէմը առնելու համար յիսուն հազար

---

1 Մութթասէմին օրերը ի՞նչ արշաւանք ըրին Արաբացիք:

Թուրքք զինուորներով գունդ մը կազմեցին · բայց անոնք իրենց ազատութիւնները գէշի բանեցընելով, շատ չանցած տէրերուն վրայ սկսան բռնանալ և ուզածնին ընել տալ անոնց :

1 Ասանկով ան ատենէն Պաղտատու ամիրապետութիւնը սկսաւ օրէ օր տկարանալ հերձուածող ու Թուրքերուն զօրանալովը : Ամիրապետը ո՛ր աղանդէն որ ըլլար՝ զանիկայ կը պաշտպանէր ու մէկալնոնք կը հալածէր · ասով գանգատաւորները կը շատնային, ու անդադար ապստամբութիւններ կ'ելլէին : Միւթէվէքիլ ամիրապետը Ալիին ու Հիւսէյինին գերեզմանները քանդեց, և կրօնական պատերազմը աւելի գրգռեց : Շիիները՝ որ Ալիին հետևողներն են՝ զինք առին, ու զինքը սպաննել տուին (861) : Նոյնպէս սպաննուեցան նաև իր յաջորդները (862–869) :

2 Այս խռովութեանց ատենը Ահմէտ անունով գերի մը որ Թուլունի որդի կամ. իսկն Թուլուն կ'ըսուէր, Եգիպտոսը ձեռք հանեց ու Թուլունեանց իշխանութիւնը սկսաւ · Խորասանի մէջ ալ Սիւֆէրեանք տիրապետեցին (873) :

3 Պարսկէքին մոլորութիւնները նորէն գլուխ հանեցին 890ին Ապտուլլահ և իր Քարմաթ անունով աշակերտը : Վրան շատ չանցած, աս Քարմաթը սկսաւ ըսել թէ ես մարգարէ եմ, ու Մահ-

---

1 Ի՞նչ կերպով տկարացաւ Պաղտատու ամիրապետութիւնը :
2 Թուլունեանց ու Սիւֆէրեանց իշխանութիւնները ի՞նչպէս սկսան :
3 Ո՞վ էր Քարմաթ և ի՞նչպէս զօրացաւ :

մեռաւ եւ Յովհաննէս Մեկրաշին անոր խրկուած էր։ Գէտէզմէնները՝ այսինքն փառաւորեալ Ասպարապետներ քովը ժողվուեցան, եւ ինքը զօրաց ամէն առատ պա֊ տուութիւն կուտար։ Քարմաթեանք խալիֆանե֊ րուն յաղթելով հինգ հարիւր ձիաւորով սիրտ ըրին ինչուան Պաղտատու դուռը երթալու։ Մուք֊ թէտիր ամիրապետը զօրապետն խրկեց ապստամ֊ բաց գլխաւորին. անիկայ արհամարհութեամբ մը դեսպաններուն նայելով ըսաւ. "Ձեր տէրը երեք հարիւր հազար զինուոր ունի, բայց ասոնց մէջ երեք հատ չկրնար գտնալ"։ Եւ մէկէն երեն֊ ներէն մէկուն հրամայեց որ թուրը փորը խոթէ, ինքզինքը սպաննէ, ուրիշի մը՝ որ ինքզինքը Տիգրիս գետը նետէ, երրորդի մըն ալ որ բարձր տեղէ մը ինքզինքը գահավէժ ընէ։ Երեքն ալ շուտ մը հրա֊ մանը կատարեցին. "Երեկուն չեղած, ըսաւ, ձեր զօրավարը իմ շներուս հետ շղթայով պիտի կապուի"․ եւ իրաւցընէ խօսքը կատարեց։ Քար֊ մաթեանք երենց արշաւանաց մէջ ոչ մէկուն կե֊ նացը կը խնայէին, ոչ ստացուածքին եւ ոչ կրօնա֊ կան բաներուն. 920ին ասոնք Մէքքէն առին, եւ յիսուն հազար Տաճիկ թրէ անցուցին. ասկայն այնպիսի անգթութիւններով երենք զիրենք ալ կործանեցին։

1 Քարմաթեանց մէկը՝ որ Ուպէյտուլլահ կ՚ը֊ սուէր, Գայրուանի Աղլաբեանքը ու Ֆէսի Իտրի֊ սեանքը կործանեց, ու Ֆաթիմեանց իշխանութիւնը հաստատեց. ասոնց անունը առնուած էր Մահ֊

---

1 Ֆաթիմեանց իշխանութիւնը ինչպէս սկսաւ։ — Ո՞վ շինեց Գահիրէ քաղաքը։

մէկուն Ֆաթիմէին ազգականը անունէն՝ որ Ալիի կինն էր (908) : Անոր յաջորդներէն մէկը Էլ-Մուիզ, Սարտենիա կղզւոյն ու Եգիպտոսի տիրեց, և հոն Գահիրէ քաղաքը շինեց, որ Աֆրիկէի ամիրապետներուն մայրաքաղաքը եղաւ (973) :

## ԳԼՈՒԽ ԻԲ.

Պատմութիւն Արևելեան կայսերաց՝ Ռոմանոս Երկրորդէն մինչև Ռոմանոս Դիոժէն, և Պաղտատու ամիրապետաց՝ Տողրիլէն մինչև Ալփասլան (973-1072) : Արևելեան կայսերք. — Ռոմանոս Բ. — Նիկեփորոս. — Չմշկիկ. — Ըրած պատերազմները. — Վասիլ Ներքինին. — Չմշկիկի մահը. — Վասիլ Բ. — Բուլղարաց վրայ ըրած յաղթութիւնը. — Իր յաջորդները. — Զոյի և Թէոդորա. — Իսահակ Կոմնենոս. — Անիին առումը. — Եւդոկիա Թագուհին. — Սելճուգեանց իշխանութիւնը. — Ռոմանոս Դիոժէն. — Ալփասլանին հետ ըրած պատերազմները. — Գերի իյնալն ու ազատիլը. — Մահը. — Պաղտատու ամիրապետութիւնը. — Ամիրապետք. — Թուրքք. — Տողրիլ Բէկ. — Ըրած արշաւանքն ու աւերմունքները. — Մահը. — Ալփասլան. — Անի քաղաքին տիրելը. — Ուրիշ արշաւանքները. — Մահը :

1 ԱՐԵՒԵԼԵԱՆ ԿԱՅՍԵՐՔ : — Ռոմանոս Բ հայրասպան կայսրը կարողութիւն չունէր իր տէրութիւնը կառավարելու. ամէն օր բանը գործքն էր կրկէս երթալ, ծերակուտոյն կոչունք ընել, ժո-

---

1 Ռոմանոս Բ ինչպէս ըրաւ կայսերութիւնը :

ղովրդեան առատ ստակ բաժնել, գնտակ խաղալ, Վոսփորոսին մէջ վեր վար նաւակով պտըտիլ, վարազ ընել, և իրիկունները պարով ու երաժշտութեամբ զուարճանալ: Կինը զինքը թունաւորեց, և Նիկեփորոս Փոկաս անունով քաջ զօրավարին տուաւ կայսերութիւնը: Նիկեփորոս՝ Չմշկիկ իշխանին օգնութեամբը գնաց Արաբացւոց ձեռքէն Ասորւոց երկրին մէկ մասը առաւ, իրեք պատերազմով Հալէպ քաղաքի տիրեց, և Անտիոքն ալ առնելու վրայ էր. մէյմ՛ալ իր կինը Թէոփանէ՝ Չմշկիկին հետ խօսք դնելով մեռուց զանիկայ ու Չմշկիկը կայսր հրատարակեց:

[1] Յովհաննէս Չմշկիկը Հայ էր ազգաւ. աթոռը նստելուն պէս առջի գործքն աս եղաւ որ Թէոփանէ Թագուհին վանք մը փակեց, և իր քաղցր բնաւորութեամբը, արդարութեամբը, առատաձեռնութեամբը և մանաւանդ յաղթութիւններովը մոռցընել տուաւ ժողովրդեան Նիկեփորոսին սպանութիւնը: Չմշկիկ զօրքն ալ կարգաւորեց, ելաւ Ռուսաց Սվեաթոսլաւ մեծ դքսին վրայ, ու Բուլղարի երկրին մէջ իրեք տարի պատերազմելէն ետքը բոլորովին յաղթեց անոր. Բուլղարաց Փրեսլաւ կամ Մարկիանուպօլիս ըսուած մայրաքաղաքին տիրեց, ու երկիրը իր կայսերութեանը հետ միացուց: Ուզեց նաև Արաբացւոց ձեռքէն երկիրներն ու գերիները ետ առնուլ. Կիլիկիոյ Մոպսուեստիա (Մսիս) քաղաքին քով զարնուեցաւ Երկու հարիւր հազար Արաբացւոց հետ, յաղթեց անոնց, քաղաքին ալ

---

[1] Չմշկիկ կայսրը ինչ յաղթութիւններ ըրաւ:

տիրեց · Տարսոնը սովի բռնելով առաւ · Անտիո֊քին տիրեց · Բերիա (Հալէպ) քաղաքն ալ անձնա֊տուր եղաւ, և անոր մէջ շատ զէնք ու պաշար գտան Յոյնք, հազար չորս հարիւր ջորի և իրեք հա֊րիւր պարկ ոսկի ու արծաթ :

1 Զմշկիկ հարիւր քաղաքէն աւելի առնելէն ետքը (որոնց մէջ էր նաև Դամասկոս), Եփրատէն անցաւ, Սամոսատիա (Սամուսատ), Նփրկերտ (Մուֆարղին), Ամիդ կամ Տիգրանակերտ (Տիար֊պէքիր) և Մծբին քաղաքներուն տիրեց · Պաղտա֊տու վրայ ալ կ'ուզէր երթալ, բայց պաշարը հա֊տաւ : Եա դառնալու ատենը Դամասկոսի քովերը տեսաւ փառաւոր պալատներ, բարեբեր երկիր֊ներ ու պարարտ անտառուտներ, ու զարմանալով հարցուց թէ որո՞ւն են ասոնք · և երբոր իմացաւ թէ իր Վասիլ ներքինապետին են եղեր, ըսաւ · “ Ուրեմն, ներքինիին մէկը հարստացընելու հա֊մար այսչափ ժողովուրդներ իրենց արիւնն ու ոսկին կուտան, և կայսերք իրենց կեանքը վտանգի մէջ կը դնեն եղեր ” :

2 Լսեց ներքինին աս խօսքը, և տեսաւ որ պա֊լատականները ծիծաղեցան · ինքն ալ քիչ մը ատեն ծիծաղ ձևացուց, բայց սրտին մէջ բարկու֊թիւնն ու ոխը տիրեց · Նոյն իրիկունը խմելու հա֊մար կայսեր տուած գաւաթին մէջ թոյն խառ֊նեց, կայսրը թունաւորեց : Յիսուն տարեկան էր Զմշկիկ, և վեց տարի թագաւորեր էր · կայսե֊

---

1 Եփրատէն անդին ի՞նչ արշաւանքներ ըրաւ :
2 Ի՞նչ կերպով մեռաւ :

րութեան. կործանումը ուշացընելով մեծանուն զօրավարաց կարգն անցաւ (976)։

¹ Չմշկիկ զաւակ չունէր, ուստի Ռոմանոսի երկու որդիքը Վասիլ Բ ու Կոստանդիին Ը մէկտեղ հինգ տարի թագաւորեցին, թէպէտ բոլոր իշխանութիւնը Վասլին ձեռքն էր։ Ինքը Ռուսիոյ Վլատիմիր դքսին հետ կարգեց իր Աննա քոյրը և Ռուսաց քրիստոնէական դաւանութեան օգնեց։ Ետքը բոլոր ույժը Բուլղարաց դէմ դարձուց, որ եօթներորդ դարէն ՚ի վեր արձակ համարձակ Յունաց գաւառները ասպատակութ կ'ընէին։ Քանիցըլեց անգամ հետերնին զարնուելէն ետև վերջապէս նուաճեց զանոնք, թէպէտ և անոնց Սամուէլ թագաւորին ալ շատ քաջութիւն ըրաւ։ Վասիլ յանկարծակի վրան հասաւ (1014), տասնըհինգ հազար Բուլղարի աչուըները հանել տուաւ, ու մէկ քանի զօրավարներուն մէկ աչքը հանել տալով՝ հարիւրական Բուլղար գերիներ յանձնեց անոնց որ տանեն ետ դարձընեն։ Այս բանիս վրայ Սամուէլ թագաւորը այնչափ տրտմեցաւ որ սրտին ցաւէն երկու օր ետքը մեռաւ։ Անոր Վլատիսլաւ որդին ալ չկարենալով Յունաց դէմ կենալ, Բուլղարի երկիրը բոլորովին միացաւ արևելեան կայսերութեան հետ 1019ին։

² Երբոր Վասիլ Բ Սիկիլիոյ վրայ արշաւելու կը պատրաստուէր, մահը վրայ հասաւ։ Այս Վասիլը տղայութեան ատենը ծոյլ էր, երիտասարդութեան ատենը անառակ, կատարեալ հասա-

---

¹ Չմշկիկ կայսեր ո՞վ յաջորդեց։
² Վասիլ Բ ի՞նչ բնաւորութեան տէր էր։

կէին մէջ պատերազմասէր, ծերութեանը մէջ ալ ագահ ու դաժան։

¹ Վասիլ երկրորդէն ետքը Յունաց կայսրութիւնը նորէն իր առջի անհոգութեան մէջն ընկաւ։ Երկու քոյր, Զոյի և Թէոդորա, տէրութիւնը կառավարեցին. երկուքն ալ իրենց անարժան ամուսնութիւնները թերքին աթոռը նստեցուցին, որ վատասնուն պալատականներ էին (1028-1056)։ Կոստանդին Թ. Մոնոմախոս՝ Վեստ Սարգսի մատնութեամբը մեր Անի թագաւորական քաղաքը Գագկայ ձեռքէն առաւ, ու Կապադովկիոյ մէջ Պիզու քաղաքը անոր տուաւ, Կոստանդնուպոլսոյ մէջ ալ պալատ մը ու թագաւորական գանձէն եկամուտ կարգեց, որով Բագրատունեաց թագաւորութեան կործանմանը պատճառ եղաւ (1046)։ Իրեն ատենը Յունաց եկեղեցին Լատինացւոց եկեղեցիէն բոլորովին բաժնուեցաւ։ Իրմէ ետքը Միքայէլ Զ. տարի մը միայն թագաւորեց, և տեղը նստաւ Իսահակ Կոմնենոս (1057)։

² Ասիկայ մէկէն իր կնկանը (որ Բուլղարաց թագաւորին աղջիկն էր) Օգոստէ անունը տուաւ, գանձին պակասութիւնը լեցուց. պատրիարգն ալ իշխանութենէն ձգեց, որ իրեն ըսեր էր թէ "ինչպէս որ տուի քեզի թագը, անանկ ալ կրնամ առնուլ"։ Ետքը թագաւորութենէն հանձրա-

---

¹ Վասիլ երկրորդէն ետև կայսրութիւնը որո՞ւ ձեռք անցաւ։ — Կոստանդին Մոնոմախոսին ատենը ի՞նչ նշանաւոր դիպուած եղաւ։

² Իսահակ Կոմնենոս ի՞նչպէս ըրաւ կայսրութիւնը։

ցած՝ կայսերութիւնը իր Յովհաննէս եղբօրը տուաւ. Երբոր անիկայ ալ յանձն չառաւ, Կոստանդին Ժ. Դուկասին տուաւ, ու ինքը կնկանը հետ վանք մը քաշուեցաւ որ խնչուան մահը հոն կենայ, և սակայն կնկանը աս կ՚ըսէր. "Զմոռնանք որ դքեզ գերի ըրի՝ երբոր քեզի թագ տուի, և հիմա թագը քեզմէ վերցնելով ազատեցի դքեզ":

1 Դուկաս մեռնելու ատենը (1067), իրեք որդւոցը խնամակալ դրաւ իր Եւդոքսիա կինը. Ան ատենները սկսաւ ուրիշ նոր իշխանութիւն մը հաստատուիլ Ասիոյ մէջ, որ էր Սելճուգեան Թուրքաց տէրութիւնը:

2 Եւդոքսիա թագուհին տեսնելով որ Տաճկըները օրէ օր առաջ կուգան, հասկըցաւ որ կառավարութիւնը զօրաւոր մարդու մը ձեռք յանձնելու է: Ռոմանոս Դիոժէն կամ Դիոգինէս անունով աքսորեալ մարդու մը օգնի կար որ ատենով Կոստանդին Դուկասէն պաշտօն մը ուզեր էր, և կայսրը աս պատասխանը տուեր էր իրեն. "Նայէ որ քու արդիւնքովդ արժանի ըլլաս ան պաշտօնին". ինքն ալ գնացեր Թշնամեաց յաղթեր էր: Երբոր դարձաւ Ռոմանոս Դիոժէն, կայսրուհին իր փափաքած աստիճանը անոր տալով ըսաւ. "Ասոր համար պէտք չէ ինծի շնորհակալ ըլլաս, հապա քու Թրիդ": Միտքը դրաւ

---

1 Եւդոքսիայի խնամակալութեան ատենը ի՞նչ նոր Թշնամիներ ելան Յունաց կայսերութեանը:

2 Տաճկաց զօրանալուն դէմ ի՞նչ ճար մտածեց Եւդոքսիա: — Ո՞վ էր Ռոմանոս Դիոժէն:

Ռոմանոս որ Թուրը կրնայ կայսերութիւնն առալ իրեն, և ուզեց սպասաւորութիւն՝ մը հանել. ձեռք ընկաւ ու 'ի մահ դատապարտուեցաւ. սակայն Եւդոքսիա վՃիռը ստորագրելէն առաջ ուզեց մէյմը զինքը տեսնել. խղՃաց վրան ու դատաւորաց հրամայեց որ նորէն քննեն դատաստանը. անոնք ալ իմացան կայսրուհւոյն միտքը, ու զինքը անմեղ հանեցին : Ան ատենը հետը կարգուեցաւ Եւդոքսիա ու զինքը կայսր ըրաւ :

1 Դիոժէն ան մեծ պատուոյն ինքզինքը արժանաւոր ցուցուց. սկսաւ տէրութեանը բարեկարգել, Ճարտար զօրավարներ ընտրեց, զօրքը կըրթեց, Թոշակնին աւելցուց, ու Ալփասլանին հետ պատերազմելու պատրաստուեցաւ : Զարմացաւ անոր զօրացը հետ, որոտ յարձակմունքներով զարմացուց զանոնք որ վարժեր էին առջևնէն Յունաց փախչիլը տեսնելու : Քիչ ատենէն նոր յաղթութիւն ալ ըրաւ, հասաւ ինչուան Եփրատ ու հոն նորէն յաղթեց Թշնամեաց, բանակնին առաւ, այրեց, ու մեծ փառքով մայրաքաղաքը դարձաւ :

2 Անկէց ետքը Ալփասլան յանկարծակի Յունաց վրայ հասնելով՝ մեծ ջարդ տուաւ, ու անոնց Վասպուրական զօրավարը բռնեց. անոր խորհրդովը կայսեր մարդ խրկեց և ուզեց հաշտութիւն ընել. մերժեց Դիոժէն դեսպանները ու պատերազմի պատրաստուեցաւ : Ալփասլան իր զօրքը շարելէն ետև ըսաւ անոնց. «Ո՛վ ընկերակիցք, Թագաւորի մը

---

1 Կայսերութիւնը ի՞նչպէս ըրաւ :
2 Ալփասլանի դէմ ի՞նչպէս պատերազմեցաւ :

հպատակութեան համար այնչափ մարդկանց արիւն թափուելը շատ սոսկալի բան է. մենք ուզեցինք Յունաց հետ հաշտութիւն ընել, անոնք մեզի պատերազմ առաջարկեցին. պատերազմինք ուրեմն: Միայն քաջերը հոս կենան. հրաման կուտամ, թող երթան վախկոտները: Իմ զինուորներս նայեցէք, հեռուանց կռուելու զէնքերնուն երեսը չնայեցինք, ահա ես աղեղս ու նետերս կը թողում, թուրս ու լախտս միայն հետս կ'առնում,,: Աս լսաւ ու մէկէն հազարապետները վրայէն հանեց, ձերմակներ հագած՝ կանչեց. « Թէ որ աս դաշտը ձեր յաղթանակին տեղ չըլլայ, ինծի գերեզմանն ալ հոն ըլլայ,,:

¹ Յունաց զօրքը բազմութեամբ առաջ կուգար. Թուրքերը խուռն խուռն բաժնուած՝ փախչիլ ձեւացուցին, որպէս զի կայսրը դարանի մէջ ձգեն. խմացաւ Դիոժէն ու կամաց կամաց ետև քաշուեցաւ. վրանդէն աղատալէն ետև նորէն վրանին յարձակեցաւ, յաղթեց, Մանազկերտ քաղաքն ալ առաւ ու բոլոր մէջի Պարսիկները թրէ անցուց: Նորէն Ճակատեցան երկու բանակները, նորէն յաղթեց Դիոժէն. բայց Անդրոնիկոս զօրավարը վրան նախանձելով՝ գլուխ քաշեց ու զօրացը մէջ շփոթութիւն ձգեց: Ան որ տեսան Տաճիկները, միադունդ դիմեցին Յունաց վրայ. զամենքն ալ ցրուեցին, Դիոժէնն ալ քանի մը քաջերով պաշարեցին. անիկայ դիւցազնական քաջութեամբ թշնամիներէն շատը ոտքին տակը փռելէն ետքը՝ ձին վիրաւորուեցաւ, թուրը կոտրուե-

---

¹ Ի՞նչ կերպով ձեռք ընկաւ:

ցաւ, ինքն ալ քանի մը տեղէ վիրաւորուեցաւ : Բռնեցին զինքն ու երկրորդ օրը արիւնլուայ Ալփասլանին առջևը տարին : Վայրենամիտ Թագաւորը բռնեց կայսրը պառկեցուց ու մարմնոյն վրայ կոխկռտելով քալելէն ետքը, վերուց զանիկայ, հետը պագտուեցաւ ու ըսաւ. "Մի՛ վախնար, ես ալ քեզի պէս մարդ եմ, ու ձախորդութիւնը իմ գլուխս ալ կրնայ գալ : Ես զքեզ գերիի տեղ պիտի չդնեմ, հապա կայսեր տեղ : Վա՜յ այն մարդուն որ բաղդին յաջողութեանը վրայ կը վստահի ու անոր անհաստատութիւնը չմտածեր" :

[1] Փառաւոր վրան մը տուաւ Դիոժենին, իր սեղանը տուաւ զինքը, ամէն այցելութեան կ'երթար անոր ու հետը բարեկամի կամ դաշնակից թագաւորի մը պէս իր ընելու պատերազմները անոր կը պատմէր : Օր մը հարցուց իրեն. "Թէ որ դուն զիս բռնէիր, ի՞նչ պիտի ընէիր : — Ծեծի տակ կը փտեցընէի", ըսաւ Դիոժէն՝ քաշած թշուառութենէն գազանացած : "Իսկ ես, ըսաւ Ալփասլան, քու հաւատքիդ սորվեցուցած խրատովը հետդ պիտի վարուիմ, որ կը հրամայէ ընկերը սիրել ու նախատանաց ներել" : Խօսքը կատարեց, հետը հաշտութիւն ըրաւ, մէկ միլիոն ոսկի առաւ զինքը արձակելուն համար, հարիւր վաթսուն հազար լիար ոսկի ալ տարեկան տուրք, ու զինքը ետ դարձուց :

---

[1] Ալփասլան ի՞նչ կերպով վարուեցաւ Դիոժէնին հետ :

1 Ալփասլանին աս մարդասիրութեանը կէսն ալ չցուցուցին Յոյնք իրենց կայսեր Դիոժենին վրայ : Յաղթութեան ձայնը առնելուն պէս՝ Դուկասին Միքայէլ որդին կայսր գրին, Եւդոքսիա Թագուհին ալ վանք մը փակեցին : Հարկ եղաւ որ իր հպատակացը հետ պատերազմ ընէ Դիոժէն. բայց երբոր յաղթուեցաւ, խնդրեց որ կրօնաւոր ըլլայ, և միայն իր կենացը խնայեն. անոնք ալ խօսք տուին : Այսպիսի նեղութեան առեններն ալ չմոռցաւ Դիոժէն իր խոստմունքը. աղէկէն ան- դիկէն ձեռքը եկածը ժողվեց ու Ալփասլանին խրկելով ասանկ գրեց. “Կայսր եղած ատենս քեզի մէկ միլիոն ոսկի խոստացայ. հիմա Թագս կորսնցընելով, երկու հարիւր հազար միայն խըր- կեցի, հետը մէկ տեղ աս աղամանդն ալ՝ իմ երախ- տագիտութեանս նշան. աս է բոլոր ունեցածս. քեզի պէս յաղթական մը աւելի իրաւունք ունի իմ ժառանգութեանս վրայ՝ քան թէ ապերախտ հպատակներս„ :

2 Երբոր Դիոժէն կրօնաւորի հագուստով Կոս- տանդնուպօլիս կը դառնար, Յոյնք իրենց ըրած խոստմանը դէմ Ճամբան բռնեցին զինքը, աչուը- ները փորեցին. որ քանի մը օրէն մեռաւ՝ դիւցազ- նաբար Թշուառութեանը համբերելով ու քրիս- տոնէաբար իր Թշնամեացը ներելով :

---

1 Յոյնք Դիոժէնը նորէն կայսր ընդունեցա՞ն :
2 Դիոժէնի վերջը Ինչպէս եղաւ :

1 ՊԱՂՏԱՏԱՅԻ ԱՄԻՐԱՊԵՏՆԵՐԸ: — Մահմետի յաջորդներուն իշխանութիւնը երթալով տկարացաւ, ու անոր տեղը շատ մը մանր իշխանութիւններ ելան. վասն զի Քորասանայի, Պաղտատու և Եգիպտոսի ամիրապետութիւններէն զատ, Հալէպ, Մուսուլ, Ամիդ, և ուրիշ տեղուանք զատ զատ իշխաններ տիրեցին: Գրեթէ միայն Պաղտատու ամիրապետը մահմետական աղանդին գլխաւորը ճանչցուեցաւ, և իր պալատին մէջ փակուած կը կենար՝ Թուրքաստանէն եկած պահապան զօրք ունենալով, մանաւանդ երբոր Էմիր-Իւլ-Իւմէրա կամ Իշխանաց իշխան անունով պաշտօնատէրներ գտնուեցան. աս իշխանութիւնը 945էն ետքը Պուխա ըսուած ցեղին մէջ ժառանգութեան պէս մնաց Պարսկաստանի կողմերը:

2 Ամիրապետութիւնը աս վիճակիս մէջ եղած ատենը՝ Ալփէկին անունով Թուրք գերին Խորասանի երկրին մէջ Ղազնէ ըսուած ամուր բերդին տիրեց, և իրմէ սկսաւ Ղազնեվեանց իշխանութիւնը (975): Անոր որդին Մահմուտ՝ Լահորի երկրին տիրեց (991), մահմետականութիւնը Հնդկաստան տարածեց, և Պարսկաստանէն Պուխտեանց իշխանութիւնը վերցուց:

3 Աքբասեանք տեսնելով որ Ղազնեվեանց տէրութիւնը շատ մեծցաւ, և Տէլհի քաղաքին մէջ

---

1 Ան ատենները Պաղտատու ամիրապետութիւնը ի՞նչ վիճակի մէջ էր:
2 Ղազնեվեանց իշխանութիւնը ի՞նչպէս սկսաւ:
3 Ո՞վ էր Տուղրիլ և ի՞նչ կերպով զօրացաւ:

աւելի զօրացաւ, նայեցան որ Թուրքերէն օգնութիւն գտնեն. այս Թուրքերը ան ատենները Թաթարստանէն ժողովուրդներ էին Սեւ ծովուն ու Օքսոս գետոյն մէջտեղի երկիրները: Անոնց ցեղերէն մէկուն գլխաւորը Տուղրիլ պէկ կամ Թուղրիլ բէկն էր, Սելճուքի Թոռը, որ ինչուան երկու հարիւր հազար զինուոր կրնար հանել. Ապտուլլահ ի ամիրապետը զինքը օգնութեան կանչեց. ան ալ գնաց Ղազնեւեաններուն իշխանութիւնը կործանեց (1038), Ասպահան առաւ, Պուխարանց գլխաւորին յաղթեց, բոլոր Իրանի մէջ իր իշխանութիւնը տարածեց, Պարսից Թագաւորութիւնը նորէն կանգնեց, Սուլթան կոչուեցաւ ու Պաղտատ մտաւ 1059ին: Գայիմ՝ Աբբասեան ամիրապետը սարսափած ընդունեցաւ զինքը, գլուխը երկու Թագ դրաւ, մէջքը երկու Թուր կապեց, անունը գերագոյն ամիրապետ դրաւ, և իր աղջիկը անոր հետ կարգեց:

1 Անկէց ետքը անհամար բազմութեամբ հեծեալ մը պէս առաւ Տուղրիլ Հայաստան, անցած տեղերը իր զօրայը ոտքին տակը աւերակ կը դառնային. վասն զի անոնք վանքեր, եկեղեցիներ, ամբողջ գաւառներ կը կործանէին ու բոլոր բնակիչները Թրէ կ'անցընէին: Արծն քաղաքը մէկէն անձնատուր չեղաւ, բայց ինչուան ետքն ալ չկըրցաւ դիմանալ. Տուղրիլ ներս մտաւ, հարիւր քառասուն հազար մարդ Թրէ անցուց, մնացածները հարիւր հազարէն աւելի գերի տարաւ, քաղքին ալ կրակ տուաւ ու մոխիր դարձուց:

---

1 Ի՞նչ արշաւանքներ ըրաւ:

1 Անկէ անցաւ Բասէն գաւառը ոտնակոխ ընելու. Թալթուլին քաջութիւնն ալ չկրցաւ մինչուան ետքը դիմանալ Տուղրիլին զօրաց հաստատութեանը: Միայն Մանազկերտ քաղաքը Տուղրիլին չհնազանդեցաւ, և քահանայի մը հնարագէտ ճարտարութեամբը անոր ամէն ջանքը պարապ հանեց: Այսպէս Տուղրիլ Միջագետքը, Ասորիքը, Հայաստանն ու Վրաստանը աւերակ դարձընելէն ետև երբոր Պարսկաստան կը դառնար որ հարսանեաց հանդէսը կատարէ, ճամբան մեռաւ եօթանասուն տարեկան (1063):

2 Իրեն յաջորդեց եղբօրորդին Ալփասլան (որ Քաջ առիւծ ըսել է). ասիկայ մէկէն զօրք ժողվեց, Եփրատ գետէն անցաւ, Կեսարիան ու բոլոր Կապադովկիան առաւ. անկէց անթիւ բազմութեամբ մտաւ Հայաստան, Թրով ու կրակով առաջ քալեց, Անի քաղաքը պաշարեց, քաղաքացւոց անհամբերութեամբը տիրեց քաղաքին, սակալի ջարդ ըրաւ, կողոպտեց, քաղաքին մեծ մասը աւրեց ու մէջը պահապան զօրք ձգելով անբաւ աւարով ու գերիներով ետ դարձաւ:

3 Երբոր լսեց Ալփասլան որ իր Խորուճ զօրավարը ապստամբեր ու Դիոժէն կայսեր կողմն է անցեր, զէնքը Յունաց վրայ դարձուց՝ Մանազկերտը առաւ, Միջագետքը ոտնակոխ ըրաւ, և

---

1 Ի՞նչ կերպով մեռաւ Տուղրիլ:
2 Ալփասլան Հայաստանի մէջ ի՞նչ աւերածութիւններ ըրաւ:
3 Յունաց հետ ի՞նչ պատերազմ ունեցաւ: — Ի՞նչ կերպով մեռաւ: — Յաջորդը ո՞վ եղաւ:

*փախուստոյ մէջ կայսեր հետ զարնուեցաւ. անոր զօրացը մէջ երկպառակութիւն ելլելով՝ յաղթեց, Դիոժէնին ալ գերի բռնեց ու շատ պատիւ ընելէն ետքը արձըկեց։ Քիչ ատենէն սպաննուեցաւ Ալփասլան, և վրան աս տապանագիրը գրին. “Դուն որ տեսար Ալփասլանին մեծութիւնը՝ ինչուան երկինքը բարձրացած, հիմա ալ տես թէ անիկայ ինչպէս հողու մէջ թաղուած է„։ Ցեղը անցաւ (1072) որդւոյն Մելիք շահ, որ խաղաղասէր թագաւոր ըլլալով շատ սէր ցուցուց քրիստոնէից մանաւանդ Հայոց, ինչպէս որ գովեստով կը յիշեն ժամանակակից պատմիչները։*

## ԳԼՈՒԽ ԻԳ.

Առաջին և Երկրորդ խաչակիրք (1092-1149)։ Հաշիշինք կամ Մարդասպանք. — Մելիք շահ. — Տաճկաց ու Փաթիմեանց Երուսաղէմ քրիստոնէից վրայ ըրած անգթութիւնները. — Ուխտաւորք. — Նկարագիր խաչակրաց. — Պետրոս անապատական և Ուրբանոս Բ. — Առաջին խաչակիրք. — Դժբաղդութիւնք. — Աղէտայ բանակը. — Ալէքս Կոմնենոս կայսեր նախը. — Անտիոքայ յաղթութիւնը. — Երուսաղէմ առումը. — Կոտֆրեդոսի թագաւոր ըլլալը. — Հիւրընկալք և Տաճարականք. — Աթաբէկներուն իշխանութիւնը. — Երկրորդ խաչակիրք. — Լուդովիկոս և Կոնրադոս Դամասկոսը պաշարելը։

1 *Եգիպտոսի մէջ Հաքիմ ամիրապետը իր խենթութիւններովն ու անգթութիւններովը մեծ ա-*

---

1 *Մարդասպանաց աղանդոյն սկիզբը ինչպէս եղաւ։*

նուն հաներ էր ։ Կ'ուզէր ինքզինքը Աստուծոյ պէս պաշտել տալ, և նոր հաւատք մը հաստատելու միջով Մահմետին կրօնքը փոխեց ։ Կ'ըսէր թէ չարին ու բարւոյն, առաքինութեան ու մոլութեան մէջ ամենեւին տարբերութիւն չկայ. և աս մնասակար վարդապետութեան վրայ հաստատուած նոր աղանդ մը ելաւ, ուսկից բոլոր Արեւելքի թագաւորները սկսան վախնալ ։ Աս ընկերութեան գլխաւորը Տէր լեռներաց և սովորաբար Հինաւուրցն լեռնական կ'ըսուէր ։ Իսկ ընկերները Փէտաւիէ կամ անձնանուէր կ'ըսուէին, և իրենց տիրոջը կամացն ու վրէժխնդրութեանցը գործիքն էին. ան ալ իրենց յանդգնութիւնը շատցնելու համար աֆիոնով ու բանգ կամ խոզի բակլայ ըսուած հնտոմք շինած խմելիք մը անոնց կը խմցընէր որ իրենց լեզուովը հաշիշ կ'ըսուի ։ Աս պատճառաւ հաշիշին անունը դրուած է աս աղանդաւորներուն. Եւրոպացիք ալ նոյն բառը ինչուան հիմա մարդասպանի կամ աւազակի տեղ կը գործածեն * ։ Ասոնք փառաւոր պալատներու և ծաղկազարդ պարտէզներու մէջ նստած կը սորվէին թէ իրենց կոյր հնազանդութեանը փոխարէն արքայութիւն պիտի երթան. ուստի երբոր իրենց տէրը հրամայէր որ մէկը մեռցընեն, մէկէն հրամանը կը կատարէին, ու ամենեւին մահուընէ չէին վախնար ։

[1] Սելճուքեան Մէլիք շահ սուլթանը Ջանաց

---

[1] Մէլիք շահ սուլթանը ինչ պատերազմներ ըրաւ ։

* Գղ. assassin. Իտ. assassino.

[1] Ալփասլանին աս մարդասիրութեանը կէսն ալ չցուցուցին Յոյնք իրենց կայսեր Դիոժէնին վրայ ։ Յաղթուելուն ձայնը առնելուն պէս՝ Դուկասին Միքայէլ որդին կայսր դրին, Եւդոքսիա Թագուհին ալ վանք մը փակեցին ։ Հարկ եղաւ որ իր հպատակացը հետ պատերազմ ընէ Դիոժէն․ բայց երբոր յաղթուեցաւ, խնդրեց որ կրօնաւոր ըլլայ, և միայն իր կենացը խնայեն․ անոնք ալ խօսք տուին ։ Այսպիսի նեղութեան ատենին ալ չմոռցաւ Դիոժէն իր խոստմունքը․ աղէկէն անդին ձեռքը եկածը ժողվեց ու Ալփասլանին խրկելով ասանկ գրեց․ “ Կայսր եղած ատենս քեզի մէկ միլիոն ոսկի խոստացայ․ հիմա թագս կորսնցնելով, երկու հարիւր հազար միայն խրկեցի, հետը մէկ տեղ աս ադամանդն ալ՝ իմ երախտագիտութեանս նշան․ աս է բոլոր ունեցածս․ քեզի պէս յաղթական մը աւելի իրաւունք ունի իմ ժառանգութեանս վրայ՝ քան թէ ապերախտ հպատակներս ” ։

[2] Երբոր Դիոժէն կրօնաւորի հագուստով Կոստանդնուպօլիս կը դառնար, Յոյնք իրենց ըրած խոստմանը դէմ ճամբան բռնեցին զինքը, աչուըները փորեցին․ որ քանի մը օրէն մեռաւ՝ դիւցազնաբար թշուառութեանը համբերելով ու քրիստոնէաբար իր թշնամեացը ներելով ։

---

[1] Յոյնք Դիոժէնը նորէն կայսր ընդունեցա՞ն ։
[2] Դիոժէնին վերջը ի՞նչպէս եղաւ ։

1 ՊԱՂՏԱՏՈՒ ԱՄԻՐԱՊԵՏՆԵՐԸ ։ — Մահմեդի յաջորդներուն իշխանութիւնը երթալով տկարացաւ, ու անոր տեղը շատ մը մանր իշխանութիւններ ելան. վասն զի Քորասանայի, Պաղտատու և Եգիպտոսի ամիրապետութիւններէն զատ, Հալէպ, Մուսուլ, Ասորիք, և ուրիշ տեղուանք զատ զատ իշխաններ տիրեցին ։ Գրեթէ միայն Պաղտատու ամիրապետը մահմետական աղանդին գլխաւորը ճանչցուեցաւ, և իր պալատին մէջ փակուած կը կենար՝ Թուրքաստանէն եկած պահապան զօրք ունենալով, մանաւանդ երբոր Էմիր-ուլ-ումերա կամ Իշխանաց իշխան անունով պաշտօնատէրներ դրուեցան. այս իշխանութիւնը 945էն ետքը Պուխտ ըսուած ցեղին մէջ ժառանգութեան պէս մնաց Պարսկաստանի կողմերը ։

2 Ամիրապետութիւնը այս վիճակիս մէջ եղած ատենը՝ Ալփէկին անունով Թուրք գերին Խորասանի երկրին մէջ Ղազնէ ըսուած ամուր բերդին տիրեց, և իրմէ սկսաւ Ղազնեվեանց իշխանութիւնը (975) ։ Անոր որդին Մահմուտ՝ Լահորի երկրին տիրեց (991), մահմետականութիւնը Հնդկաստան տարածեց, և Պարսկաստանէն Պուխտեանց իշխանութիւնը վերցուց ։

3 Աբբասեանք տեսնելով որ Ղազնեվեանց տէրութիւնը շատ մեծցաւ, և Տէլհի քաղաքին մէջ

---

1 Ան ատենները Պաղտատու ամիրապետութիւնը ի՞նչ վիճակի մէջ էր ։
2 Ղազնեվեանց իշխանութիւնը ի՞նչպէս սկսաւ ։
3 Ո՞վ էր Տուղրիլ և ի՞նչ կերպով զօրացաւ ։

աւելի զօրացաւ, նայեցան որ Թուրքերէն օգ-նութիւն գտնեն. ասոր Թուրքերը ան ատենները Թափառական ժողովուրդներ էին Սեւ ծովուն ու Օքսոս գետին մէջտեղի երկիրները։ Անոնց ցեղե-րէն մէկուն գլխաւորը Տուղրիլ պէկ կամ Թուղրիլ-բէկն էր, Սելճուքի թոռը, որ ինչուան երկու հարիւր հազար զինուոր կրնար հանել. Նշապու-լահ է. ամիրապետը զինքը օգնութեան կանչեց. ան ալ գնաց Ղազնեվեաններուն իշխանութիւնը կոր-ծանեց (1038), Ասպահան մտաւ, Պուխարանց գլխաւորին յաղթեց, բոլոր Իրանի մէջ իր իշխա-նութիւնը տարածեց, Պարսից թագաւորութիւնը նորէն կանգնեց, Սուլդան կոչուեցաւ ու Պաղտատ մտաւ 1059ին։ Գայիմ՝ Արաբական ամիրապետը սարսափած ընդունեցաւ զինքը, գլուխը երկու թագ դրաւ, մէջքը երկու թուր կապեց, անունը գերագոյն ամիրապետ դրաւ, և իր աղջիկը անոր հետ կարգեց։

[1] Անկէց ետքը անհամար բազմութեամբ հե-ղեղի մը պէս մտաւ Տուղրիլ Հայաստան, անցած տեղերը իր զօրացը ոտքին տակը աւերակ կը դառ-նային. վասն զի անոնք վանքեր, եկեղեցիներ, ամբողջ գաւառներ կը կործանէին ու բոլոր բնա-կիչները թրէ կ'անցունէին։ Արծն քաղաքը մէկէն անձնատուր չեղաւ, բայց ինչուան ետքն ալ չկըր-ցաւ դիմանալ. Տուղրիլ ներս մտաւ, հարիւր քա-ռասուն հազար մարդ թրէ անցուց, մնացածները հարիւր հազարէն աւելի գերի տարաւ, քաղքին ալ կրակ տուաւ ու մոխիր դարձուց։

---

[1] Ի՞նչ արշաւանքներ ըրաւ։

1 Անկէ անցաւ Բասեն գաւառը ոտնակոխ ընելու. Թաւթուլին քաջութիւնն ալ չկրցաւ ինչուան ետքը դիմանալ Տուղրիլին զօրացը կատաղութեանը: Միայն Մանազկերտ քաղաքը Տուղրիլին չհնազանդեցաւ, եւ քահանայի մը հնարագէտ ճարտարութեամբը անոր ամէն ջանքը պարապ հանեց: Այսպէս Տուղրիլ Միջագետքը, Ասորիքը, Հայաստանն ու Վրաստանը աւերակ դարձընելէն ետեւ երբոր Պարսկաստան կը դառնար որ հարսանեաց հանդէսը կատարէ, ճամբան մեռաւ եօթանասուն տարեկան (1063):

2 Իրեն յաջորդեց եղբօրորդին Ալփասլան (որ քաջ առիւծ ըսել է). ասիկայ մէկէն զօրք ժողվեց, Եփրատ գետէն անցաւ, Կեսարիան ու բոլոր Կապադովկիան առաւ. անկէց անթիւ բազմութեամբ մտաւ Հայաստան, Թրով ու կրակով առաջ քալեց, Անի քաղաքը պաշարեց, քաղաքացւոց անհամբերութեամբը տիրեց քաղաքին, սոսկալի ջարդ ըրաւ, կողոպտեց, քաղաքին մեծ մասը աւրեց ու մէջը պահապան զօրք ձգելով անթիւ աւարով ու գերիներով ետ դարձաւ:

3 Երբոր լսեց Ալփասլան որ իր Խրուճ զօրավարը ապստամբեր ու Դիոժէն կայսեր կողմն է անցեր, զէնքը Յունաց վրայ դարձուց՝ Մանազկերտը առաւ, Միջագետքը ոտնակոխ ըրաւ, եւ

---

1 Ի՞նչ կերպով մեռաւ Տուղրիլ:

2 Ալփասլան Հայաստանի մէջ ի՞նչ աւերածութիւններ ըրաւ:

3 Յունաց հետ ի՞նչ պատերազմ ունեցաւ: — Ի՞նչ կերպով մեռաւ: — Յաջորդը ով եղաւ:

*Փռիւգիոյ մէջ կայսեր հետ զարնուեցաւ. անոր զօրացը մէջ երկպառակութիւն ելլելով յաղթեց, Դիոժենէսն ալ գերի բռնեց. ու շատ սաստիկ առնելէն ետքը արձըկեց: Քիչ ատենէն սպաննուեցաւ Ալփասլան, և վրան աս տապանագիրը դրին. "Դուն որ տեսար Ալփասլանին մեծութիւնը երկինքը բարձրացած, հիմա ալ տես թէ անիկայ ինչպէս հողու մէջ թաղուած է ,, : Տեղը անցաւ (1072) որդին Մէլիք շահ, որ խաղաղասէր թագաւոր ըլլալով շատ սէր ցուցուց քրիստոնէից մանաւանդ Հայոց, ինչպէս որ գովեստով կը յիշեն ժամանակակից պատմիչները:*

## ԳԼՈՒԽ ԻԳ.

Առաջին և Երկրորդ խաչակիրք (1092-1149): Հաշի-շինք կամ Մարդասպանք. — Մելիք շահ. — Տաճկաց ու Փաթիմեանց Երուսաղէմ քրիստոնէից վրայ բրած անգթութիւնները. — Ուխտաւորք. — Նկարագիր խա-չակրաց. — Պետրոս անապատական և Ուրբանոս Բ. — Առաջին խաչակիրք. — Դժբաղդութիւնք. — Ադէ-տայ բանակը. — Ալէքս Կոմնենոս կայսեր նենգը. — Ան-տիոքայ յաղթութիւնը. — Երուսաղէմ առնուիլը. — Կոտ-ֆրուայի թագաւոր ըլլալը. — Հիւրընկալք և Տա-ճարականք. — Աթաբէկներուն իշխանութիւնը. — Երկրորդ խաչակիրք. — Լուդովիկոսի և Կոնրադոսի Դամասկոսը պաշարելը:

*1 Եգիպտոսի մէջ Հալիֆն ամիրապետը իր խեն-թութիւններովն ու անգթութիւններովը մեծ ա-*

---

*1 Մարդասպանաց աղանդոյն սկիզբը ինչպէս ե-ղաւ:*

նուն հանէր էր ։ Կ'ուզէր ինքզինքը Աստուծոյ պէս պաշտել տալ, և նոր հաւատք մը հաստատելու միջոցով Մահմետինը փոխել ։ Կ'ըսէր թէ չարին ու բարւոյն, առաքինութեան ու մոլութեան մէջ ամենևին տարբերութիւն չկայ . և աս մտաստակար վարդապետութեան վրայ հաստատուած նոր աղանդ մը ելաւ, ուսկից բոլոր Արևելքի թագաւորները սկսան վախնալ ։ Աս ընկերութեան գլխաւորը Տէր Լեռներաց և սովորաբար Հինաւուրցն լեռնական կ'ըսուէր ։ Իսկ ընկերները Ֆէտաւիլէ կամ անձնանուէր կ'ըսուէին, և իրենց տիրոջը կամացն ու քմահաճութեանցը գործիքն էին . ան ալ իրենց յանդգնութիւնը շարժելու համար ափիոնով ու բանգ կամ խոտի բանկլայ ըսուած հնարովը չինած խմելիք մը անոնց կը խմցընէր որ իրենց լեզուովը հաշիշ կ'ըսուի ։ Աս պատճառաւ հաշիշին անունը դրուած է աս աղանդաւորներուն . Եւրոպացիք ալ նոյն բառը ինչուան հիմա մարդասպանի կամ աւազակի տեղ կը գործածեն * ։ Ասոնք փառաւոր պալատներու և ծաղկազարդ պարտէզներու մէջ նստած կը սորվէին թէ իրենց կոյր հնազանդութեանը փոխարէն արքայութիւն պիտի երթան . ուստի երբոր իրենց տէրը հրամայէր որ մէկը մեռցընեն, մէկէն հրամանը կը կատարէին, ու ամենևին մահուընէ չէին վախնար ։

1 Սելճուգեան Մէլիք շահ սուլթանը Ջանաց

---

1 Մէլիք շահ սուլթանը ինչ պատերազմներ ըրաւ ։

* Գղ. assassin. Իտ. assassino.

որ ան աւազակաց ընկերութիւնը ջնջէ, բայց չկրցաւ: Աս պատերազմասէր Թագաւորը շատ ընդարձակեց Սելճուգեանց տէրութեան սահմանները: Գնաց ինչուան Միջերկրական ծովուն եզերքը տիրեց, և ձիովը ջրին վրայ կոխելով վար իջաւ, երեք անգամ Թուրը ծովը խոթեց, և Աստուծոյ շնորհակալ ըլլալէն ետքը ան Թուրը ծովը նետեց: Անկէ հետը քիչ մը աւազ առաւ ու բերաւ հօրը գերեզմանին վրայ Թափեց ըսելով. “Ահա աւետիս քեզի հայր իմ, որ Թողած պզտիկ որդիդ ինչուան ծովերու գնաց տիրեց ,,: Ճելալէտտին ալ ըսուեցաւ աս Մելիք շահը (որ փառք կրօնի կը նշանակէ), շատ ծաղկեցուց տէրութեանը մէջ գիտութիւնները, մանաւանդ Ասպահանի մէջ, և իր լայնածաւալ երկիրը տասներկու անգամ անձամբ պտըտեցաւ: Իր տեղակալներէն մէկը Ասորւոց երկրին ու Պաղեստինու տիրեց, և Երուսաղէմի մէջ բնակող քրիստոնէից շատ չարիք հասուց. սուրբ տեղերը ապականեց, և ուխտաւորներէն շատ սակ առաւ, շատն ալ սպաննեց (1076): Երբոր Մելիք շահ մեռաւ, Թուրքաց տէրութիւնը երեք սուլթանութեան բաժնուեցաւ, այսինքն Րում կամ Իկոնիոն (Ղոնիա), Պարսկաստան ու Ասորիք (1092): Ասով ալ Արեւելքի քրիստոնէից վիճակը չշտկուեցաւ. 1094ին Ֆաթիմեանք նորէն Երուսաղէմը առին, բայց իրենք ալ նոյնպէս նեղութիւն կուտային քրիստոնէից:

1 Ան ատենները Երուսաղէմ Քրիստոսի Տեառն

---

1 Խաչակրութեանց պատճառը ինչ էր:

մերոյ գերեզմանին ուխտի գնացող հաւատացեալները ուրիշներէն ալ աւելի նեղութիւն կը քաշէին, մանաւանդ արեւմտեան կամ եւրոպացի քրիստոնեայք, որ աշխարհիս մէկ ծայրէն ելած՝ առաջ Հռոմ կ'երթային Պետրոս ու Պօղոս առաքելոց գերեզմանները ու մասունքը համբուրելու, անկէց ալ Ճամբայ կ'ելլէին դէպ 'ի Երուսաղէմ, միշտ ոտքով քալելով ու աղքատի կերպարանքով. շատն ալ մեծ բարեպաշտութիւն կը սեպէին թէ որ կարենային ան ճամբորդութենէն ողջ ետ դառնալ, մանաւանդ թէ աւելի ալ երջանիկ կը համարէին իրենք զիրենք՝ թէ որ հոն Քրիստոսի գերեզմանին քովը մեռնէին, որպէս զի կարենային ըսել իրեն թէ “ Տէր, դուն մեզի համար մեռար, մենք ալ քեզի համար կը մեռնինք ”։

1 Ամէն մարդ կը նայէր որ Ճամբայ ելլէ, մեծ ու պզտիկ, հասարակ ժողովուրդներ և ազնուականներ։ Անոնց մէջն էր նաև Նորմանտացւոյ դուքսը Հռոբերտոս որ մականուամբ Դեւ կ'ըսուէր. և ինքն ալ բոպիկ ոտքով, ձեռքը գաւազան ու կռնակը մախաղ մը առած՝ իր ծառաներովը մէկտեղ Պաղեստինու սուրբ երկիրը ուխտի գնացեր էր։ Հասարակ ժողովուրդը իրենց հաւատքը միայն զէնք առած՝ առանց վախի կ'երթային. և ողորմութիւն ժողվելով ինչուան Արեւելք կը հասնէին։ Ինչուան Տաճիկներն ալ կը զարմանային քրիստոնէից այսչափ քաջութեանն ու եռանդեանը վրայ, և շատ անգամ անոնց արգելք ըլլալու չէին համարձակեր։

---

1 Առաջին խաչակրաց եռանդը ինչպէս էր։

[1] Քիչ ատենէն հիւրանոցներ բացուեցան, որ տուն տեղ չունեցող քրիստոնէից անոնց մէջ ընդունելութիւն ըլլայ։ Իտալիոյ Ամալֆի քաղաքէն եկած քանի մը վաճառականներ 1048ին աս մտօք վանք մը և հիւանդանոց մը շինեցին սուրբ Յարութիւն եկեղեցւոյն քով։ Ան վանքին կրօնաւորները իրենց պաշտպան բռնելով սուրբ Յովհաննէս Մկրտիչը, ըսուեցան Հիւրընկալ Եղբարք սրբոյն Յովհաննու Երուսաղէմի։ Ասոնք են որ ետքը ըսուեցան նաև Ասպետք Մելիտեայ կամ Մալթայի, երբեմն ալ Ասպետք Հռոդոսի, իրենց գլխաւորն ալ մեծ Մագիստրոս կ'ըսուէր։

[2] Շատ ատենէ 'ի վեր խօսք կար քրիստոնէից մէջ որ Քրիստոսի գերեզմանը անհաւատից ձեռքէն ազատեն։ Ամենէն առաջ Գերբերտոս պապը մտածեր էր որ գունդ մը զօրք հանէ աս բանիս համար. Գրիգոր Է կ'ուզէր յետոյ հազար ասպետով Արևելք երթալ, բայց Գերմանիոյ կռիւներուն պատճառաւը չկրցաւ. վերջապէս Ուրբանոս Բ պապին իշխանութեան ատենը՝ Պետրոս անունով գաղղիացի ճգնաւոր անապատական մը ան սուրբ երկիրներուն խեղճութիւնը անձամբ տեսնելէն ետև Հռոմ գնաց, ու սկսաւ քարոզել թէ Քրիստոս Տէրն մեր երևցաւ ինծի ու ըսաւ. “Ե՛լ Պետրոս, ու գնա՛ քարոզէ իմ ժողովրդեանս նեղութիւնները. ատենն է որ իմ ծառայիցս օգնութիւն հասցուի և սուրբ երկիրը ազատի”։

---

[1] Ի՞նչ հիւրանոցներ շինուեցան քրիստոնեայ ուխտաւորաց համար։

[2] Խաչակիր զօրաց ելլելը ի՞նչպէս եղաւ։

Պապը զինքը մարգարէի մը պէս ընդունեցաւ ու խրկեց որ երթայ ասդին անդին այլազգեաց դէմ պատերազմ հրատարակէ. Պետրոս ալ ջորիի մը վրայ նստած, ձեռքը խաչ բռնած, թեւերն ու ոտուըները բաց, մէջքը հաստ չուան մը կապած, ու վրան բրդէ վերարկու մը ձգած՝ քաղաքները ու գեղերը կը պտըտէր: Ամէնքը անոր առջեւը կը վազէին որ պատմած բաները լսեն, այսինքն թէ ինչպէս սուրբ երկիրները ոտնակոխ եղած են, եկեղեցիները կործանած, և քրիստոնեայք կուլան ու կ'ողբան, և ինչպէս հրեշտակները կը լացընեն. ատոնք կ'ըսէր ու աչուըներէն արցունքը աղբիւրի պէս վազցընելով կուրծքը կը ծեծէր ու խաչելութիւնը ժողովրդեան կը ցուցընէր: Ան տեսարանին ժողովուրդը չէր դիմանար, ու բարձր ձայնով կ'ողբար. մէկ կողմանէ ալ մեծ ջերմեռանդութեամբ կընայէր որ ան կարգէ դուրս մարդուն հագուստին դպչի, կամ անկէց կտոր մը փրցընէ՝ իբրև սուրբ մարդու մասունք:

[1] Ուրբանոս Բ 1095ին մտածելով որ իր նախորդաց դիտաւորութիւնը կատարելու ժամանակը հասած է, գնաց Գաղղիա, ու Քլէրմոն քաղաքին մէջ ժողով մը ըրաւ: Այնչափ ժողովուրդ լեցուեր էր ան քաղաքը, որ տուներուն մէջ չկարենալով կենալ, դաշտերը վրաններով բնակեցան: Ժողովքին մէջ պապը գեղեցիկ ճարտասանութեամբ ճառ մը խօսեցաւ, ու այնպէս աղէկ ստորագրեց մահմետականաց անգթութիւնները, ուխտաւորաց քաշած նեղութիւնները, եկեղեցեաց

---

[1] Խաչակիր ըսուելնուն պատճառը ինչ էր:

խեղճութիւնը, որ ամէն մարդ մէկ սրտով ու մէկ բերնով կը կանչէր· “Աստուծոյ կամքը աս է, Աստուծոյ կամքը աս է„։ Բոլոր ժողովականները մէկէն 'ի մէկ երեսի վրայ գետինը փռուեցան· կարդինալներէն մէկը խոստովանութեան ձև մը զուրցեց, և ամէնքն ալ կուրծքերնին ծեծելով իրենց մեղքերուն արձակում խնդրեցին։ Եւ որովհետև պապը խաչ մը տուեր էր եպիսկոպոսի մը, բոլոր ժողովուրդը սկսաւ կանչել որ իրենց ալ խաչեր տրուին· այնպէս որ ծիրանի ու կարմիր լաթ չմնաց որ չկտրեցին ու խաչ չշինեցին· ասկէց Խաչակիր ըսուեցան անոնք որ սուրբ երկրին ազատութեանը համար Արևելք երթալը յանձն առին։

1 Խաչակրաց տրուած քանի մը ազատութիւնները ասոնք էին· Քլէրմոնի ժողովոյն վճիռներովը անոնց մեղքերուն թողութիւն կար· Եկեղեցին անոնց ստացուածքն ու ընտանիքը իր պաշտպանութեանը տակ կ'առնէր, և անոնց պարտքերը կախ կը մնային բոլոր Ճամբորդութեան ատեններին։

2 ԱՌԱՋԻՆ ԽԱՉԱԿԻՐՔ (1096)։ — Ուրբանոս պապը որոշեց որ Ճամբորդութիւնը ըլլայ յաջորդ տարւոյն, այսինքն 1096ին, օգոստոսի 15ին Վերափոխման տօնին օրը· բայց հասարակ ժողովուրդը այնչափ ատեն չուզեց սպասել· Թող տուաւ որ ազնուականները կամաց կամաց ժողվուին ու պատրաստուին, և ինքը առանց զէնքի, առանց

---

1 Ի՞նչ արտօնութիւններ ունէին խաչակիրք։
2 Առաջին խաչակրաց Ճամբորդութիւնը ի՞նչպէս եղաւ։

պաշարի, միայն նախախնամութեան վրայ յոյսը դրած՝ Ճամբայ ելաւ։ Անոնց գլուխ կեցած էր Պետրոս անապատականը։ — Զարմանալի բան մըն էր ան հանդէսը. ինչուան կանայք, ծերեր, հիւանդներ պատերազմի կը խրախուսէին, մարտիրոսութիւնը աչք առնելով. «Թող երիտասարդները թրով պատերազմին, կ՚ըսէին. մենք նայինք որ նեղութիւն քաշելով զՔրիստոս շահինք»։ Աղքատ մարդիկ իրենց եզներուն ոտքին տակը երկաթ կը զարնէին, զանոնք սայլերու կը լծէին ու թեթեւ պաշարները ու մանր տղաքը սայլերու մէջ կը դնէին. ան տղաքն ալ ինչ բերդ կամ ինչ զանգակատուն որ տեսնէին՝ կը հարցընէին ուրախութեամբ թէ արդեօք Երուսաղէմը ան է։ Պետրոս անապատականին հետ եղած ժողովրդէն քառասուն հազար հոգի Յունացմէ խաբուելով ջարդուեցան, մնացածներն ալ Տաճկըներուն ձեռքն ինկան. նոյն խեղճութեան հանդիպեցան նաեւ ուրիշ երկու գունդեր. այնպէս որ մահմետականները քրիստոնէից ոսկորներովը քաղաք մը շինեցին։

[1] Գոդոֆրեդեան արշաւանքը թէպէտ աս կերպով չյաջողեցաւ, բայց տաղէփնէրը իրենց երիտասարդ զաւկըներովը եւ հաւատարիմ ծառաներովը երթալով պէտք էր որ յաղթութիւնը գտնէին. Ասպետ ըլլալու համար հարկ էր որ մէկը երկար ատեն ծոմ կենար, գիշեր մը ամբողջ աղօթքով անցունէր եկեղեցւոյ մէջ ու ետքը հաղորդուէր.

---

[1] Ինչ անուանի մարդիկ կային առաջին խաչակրաց մէջ։

անկէց ետքը հանդիսով կուսային իրեն խնթաններ և թուր մը, ու թրին տափակ կողմովը իրեք անգամ ուսին կը զարնէին․ իսկ ինքը կը խոստանար որ աստուածավախ ըլլայ, տկարները՝ այրիները ու որբերը պաշտպանէ, և ուղղափառ հաւատոյ վրայ կեանքը դնէ։ Ասոր համար ասպետները սիրով յանձն առին խաչակրութիւնը․ հարիւր հազար հոգի ամէն ազգէ կամաւորապէս զէնք առին Քրիստոսի գերեզմանը ազատելու համար․ անոնց ետևէն ալ քաղաքներէն ու գեղերէն վեց հարիւր հազար հոգի ճամբայ ելան։ Աս անթիւ բանակը խումբ խումբ բաժնուած էր՝ անուանի իշխաններու առաջնորդութեամբ․ անոնց մէջն էին Կոտֆրուա (որ և Կոտֆրետոս և կամ Կոնդոպրէ) Պույլյոն՝ Լօրենի դուքսը, իր եղբայրը Բաղդուինոս կամ Պոտուէն, Մեծն Հուկոն՝ Գաղղիոյ Փիլիպպոս Ա թագաւորին եղբայրը, Նորմանտիոյ դուքսը Հռոբերտոս՝ որ Գուլիէլմոս Աշխարհակալին որդին էր, Ֆլանտրայի կոմսը Ստեփանոս Պլուա, որ ետքը Անգղիոյ թագաւոր եղաւ, Թուլուզի կոմսը Հռայմոնտ Սէնժիլ (Ջնձիլ), քաջն Պոհեմոնտ կամ Պեմունտ, և անոր եղբօրորդին կորովին Թանքրէտ կամ Տանգրի։ Ասոնք ամէնքը խօսք դրին որ Կոստանդնուպօլիս երթան ու հոն մէկտեղ ժողվուին։

[1] Ան ատենի կայսրը Ալէքս Կոմնենոս այսպիսի զօրաւոր բանակի մը առաջ քալելն որ լսեց, սկսաւ վախնալ, ու պահանջեց որ իրեն հաւատարիմ

---

1 Ալէքս Կոմնենոս կայսրը ինչ ընդունելութիւն ըրաւ խաչակրաց։

հպատակ ըլլալու երդում ըրին։ Կոնդոստաբլը ամենէն առաջ երդուընցաւ, ուրիշներն ալ անոր հետեւեցան. բայց հանդիսին ժամանակը դոռոզ իշխանին մէկը, որ Հռոբերտոս կ՚ըսուէր ու Փարիզի կոմսն էր, իրեն սուր խօսքովը ու յանդգնութեամբը Կոմնենոսը սարսափեցուց։ Վասն զի գնաց Կոմնենոսին քովը կայսերական գահին վրայ նստաւ. Բաղդուինոս անոր ձեռքէն բռնեց ու ըսաւ. « Դուն երդում ըրիր կայսեր. ինչպէս կը համարձակիս անոր քովը նստելու. չե՞ս գիտեր որ հռովմայեցի կայսերք իրենց հպատակներուն ոչ երբեք իրենց իշխանութենէն բաժին կը հանեն։ — Իրաւունք ունիս, ըսաւ կոմսը, նայէ սա զարդարուած գեղջուկին, ինչպէս մինակ նստեր է այսչափ գերազանց զօրավարներու մէջ որ ոտքի վրայ կեցեր են »։ Ալեքս իմացաւ որ սա համարձակ խօսքերը իրեն համար են, բայց ձայն չկրցաւ հանել։

¹ Անկէց ետքը նայեցաւ Ալեքս որ ան բարբարոս ու ձանձրալի ռազմականները իր երկրէն հեռանան, ուստի շատ մը նուէր փոխ տուաւ անոնց. Խաչակիրք Կոստանդնուպօլսոյ Նեղուցէն անդին անցան ու մտան Ասիոյ արեւմտեան գաւառները, որ Գըլըճ Ասլան ըսուած սուլթանին ձեռքն էին։ Նիկիա քաղաքը որ Սելճուգեանց մայրաքաղաքն էր՝ շուտ մը պաշարեցին առին ու Յունաց տուին։ Անկէց Փռիւգիոյ լեռներէն անդին անցան. Դորիլէոն (Էսկի շէհիր) քաղաքին քովը Գըլըճ Ասլան սուլթանը ուզեց որ յանկարծակի քրիստո-

¹ Կոստանդնուպօլսէն մէկ գնացին խաչակիրք։

նէից վրայ յարձըկի, բայց Պեմունդին արթնութիւնը և Տանգրէդին ու Կոնդոպրէին քաջութիւնը թող չտուին որ ուզածը կատարէ, և Տաճկըները բոլորովին յաղթուեցան։

1 Տաճկըներէն աւելի ահաւոր թշնամի սովն ու ծարաւը եղան խաչակրաց համար. վասն զի Տաճկըները բոլոր երկիրը փճացուցեր էին՝ որպէս զի քրիստոնեայք կերակուր չգտնան. ուստի թէ մարդիկ և թէ ձիանք կ՚իյնային կը մեռնէին, այնպէս որ խաչակրաց անցած ճամբաներուն երկու կողմը մեռելներով լեցուեցան։ Աս կոտորածներուն մէկ պատճառն ալ ճամբաներուն դժուարութիւնը և օդին տաքութիւնն էր։

2 Խաչակիրք Անտիոք քաղաքին վրայ երթալէն առաջ, Կոնդոպրէն մեր Կիլիկիոյ Կոստանդին իշխանէն օգնութիւն խնդրեց, ան ալ ոչ միայն առատ պաշար տուաւ, հապա նաև կարճ ճամբան ցուցուց իրենց։

3 Երբոր Անտիոք քաղաքին քովերը հասան, քրիստոնեայք իրենք զիրենք համրեցին ու հարիւր հազար հոգի գտան։ Եօթը ամիս պատերազմելէն ետքը առին քաղաքը, և Պեմունդ անոր իշխանն եղաւ. ինչպէս որ անկէց առաջ ալ Բաղդուինոս Եդեսիոյ իշխանութիւնը առեր էր։ Այս յաղթութեանց ժամանակը Պարսից թագաւորին Ղարաբուղա զօրավարը անթիւ զօրքով յարձըկեցաւ

---

1 Ի՞նչ նեղութիւններ քաշեցին։
2 Մեր Կոստանդին իշխանէն ի՞նչ օգնութիւն գտան։
3 Անտիոք քաղաքին ի՞նչպէս տիրեցին։

քրիստոնէից բանակին վրայ, որ արդէն անդադար հիւանդութիւններով կը ջարդուէր ։ Այն ատեն յուսահատութիւնը սկսաւ տիրել քրիստոնեայ զօրաց վրայ. այնպէս որ մէջերնէն խիստ քաջերն ալ Երուսաղէմ հասնելու յոյսերնին կորեցին ։ Այն միջոցին Բարթուղիմէոս անունով Մարսիլիացի քահանան՝ Քրիստոսի կողը ծակող գեղարդին երկաթը գտաւ, և երբոր աս երկաթը բանակը բերին, զօրաց քաջութիւնը մէկէն 'ի մէկ նորէն վառուեցաւ ։ Տաճկըները չդիմացան քրիստոնէից յարձակմանը առջև, հարիւր հազար հոգի և բոլոր իրենց հարստութիւնը կորսնցընելով դէպ 'ի Եփրատ գետին կողմերը փախան ։ Աս յաղթութիւնը այնչափ զարմանալի երևցաւ ամենուն որ իրեք հարիւր մահմետականք Ղուրանէն ետ կեցան, ու գնացին Աստուծոյ երկիրը քրիստոնեայ եղան ։

[1] Անտիոքէն դէպ 'ի Երուսաղէմ քալեցին քրիստոնեայք՝ քսանըհինգ հազար հոգի ։ Քաղաքն որ տեսան, արցունք թափելով երեսի վրայ ընկած հեռուանց երկրպագութիւն ըրին Քրիստոսի սուրբ գերեզմանին, և մէկէն որոշեցին որ քաղաքը պաշարեն ։ Խեղճութիւնը ան էր որ զինուորները հիւանդ էին ու անոնց կէսը հազիւ կրնային պատերազմիլ. պաշարման մեքենաներ ալ չունէին. իսկ մահմետականք քառասուն հազար հոգւով պարիսպներուն պահպանութիւն կ'ընէին ։ Եւ սակայն քանի որ կը յիշէին քրիստոնեայք թէ ան երկրին հողը մեր Հաւատոյ աստուածային խորհրդոցն յիշատակովը զօդուած

[1] Երուսաղէմը Ի՛նչ կերպով առին ։

է՝ նոր ոյժ մը կ՚առնէին։ Կոնդոպրէ իշխանը հրամայեց իրեններուն որ ութը օր բոպիկ ոտքով ու բաց գլխով Երուսաղեմի չորս կողմը պտըտին. անկէց ետքը շարժական աշտարակ մը մօտեցուց պարիսպներուն. ան աշտարակէն ստոստ ասպետներ յարձակեցան պարիսպներուն վրայ ու տիրեցին քաղաքին ուրբաթ օր մը ժամը իրեքին, այսինքն 1099ին յունիսի 23ին, և սոսկալի կոտորած ըրին նէրսը։ Լոռենի դուքսը Կոնդոպրէն թագաւոր ուզեցին անուանել. բայց ինքը յանձն չառաւ, ըսելով թէ չեմ ուզեր թագաւորական նշան առնուլ վրաս հոն՝ ուր որ թագաւորն թագաւորաց փշէ պսակ առաւ գլուխը. ու գոհ եղաւ որ միայն Պարոն կամ Իշխան Երուսաղեմի ըսուի։ Քիչ ատենէն ետքը քրիստոնեայք Ասկալոն քաղաքին քովն ալ յաղթեցին մահմետականաց, որով իրենց նոր տէրութիւնը հաստատուեցաւ, և ասանկով լմընցաւ առաջին խաչակրաց արշաւանքը։

[1] Կալուածական իշխանութիւնը Հրէաստանի մէջ ալ հաստատուեցաւ։ Մեծամեծ կալուածոց կարգը անցան Անտիոքայ և Գալիլիայի իշխանութիւնները, Եդեսիոյ և Տրապօլսոյ կոմսութիւնները, Յոպպէի մարգիզութիւնը և Սիդոնի պարոնութիւնը։ Կոնդոպրէ մասնաւոր օրէնքներ ալ դրաւ, որ ինչուան հիմայ կեցած են, ու միջին դարու օրէնսդրութեանց մէջ շատ անուանի են։

[2] Տարի մը թագաւորելէն ետքը մեռաւ Կոն-

---

[1] Խաչակիրք Ինչ տեսակ կառավարութիւն հաստատեցին Պաղեստինու մէջ։

[2] Կոնդոպրէին ով յաջորդեց։

դուրս է, ու քրիստոնեայք հինգ օր իրեն համար սուգ մտան և աղօթք ըրին, ու իրեն գերեզմանը Գողգոթայի մէջ շինեցին այսպիսի արձանագրով. «Հոս թաղուած է մեծ դուքսը Գոդոֆրէ Պույյիոն, որ բոլոր աս երկիրս առաւ ու նորէն քրիստոնէական պաշտամունքին տուաւ»: Տեղը անցաւ եղբայրը Բաղդուինոս Ա (1100), որ տէրութիւնը մեծցուց՝ առնելով Աքքայի, և ինչուան Եգիպտոսի ներսի կողմերուն: Բաղդուինոս երկրորդին ատենները (1118) սրբոյն Յովհաննու Եղբարց հիւրանոցը նորոգեց Գերարդոս անունով գաղղիացին. Հուգոնոս Տիւփիւյի անունով մէկն ալ կանոն դրաւ որ ան եղբարքը զինուորութիւն ալ սորվին, ու պարտք ունենան անհաւատից դէմ պատերազմելու, որով իրեք տեսակ եղբարք կային ան ընկերութեան մէջ. այսինքն Աշխատաւորք որ նուիրական ծառայութիւնները կ՚ընէին, Փաստանտաւորք որ խորհուրդները կը մատակարարէին, և Զինուորեալ ասպետք. իսկ ընկերութեան հագուստը սև էր՝ կուրծքերնուն վրայ ճերմակ խաչով: Գրեթէ նոյն ատենները (1121) Հուկոս Տըփէյէն ուխտը ասպետ ընկերով ուրիշ եղբայրութիւն մըն ալ հաստատեց՝ Բաղդուինոս երկրորդին պաշտպանութեամբը. և որովհետև աս թագաւորը պալատին մէկ թևը ան ընկերութեան տուած էր, և պալատը Սողոմոնի տաճարին աւերակներուն վրայ շինուած էր, անոր համար ընկերութիւնն ալ Տաճարականք ըսուեցաւ: Ասոնց կարգին կանոնները սուրբն Բեռնարդոս տուաւ, և իրեք ուխտը սահմանեց իրենց, այսինքն հնազանդութիւն, ողջախոհութիւն և աղքատութիւն. հա-

զգեստնին ճերմակ էր՝ վրան կարմիր խաչով։

[1] Ֆուլք Անժուցի՝ Բաղդուինոս երկրորդին փեսան՝ յաջորդեց անոր 1131ին, ան ատենն որ Սելճուգեանց Աթաբէկները, այսինքն փոխանորդները սկսեր էին ինքնագլուխ ըլլալ ու զօրանալ. ուստի Բաղդուինոս երկրորդին ատենը (1144) Զէնկի կամ Զանգի անուանով աթաբէկը Եդեսիոյ տիրեց, ու իր որդին Նուրէտտին գրեթէ հիմնայատակ քանդեց ան քաղաքը։ Երուսաղեմի Թագաւորը աս դիպուածին վրայ սարսափած, մէկ կողմանէ ալ իր տկարութիւնը տեսնելով սկսաւ արեւմուտքէն օգնութիւն խնդրել։

[2] ԵՐԿՐՈՐԴ ԽԱՉԱԿԻՐՔ (1147)։ — Եւգինէոս Գ. պապը սուրբն Բեռնարդոսի յանձնեց որ նոր խաչակիրներ հանէ՝ արեւելեան քրիստոնէից օգնութեան հասնելու համար. անիկայ ալ՝ որ իրեն դարուն մէջ առաջին ճարտասան ու իմաստուն մարդն էր, իր քարոզութիւնը Գաղղիայէն սկսաւ։ Գաղղիոյ Թագաւորը Լուդովիկոս Է. Կրտսեր արդէն Վիթրի քաղաքը անիրաւութեամբ կողոպտած ըլլալուն համար զղջման մէջ էր. ուստի սուրբն Բեռնարդոս ժողովքի մը մէջ յորդորեց զինքը որ ըրած յանցանքը քաւելու համար ան սրբազան ճամբորդութեանը ձեռք զարնէ։ Ընկէ անցաւ Գերմանիա ու այնպէս վառեց զամէնքը՝ որ Կոնրադոս Գ. կայսրը մէկէն 'ի մէկ շատ մարդիկներով ճամբայ ելաւ. բայց իրեն զօրացն ալ իրեք մասին

1 Առաջին խաչակիրք ի՞նչ կերպով տկարացան։
2 Երկրորդ խաչակրութիւնը ի՞նչպէս սկսաւ։

երկուքը Յունաց դաւաճանութեանը զոհ եղան։

[1] Գաղղիոյ Թագաւորին շատ սէր ու բարեկամութիւն ցուցուց Մանուէլ Կոմնենոս Կոստանդնուպօլսոյ կայսրը. բայց Գաղղիացիք Ասիա անցնելնուն պէս՝ Յոյնք անոնց պաշար չտուին, և կամ ալիւրին մէջ կիր կը խառնէին ու անանկ կը ծախէին անոնց. անդիէն Տաճկըներն ալ Կոստանդնուպօլսոյ տէրութենէն իմանալով խաչակրաց անցնելու տեղուանքը դարանեցան ու շատ վնաս հասուցին անոնց։ Վերջապէս Փիլիպեր անունով քաջ սպարապետ ամէն դժուարութեան յաղթեց ու զօրքը Ատալիա հասուց, որ Պամփիլիա գաւառին մէջ պզտիկ նաւահանգիստ մըն է. անկէց սպարապետները նաւ մտան՝ Անտիոք երթալու, և հասարակ ժողովուրդը հոն թողուցին Յունաց պաշտպանութեանը տակը. իսկ Յոյնք զանոնք մահմետականաց մատնեցին։

[2] Կոնրադոս կայսրը Անտիոք քաղաքին քովը եկաւ, Գաղղիոյ Թագաւորին հետ միացաւ, և երկուքը մէկտեղ զօրքերնին ժողված՝ Դամասկոսի վրայ գնացին։ Աս մեծ մայրաքաղաքը չդիմանալով սաստիկ պաշարման՝ քիչ մնաց որ անձնատուր ըլլար. բայց քրիստոնէայ զօրավարաց մէջ երկպառակութիւն ընկաւ թէ քաղաքը առնուելէն ետքը որո՞ւն պիտի իյնայ. ան միջոցին քանի հազար Թուրք զօրքեր վրայ հասան, պաշարելոց օգնեցին, ու խաչակիրները հալածեցին։ Աս կերպով առանց

---

1 Երկրորդ խաչակրաց ճամբորդութիւնը ի՞նչպէս եղաւ։

2 Ի՞նչ վերջ ունեցաւ երկրորդ խաչակրութիւնը։

յաղթութեան և առանց փառքի վերջացաւ խաչակրաց երկրորդ արշաւանքը։ Երկու թագաւորները իրենց բանակը կորսնցընելէն ետև տեղերնին դարձան. Լուդովիկոս Կրասերն ալ Յունաց ձեռքը դերի իյնալէն ետքը՝ Սիկիլիոյ Ռոճեր թագաւորին քաջութեամբը ազատեցաւ։

## ԳԼՈՒԽ ԻԴ.

Երրորդ, չորրորդ, հինգերորդ և վեցերորդ խաչակիրք (1149-1229)։ Էյուպեանց պետութիւնը. — Սալահէտինի յաղթութիւնները. — Երրորդ խաչակիրք. — Փրետերիկոս Պարպարոսա. — Տէւտոնեան տապետութիւնը. — Փիլիպպոս Օգոստոս և Ռիքարտոս Առիւծասիրտն. — Ակրայի պաշարումը. — Ռիքարտոսի քաջութիւնները. — Սալահատինի հետ եղած հաշտութիւնը. — Չորրորդ խաչակիրք. — Բաղդուին Ֆլանտրայի իշխանը. — Վենետկոյ դուքսը Տանտոլօ. — Լատինացւոց Կոստանդնուպօլսոյ կայսերութիւնը. — Հինգերորդ խաչակիրք. — Տամիաթի առումը. — Վեցերորդ խաչակիրք. — Փրետերիկոս Բ. — Մելէք-Քամիլ Երուսաղէմ թագաւորութիւնը նորէն կը հաստատէ։

[1] Խաչակրաց ետ դառնալէն ետքը, Ասորւոց երկրին մէջ որչափ մահմետական իշխաններ որ կային՝ Նուրէտտին սուլտանը զանոնք նուաճեց ու Եգիպտոս անցաւ որ Ֆաթիմեանց տէրութիւնը կործանէ։ Բաղդադինոս Երրորդին յաջորդը Ամորի՝ փոխանակ ձգելու որ մահմետականք մէկզմէկ կործանեն, Նուրէտտինին դէմ ելաւ ու միտքը փոխել տուաւ անոր (1167)։ Աս թեթև յաջո-

---

[1] Էյուպեանց իշխանութիւնը ինչպէս սկսաւ։

ղութենէն սիրտ առած՝ կարծեց թէ Ֆաթիմեանց ալ պիտի կարենայ տիրել․ ուստի Եգիպտոս արշաւեց ։ Բայց Սարակինոսները քրիստոնէից դէմ իրարու հետ շուտ մը կը միաբանէին․ Նուրէտտին ալ իր զօրավարը խրկեց Ամօրիին դէմ որ հռչակաւոր Սալահատին կամ Սալահէտտինն էր , քաջ մարդ ու միանգամայն տաճկութեանը շատ հաւատարիմ ճանչցուած , այնպէս որ իր զօրքը զէնքը սուրբի տեղ կը դնէին ։ Յաղթուեցաւ Ամօրի թագաւորը և ուշ իմացաւ իր սխալը , որով աթաբէկներուն տէրութիւնը մեծցուցեր էր (1170) ։

1 Նուրէտտինին մեռնելէն ետքը Էյուպի որդին Սալահատին՝ ինքնագլուխ թագաւորեց , և անկեց սկսաւ Էյուպեանց տէրութիւնը (1173) ։ Սալահատին նախ Ասորւոց երկիրը վազեց , ու թէ որ Բաղդուինոս Դ դէմը չելլէր՝ ան երկրին պիտի տիրէր․ բայց յաղթուելով՝ ուղտի մը վրայ հեծած ձգեց փախաւ , և աս խայտառակութիւնը ոչ երբեք մոռցէն ելաւ ։ Զինադադարում մը եղաւ 1178ին․ բայց Պաղեստինու քաջ ասպետը Ռընոյ տը Շաթիյոն կամ Րենալտ ըսուած Գաղղիացին մէկիկ ջըրաւ ան դաշնադրութեան , և իր մարդիկներովը պատերազմէն ետ չկեցաւ․ միտքը դրաւ որ երթայ Մէտինէն ու Մէքքէն ալ կործանէ․ և իրաւցընէ ինչուան Մէտինէին դուռը հասաւ , բայց Սալահատին անբաւ ձիաւոր զօրքով հասաւ ետևէն , անոր պզտիկ բանակը չորս դիէն պաշարեց ու խորտակեց ։

---

1 Քրիստոնեայք ինչ յաղթութիւն ըրին Սալահատինի դէմ ։

[1] Քրիստոնէից աս փորձը՝ որ ըրին մահմետականաց գլխաւոր քաղաքներուն դէմ, պատերազմին նորէն բորբոքելուն պատճառ եղաւ։ Սալահատին երդումն ըրաւ որ իր հաւատքին եղած նախատանացը վրէժը հանէ. 1187ին Գալիլեայի մէջ Տաճարականներէն ու սրբոյն Յովհաննու ասպետներէն հինգ հարիւր հոգի սպաննեց։ Կիւյի կամ Կի Լուսինեան Թագաւորը բոլոր Պաղեստինու զօրքերը ժողվեց, ու Սալահատինին վրայ պատերազմի ելաւ Տիբերիայ լճին քովը։ Քրիստոնեայք թէպէտև քիչւոր էին, առջի բերանը մեծ քաջութեամբ պատերազմեցան. բայց երբոր սուրբ խաչափայտը մահմետականաց ձեռքն ընկաւ, յուսահատութիւնը տիրեց վրանին. ոմանք զէնքերնին կը նետէին ու կը սպասէին որ սպաննուէին, ոմանք ալ մահմետականաց Թրերուն մէջ կը նետուէին։ Թագաւորը գերի բռնուեցաւ, ու Սալահատինէն պատիւ գտաւ։ Այն ձախորդութենէն ետքը ամէն բան ձախորդ գնաց. Երիքով (Նապլուսա), Պտղոմայիս (Աքեա), Յոպպէ (Եաֆա) և Կեսարիա քաղաքները անձնատուր եղան. Սալահատին ալ գնաց Երուսաղէմը պաշարեց, ու շատ առեններէն ետքը յարձակմամբ տիրեց քաղաքին։

[2] ԵՐՐՈՐԴ ԽԱՉԱԿԻՐՔ (1189-1192)։ Երբոր Երուսաղէմի առնուելուն գոյժը տարածուեցաւ, բոլոր Եւրոպա սուգ մտաւ. Ուրբանոս Գ. պապը

---

1 Սալահատին ի՞նչպէս տիրեց Երուսաղէմի։
2 Եւրոպացիք երբոր լսեցին Երուսաղէմի առնուիլը ի՞նչ ըրին։

սրտին ցաւէն վախճանեցաւ, և ամէն եկեղեցեաց մէջ ողբեր կարդացուեցան ։ Մոնֆեռա մարգիզը, որ Տիւրոսի իշխանն էր, ամէն քաղաքներու մէջ պատկեր մը պտըտցընել տուաւ որ Երուսաղեմի առնուելուն տեսարանն էր. անոր մէջ նաև Քրիստոսի գերեզմանը կ'երևնար՝ մահմետական ձիաւորէ մը ոտնակոխ եղած. աս տեսնելով ժողովուրդները երեսնին կը խաչակնքէին ու կուրծքերնին ծեծելով վայ մեզի կը կանչէին ։

¹ Այն միջոցին Տիւրոսի արքեպիսկոպոսը Գուլիելմոս գնաց Եւրոպա ու Նոր խաչակրութիւն կը քարոզէր. Անգղիոյ Հենրիկոս Բ ու Գաղղիոյ Փիլիպպոս Օգոստոս թագաւորները համոզեց, և ան արշաւանքին ծախքը հանելու համար որոշեցին որ Սալաֆին անունով տասանորդ մը ժողվեն ։ Կղեմէս Գ պապն ալ Եւրոպայի թագաւորները յորդորելէն ետքը՝ Կիլիկիոյ մեր Լևոն իշխանին և Գրիգոր Տղայ կաթողիկոսին ալ գրեց որ ձեռքերնէն եկած օգնութիւնը ընեն քրիստոնէից ։

² Անգղիացի ու գաղղիացի ասպետաց կամաց կամաց ժողվուած ատենը, Գերմանիոյ կայսրը Փրեդերիկոս Պարպարոսսա գնաց ինչուան Թրակիա մտաւ, ու շատ նեղութիւն քաշեց դաւաճան Յունաց ձեռքէն ։ Ասիոյ մէջ Տաճիկները Կոստանդնուպոլսոյ Իսահակ Անգեղոս կայսեր հետ խօսք դրած՝ Գերմանացւոց անցնելուն ճամբուն վրայ դարանեցան, ու անոնցմէ շատ մարդ ջար-

---

¹ Երրորդ խաչակրութիւնը ինչպէս սկսաւ ։

² Ի՞նչպէս եղաւ երրորդ խաչակրաց ճամբորդութիւնը ։

դեցին. Փրեդերիկոս կայսրն ալ Կիլիկիայի Սելեւկիա գետին պաղ ջրերուն մէջ լուացուելով հիւանդացաւ մեռաւ։ Այն միջոցին մեր Լեւոն իշխանն ու Գրիգոր Տղայ կաթողիկոսը՝ Ներսէս Լամբրոնացւոյն հետ հոն հասան, ու կայսեր մահուանը վրայ շատ ցաւեցան։

1 Սալահադին անոր Տիւրոս քաղաքը պաշարեր էր, բայց չկրցաւ առնուլ. Լուսինեան Թագաւորը ջանալով որ նորէն Երուսաղեմի Թագաւորութիւնը ձեռք ձգէ, Աքեա քաղաքը պաշարեց։ Պարպարոսայի որդին Փրեդերիկոս հինգ հազար Գերմանացի զինուոր օգնական բերաւ. բայց Թագաւորը անոնցմէ օգուտ մը չտեսաւ։ Աս Փրեդերիկոսը Տաճարականաց ու Հիւրընկալասպետութեանց կարգերուն վրայ պնդելով՝ իր ազգին համար ալ նոր կարգ մը հաստատեց, որ ըսուեցաւ Տէւթոնեան կարգ սրբոյ Կուսին Երուսաղեմի։ Աս ասպետներուն հագուստը ճերմակ էր, և կուրծքերնուն վրայի խաչը սև։

2 Անդին Աքեայի պաշարումը առաջ չէր երթար. վասն զի խաչակրաց մէջ սաստիկ սով իյնալով, ինչուան ազնուականներն ու իշխաններն ալ անօթութենէն կը մեռնէին։ Այն միջոցին Հռիքարտոս Առիւծասիրտն (որ Հենրիկոս երկրորդ Անգղիոյ Թագաւորին յաջորդեր էր) և Փիլիպպոս Օգոստոս՝ իրենց զօրքերը ժողված՝ օգնութեան հասան։ Գաղղիոյ Թագաւորը առաջ եկաւ ու պաշարեց Հռիքարտոսին՝ որ Սիկիլիոյ և Կիպրոսի

1 Սալահադին ինչ ըրաւ երրորդ խաչակրաց դէմ։
2 Քրիստոնեայք ինչպէս առեցին Աքեայի։

մէջ քաջութիւններ կ'ընէր: Անգղիոյ թագաւորն ալ հասնելուն պէս՝ ամէնքը մէկէն Աքեայի պաշարումը սաստկացուցին. այնպէս որ ան ամուր բերդաքաղաքը անձնատուր եղաւ աս պայմաններով որ մահմետականները չսպաննուին, Քրիստոսի խաչափայտը նորէն ետ դարձընեն մահմետականք, ու երկու հարիւր հազար ոսկի ալ տան Եւրոպացւոց (1191):

¹ Աս յաջողութենէն ետքը՝ Փիլիպպոս Օգոստոս թագաւորը Ռիքարտոսին գոռոզութեանը չդիմանալով՝ ասոր հազար հոգի թողուց Պուրկոյնի դքսին Հուկոս չորրորդին, ու ինքը ետ դարձաւ. և Ռիքարտոս յանձն առաւ որ Սարակինոսաց հետ եղած դաշնագրութիւնը գլուխ հանէ: Երբոր Սալահադին չուզեց վճարել խոստացուած ստակը, Ռիքարտոս հրամայեց որ երկու հազար եօթը հարիւր Սարակինոս գերիները թրէ անցուին, և ինքը Յոպպէի վրայ գնաց: Կեսարիա քաղաքին քով սաստիկ պատերազմ մը եղաւ, և Սալահադին զարմանալի քաջութիւններ ցուցուց. վասն զի իր զօրքերուն փախչելէն ետքն ալ տասներեօթը ձիաւորով ինքը պատերազմեցաւ. ոչ գրօշը վար իջեցուց և ոչ փողերուն ձայնը դադրեցուց. ան ատեն քսան հազար Սարակինոսք նորէն եկան չորս դին ժողվուեցան և իրենց ձիերովը քրիստոնէից վրայ յարձըկեցան, բայց Ռիքարտոսի անյաղթելի թրին առջև իրենք ալ չդիմացան. Սալահադին ձգեց փախաւ՝ ութը հազար զինուոր և

---

¹ Ուրիշ մեծ յաղթութիւն ըրին քրիստոնեայք Սալահադինի դէմ:

երեսունուերկու Էմիր կորսնցընելէն ետքը ։ Այս պատերազմը Ասուր գեղին քովը եղաւ ։

1 Թէ որ ան ատենը Հուխքարտոս Երուսաղեմի վրայ քալէր, ինչպէս որ իրեն խորհուրդ կուտային, շուտով կը առնէր Երուսաղեմ. բայց ինքը Յոպպէ, Ասկաղոն, Նապլուսա և Գազա քաղաքներուն պարիսպները շինելու զբաղեցաւ ։ Գաղղիացիք նորէն սկսան տրտնջալ, և Աւստրիոյ դուքսը կ'ըսէր թէ " Ես հոս չեմ եկած հիւսնութիւն կամ որմնադրութիւն սորվելու, հապա Քրիստոսի գերեզմանը առնելու "։ Բայց Հուխքարտոս այսպիսի խօսքերով չէր վհատեր, այլ մանաւանդ աւելի սիրտ կ'առնէր ։ Օր մը տեսան որ բանակը դարձաւ՝ բոլոր վրայի զրահը նետերով ծակծըկած. ուրիշ օր մըն ալ տէգը ձեռքը առած՝ ինքը մինակ աներկիւղ ձին խաղցուցեր էր վաթսուն հազար Սարակինոսաց առջեւը՝ պատերազմի հրաւիրելով զանոնք, և մէկն ալ չէր համարձակած դիմացը ելլելու ։ Ամէն անգամ որ իրեններուն քովը կը դառնար, իր ձեռքովը սպաննուած մահմետականներուն քսան երեսուն գլուխն ալ հետը կը բերէր ։

2 Վերջապէս հրաման տուաւ Հուխքարտոս որ զօրքը Երուսաղեմի վրայ երթան (1192). բայց Պուրկոյնի դուքսը դէմ կեցաւ, ու բոլոր խաչա-

---

1 Կեսարիոյ յաղթութենէն ետքը ի՞նչ ըրաւ Հուխքարտոս ։

2 Ի՞նչ կերպով Երուսաղէմ նորէն քրիստոնէից ձեռքէն անցաւ ։

կրած սիրտը կոտրեց․ Քսանից ժողովն ալ*, որ Հռիքարտոս հաստատեր էր, որոշեց որ Երուսաղէմի քովէն հեռանայ զօրքը։ Այն միջոցին Հռիքարտոս իմացաւ որ իր Յովհաննէս եղբայրը ապստամբեր է իրեն դէմ Անգղիոյ մէջ․ Փիլիպպոս Օգոստոս ալ հակառակութիւններ կ'ընէ իրեն․ Եգիպտոսի սուլթանէն զինադադարում խնդրեց քրիստոնէից համար․ բայց անիկայ պատասխան տալու տեղը վազեց Յոպպէն առաւ։ Թագաւորը բարկացած՝ Սարակինոսաց դէմն ելաւ, և իր քաջութեամբը սարսափեցուց զանոնք․ մէջերնէն մէկն ալ որ համարձակեր էր զինքը մենամարտութեան հրաւիրելու՝ զարկաւ թրովը երկու կտոր ըրաւ։ Սալահադին տեսնելով որ իրենները մէկ մարդու մը առջևը չեն դիմանար, նախատեց զանոնք․ բայց պատասխան տուին թէ "Ո՞վ կրնայ Հռիքարտոսի դէմ կենալ․ անկեց զարնուողը պէտք է որ մեռնի․ անիկայ մարդ չէ, կարծէ դուրս բան մըն է,,։ Սալահադին ալ այնչափ քաջութիւն տեսնելէն ետքը հաւանեցաւ հաշտութիւն ընելու, անով Երուսաղէմ նորէն քրիստոնէից ձեռքը անցաւ, ինչպէս նաև Տիւրոսէն ինչուան Յոպպէ եղած երկիրները։

† Ասանկով լմնցաւ երրորդ խաչակրութիւնը, որուն մէջ Անգղիոյ թագաւորին քաջութիւնը

---

† Հռիքարտոս ի՞նչ կերպով իր երկիրը դարձաւ։

* Այն ժողովքին մէջ հինգ Տաճարական էր, հինգ Հիւրընկալ, հինգ Գաղղիայի պարոն, հինգ ալ պաղէստինացի պարոն։

պայծառացաւ, իր անունն ալ արեւելքին մէջ ահարկու բան մը եղաւ, այնպէս որ կ՚ըսեն թէ մահմետական մայրերը իրենց տղաքը վախցընելու համար կ՚ըսեն եղեր. « Զայնդ քաշէ, չէ նէ հիմա Հռիքարտոսը կը կանչեմ որ զքեզ մեռցընէ »: Բայց աս դիւցազնը Եւրոպա որ դարձաւ, շատ խեղճութիւններու պատահեցաւ. վասն զի փոթորիկով մը Դալմատիոյ ծովեզերքին ընկաւ, Աւստրիոյ Լէոփոլտ դուքսը զինքը բռնեց ու Հենրիկոս Դ կայսեր ձեռքը տուաւ. ան ալ գերի պահեց քովը Հռիքարտոսը՝ ինչուան որ շատ ստակ տալով ազատեցաւ ձեռքէն:

[1] Հռիքարտոսի դառնալէն քիչ ատեն ետքը Սալահատինն մեռաւ, և տէրութիւնը իր որդւոցը թողուց. բայց եղբայրը Մէլիք Ատէլ անոնց ձեռքէն առաւ իշխանութիւնը, և ինքը տիրեց Եգիպտոսի (1196): Ան կռիւներուն ատենը Պաղեստինու քրիստոնեաները քիչ մը հանգստութիւն գտան. Կիւյի Լուսինեան խաղաղութեամբ կը կառավարէր Կիպրոս կղզին՝ որ Հռիքարտոսը Յունաց ձեռքէն առեր էր. Հենրիկոս Շամփանիացին ալ Երուսաղէմի տէրութիւնը կը հոգար:

[2] ՉՈՐՐՈՐԴ ԽԱՉԱԿԻՐՔ (1202): — Իննովկենտիոս Գ պապին քահանայապետութեան ժամանակը՝ Ֆուլք անունով աղքատ գաղղիացի քահանան սկսաւ նոր խաչակրութիւն մը քարոզել: Թի-

---

[1] Սալահատինի մեռնելէն ետքը Պաղեստինու վիճակը ինչպէս եղաւ:

[2] Չորրորդ խաչակրութիւնը ինչ կերպով սկսաւ:

պոյ Դ՝ Ըամփանիոյի կոմսը, Պոտուէն Թ՝ Ֆլանտրայի կոմսը և Վոնիփակիոս Բ՝ Մոնֆէռայի մարգիզը խաչակիր գրուեցան։ Վենետկոյ դուքսը Տանտոլոյ ծերունին նաւեր խոստացաւ՝ աս պայմանով որ իրեն չորս միլիոն ֆրանք տրուի, աշխարհակալութեանցն ալ կէսը։ Այն դաշնադրութենէն ետքը հարկ եղաւ որ առաջ խաչակիրք Վենետկեցւոց համար Դալմատիոյ Զարա քաղաքը առնուն, Տանտոլոյ դուքսն ալ գնաց զօրքով Իստրիայի եզերց։

1 Այն ատենը Իսահակ Անգեղոս կայսեր որդին Աղեքս գնաց խաչակրաց ոտքը ընկաւ, ու կը խնդրէր որ իր հայրը Իսահակը նորէն հաստատեն Կոստանդնուպօլսոյ աթոռը, վասն զի Իսահակայ եղբայրը զինքը ձգեր էր կայսերութենէն. խոստացաւ ալ որ շատ ստակ տայ իրենց. Յունաց եկեղեցին պապին իշխանութեան տակը ձգէ, ու Երուսաղէմի արշաւանքին օգնէ։ Դուքսն ալ տեսնելով որ աս արշաւանքէն իր հայրենեացը մեծամեծ օգուտներ կրնան ըլլալ, համոզեց զօրքը՝ որ Աղեքսի խնդիրը կատարեն։

2 Լատինացիք Կոստանդնուպօլիսն որ տեսան՝ զմայլեցան անոր շէնքերուն, պարիսպներուն ու չորս հարիւրէն աւելի աշտարակներուն վրայ։ Պաշարումը խիստ քիչ քշեց. վասն զի Վենետկեցիք քաղաքացւոց հետ ծածուկ խօսք դրած էին. ուստի զօրքը համնելուն պէս՝ աշտարակներուն

---

1 Խաչակիրք ի՞նչ պատճառաւ Կոստանդնուպօլսոյ վրայ գնացին։

2 Ի՞նչպէս առին Լատինք Կոստանդնուպօլիսը։

վրայ սրբոյն Մարկոսի գլուխը անկուեցաւ, Իսահակ Անգեղոս բանտէն ելաւ ու նստաւ աթոռը. իսկ եղբայրը բոլոր հարստութիւնը առած՝ ձգեց փախաւ։ Բայց երբոր հրապարակուեցաւ Յունաց մէջ թէ իրենց եկեղեցին անկէց ետքը Հռոմայ եկեղեցւոյն պիտի հնազանդի, ամէնքը մէկէն ոտք ելան, և Ալեքս Դուկասը կայսր ընտրեցին որ Մուրծուֆլոս՝ այսինքն Թաւայօն կ'ըսուէր։ Ան ատեն Լատինացիք բռնութեամբ մտան քաղաքը, տները կողոպտեցին, ու կէս գիշերուն Սուասոնի եպիսկոպոսը հրապարակեց որ Ֆլանտրայի կոմսը Պոտուէն կամ Բաղդուինոսը կայսր ընտրուեցաւ։ Վենետիկեցւոց դքսին ընկան կղզիներն ու Կոստանդնուպօլսոյ նաւահանգիստները, իսկ գաւառները իբրև մէյմէկ կալուած՝ գլխաւոր իշխաններուն մէջ բաժնուեցան. Աթէնքը դուքսի մը տրուեցաւ, Արգոսն ու Կորնթոսը մէյմէկ պարոններու, Աքայիան ալ այլևայլ իշխաններու. բայց ամէնքն ալ Կոստանդնուպօլսոյ կայսեր հպատակ պիտի ըլլային (1204)։

1 Երկու տեսակ ահաւոր թշնամիներ ունեցաւ ան ատենը Լատինացւոց հիմնած նոր տէրութիւնը. մէկը Բուլղարներն էին, մէկալն ալ Յունաց կայսերքը, որ Ասիա քաշուած՝ Նիկիա ու Տրապիզոն կը նստէին։ Նոյն միջոցին սոսկալի թշուառութիւններ, ժանտամահ, գետնաշարժ ու Սարակինոսաց արշաւանքները՝ Պաղեստինու քրիստոնէից շատ նեղութիւն կուտային։

---

1 Լատինք Արևելքի տիրած ատեննին ինչ նեղութիւններ քաշեցին։

[1] ՀԻՆԳԵՐՈՐԴ ԽԱՉԱԿԻՐՔ (1217) : — Իննովկենտիոս Գ աս դժբաղդութիւնները տեսնելով Լատերանու ժողովին մէջ նոր խաչակրութիւն մը հրատարակեց (1215) : Խոստացաւ որ ինքն ալ խաչակիր գլուխ · բայց մահը վրայ հասնելով դիտաւորութիւնը անկատար մնաց (1216) : Անոր յաջորդը Ոնորիոս Գ ուզեց ան գործողութիւնը առաջ տանիլ : Երբոր Գերմանիոյ կայսրը Փրեդերիկոս Բ չուզեց խաչակիր ըլլալ, կամ թէ շատ դանդաղեցաւ, Անդրէաս Բ Մաճառաց թագաւորը բոլոր բանակին սպարապետ եղաւ, և անոր հետը միացան Յովհաննէս Պրիէնեանը՝ Երուսաղեմի թագաւոր անունով, և Կիպրոսի Լուսինեան թագաւորը : Աս անգամ խաչակիրք պապին խորհրդովը Եգիպտոսի վրայ գնացին, որպէս զի Էյուպեանց իշխանութիւնը կործանեն · երբոր Եգիպտոս հասան, Ասորիոյ դուքսը և Հոլանտիոյ կոմսն ալ հոն գնացին ու Տամիաթ քաղաքը պաշարեցին (1218) :

[2] Եգիպտոսի Մէլիք Ադէլ սուլդանը նոր մեռեր էր, ու տեղը անցեր էր Մէլիք Գեամիլ խաղաղասէր մարդը · ասիկայ առաջարկեց քրիստոնէից որ Երուսաղէմը քովի քաղաքներովը հանդերձ իրենց դարձընէ, միայն թէ Տամիաթին պաշարումը վերցընեն · բայց Պեղագիոս կարդինալը, որ պապին նուիրակն էր, դէմ կեցաւ, ու պնդեց որ պէտք է Տամիաթը առնուլ · խաչակիրներն ալ

---

1 Հինգերորդ խաչակրութիւնը ինչպէս սկսաւ :
2 Ինչ կերպով վերջացաւ ան խաչակրութիւնը :

բանագրանքէ վախնալով՝ մօտիկ ըլլին, Ցամիաթը առին ու անկէց Գահիրէի վրայ գնացին ։ Էյուպեանք տեսնելով որ իրենց իշխանութիւնը փճանալու վրայ է, բոլոր դաշտերը Նեղոս գետին ջրովը ողողեցին, ու այնպիսի խեղճութեան մէջ ձգեցին քրիստոնեաներն որ կրնային ամէնքն ալ թրէ անցունել. բայց Էյուպեանք Եւրոպացւոց վրէժխնդրութենէն վախնալով՝ ետ կեցան ։ Իսկ քրիստոնեայք Ցամիաթը նորէն Եգիպտացւոց դարձուցին, ու իրենք Քրիստոսի խաչափայտը հետերնին առած Եւրոպա դարձան ։

1 ՎԵՑԵՐՈՐԴ ԽԱՉԱԿԻՐՔ (1228) ։ — Աս խաչակրութեան գլուխ կեցաւ Փրեդերիկոս Բ կայսրը, որ տասնըհինգ տարուընէ 'ի վեր խաչակիր գրուեր էր, ու մէյմէկ պատճառանքով խօսքէն ետ կը կենար ։ Կ'ըսէին թէ աս կայսրը Սարակինոսաց բարեկամ է. վասն զի անոնց գիտութիւններն ու սովորութիւնները կը սիրէր ։ Գրիգոր Թ պապին նզովքէն վախնալով՝ վերջապէս Պրինտիզիէն ելաւ Փրեդերիկոս ու 1228ին Աքեա հասաւ ։ Հոն Մելիք Քեամիլ սուլթանին հետ սկսաւ ուսումնական թղթակցութիւն ընել, ու երկու թագաւորները մէկ բանակէն միւսալը զանազան առարկութիւններ կը խրկէին՝ հաւատոյ, փիլիսոփայութեան, բժշկութեան ու երկրաչափութեան վրայ ։ Մէկ կողմանէ ալ Փրեդերիկոս կը խնդրէր որ Երուսաղէմը քրիստոնէից տրուի, որպէս զի կ'ըսէր՝ Փրանկաց պատիւը պահուի ։

---

1 Վեցերորդ խաչակրութիւնը ինչպէս եղաւ ։

իսկ Մելիք Քեամիլ, որ կայսեր վրայ մեծ համարումն ունէր, Երուսաղեմի թագաւորութիւնը տուաւ անոր, այս պայմանաւ որ Էօմէրի մզկիթը մահմետականաց ձեռքը մնայ։ Այս պայմանիս վրայ քրիստոնեայք բարկացան, և կայսեր դէմ՝ որ արդէն բանադրուած էր՝ թշնամացան. Փրեգերիկոս ալ լսելով որ իր տէրութեանը մէջ խռովութիւն ելեր է, Երուսաղեմի կառավարութիւնը յանձնեց Հռիքարտոս Ֆելլինկէռ զօրավարին ու ինքը դարձաւ Եւրոպա (1229)։

## ԳԼՈՒԽ ԻԵ.

Եօթններորդ և ութներորդ խաչակիրք (1229-1270)։ Մուղուլք. — Ճինկիզխան. — Ճինկիզխանին տիրած երկիրները. — Ըրած կոտորածները. — Մահը. — Խարէզմեանք. — Եօթններորդ խաչակիրք. — Սուրբ Լուդովիկոս. — Տամիաթի առումը. — Քրիստոնէից յաղթութիւնը. — Սուրբ Լուդովիկոսի Պաղեստին երթալը. — Պաղտատու ամիրապետութեան կործանիլը. — Մեմլուքները. — Ութներորդ խաչակիրք. — Սուրբ Լուդովիկոսի Թունուզ երթալը. — Քրիստոնէայք Պաղեստինէն կը հալածուին. — Խաչակրութեանց հետեւանքները։

1 Այն տաեն որ Կոստանդնուպօլսոյ մէջ հաստատուած լատին կայսրութիւնը մէկ դիէն Բուլղարաց՝ մէկալ դիէն Յունաց հետ կը կռուէր ու գրեթէ բոլոր Երուսաղէմի թագաւորութիւնը

---

1 Այն տարիները ի՞նչ նոր տէրութիւն ելաւ Ասիոյ մէջ։ — Ո՞վ էր Ճինկիզ խան։

Տաճկաց ձեռքն էր, մէկ նոր սոսկալի տէրութիւն մը սկսաւ զօրանալ արեւելեան Ասիոյ մէջ։ Մողոլները, որ Սկիւթացի կամ Թաթար ալ կ'ըսուին, 1170ին սկսեր էին անուանի ըլլալ։ Թէմուճին անունով մէկը իր ազգին այլեւայլ ցեղերը միացընելէն ետեւ՝ Քէրայեան ըսուած Թաթար խաներուն յաղթեց, և անոնց իշխանին գանկը գաւաթի տեղ գործածելով՝ բոլոր թշնամիքը սարսափեցուց։ Քառասունըչորս տարեկան երբոր եղաւ՝ անունը փոխեց և ըսուեցաւ Ճէնկիզ խան. Չինու վրայ արշաւեց, յարձակմամբ ու սովի բռնելով Ինեաուն քաղաքի տիրեց հոն, և Խարէզմի Մէհէմմէտ Բ սուլտանին երկիրները կոխկռտեց, վայրենի Մողոլներովը մտաւ Պարսկաստան ու Պուխարա, կանայքը, տղաքն ու ծերերը թրէ անցուց, ու երկիրը աւերակով լեցուց։

1 Բոլոր Ասիա սկսաւ դողալ Մողոլներէն. ան աստիճանի վախ ձգեր էին աս բարբարոսները ամենուն սիրտը՝ որ մարդ չէր համարձակեր դէմերնին ելլելու։ Արաբացի պատմագրաց մէկը կ'ըսէ թէ "Ասոնք անանկ վախցուցեր էին զամէնքը, որ վրանին չհաւատալի բաներ կը պատմուի։ Կ'ըսեն թէ օր մը Թաթարին մէկը Միջագետքի մէջ բազմամարդ գեղ մը մտեր է, զամէնքը մէկիկ մէկիկ մորթեր է, ու մէկը սիրտ չէ ըրած ինքզինքը պաշտպանելու։ Ուրիշ Թաթար մըն ալ մէկը բռներ է, ու քովը զէնք չունենալով՝ անոր հրամայեր է որ գետինը պառկած կենայ ինչուան որ ինքը երթայ զէնք գտնէ. խեղճ մարդը անշարժ պառկած կե-

1 Թաթարաց արշաւանքը ինչպէս էր։

ցեր է՝ ինչուան որ գազանամիտ Թաթարը ղէնք գտեր ու եկեր զինքը մեռուցեր է։ Մենք ալ տասնըեօթը հոգի ճամբորդութիւն ընելու ատեննիս՝ կ'ըսէ, դիմացնիս ձիաւոր Թաթար մը ելաւ, հրամայեց մեզի որ իրարու ձեռքերը ետեւնիս կապենք։ Ընկերներս սկսան մէկէն հրամանը կատարել, ես դարձայ ըսի իրենց. Մինակ է աս մարդը, սպաննենք զինքն ու փախչինք։ — Պատասխան տուին թէ մենք կը վախնանք. — Բայց ամէնքնիս ալ պիտի մեռցընէ ըսի, մենք մեռցընենք զինքը, թերեւս Աստուած մեզի կ'օգնէ, ու կրնանք ազատիլ։ Երբոր տեսայ թէ մէկը սիրտ չըրաւ, զարկի դանակովս զինքը սպաննեցի, ու ամէնքնիս ալ ձգեցինք փախանք,,։

[1] Ճինկիզ խանի մէկ տեղի մը տիրելէն առաջ անոր իշխանին մարդ կը խրկէր ու կ'ըսէր. " Թէ՛ որ չես հպատակիր, Աստուած միայն գիտէ թէ գլխուդ ի՞նչ բան պիտի գայ,,։ Թէ որ իշխանը հպատակէր, պատանդներ պիտի տար, և շատ ստըկի տուրք, այնպէս որ շատ անգամ ամէն բանի տասանորդ կ'առնէր, ինչուան նաև մարդկանց տասնին մէկը։ Իսկ թէ որ չհնազանդէր՝ պէտք էր որ ձգէր փախչէր. ապա թէ ոչ՝ կը մտնէին անոր արիւնարբու գազանները, երկիրը տակնուվրայ կ'ընէին ու բոլոր բնակիչները թրէ կ'անցընէին։ Երբոր Մաճառստան մտան՝ գեղերու չորս կողմէն կրակ տուին ու մէջիններովը այրեցին. քաղաքներու մէջ ալ բոլոր բնակիչքը հրապարակները ժողվեցին, բոլորովին մերկացուցին ու ետևէ ետև մոր-

---

[1] Ի՞նչ անգթութիւններ կ'ընէր Ճինկիզ խան։

թեցին ։ Իրենց տղաքը զուարճացընելու համար՝ խեղճ քաղաքացւոց տղաքը անոնց ձեռքը կուտային որ մուրճերով անոնց գլխուն զարնելով ճզմեն ու զուարճանան ․ իսկ կտրիճներուն քիթն ու ականջը կը կտրէին ու զանոնք իրենց գերի կ՚ընէին ։ Կանայք ալ կատաղութիւններն գեղեցիկ կանանց վրայ կը թափէին , խեղճերը կտոր կտոր կը ջարդէին ու իրենց երկանը զանոնք կը կերցընէին ․ միայն տգեղները իբրև իրենց գերի կը պահէին ։

¹ Երբոր Ճինկիզ խան Չինու երկիրը նոր ըրած արշաւանքին ատեն շէնքերն ու քաղաքները կը կործանէր և մարդիկը կը ջարդէր , մահը վրան հասաւ ու խեղճ ժողովուրդը անոր ձեռքէն ազատեց ։ Մեռնելու ատենը ըսաւ Ճինկիզ խան իր որդւոցը ․ “ Աստուծոյ օգնութեամբը ձեզի համար այնպիսի ընդարձակ տէրութիւն մը ձեռք ձգեցի , որ տարուան մը մէջ չկրնար մէկը մէկ ծայրէն մէկալը պտըտիլ ։ Թէ որ կ՚ուզէք աս տէրութիւնը չկորսընցընել , միաբան եղէք , մէկ տեղ ձեր թշնամւոյն գլուխը կոտրեցէք ու ձեր բարեկամները բարձրացուցէք ,, ։ Ասկից քանի մը պատուէրներ ալ տալէն ետքը հոգին փչեց աս սոսկալի աշխարհակալը վաթսունըվեց տարեկան՝ քսանուերկու տարի ահաւոր թագաւորութիւն մը քշելէն ետքը (1227) ․ Մողոլներն ալ զինքը իբրև Աստուած պաշտեցին , որ զիրենք խեղճութենէն հաներ ու այնչափ զօրացուցեր էր ։ Յանդուգն քաջութեամբը ու կարգէ դուրս խորագիտութեամբը այնչափ աւերմունքներ ու յաղթութիւններ ըրաւ Ճին-

---

¹ Ի՞նչ կերպով մեռաւ Ճինկիզ խան ։

կից խան, որ յայտնի կը տեսնուի թէ Աստուծոյ բարկութեանը գաւազանն էր, ինչպէս որ ինքը Ճինկիզ խան ալ ամէն տեղ կը քարոզէր, և ամենևին մարդկանց կրօնքին չէր դպչէր. ուստի ամէն տեսակ կրօնքի ալ պաշտօնեաները, ինչպէս նաև աղքատները, բժիշկներն և ուսումնականքը տուրքէ ու հասարակ գործողութիւններէ ազատ կը թողուր։

¹ Խարէզմեանք Մողոլներուն ձեռքէն փախչելով Ասորւոց երկիրը գնացին ու վատ վրէժխնդրութեամբ մը իրենց սիրը քրիստոնէիցմէ ու Տաճկըներէն հանեցին։ Թիպոյ Ղամփանիացին, ետքն ալ Ռիքարտոս Քօռնուալլիացին Եւրոպայէն զօրք բերել տուին, բայց անօգուտ. Խարէզմեանք տիրեցին Երուսաղէմի, ու գրեթէ հիմնայատակ կործանեցին, Կոնգօպրէ Պօյլիոնին ոսկորներն ալ ցիրուցան ըրին. անով ալ գոհ չըլլալով Եգիպտոսի վրայ վազեցին, բայց Մէլիք Շահ սուլտանը՝ որ Մէլիք Քեամիլին յաջորդեր էր՝ զիմացնին ելաւ, ու մեծ պատերազմով զանոնք փճացուց։

² ԵՕԹՆԵՐՈՐԴ ԽԱՉԱԿԻՐՔ (1248)։ — Քրիստոնէից վիճակը անով ալ չշտկուեցաւ. վասն զի Խարէզմեանց բռնութեանը տեղ Եգիպտացի սուլտաններուն վրէժխնդրութեանը տակն ընկան։ Իննօվկենտիոս պապը անոնց վրայ խղճալով՝ Լիոնի ժողովքին մէջ Պաղեստինու քրիստոնէից քաշած

---

¹ Խարէզմեանք ինչպէս տիրեցին Երուսաղէմի։

² Եօթներորդ խաչակրութիւնը ինչ կերպով հրատարակուեցաւ։

ներուն վրայ ճառ մը խօսեցաւ ու նոր խաչակրութեան յորդորեց զամէնքը . բայց իր խօսքին մտիկ ընող չեղաւ . վասն զի խաչակրութեան սէրը շատ պաղեր էր ։

[1] Մայն Գաղղիոյ Թագաւորը Սուրբն Լուդովիկոս եղաւ որ Երուսաղեմի խեղճութեանը վրայ շատ կը ցաւէր . ծանր հիւանդութեան մը մէջ ալ իյնալով որոշեց որ եթէ անկէց ազատի, Երուսաղէմ երթալը ամէնէն չուշացընէ ։ Մայրը շատ աշխատեցաւ որ արգիլէ զինքը, բայց անիկայ 1245ին ժողով մը ըրաւ Փարիզ քահանայից և իշխանաց, և հոն իր իրեք եղբայրքը խաչակրութեան գրեց որ էին Հռոբերտոս, Ալփոնսոս ու Կարոլոս . նմանապէս Պուրկոյնի և Պրեթայնի դուքսերը, Մարշի կոմսը և իր հաւատարիմ պատմիչը Ժէհան ։ Ինքն ալ ուխտաւորի հագուստ հագաւ, ու բոլոր ճամբորդութեանը մէջ այնպիսի չարքաշութիւն մը ցուցուց, որ իր օրինակովը այնչափ իշխաններուն մէջ՝ բանած հագուստ հագնող մը չերևցաւ ։

[2] Ճենովացի վաճառականներուն նաւերով ճամբայ ելաւ Թագաւորը 1248ին ։ Կիպրոսի Թագաւորը շատ պատիւ ըրաւ Լուդովիկոսի, և ձմեռը հոն անցընել տուաւ ։ Գարնան սկիզբը Գաղղիացոց նաւերը ճամբայ ելան դէպ 'ի Տամիաթ՝ որ Եգիպտոսի բանալին կը սեպուէր . անոր դիմացը համնելնուն պէս՝ Թագաւորը ծովը նետուեցաւ ,

1 Եւրոպա մը Թագաւորը յանձն առաւ սա խաչակրութիւնը ։

2 Սուրբն Լուդովիկոս ինչ կերպով գնացաւ արևելք ։

այնպէս որ ջուրը ինչուան ուսերը կը հասնէր, ու շիտակ թշնամւոյն վրայ գնաց։ Սարակինոսները աս համարձակութենէն սարսափած՝ ձգեցին փախան, ու քաղաքը քրիստոնէից թողուցին, բայց ասոնք ալ չգիտցան ան յաղթութեան յարգը. վեց ամիս անցուցին Տամիաթի բերդերը նորոգելու, ինչուան որ թշնամիք ատեն ունեցան միանալու՝ Էմիր Ֆախրէտտին անունով մէկուն առաջնորդութեամբը։ Թագաւորին եղբայրը Հռոբերտոս խորհուրդ տուաւ որ Գահիրէի վրայ երթան. "Ով որ օձ սպաննել կ'ուզէ, կ'ըսէր, անոր գլուխը պիտի ճզմէ"։ Բայց աս խորհուրդը կատարելու համար սպասեցին որ Ալփոնսոս եղբայրնին ալ հասնի օգնական զօրքով։

[1] Ան դանդաղութեանց ատենը Մուստասէմ Էյուպեանը շատ զօրք ժողվեց, ու Ֆախրէտտին զօրավարին տուաւ որ Գաղղիացւոց դէմ ելլէ. երբոր Գաղղիացիք դէպ 'ի Գահիրէ ճամբայ ելան, տեսան որ Արաբացիք Աշմունի ջրանցքը բռներ են։ Սուրբն Լուդովիկոս տեսնելով որ առաջ չկրնար երթալ, բանակ դրաւ ու ամրացաւ, և երկու կողմէն սկսան ամէն օր պատերազմներ ընել, ու միշտ Սարակինոսները կը յաղթէին՝ Գաղղիացւոց վրայ յունական կրակ թափելով։ Վերջապէս Արաբացւոյն մէկը անցնելու ճամբայ ցուցուց քրիստոնէից, և Սարակինոսները յանկարծակի գալով ձգեցին փախան։ Հռոբերտոս կոմսը չափազանց յանդգնութեամբը ան յաջողութիւնը

---

[1] Ի՞նչ պատերազմ ունեցան եօթներորդ խաչակիրները։

կորսնցուց. վասն զի Թշնամեաց ետևէն իյնալով անոնց հետ ինչուան Մանսուրէ հասաւ. ան ատեն Պիպարս անուանով մէկը, որ Մէմլուքներուն գլխաւորն էր, տեսնելով քրիստոնէից քաջութիւնը՝ եւ դարձաւ Գաղղիացւոց վրայ, պաշարեց զերենք Մանսուրէի մէջ, ու զամէնքն ալ իրենց զօրավարին հետ մէկտեղ Թրէ անցուց:

[1] Ընկէց ետքը խաչակրաց ամէն բաները ձախորդ գնացին. և Թէպէտ մեծ պատերազմի մը մէջ յաղթութիւնը իրենց եղաւ, բայց հարկադրեցան ետ քաշուելու. վասն զի տեսակ տեսակ ջերմեր ու փորհարութիւններ, ետքն ալ սոսկալի ժանտամահ ընկաւ մէջերնին, սովն ալ տիրեց, ու պէտք եղաւ որ ետ դառնան. բարեպաշտ Թագաւորը Թէպէտ և հիւանդ էր, կ'ուզէր բանակին ետեւը կենալ որ իրեններուն պաշտպանութիւն ընէ. բայց Մինիէ աւանը կենալ պէտք ըլլալով, բոլոր իր ազնուականներուն հետ մէկտեղ Սարակինոսաց ձեռքն ընկաւ. անոնք ալ հիւանդները մեռուցին ու միայն զանոնք ողջ պահեցին՝ որոնց համար յոյս ունէին շատ ստակ ձեռք ձգելու: Իսկ Թագաւորին ձեռուըներն ու ոտուըները շղթայ զարկին, ու գիշերը վրան ծածկելու համար խեղճ վերարկու մը միայն Թողուցին իրեն. բայց ինքը ամենեւին չգանգատեցաւ, միշտ հանդարտ ու անխռով՝ աղօթքի հետ կ'ըլլար ու սուրբ գիրքը կը կարդար: Մարգարիտա Թագուհին՝ որ Թագաւորին հետ մէկտեղ ըրեր էր ճամբորդութիւնը, հիւանդ ըլլալով՝ Տամիաթ մնացեր էր: Երբոր

---

[1] Ինչ փորձանքներու հանդիպեցան խաչակիրք:

Թագաւորին գերի բռնուիլը լսեց, սաստիկ ցաւէն խելքը կորսնցուց. և որովհետև յղի էր, ան միջոցին ծնած որդին Տրիստան անուանեցաւ, իբրև տրտմութեան ու ցաւոց մէջ ծնած։

[1] Անդին Եգիպտոսի սուլթանը Գաղղիոյ Թագաւորին գերութեանը վրայ շատ մեծ ուրախութիւն ունեցաւ. վասն զի կը յուսար որ անով մեծամեծ օգուտներ պիտի քաղէ իրեն համար։ Շատ մը հաշտութեան առաջարկութիւններ ըրաւ Թագաւորին, և խոստացաւ որ ազատ թողու զինքը՝ թէ որ Տամիաթն ու Պաղեստինու քաղաքները ետ տայ։ Սուրբն Լուդովիկոս պատասխան տուաւ թէ "Ես աս խնդիրքը կատարելու իշխանութիւն չունիմ"։ Մուստասէմ ան խօսքին դարմանալով՝ սպառնացաւ որ զինքը չղթայակապ Պաղտատու ամիրապետին կը ղրկէ. բայց Թագաւորը պատասխան տուաւ. "Ես սուլթանին գերին եմ, ինչ որ կ'ուզէ թող ընէ ինծի"։ Աս քաջութեան վրայ սուլթանը կակղըցաւ, ու անկէց ետքը սկսաւ Տամիաթը միայն ետ ուզել, մէկ միլիոն ալ ոսկի (հինգ միլիոն հինգ հարիւր հազար ֆրանք)։ Լուդովիկոս ըսաւ իրեն թէ "Գաղղիոյ Թագաւորը ինքզինքը ոսկով չգներ, այլ Տամիաթը միայն իր անձին տեղը կուտայ, ան ոսկին ալ իր հպատակները ազատելու համար կը վարէ"։ Զարմացաւ սուլթանը Թագաւորին վեհանձնութեանը վրայ,

---

[1] Հաշտութեան համար ինչ խօսքեր եղան Եգիպտոսի սուլթանին ու Գաղղիոյ Թագաւորին մէջ։

ու խոստացաւ որ ան տարւոյն այլ մէկ մասը միայն պահանջէ ։

1 Ան միջոցին Մէմլուքները Մուստասէմ սուլդանը սպաննեցին ։ Աս Մէմլուքները Թաթար գերիներ էին, որ Սալահատինին ատենէն Էյուպեանց պահապան զօրքը կը սեպուէին. ատոնցմէ մէկը սուլդանին սիրտը հանեց ու սրբոյն Լուդովիկոսի բերաւ. « Ես քու թշնամիդ սպաննեցի, ըսաւ, տասըէ ըրէ զիս ։ — Ասպետ կ'ընեմ, ըսաւ Թագաւորը, թէ որ քրիստոնեայ ըլլաս » ։ Ապստամբները Իպէք անունով Մէմլուքը իրենց սուլդան ընտրեցին. անիկայ ալ սրբոյն Լուդովիկոսի հետ դաշնադրութիւնը հաստատեց, և Թագաւորը փափաքելով որ սուրբ երկիրը տեսնէ՝ դէպ 'ի Աքքա գնաց ։ Պաղեստինու քրիստոնէից յորդորանքովը իր երկու եղբայրներն ու մէկալ պարոնները ետ ճամբեց, ու սկսաւ Ասիոյ մէջ ցրուած լատին ժողովուրդները մէկտեղ ժողվել, որոնց ձեռքը մնացեր էին միայն Յոպպէ, Աքքա, Կեսարիա, Սիդոն (Սայտա), Անտիոք ու Տրապոլիս քաղաքները ։ Աս քաղաքներուն պարիսպները նորոգեց, ամէն տեղ քրիստոնեաները սէր ու միաբանութիւն ընելու յորդորեց, և մահմետականաց հալածանքներէն զիրենք ազատեց ։

2 Երբոր սուրբն Լուդովիկոս դեռ Պաղեստին

---

1 Ո՞վ էին Մէմլուքները ։ — Պաղեստինու մէջ ի՞նչ կարգաւորութիւններ ըրաւ սուրբն Լուդովիկոս ։

2 Ի՞նչ կերպով ընդունեցաւ սուրբն Լուդովիկոս Հաշիշիններուն դեսպանները ։

*էր (1252), երկու դեսպան եկան իրեն. մէկը Մողոլներուն Մանգու խանէն՝ որ Ճինկիզ խանին յաջորդներէն էր, մէկալը Հաշիշիններուն գլխաւորէն՝ որուն անունն էր Ալայէտտին։ Ասոր դեսպանները եկեր էին որ Թագաւորէն տուրք առնեն, ինչպէս որ կ'առնէին Գերմանիոյ, Մաճառստանի ու Պաղտատու Թագաւորներէն։ Լուդովիկոս աղաչեց իրենց որ իրիկունը գան. անոնք ալ գացին ու Թագաւորին քովը տեսան Տաճարականաց ու Հիւրընկալաց մեծ մագիստրոսները, որ աւազակներուն աչքը շատ վախցուցած էին։ Աս մեծաւորները սաստիկ յանդիմանութիւն տուին դեսպաններուն, և սպառնացան որ եթէ Լեռնական ծերունին Գաղղիոյ Թագաւորին ըրած անիրաւութեանը փոխարէն հատուցում չընէ՝ վրան պատերազմի կ'ելլեն։ Ալայէտտին ալ վախնալով՝ ընծաներ խրկեց սրբոյն Լուդովիկոսի, և անոնց հետ մատնի մը ու շապիկ մը. դեսպանները ըսին թէ "Դուն ու մեր տէրը մարդուս ձեռքի մատուըներուն պէս մէկ պիտի ըլլաք, և ինչպէս շապիկը մարդուս վրայ կպած է՝ այնպէս ալ մէկ սիրտ պիտի ըլլաք"։*

[1] *Սուրբն Լուդովիկոս լսելով որ իր մայրը վախճաներ է, միտքը դրաւ որ Ասորւոց երկրէն ետ դառնայ, ու 1254ին ճամբայ ելաւ, թէ քրիստոնէից և թէ մահմետականաց մէջ իր արդարութեանն ու վեհանձնութեանը համար մեծ անուն ձգելով։*

---

[1] *Ի՞նչ պատճառաւ սուրբն Լուդովիկոս դարձաւ Եւրոպա։*

ա Անկէց ետքը մեծամեծ գիպուածներ պատահեցան Արեւելք : Մանգու խանը, որ Չինու երկրէն ինչուան Նիկիա տիրապետած էր, Հաշիշին աւազակները խորտակեց, Պաղտատու ամիրապետին յաղթեց ու քաղաքը կողոպտեց. ասանկով Արաբացւոց տէրութիւնը արեւելք վեցհարիւր քսանըվեց տարի քշելէն ետեւ վերջացաւ (1258) :

բ Կոստանդնուպոլսոյ Լատինացւոց կայսերութիւնը Պալէոլոգներուն ցեղէն սկսաւ նուաճուիլ. այնպէս որ 1261ին նորէն Յոյնք տիրեցին Կոստանդնուպոլսոյ : Երուսաղէմի թագաւորութիւնն ալ քրիստոնէից ձեռքէն ելաւ. վասն զի Մեմլուքներուն թագաւորը Պիպարս գնաց առաւ Կեսարիա ու Յոպպէ քաղաքները, ու քիչ մնաց որ Աքեային ալ տիրէր պիտի, թէ որ սուրբն Լուդովիկոս նորէն Պաղեստին չերթար :

գ ՈՒԹԵՐՈՐԴ ԽԱՉԱԿԻՐՔ (1270): — Ութերորդ խաչակրութիւնը, որ վերջինն էր, ամենեւին օգուտ մը չունեցաւ. վասն զի թագաւորը տեսաւ որ իշխանները խաչակրութեան ընելու միտք չունին, ուստի թոշակ խոստացաւ անոնց որպէս զի ճամբայ ելլեն : Ան խաչակիրները ճամբանին դէպ 'ի

---

ա Արաբացւոց տէրութիւնը ի՞նչ կերպով վերջացաւ արեւելքէն :

բ Կոստանդնուպոլսոյ կայսերութիւնը նորէն Յունաց ձեռքը ի՞նչպէս անցաւ : — Երուսաղէմի թագաւորութիւնը ի՞նչպէս ելաւ քրիստոնէից ձեռքէն :

գ Ութերորդ խաչակրութիւնը ի՞նչպէս եղաւ :

Թունուզ դարձուցին, և հոն ցամաքը ելլելնուն պէս՝ փորհարութեան և ուրիշ փոխադրական հիւանդութեանց հանդիպեցան։ Սուրբն Լուդովիկոս ալ ան հիւանդութենէն բռնուեցաւ, ու արիական քաջութեամբ և սուրբ մահուամբ հոգին աւանդեց (1270)։

[1] Անգղիոյ Հենրիկոս Գ. Թագաւորին որդին Եդուարդ՝ որ Գաղղիոյ Թագաւորին հետ ճամբայ ելեր էր, հազար երկու հարիւր հոգւով Պաղեստին անցաւ, բայց քաջութիւն մը չկրցաւ ընել։ Խալիլ Աշրաֆ սուլդանը Աքեան պաշարած ըլլալով 1291ին ան բերդաքաղաքն ալ առաւ, և արևմտեան քրիստոնէից անունը անկէց ետքը Ասիայէն վերցուեցաւ։ Հիւրընկալ ասպետները Հռոդոս կղզին քաշուեցան. Տեւտոնեանք Քուրլանտիա, և Տաճարականք Եւրոպայի այլևայլ կողմերը. 1312ին ալ բոլորովին վերցուեցան։

[2] ԽԱՉԱԿՐՈՒԹԵԱՆՑ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ։ — Խաչակրութիւնները, որ իրաւցընէ դիւցազնական արշաւանքներ էին, ան ատենի քրիստոնէից բարեպաշտութեանն ալ մեծ նշան եղան, մանաւանդ հասարակ ժողովրդեան՝ որ քրիստոնէական խոնարհութիւնն ու եղբայրսիրութիւնը ամէն անձնական օգուտներէն վեր դնելով՝ այնպիսի ճամբորդութեան վտանգներն ու դժուարութիւնները

---

[1] Ի՞նչ կերպով Պաղեստինը բոլորովին ելաւ քրիստոնէից ձեռքէն։

[2] Խաչակրութիւնները ի՞նչ հետևանքներ ունեցան։

յանձն առին ։ Թէպէտ Եւրոպայի ամէն կողմերէն ըլլալով լեզուներնին իրարմէ տարբեր էր, բայց աստուածսիրութեամբ ու եղբայրսիրութեամբ ամէնքնին ալ մէկ ժողովրդեան պէս էին ։ Աղքատաց ու հիւանդաց վրայ մեծ սէր ու կարեկցութիւն կը ցուցնէին, մանաւանդ ասպետներն ու մեծամեծ իշխանները. և ան ատենէն սկսաւ մտնալ Եւրոպացւոց մէջ հաւասարութեան գաղափարը, որով և կալուածական կառավարութիւնն ալ վար ինկաւ ։

[1] Խաչակրութեանց մէկ օգուտն ալ աս եղաւ որ Թուրքերն ու Մողոլները չկրցան Եւրոպա արշաւել. դարձեալ Թագաւորներն անով աւելի մեծցան, ժողովուրդներն ալ Թագաւորաց պաշտպանութեամբը շատ տեղուանք մեծամեծ արտօնութիւններ ու ազատութիւններ ունեցան, որով ետքերը ազգային խորհրդարաններ հաստատուելու դուռ բացուեցաւ ։

[2] Աս օգուտներէն զատ, արուեստներն ու նաւարկութիւնն ալ շատ յառաջադիմութիւններ ըրին. վասն զի նաւ շինելու, պատրաստելու և զինելու կերպը աւելի աղէկ սորվեցան Եւրոպացիք. Արաբացւոց հետ ալ վերաբերութիւններ ունենալով շատ գիտութիւններ սորվեցան անոնցմէ, մանաւանդ ուսումնականութիւն այսինքն մաթեմաթիկայ, բժշկականութիւն և աշխարհագրութիւն ։ Նոյն ատենները սկսան նաև եկե-

---

1 Եւրոպացւոց քաղաքականութեանը ինչ օգուտ եղաւ խաչակրութիւններէն ։

2 Արուեստից ու գիտութեանց ինչ շահ եղաւ ։

*ղեցւոյ մէջ կրօնաւորական կարգերը շատնալ, որ ետքը ամէն տեսակ գիտութեանց ծաղկելուն մեծ պատճառ եղան :*

## ԳԼՈՒԽ ԻԶ.

Պատմութիւն Գաղղիոյ և Անգղիոյ՝ խաչակրութեանց սկիզբէն մինչև ան երկու պետութեանց հաւասարակշռութիւնը (1087-1189). (Փիլիպպոս Ա)*. — Գուլիելմոս Շէկն. — Ըրած քանոնութիւնները. — Մահը. — Հէնրիկոս Ա. — (Լուդովիկոս Ցոյրն). — Երկու թագաւորաց կռիւները. — Հասարակութիւնք Գաղղիոյ. — Ժոֆրուա Սթեֆանոս. — Փլանթաճնէից իշխանութեան հաստիւը. — (Լուդովիկոս Կրտսերն). — Խաչակիր գրաւելը. — Ձախորդութիւնը. — Իր թագուհին Եղէանորա. — Հէնրիկոս Բ. — Թովմաս Պէքէթ. — Հէնրիկոս Երկրորդին որդւոցը ապստամբութիւնը, և իր մահը :

*[1] Փիլիպպոս Ա երեսունըվեց տարուընէ 'ի վեր Գաղղիոյ մէջ կը թագաւորէր, և իր թագաւորութեանը ատեն անցած մեծամեծ դիպուածներուն մէջ ամենևին ձեռք չունէր : Իր նախորդացը հետևելով կը ջանար իշխանութիւնը ամրացընել իր զօրաւոր ու յանդուգն հպատակայը դէմ : Անոնց մէջ աւելի անուանիներն էին Մոնմօրանսի պա-*

---

[1] *Ի՞նչ վիճակի մէջ էր Գաղղիա երբոր Փիլիպպոս Ա թագաւոր նստաւ :*

* Փակագծի մէջինները Գաղղիոյ թագաւորներն են :

րոնը, Միլոն տը Պրէ, որ իր զօրաւորութեան համար Մեծ ըսուեցաւ. Քորպէյլ կոմսը, որ բարձր հասակովը ու զարմանալի ուժովը զամէնքը կը սարսափեցընէր. Ամիէնի կոմսը՝ Ընկէռան տը Քուսի, որ բռնած գերիները կամ կը կախէր, և կամ ոտուըններին կը կտրէր, և անոր որդին Թովմաս Մարլ, որ ոչ ազնուական կը նայէր՝ ոչ գեղացի, զամէնքն ալ կը չարչարէր: Փիլիպպոս նոր նոր ազատամտութիւնները զսպելու համար իրեն աթոռակից ընտրեց իր որդին Լուդովիկոսը. սակկայ Թագաւորութեան Թշնամեացը դէմ այնպիսի գործունէութիւն մը ցուցուց որ ինչուան Ջփօն կամ Աւըննաֆ անունը տուին իրեն: Ուրախութեամբ կը Թողուր Գաղղիոյ Թագաւորը՝ որ իր տէրութեանը խռովարար պարոնները խաչակիր գրուին, և անմիջոցին կը ջանար անոնց ստացուածքին տիրելու, ինչպէս որ առաւ Մոնլէրի ըսուած աշտարակը, որ Միլոն տը Պրէյինն էր, և մեռնելու ատենը կանչեց իր Լուդովիկոս որդին ու ըսաւ. “Որդեակ, նայէ որ աղէկ պահես ան աշտարակը՝ որ այնչափ գիշերներ անքուն անցընել տուաւ ինծի, ու զիս ատանկ շուտ ծերացուց„:

[1] Գուլիէլմոս Աշխարհակալը մեռեր էր Անգղիա 1087ին՝ իրեք որդի Թողլով. Ռոպերտոս, Գուլիէլմոս Շէկ և Հենրիկոս: Գուլիէլմոս Շէկ իր մեծ եղբօրը Ռոպերտոսին Նորմանտիոյ դքսութիւնը տուաւ, ու ինքը Թագաւորեց Անգղիոյ վրայ. հօրմէն աւելի բռնացաւ ժողովրդեան վրայ,

---

[1] Գուլիէլմոս Շէկ ինչ բնաւորութեան տէր էր: — Ինչ բռնութիւններ կ՚ընէր:

և իր պաշտօնեաները մէյմէկ աւազակ դարձան․ արձակ համարձակ կ'երթային երկրագործաց ցորենները ու վաճառականաց խանութները կը պարպէին։ Անգղիոյ մէջ ուսկից որ Թագաւորը կ'անցնէր՝ քովի մարդիկը բոլոր ան երկիրը կը կողոպտէին․ և երբոր ամէն բան չէին կրնար տանիլ կամ ուտելու բաները ուտել, կը ստիպէին տէրերը որ երթան մօտ եղած վաճառանոցը ծախեն ու ստակը բերեն իրենց։ Երբեմն ալ զուարճութեան համար ան աւարները կ'այրէին, ու թէ որ խմելիք ըլլար՝ ձիերնուն ոտուըները անով կը լուային․ իսկ ուրիշ ըրած անկարգութիւններնուն չափ չկար։ Ուստի երբոր ժողովուրդը կը լսէր թէ Թագաւորը կու գայ, ամէն մարդ կը վազէր՝ ո՛ր բանն որ կրնան հեռաւոր անտառներ ու անապատներ կը փախցընէր, և ինքը տունը կը քաշուէր։ Մէկը չէր կրնար անոնց դէմ բերան բանալ․ վասն զի գլուխնին Թագաւորն էր, թշնամի մարդկութեան, օրինաց և բնութեան, հեշտասէր, արբշիռ և կատաղի։ Բարկացած ատենը կարմիր երեսներէն կրակ կը ցատքէր, բերանը կը փրփրար, լեզուն կը կակազէր ու մահուան վճիռը դուրս կը թափէր․ վա՜յ էր ան ատենը դիմացը գտնուողին։ Բայց իրեն գլուխն ալ գալիք կար։

[1] Մէկ տարուան մը կանուխ փառաւոր սեղան մը ըրաւ բարեկամացը Վինսէսթէր բերդը, ու ետքը որսի երթալու պատրաստուեցաւ։ Ան միջոցին արուեստաւորին մէկը վեց հատ նոր նետ բերաւ իրեն․ զննեց, հաւնեցաւ Գուլիէլմոս, գովեց

---

[1] Ի՞նչ կերպով մեռաւ։

գործաւորին ճարտարութիւնը, չորս հատը իրեն պահեց, մէկալ երկուքն ալ իր բարեկամներէն Վոլթր Թիրէլ անուամբ մէկուն տուաւ ըսելով. « Աղէկ նետ պէտք է »: Ճամբայ ելլելու ատենը կրօնաւոր մը եկաւ, ու իր մեծաւորէն Գուլիելմոսին մօտին Թուղթ մը բերաւ: Թղթին մէջ կը ծանուցանէր մեծաւորը թէ իր կրօնաւորներէն մէկը այսպիսի տեսիլք մը տեսեր է. Քրիստոս Տէրն մեր աթոռը նստած էր, և կին մը ոտքը ընկած կ'աղաչէր ու կ'ըսէր « Փրկի՛չ աշխարհի, նայէ ժողովըրդեանդ թէ ինչե՛ր կը քաշէ Գուլիելմոսի ձեռքէն ու ողորմէ իրեն »: Այս Թուղթը կարդալուն պէս Թագաւորը բարձրաձայն ծիծաղելով ըսաւ. « Ի՞նչ, միթէ զիս ան խենթերէն կը կարծէ որ ցնդածի մը մտածմանը համար բաներնին գործքերնին կը թողուն. Շո՛ւտ ըրէ Վոլթր, ձի հեծնանք »: Այս ըսաւ ու իշխաններուն հետ մէկտեղ անտառը գնաց որսի: Որսորդները ասդիս անդին ցրուեցան, Վոլթր և ինքը մինակ մնացին. ան միջոցին եղնիկ մը վազեց անդիէն, ան երկուքին մէջ տեղը եկաւ. քաշեց աղեղը Գուլիելմոս, աղեղին լարը փրթաւ, նետը ընկաւ, և եղնիկը ձայնէն սարսափած կեցաւ ու ասդիս անդին կը նայէր: Մէկէն Թագաւորը բարեկամին նշան ըրաւ որ զարնէ. Վոլթրին նետը գնաց անոր կուրծքին զարկաւ. ու Գուլիելմոս առանց բերնէն խօսք մը հանելու ընկաւ մեռաւ:

[1] Թագաւորին մահը լսուելուն պէս՝ անտառին մէջէն ամէնքը փախչող փախչողի եղան, մարմինն

---

[1] Ի՞նչպէս Թաղուեցաւ:

ալ հօրը մարմինոյն պէս՝ գետնի վրայ մնաց։ Քանի մը ածխագործներ հոն գտան զինքը, հինումին լաթերով պլլեցին ու իրենց սայլին վրայ դրած՝ արիւնը վազելով առին Վինչեսթեր բերդը տարին։

[1] Գուլիելմոս Աշխարհակալին երրորդ որդին էր Հենրիկոս Խորագէտ. ասիկայ երբոր կը գանգատէր հօրը թէ իրեն միայն հինգ հազար լիբրայ ոսկի կը թողու, "Համբերէ որդեակ, ըսեր էր հայրը, երբ ալ ըլլայ նէ ամէն բան քեզի պիտի մնայ": Գուլիելմոսին պզտիկ եղբայրը Հենրիկոս անոր մահը լսելուն պէս՝ մէկէն տիրեց անոր գանձերուն, ազատութեան հրովարտակ մը հանեց, ու Եդուարդ Խոստովանողին օրէնքները հաստատելով բոլոր ազգին սիրտը վաստըկեցաւ ու վրանին թագաւորեց։ Աս որ լսեց Հռոբերտոս մեծ եղբայրը, որ խաչակրաց հետ Արեւելք գնացեր էր, շուտով Անգղիա դարձաւ որ իր կուսակիցներուն գլուխ կենայ. յաղթուեցաւ, բռնուեցաւ ու մինչուան մահը բանտը կեցաւ։ Ասով Անգղիան ու Նորմանտիան միացան ու մէկ մարդու ձեռք անցան։

[2] Գաղղիոյ թագաւորը Լուդովիկոս Զ, որ Յոյր ըսուեցաւ, և Հենրիկոս Անգղիոյ թագաւորը ան ատեն իրարու դէմ անդադար պատերազմներ կ'ընէին (1108), այնպէս որ ան պատերազմներէն ետքը անհաշտ թշնամութիւն մը մնաց աս երկու ազգաց մէջ։ Վասն զի Նորմանտիոյ դուքսերը քանի որ Անգղիոյ տէրեր էին՝ կը նայէին որ

---

[1] Գուլիելմոս Շեկին ով յաջորդեց։

[2] Գաղղիոյ և Անգղիոյ թագաւորաց թշնամութեան պատճառը ինչ էր։

իրենց տէրութիւնը ընդարձակեն ու Քափե-թեանց իշխանութենէն ազատին . իսկ Քափե-թեանք ամէն տեսակ արգելքներ կը հանէին՝ որ ծովէն անդին եղած ժողովուրդները չզօրանան : Երկու իշխանաց երկիրներուն սահմանները բաժնողը Էպտոս գետն էր , բայց երբոր Հենրիկոս Գաղղիոյ սահմանին վրայ Ժիզօրի բերդն ալ շինեց , ան ատենը պատերազմը սկսաւ : Լուդովիկոս Զ. Գաղղիոյ Նէօֆլ աւանին քով յաղթութիւն մը ըրաւ , բայց Պրէնվիլի մօտ ինքն ալ յաղթուեցաւ : Քանի մը տարի ետքը Հենրիկոս Ե. զօրաւոր թըշնամի մը հանեց Գաղղիոյ թագաւորին դէմ , այսինքն Գերմանիոյ թագաւորը Հենրիկոս հինգերորդը , որ Լօրէն գաւառին , Պաւերայի ու Սաքսոնիոյ բնակիչներովը մեծ բանակ մը կազմած՝ Ռէնս քաղաքին վրայ դիմեց : Լուդովիկոս Ցոյլը բոլոր Գաղղիան իրեն օգնութեան կանչեց . գնաց սրբոյն Դիոնեսիոսի եկեղեցին , անոր պաշտպանութեանը յանձնեց թագաւորութիւնը ու անոր խորանին վրայէն առաւ սրբազան դրօշը կամ խաչվառը : Ամէն կողմէն զօրքեր հասան իրեն , և այնչափ շատցան որ ինչուան կայսեր աչքը վախնալով հաշտութիւն ըրաւ (1125) :

1 Լուդովիկոս նոյնպէս յաջողութեամբ նուաճեց նաև խռովարար հարուստներն ու երկրի տէրերը , այնպէս որ դուքսերն ու կոմսերը հարկադրեցան երդուընծայելու որ թագաւորական աթո-

---

1 Լուդովիկոս Ցոյլն ինչ կերպով հաստատեց իր թագաւորական իշխանութիւնը : — Ի՞նչ ազատութիւններ առաւ :

ւոյն հաւատարիմ մնան. որով Թագաւորական իշխանութիւնը զօրացաւ ու պատկառելի եղաւ։ Այս բաներուս մէջ Լուդովիկոսի գործունէութեանն ու արիութեանը շատ օգնեց Սուգերիոս կամ Սիւժէր քահանան իր խորհուրդներովը, և մանաւանդ իրեն ժողովրդեան ու քաղաքացւոց հետ միաբանիլը, որով երկրին հասարակութիւններուն աւելի ազատութիւն տուաւ։ Վասն զի ինչուան ան ատեններն որ ազգին մեծ մասը գերութեան մէջ էր, քանի մը քաղաքներու բնակիչներուն հրաման եղաւ որ իրենց ազատութիւնը սակով գնեն. աս քաղաքներուն մէջ էին նաև Ամիէն, Լան ու Սէն-Քանթէն քաղաքները, որ մէյմէկ տեսակ հասարակապետութիւն ձևացան ու կ'ըսուէին հասարակութիւն, իրենց կառավարներն ալ իրենցմէ էին և կ'ըսուէին հիւպատոս կամ դատաւոր։ Աս դատաւորներուն մէկը կամ մէկ քանին մէկտեղ ընկերութեանը գլուխ կը կենային և [illegible] կամ մեծաւոր կ'ըսուէին։ Հասարակութեանց ընդհանուր ազատութիւններն էին՝ ժողովք ընել, իրենք զիրենք պաշտպանել, զօրք հանել, և իրենց դրօշը բացած պատերազմի երթալ։ Երբոր աս նորանոր իրաւունքները հաստատուեցան, իշխանաց զօրութիւնը շատ տկարացաւ. ուստի Լուդովիկոս աւանց ստրուկները իրենց տէրերուն իշխանութենէն հանելու՝ նայեցաւ որ ազնուականաց ու հասարակ քաղաքացւոց մէջ բարեկարգութիւններ հաստատէ։

[1] Հենրիկոս Ա իր Մաթիլտէ աղջիկը կին տուեր

---

[1] Ո՞վ էր Ճոֆրուա և ինչո՞ւ Փլանթաժնէ ըսուեցաւ։

էր Ճօֆրուայի, որ Անժուի դուքս էր, ու մականունը Փլանթաժընէ կամ Մօշտաօր կ՚ըսուէր. վասն զի գլխարկին վրայ միշտ մոշայի ճիւղ մը կը դնէր. և որովհետև ինքը Հենրիկոս անօրդի էր, զանիկայ իրեն յաջորդ անուանեց (1135)։

1 Ճօֆրուա ամենևին չկրցաւ թագաւորել. վասն զի Պուլոյնի կոմսը Ստեփաննոս, որ Գուլիելմոս Աշխարհակալին որդին էր, Անգղիա անցաւ ու Լոնտրայի մէջ թագաւոր պսակուեցաւ։ Աս բանիս համար պատերազմ բացուեցաւ. Մաթիլտէ թագուհին մեծ գործունէութեամբ Սկովտացիները օգնէ հանեց, որ առջի անգամ յաղթուեցան, բայց Ստեփաննոս ալ Լինքոլնի քով յաղթուեցաւ, թշնամեաց ձեռքն ինկաւ, ու երկար փախչելով ազատեցաւ։ Նորէն սկսաւ պատերազմը առջինէն աւելի սաստկութեամբ. բայց Ստեփաննոսի որդւոյն մահուանը ամէն կախու գաղրեցաւ, ու Փլանթաժընէի ցեղը օրինաւոր ժառանգ թագաւորութեան ճանչցուեցաւ։

2 Գաղղիոյ մէջ 1137ին երբոր Լուդովիկոս Ցոյլն մեռաւ, որդին Լուդովիկոս Է. անոր յաջորդեց, որ դեռ տասնըութը տարեկան ըլլալուն համար Կրտսեր ըսուեցաւ, և հօրը պատերազմական հոգին ցուցուց իր վրայ։ Շամփանեայի Թէպալդ կոմսին թշնամութեանը բարկացած՝ վասն պատերազմի ելաւ, Շամփանեան ոտնակոխ ըրաւ, Վիթրի քաղաքը յարձակմամբ առաւ, մէջի եկե-

---

1 Փլանթաժընէի ցեղը ինչ կերպով ճանչցուեցաւ օրինաւոր ժառանգ թագաւորութեան։
2 Լուդովիկոս Կրտսերոյն վրայ ինչ կը պատմուի։

վերցուցին կրակ տուաւ , ու հոն տապալուած հազար հինգ հարիւր հոգին ալ մէկանեղ այրեց : Բայց ան գրգռուած մոլեռանդին ու խեղճերուն կէս այրած գիրքները տեսնելով ասոնց Լուդովիկոս , և խեղճն ալ տառապեալ զարնելով՝ Թովմային հետ ուզեց հաշտուիլ ու Հռոմէն Թողութիւն խնդրեց ըրածին :

[1] Ան ատենը Տաճկաց Եգիպտոս քաղաքը առնելուն ու բնակիչները Թէև անցորդներուն ձայնը Եւրոպա տարածուեր ու ամենուն վրայ մեծ տրտմութիւն ու վախ ձգեր էր : Հռչակաւոր սուրբն Բեռնարդոս՝ որ Քլերվոյ այսինքն Պայծառաձոր ըսուած վանքին աբբան էր՝ Գաղղիացիները ժողվեց , ու բարձր տեղ մը ելած՝ զարմանալի ճարտասանութեամբ մը սուրբ երկրին աւերմունքները ստորագրելէն ետև՝ կանչեց . “ Զէնքերու շառաչմունքը , վտանգ , աշխատանք , պատերազմի նեղութիւն , ահա ասոնք են Աստուծոյ ձեր վրայ դրած ապաշխարանքը : Քրիստոնեայ զինուորք , ձեզի համար իր կեանքը տուողը՝ այսօր կ'ուզէ որ դուք ալ իրեն համար ձեր կեանքը տաք : Ահա ձեզի արժանի պատերազմներ՝ որոնց մէջ Թէ յաղթելը և Թէ մեռնիլը նոյնպէս փառաւոր է : Վազեցէք ուրեմն , զէնք առէք , սրբազան բարկութեամբ մը վառուեցէք , և բոլոր քրիստոնէից մէջ հնչէ մարգարէին աս խօսքը . Վա՜յ անոնց որ իրենց Թուրը արեան մէջ չեն Թաթխեր ” : Խօսքը դեռ չէր լմնցուցած Բեռնարդոս , ամէնքն Թագաւորը որ արդէն իր մեղացը ապաշխարանք կը

---

1 Ի՞նչ կերպով յորդորուեցան Գաղղիացիք խաչակիր ըլլալու :

փնտռէր՝ սրբոյն ոտքը ընկաւ ու խաչ մը խնդրեց. "Մեզի ալ խաչ", կանչեց ժողովուրդը, և սկսան դրօշնին ու զէնքերնին շարժել։ Սրբոյն բերած խաչերը շուտ մը լմնցան. հարկեցաւ որ փայտի հագուստը պատռուէ, նոր խաչեր շինէ, և անանկով խաչակրութիւնը հաստատուեցաւ։

¹ Միւժեր աբբան, որ իր խորհուրդներովը Լուդովիկոս Ցոյրին օգներ էր, Լուդովիկոս Կրտսերին ալ գործքերը կը կարգաւորէր, շատ ջանաց որ Թագաւորին միտքը փոխէ. երբոր տեսաւ որ ճար չկայ, չուզեց շատ վրայ տալ, որպէս զի Թագաւորին բարեպաշտութեանը հակառակ չերևնայ։ Անոր յանձնեց Լուդովիկոս տէրութեան կառավարութիւնը, և ինքը հարիւր հազար հոգւով ճամբայ ելաւ։ Բանը յաջող չգնաց. Լաւոդիկէի մօտերը Տաճիկները վրան յարձակեցան, ու զօրացը կէսը ջարդեցին. Փռիւգիոյ Մէանդր գետին քովը Թէպէտ զարմանալի քաջութիւններ ըրաւ, սակայն շահ մը չեղաւ, և այն խաչակրութեան պտուղը աս միայն եղաւ որ Թագաւորը Երուսաղէմ ուխտի գնաց։ Երկու տարիէն ետև Լուդովիկոս իր գեղեցիկ բանակին հազիւ մէկ մասովը Գաղղիա դարձաւ, ու տեսաւ որ Միւժերին խելքովն ու ճարտարութեամբը երկիրը շատ ծաղկեր էր, ուստի թէ ժողովուրդը և թէ Թագաւորը երախտագէտ ըլլալով հայր հայրենեաց անունը տուին իրեն։

---

¹ Լուդովիկոս Կրտսեր ինչ կերպով ըրաւ խաչակրութիւնը։ — Եւ որ դարձաւ ինչ վիճակի մէջ գտաւ Գաղղիան։

¹ Շատ տարիէ 'ի վեր Լուդովիկոս Է և իր Ելէոնորա Թագուհին իրարու հետ աղէկ չէին. անհաւատարմութեան Թագուհւոյն երկանը ջերմեռանդութեանը վրայ կը ծիծաղէր, և առանց ալ քաշուելու համարձակ կ'ըսէր թէ "Զիս փոխանակ Թագաւորի մը հետ կարգելու՝ կրօնաւորի հետ կարգեցին": Միտքը դրաւ Լուդովիկոս որ արձըկէ զանիկայ, բայց անով պիտի զրկուէր նաև անոր օժիտ բերած հարուստ երկիրներէն, և Սիւժեր կրցաւ համոզել զԹագաւորն որ աս բանս չընէ, բայց աս խելացի խորհրդականը 1151ին մեռաւ, և Լուդովիկոս շուտով քակեց ամուսնութիւնը. թէպէտ ետքը ըրածին վրայ շատ ցաւեցաւ: Վասն զի Ելէոնորա Հենրիկոս Փլանթաժնէին հետ կարգուեցաւ, անոր օժիտ բերելով Գաղղիոյ Ակուիտանիան և Փուաթու գաւառները, և ասոնց Մէն ու Նորմանտիա գաւառներուն վրայ աւելնալովը՝ Անժուի կոմսը աւելի զօրաւոր կ'ըլլար քան թէ իրեն Թագաւորը: Անկեց 'ի զատ՝ Ստեփանոս Թագաւորին մեռնելէն ետքը Անգղիոյ Թագաւորութիւնը անոր անցաւ, ուստի և Հենրիկոս Բ անուամբ Թագաւորեց Անգղիոյ վրայ (1154):

² Հենրիկոս Բ իր ատենի ամենէն ահաւոր Թագաւորը կ'ըլլար՝ թէ որ եկեղեցւոյ ազատութիւններուն չդպչէր: Հին ատենէ 'ի վեր եկեղե-

---

1 Թագաւորին ու Ելէոնորա Թագուհւոյն խռովութիւնը ինչպէս եղաւ:

2 Հենրիկոս Բ ինչպէս ըրաւ թագաւորութիւնը: — Թովմաս Պէքէթ արքեպիսկոպոսին հետ ինչպէս վարուեցաւ:

ցականք սա արտօնութիւնս ունէին՝ որ աշխարհական դատաստանի չէին կրնար կանչուիլ. Թագաւորը եկեղեցականներն ալ իր դատաստանին տակը ձգել ուզելով՝ մեծամեծ խռովութեանց պատճառ եղաւ. և որովհետև եկեղեցական ատեանները այնպիսի բարբարոսութեան ժամանակ շատ անմեղ մարդիկ անիրաւ բռնութենէ կ'ազատէին, Հենրիկոս զանոնք վերցուց: Այն ատենը Քանթորպէրի (Քէնթըրպըրի) քաղաքին արքեպիսկոպոսը Թովմաս Պէքէթ հակառակեցաւ եկեղեցւոյ իրաւունքը պաշտպանելու. և երբոր Թագաւորը վրան բարկանալով անոր ստացուածքը գրաւեց, արքեպիսկոպոսը Լուդովիկոս եօթներորդին ապաւինեցաւ: Անգղիոյ Թագաւորը սա բանիս վրայ ալ նեղանալով՝ ետ կանչեց զինքը. ժողովուրդը մեծ ուրախութեամբ և հանդիսով արքեպիսկոպոսին դիմացը ելաւ. շատը առջևն ընկած երկրպագութիւն կ'ընէին, ոմանք իրենց հագուստները ճամբուն վրայ կը տարածէին, ուրիշներն ալ կ'երգէին. "Օրհնեալ որ գայ յանուն Տեառն": Իսկ արքեպիսկոպոսը գրեթէ գուշակելով իր գլխուն գալիքը՝ ըսաւ հանդարտութեամբ ժողովրդեան. "Ես ձեր մէջը մեռնելու համար եկայ". և ըսածը իրաւ էր:

[1] Աղեքսանդր Գ. պապը չգիտնալով թէ Թագաւորը Պէքէթին հետ հաշտուեր է, նզովք հանեց Հենրիկոսի ու անոր հետ միաբանած եպիսկոպոսաց դէմ. և ան կոնդակը արքեպիսկոպոսին հետ հասաւ Անգղիա: Թագաւորը չգիմացաւ, ու

---

[1] Ի՞նչ կերպով սպաննուեցաւ երանելին Պէքէթ:

կանչեց բարկութեամբ. " Աս ի՞նչ է. իմ սեղանս վայելող վասալներուն մէջ մէ՞կն ալ չկայ որ զիս աս քահանայէն ձեռքէն ազատէ »: Աս խօսքը փուճ տեղը բնաւ չեղաւ. չորս 'Նորմանտացի ասպետներ շուտ մը Անգղիա անցան: Քանթերպերիի եկեղեցին մտան ու սկսան կանչել. " Ո՞ւր է մատնիչ դաւաճանը: — Հոս դաւաճան չկայ, ըսաւ Պէքէթ, ուզածնիդ ի՞նչ է: — Մեր ուզածը ան է որ դուն մեռնիս: — Յօժարութեամբ կը մեռնիմ, ըսաւ Պէքէթ, բայց Աստուծոյ սիրոյն համար ըլլայ, եկեղեցականաց ու աշխարհականաց վնաս մ'ընէք »: Դեռ խօսքերը բերանն էին, չորս զինքն զարնուեցաւ մեռաւ սեղանին առջեւ (1171): Թագաւորը ուզեց ձայն հանել թէ ինքը անոր սպանութեան մասնակից չէ. բայց ժողովուրդը չխաբուեցաւ. Սանիս արքեպիսկոպոսը, որ Գաղղիոյ նախագահն էր, բանադրեց զթագաւորը. անիկայ ալ խոնարհեցաւ, ինքզինքը եկեղեցւոյ հպատակ ճանչցաւ, ու բոպիկ ոտքով գնաց Թովմաս Պէքէթին գերեզմանին վրայ ինքզինքը ծեծել տուաւ:

¹ Հենրիկոս միտքը դնելով թէ ան ապաշխարութեամբը իրեն յանցանքը սրբուեցաւ, ելաւ գնաց Իռլանտան նուաճելու, Ռոտերիկոս Օքոննոր թագաւորը ստիպեց որ հպատակի իրեն. բայց անդին իր իշխաններն ու որդիքը իրմէ գլուխ քաշեցին: Շատ չանցաւ, իր սիրելի որդիքը Ժօֆրուա ու Հենրիկոս Քուռ-Մանթել ընկան մեռան, ու միայն մէկալ երկու որդիքը մնացին, այս-

¹ Ի՞նչ խռովութիւններ ելան Հենրիկոս երկրորդին դէմ, և տեղը ո՞վ անցաւ:

ինքն Հռիքարտոս և Յովհաննէս, որ երկուքն ալ իրենց ապստամբութեանը ատեն Գաղղիոյ Նոր Թագաւորին, այսինքն Փիլիպպոս Օգոստոսին ապաւիններ էին, որ մէկէն պատերազմի ելաւ Հենրիկոսին դէմ: Խոնարհեցաւ Հենրիկոս, ուզեց հաշտութիւն ընել. բայց դաշնագրութիւնը չստորագրած՝ ուզեց իմանալ թէ իր հպատակներէն ո՞րոնք են իրեն դէմ զէնք վերցնողները: Երբոր ամենէն առաջ իր պզտիկ որդւոյն Յովհաննէսին անունը տեսին, որուն վրայ այնչափ սէր ցուցուցեր էր, մէկէն մահացու վէրքով մը սիրտը ծակեցաւ. վրան ութը օր չանցաւ՝ մեռաւ Հենրիկոս Բ, և տեղը Հռիքարտոս Առիւծասիրտն Անգղիոյ Թագաւոր եղաւ (1189):



# ԳԼՈՒԽ ԻԷ.

Պատմութիւն Գաղղիոյ՝ Փիլիպպոս Օգոստոսէն ինչուան սրբոյն Լուդովիկոսի մահը, և Անգղիոյ՝ Հանիքարդոս Անժուածորդէն ինչուան Հենրիկոս Գ (1180–1272)։ (Փիլիպպոս Օգոստոս). — Հանիքարդոս Անժուածորդն. — Առ Երկու Թագաւորաց բարեկամութիւնն ու թշնամութիւնը. — Յովհաննէս Անհողին. — Փիլիպպոս Օգոստոսին դաշնակից Թագաւորաց հետ ըրած պատերազմն ու յաղթութիւնը. — Փարիզ քաղաքը շէնցընելը. — Մեծ սահմանադրութիւնը. — Հենրիկոս Գ. — (Լուդովիկոս Ը. Անժուածորդն). — (Սուրբն Լուդովիկոս Թ). — Պլանշ Թագուհին. — Լուդովիկոսի դաստիարակութիւնը. — Հենրիկոս Գ. — Թայլպուրկի պատերազմը. — Լուդովիկոսի հիւանդութիւնն ու խաչակրութեան ուխտը. — Արևելք երթալը. — Թունուզ անցնիլը. — Հիւանդանալը. — Որդւոյն տուած խրատները. — Մահը. — Սրբութիւնը. — Սիմոն Մոնֆոր. — Կապաղի ըրած խորհրդարանին հաստատուելը. — Գաւառականաց երեսփոխաններուն խորհրդարանի մէջ մտնալը. — Քաղաքական պատերազմ. — Հենրիկոսի որդին Եդուարդ։

*¹ Փիլիպպոս Օգոստոս իր հօրը Լուդովիկոս Կրտսերին տեղը տասնըհինգ տարեկան Թագաւոր նստելով* (1180), *ջանաց ապստամբ իշխանները նուաճել. բայց շուտով իմացաւ որ իրեն անոնցմէ*

---

*¹ Փիլիպպոս Օգոստոս ինչ կերպով սկսաւ Թագաւորութիւնը։*

աւելի ահաւոր Թշնամին Անգղիոյ Թագաւորը Հէնրիկոսն է ։ Ասոր ալ յաղթելու համար ինչուան անոր որդիքը իրեն դաշնակից գտաւ, որ էին Հռիքարտոս Առիւծասիրտ ըսուածը և Յովհաննէս Սանթէռ այսինքն Անհող կամ Անհողին ։ Գաղղիոյ Թագաւորին ու Հռիքարտոս սաստիկ բարեկամութեան, նոյն վրանի մէջ կը պառկէին ու նոյն գաւաթէն կը խմէին ։

1 Սալահադին սուլթանին Երուսաղէմը առնելուն գոյժը բոլոր Եւրոպա դառն տրտմութեան ու ցաւի մէջ ընկղմեր էր ։ Գուլիէլմոս Տիւրացւոյն յորդորանքովը ահաւոր արշաւանք մը պատրաստուեցաւ. Եւրոպայի իրեք մեծամեծ Թագաւորները ալ խաչակիր գրուեցան, այսինքն Փիլիպպոս Օգոստոս՝ Գաղղիոյ Թագաւորը, Հռիքարտոս Անգղիոյ Թագաւորը, և Փրեդերիկոս Պարպարոսա՝ Գերմանիոյ կայսրը ։ Բայց աս խաչակրութիւնն ալ մեծ արդիւնք մը չունեցաւ ։ Փրեդերիկոս դեռ չհասած՝ Սելեւկիոյ գետոյն մէջ մեռաւ, Փիլիպպոս ու Հռիքարտոս ալ Աքքայի պաշարման ատենը իրարու հետ աւրուեցան, Փիլիպպոս իր նախանձորդին քաջութեանցը վրայ սկսաւ նախանձիլ, Հռիքարտոս ալ անոր երկչոտութեանը վրայ ։

2 Փիլիպպոս Գաղղիա դարձած՝ առթի կը սպասէր որ Հռիքարտոսին վրայ ունեցած ոխը հանէ. անոր գերի բռնուելուն լուրը առնելուն պէս՝ մտաւ Նորմանտիա, և Յովհաննէս Անհողինին

---

1 Պաղեստին ըրած արշաւանքը ինչպէս եղաւ ։
2 Հռիքարտոսի դէմ ինչ Թշնամութիւն ըրաւ ։

*հետ խօսքը մէկ ըրաւ որ եղբօրը Ռիքարտոսին տէրութիւնը միջերնին բաժնեն ։ Բայց երբոր տասնըհինգ ամսուան գերութենէն ետքը ամէն քրիստոնեայք ձայներնին բարձրացուցին ու Գերմանիոյ կայսրը ստիպեցին որ արձըկէ զինքը, քանի Ռիքարտոս գնաց, շատ անգամ Փիլիպպոսին յաղթեց ։*

*[1] Ռիքարտոսի մեռնելէն ետքը երբոր Ցովհաննէս Թագաւորեց, քիչ ատեններէն անօրէն սպանութեան մը համար անոր հետ ալ առերեցաւ Փիլիպպոս ու սկսաւ երկիրներուն տիրապետել ։ Վասն զի Անգղիոյ Թագաւորութիւնը Ժոֆրուայի որդւոյն Արթուրի կ՚իյնար ․ բայց Ցովհաննէս Անհողիկը աթոռը յափշտակեց (1199), ու իր ձեռքովը իր եղբօրորդին սպաննեց Ռուան քաղաքին քովը, և վիզը խոշոր քար մը կապած՝ Սէն գետին մէջ նետեց ։ Փիլիպպոս Ցովհաննէսին վրայ ամբաստանութիւն ըրաւ ու սեպուհներուն խորհրդարանին առջեւ զինքը դատաստանի կանչեց ․ Ցովհաննէս չուզեց երթալ ․ սեպուհներն ալ վճռեցին որ Գաղղիոյ մէջ ունեցած երկիրները ձեռքէն առնուին ։ Ան ատենը Ցովհաննէս դաշնակցութիւն մը ըրաւ Գաղղիոյ դէմ, որուն գլխաւորներն էին Օթոն Դ Գերմանիոյ կայսրը, ինքը Ցովհաննէս Անհողին, Ֆլանտրայի ու Պուլոյնի կոմսերը և Պրապանթի դուքսը ։ Փիլիպպոս իր ասպետացը մէկ մասը Ցովհաննէսին վրայ խրկեց՝ Լուդովիկոս որդւոյն առաջնորդութեամբը, ինքն ալ մնացած*

---

*[1] Ի՞նչ յաղթութիւն ըրաւ Անգղիոյ Ցովհաննէս Թագաւորին վրայ ։*

զօրացը գլուխ կեցած Ճամբայ ելաւ ։ Դաշնակցաց զօրքը հարիւր հազարէն աւելի էր ․ իսկ Գաղղիոյ Թագաւորինը անոնց կէսը չկար ․ երկու բանակները եկան Լիլ ու Թուռնէ քաղաքներուն մէջտեղը Պուվին գեղին քով ճակատեցան (1214) ։ Փիլիպպոս զօրքը քաջալերեց, օրհնեց ու ձեռուընները տարածած՝ Աստուծմէ օգնութիւն խնդրեց ։ Քիչ ատենի մէջ պատերազմը տաքցաւ, զօրավարները հասարակ զինուորի պէս կռուոյն սաստկացած տեղերը մտան ․ Գերմանացիք երկայն նիզակներով հասան, Փիլիպպոս ձիէն վար ընկաւ, և ասպետաց քաջութեամբը հազիւ մահուընէ ազատեցաւ ։ Վերջապէս Թշնամիք տկարացան ու սկսան ցրուիլ ․ Օթոն կայսրը վիրաւորուեցաւ, հետն ալ բոլոր զօրքը յաղթուեցաւ ։ Մէկէն նոյն ճակատամարտին տեղը Փիլիպպոս երեսի վրայ ընկաւ, շնորհակալութիւն ըրաւ Աստուծոյ ։

[1] Փիլիպպոս քսանուիրեք տարի Թագաւորելէն ետև մեռաւ (1223) յիսունըութը տարեկան, և այնչափ ըրած յաղթութեանցն ու աշխարհաշէն բարեկարգութեանցը համար Օգոստոս ըսուեցաւ ։ Ամենէն աւելի Փարիզ քաղաքը շէնցուց ․ ինչուան իր ատենը Փարիզ Լութէթիա այսինքն Տղմուտ քաղաք կ'ըսուէր ․ վասն զի անձրևի ատեն փողոցները մէյմէկ անանցանելի ճահիճ կը դառնային ․ ինքը հրամայեց որ քարայատակ ընեն փողոցները, քաղաքն ալ պարսպով պատեց, և Լուվրը * որ ա-

---

[1] Փիլիպպոս ինչմէ Օգոստոս ըսուեցաւ ։

* Լուվրը հիմա հնութեանց թանգարան է ։

ռաջ պարզ աշտարակ մըն էր՝ մեծցուց , ամրութեան բանտ շինեց :

¹ Յովհաննէս Անհողին Գուլիէլմի քովը յաղթուելուն յաջորդ տարին (1215) ուրիշ նոր խռովութիւններ ալ ունեցաւ իր երկրին մէջ. վասն զի իշխաններուն ստիպելովը նոր սահմանադրութիւն մը ստորագրեց ու երդմամբ հաստատեց. բայց տեսնելով որ անով իր իշխանութիւնը տկարացաւ ու ժողովրդեան ազատութիւնները աւելցան, երդումը ոտքի տակ առաւ. ան ատեն հպատակները նորէն ոտք ելան, զինքը թագաւորութենէ ձգեցին, ու տեղը հրաւիրեցին Փիլիպպոս Օգոստոսի Լուդովիկոս որդին : Բայց ան միջոցին Յովհաննէս մեռնելով, անոր ցեղին դէմ եղած ատելութիւնը պակսեցաւ. Անգղիացիք իրենց ազգային հպարտութիւնը ձեռք առնելով՝ չուզեցին գաղղիացւոյ մը հնազանդիլ. և Յովհաննէսի Հենրիկոս Գ. որդին թագաւորեցուցին. իսկ Լուդովիկոս հարկադրեցաւ Անգղիոյ թագաւորութենէն հրաժարելու ու Գաղղիա դառնալ (1216) :

² Լուդովիկոս Ը. իր հօրը Փիլիպպոս Օգոստոսին յաջորդելով՝ քաջասրտութեանը համար Առիւծասիրտ ըսուեցաւ, հօրը Ալբիգեանց դէմ ըրած պատերազմը շարունակեց, ու Թուլուզի կոմսութիւնը առաւ Ամօրիէն : Անանկով Լանկըտոյի գաւառին Գաղղիոյ հետ միանալը դիւրացաւ :

---

¹ Յովհաննէս Անհողին ինչ խռովութիւններ ունեցաւ Անգղիոյ մէջ :

² Փիլիպպոս Օգոստոսի ով յաջորդեց :

[1] Լուդովիկոս Առիւծասիրտ իրեք տարի թագաւորելէն ետքը մեռաւ, ու յաջորդ թողուց իր տասնուերկու տարեկան որդին Լուդովիկոս Իններորդը՝ մօրը Պլանշին խնամակալութեանը տակ (1227):

[2] Այս Պլանշ Ճարտար արիասիրտ ու բարեպաշտ թագուհին մէկ կողմանէ չորս դին ելած ապստամբութիւնները կը սանձէր, մէկալ կողմանէ որդւոյն բարեկիրթ դաստիարակութեանը վրայ ամէն հոգ կ'ընէր: Առաջինի և իմաստուն վարժապետաց ձեռքը յանձնեց զինքը, ու մասնաւոր կերպով կ'ուզէր որ պատմութեան եռանդ ըլլայ, որ ամէն բանէ աւելի թագաւորաց օգտակար կը ճանչնար: Բայց բուն անոր դաստիարակը ինքը մայրն եղաւ: Ամէն բանէ առաջ կը ջանար որ Աստուծոյ երկիւղը թագաւորին որդւոյն սրտին մէջ տպաւորէ. "Որդեակ իմ, կ'ըսէր, աշխարհքիս վրայ քեզի պէս սիրելի բան չունիմ. սակայն աւելի մեռնիլդ կ'ուզեմ քան թէ մահուչափ մեղք մը գործելդ": Դեռահասակ թագաւորը իր աստուածպաշտութեամբը ու քաղցր բնաւորութեամբը շուտով սիրելի ու պատկառելի եղաւ ժողովրդեան: Քսան տարեկան առենը՝ Պլանշ անոր հարս առաւ Փռովանսի կոմսին Մարգարիտա անունով բարեպաշտ ու բարեկիրթ աղջիկը:

---

[1] Լուդովիկոս Առիւծասրտին յաջորդ մը եղաւ:
[2] Պլանշ Թագուհին Ինչպէս կը դաստիարակէր իր որդին Լուդովիկոս Իններորդը:

1 Լուդովիկոս Թ 1236ին ատենութեան կառավարութիւնը ձեռք առաւ, ու ամէն բանի մէջ մօրը խորհրդովը կը շարժէր: Յաջորդ տարին իր բարեպաշտութիւնը ցուցնելով ինչուան Սանս քաղաքը գնաց՝ Վենետիկեցւոցմէ գնած Քրիստոսի Տեառն մերոյ փշէ պսակը առաւ, և ինքը անձամբ բաց գլխով ու բոպիկ ոտքով տասնըհինգ մղոն տեղ Վենսէնի անտառէն ինչուան Փարիզու մայր եկեղեցին բերաւ:

2 Այն միջոցին որ Անգղիոյ թագաւորը Հենրիկոս Գ թագաւորելու տարիքին հասեր էր, Լուդովիկոս Թ Գաղղիոյ թագաւորն ալ նոր սկսեր էր թագաւորել: Ուստի Անգղիոյ թագաւորը Մարշի կոմսէն յորդորուելով (որ Հուգոս Լուսինեան կ՚ըսուէր), Գաղղիոյ թագաւորին դէմ ելաւ՝ իր նախորդաց կորսնցուցած երկիրները նորէն ձեռք ձգելու մտքով. Թայլպուրկ և Սէնթ քաղաքներուն քով երկու թագաւորաց բանակները հանդիպեցան. գեղահասակ թագաւորը Լուդովիկոս՝ թուրը քաշած դիմեց թշնամեացը վրայ, զորոնք ալ ետևէն վազեցին. երկու կողմէն ալ քաջութեամբ պատերազմեցան, բայց վերջապէս Գաղղիացիք յաղթեցին:

3 Այն ատենները նորէն սուրբ երկրին առնուելուն գոյժը Եւրոպա որ հասաւ, Լուդովիկոս սուրբ թագաւորը միտքը դրաւ որ երթայ Պաղեստ-

---

1 Լուդովիկոս Թ երբ ու ինչպէս ձեռք առաւ թագաւորութեան կառավարութիւնը:
2 Թայլպուրկի պատերազմը ինչպէս եղաւ:
3 Սուրբն Լուդովիկոս ինչպէս յորդորուեցաւ Պաղեստին երթալու:

տենը այլազգեաց ձեռքէն ազատէ. բայց յանկարծ վրան հիւանդութիւն մը եկաւ և այնպէս ծանրացաւ, որ քովը կեցող կանանց մէկը մեռած սեպելով՝ երեսը լաթ մը ձգեց, քովինն ալ դեռ չէ մեռած ըսելով լաթը վերուց։ Աս պզտիկ վիճաբանութեան ատենը Թագաւորը յանկարծ աչքը բացաւ, խաչ մը խնդրեց։ Մայրը երբոր լսեց թէ որդւոյն լեզուն բացուեր է, ուրախութեամբ քովը վազեց. բայց տեսնելուն պէս կուրծքին վրայի խաչը, իբր թէ մեռած ըլլար՝ այնպէս վրան ցաւեցաւ. վասն զի գիտէր թէ խաչակրութեամբ մէյմը արևելք երթալէն ետքը շատ դժուար էր անոր կենդանի դառնալը։ Աղաչանք, խրատ, յանդիմանութիւն, ամէն ջանք ըրին որ Լուդովիկոսի միտքը դարձընեն. բայց սուրբ Թագաւորը ան մարդիկներէն չէր որ մահուան վախովը իրենց պարտքը կատարելէն ետ կը կենան։ Մայրը ու Փարիզու եպիսկոպոսը շատ ջանացին Լուդովիկոսը համոզելու որ այնպիսի տագնապին ատենը ըրած ուխտը վաւեր չէ. Լուդովիկոս անոնց խօսքէն համոզուածի պէս խաչը ուսէն փրցուց ու անոնց տուաւ. մէյմըն ալ դարձաւ. “Յուսամ թէ, ըսաւ, հիմայ ալ չէք տարակուսիր թէ խելքս գլուխս չըլլայ։ Տուէք ինծի աս խաչը։ Վասն զի կ'ուխտեմ Աստուծոյ առջևը որ բան մը բերանս տխտի չդնեմ մինչև որ նոյն երկրպագելի խաչին նշանը վրաս չփակցընեմ”։ Ալ անկէց ետև ամենուին միտքը փոխելու ետևէ չեղան։

1 Գնաց Լուդովիկոս արևելք, շատ քաջու-

---

1 Վախճանելու ատենը ի՞նչ խրատներ տուաւ որդւոյն։

թիւններ ըրաւ, բայց ետքը գերի բռնուեցաւ, և մօրը մահը լսելով Գաղղիա դարձաւ։ Հոն քիչ մը ատեն տէրութեան պիտոյքը հոգալէն ետև, ութերորդ խաչակրութեան համար Ճամբայ ելաւ, ու նախ ուզեց Ափրիկէի բնակիչները քրիստոնեայ ընել. Կարքեդոնը առաւ, բայց Թունուզի Թագաւորը հարիւր հազար զօրքով սկսաւ Գաղղիացիքը նեղել. իսկ անոնք ապականած ջրեր խմելով ու Ափրիկէի տաքութեանն ալ վարժած չըլլալով մէջերնին փոխադրական հիւանդութիւն մը ընկաւ։ Թագաւորը անդադար սիրտ կուտար զօրացը. բայց վերջապէս ինքն ալ բռնուեցաւ հիւանդութենէն. Փիլիպպոս Թագաժառանգ որդին բարձին քովը ծունկ չոքեր էր. բռնեց ձեռքէն Լուդովիկոս ու ըսաւ. "Սիրելի որդեակ իմ, առաջին պատուէրս քեզի աս է որ բոլոր սրտով զԱստուած սիրես, վասն զի առանց Աստուծոյ սիրոյն մարդս փրկութեան չհասնիր։ Աղքատաց վրայ գութ ունեցիր, ու ձեռքէդ եկածին չափ օգնէ անոնց։ Տէրութեան աղէկ սովորութիւնները պահէ ու գէշերը ջնջէ։ Ժողովրդեանդ ստացուածքին վրայ աչք մի՛ ձգեր ու տուրքերը մի՛ շատցըներ։ Երբոր սրտիդ մէջ անհանգստութիւն մը ունենաս, շուտ մը խոստովանէ և կամ խելացի մարդու մը զրուցէ, որպէս զի մխիթարուիս։ Մի՛ թողուր որ առջևդ մէկը անվայել ու անպարկեշտ խօսք հանէ բերնէն"։

[1] Երբոր իմացաւ Լուդովիկոս թէ իր մահը մօտեցեր է, հրամայեց որ զինքը մոխրի վրայ պառ-

---

[1] Ինչ կերպով հոգին աւանդեց։

կեցընեն . ձեռուըները խաչաձև կուրծքին վրայ դրաւ ու աչուըները դէպ 'ի երկինք վերուցած՝ Աստուծոյ փառք տալով ու « Այլ եւ ըստ բազում ողորմութեան քում մտից 'ի տուն քո, և երկիր պագից 'ի տաճար սուրբ քո » ըսելով սուրբ հոգին աւանդեց (25 Օգոստոսի 1270) : Շատ քաղցր ու զուարթ էր Լուդովիկոսի կենակցութիւնը . շաբաթը մէկ մը խոստովանանք կ'ընէր, ու ամէն օր երկու պատարագ կը տեսնէր : Աղքատաց ու հիւանդաց վրայ մեծ սէր ունէր, անձամբ կը ծառայէր անոնց, և ինչուան ոտքերնին կը լուանար, մանաւանդ կուրաց ոտքը՝ որպէս զի չկարենան զինքը ճանչնալ : Բոլոր Գաղղիա սուրբի տեղ դրաւ զինքը . քանի մը տարի ետքը Եկեղեցին ալ հանդիսաւոր կերպով սրբացուց :

1 Թագաւորին պատերազմէն ետև Անգղիոյ մէջ քաղաքական պատերազմ բացուեցաւ . վասն զի Հենրիկոս Գ. մեծ սահմանադրութիւնը վերցընելովը՝ ազգին մէջի ամէն կարգէ մարդկանց ատելութեան պատճառ եղեր էր : Այն ապստամբութեան գլուխը Սիմոն՝ որ Մոնֆոր անուանով Գաղղիացի մըն էր, այսինքն Փիլիպպոս Օգոստոսին աղջկան որդին : Մեծ ժողով մը եղաւ Վեսթմինսթրի մէջ, ուր պարոնները ոտքերնին ինչուան գլուխ զինեալ մտան . Հենրիկոս զարմանալով մը հարցուց . « Միթէ ես ձեր գերին եմ : — Ոչ, ըսաւ իշխաններէն մէկը, բայց քու շռայլու-

---

1 Թագաւորին պատերազմէն ետքը Անգղիոյ մէջ ինչ խռովութիւն եղաւ : — Ի՞նչ էր Կատաղի խորհրդարան ըսուածը :

Թեամբք ունելութիւնը տաժանակրայ ըլլէր . մեզի մէկ խորհրդարան մը պէտք է որ զմեզ կառավարէ ու անկարգութիւնները վերցնէ ,,: Ձևացաւ ան խորհրդարանը և Անգղիացիք անունը դրին կատա-ղի խորհրդարան : Օքսֆորտի սահմանադրութիւնը եպիսկոպոսաց և քահանայից առջևը կարդացուե-ցաւ , և անոնք՝ սա ազգային դաշանց դէմ ընողը նզովեալ ըլլայ ըսին , ձեռքերնին բռնած մոմերը մարեցին ու գետինը նետելով կանչեցին . « Ասանկ մարի դժոխքին մէջ ով որ սա նզովքին տակն իյնայ ,,: Թագաւորն ալ Ամէն ըսաւ , ու զանի-կայ պահելու այսպէս երդում ըրաւ . « Կ'երդ-նում որ անլուծանելի պահեմ սա պայմանները իբրև մարդ , իբրև քրիստոնեայ , իբրև ասպետ , և իբրև Թագաւոր պսակեալ և օծեալ ,,: Բայց ետքը զէջանելուն վրայ անփչնալով՝ երդմանը ստեց , որով և քաղաքական պատերազմ բացուե-ցաւ :

[1] Սուրբն Լուդովիկոս առջի բերան երկու կողմին մէջ միջնորդ բռնուեցաւ . բայց իրեն որոշ-մունքը ոչ մէկ կողմին հաճոյացաւ , ոչ մէկալին . վերջապէս Լեւեսի պատերազմին մէջ Մոնֆոր յաղթող ելաւ , ու Հենրիկոս Թագաւորը գերի բռնեց , բայց երկրորդ օրը արձըկեց , Թագաւո-րական իշխանութիւնը ձեռք առաւ , ամէն կոմ-սութեանց մէջ մէյմէկ պահապան դրաւ ազգային ազատութեանց և ինքը առաջինը եղաւ որ խորհըր-դարանին մէջ ամէն գաւառներէ երեսփոխաններ մտցուց (1264) :

---

[1] Սիմոն Մոնֆոր ինչ յաղթութիւն ըրաւ :

[1] Այն միջոցին որ Սիմոն Մոնֆոր այսպիսի բացարձակ իշխանութիւն առեր էր, Թագաւորին որդին Եդուարդ փախաւ բանտէն ազատեցաւ. վասն զի օր մը խնդրեց որ քանի մը ձի փորձէ, և որն որ արագընթաց երևցաւ իրեն՝ անոր վրայ հեծնելն ու աներևոյթ ըլլալը մէկ ըրաւ: Իր կուսակիցները քովը ժողվուեցան ու պատերազմը նորէն սկսաւ: Մոնֆոր պատերազմին մէջ մեռաւ, ապստամբները նուաճեցան ու Թագաւորական իշխանութիւնը նորէն հաստատուեցաւ. Մոնֆորի մարմինը իր թշնամիները քաշկռտելով նախատեցին, բայց անոր ըրած կարգաւորութիւններուն չդպան (1265): Ատեն անցնելէն ետքը, Մոնֆորի որդւոց մէկը իր հօրը վրէժը առնելու մտքով եկեղեցւոյ մը մէջ պահուըտած՝ սպասեց որ Հենրիկոսի եղբօրորդին գայ, որ Պաղեստինէն նոր դարձեր էր, և հոն խորանին առջևը զինքը սպաննեց, “ Վրէժս առի ” կանչելով, ու եկեղեցիէն դուրս ելաւ. “ Ի՞նչ, ըսաւ իրեն գործակիցներէն մէկը, հօրդ մարմնոյն գետինը քաշկռտուիլը միտքդ չէ՞ ”: Աս որ լսեց, նորէն եկեղեցին մտաւ, ան արիւնոտ մարմնոյն մազերէն բռնեց ու ինչուան դուռը տարաւ քաշկռտելով:

[2] Եդուարդ Հենրիկոս երրորդը նորէն աթոռը հաստատելէն ետև՝ սրբոյն Լուդովիկոսի հետ խաչակրութեան ելլելով, Թունուզ ու Պաղեստին գնաց, ու Հենրիկոսի մահն որ լսեց՝ Եւրոպա դարձաւ (1272):

---

1 Ի՞նչպէս մեռաւ Մոնֆոր: — Իր որդին ի՞նչ վրէժխնդրութիւն ըրաւ:

2 Հենրիկոս Գ նորէն ի՞նչպէս թագաւորեց:

# ԳԼՈՒԽ ԻԲ.

Գերմանիոյ և Իտալիոյ պատմութիւնը՝ Վորմսի դաշնակցութենէն ինչուան Ֆրեդերիկոս առաջնոյն մահը (1122-1190)։ Լոթարիոս Բ. — Սուաբիոյ ցեղը. — Կոնրադոս Գ. — Կուելֆեանք և Կիպելինեանք. — Ֆրեդերիկոս Պարպարոսա. — Իտալիոյ առաջին արշաւանքը. — Առնոլդոս Պրեշիացին. — Երկրորդ արշաւանք. — Միլանի պաշարումը. — Երրորդ արշաւանք. — Լինեանոյի պատերազմը։

¹ Վորմսի դաշնակցութեամբը կայսերաց ու պապերուն մէջ եղած կռիւը դադրեցաւ. բայց Գերմանիոյ և Իտալիոյ մէջէն թշնամութիւնը չվերջացաւ. առիթը գալուն պէս նորէն սկսաւ։

Երբոր 1125ին Հենրիկոս Ե մեռաւ, իրմով վերջացաւ նաև Ֆրանքոնիոյ ցեղը, ուսկից ելած էին հարիւր տարիի չափ Գերմանիոյ կայսերքը։ Կայսերական աթոռոյն համար եղող ցեղերուն մէջ երկուքը ամենէն երևելի էին, որ մեկզմեկ ատելով ու իրարու դէմ ըրած պատերազմներովը պատմութեան մէջ մեծ անուն ձգեցին. ատոնք են որ ըսուեցան Վելֆեանք կամ Կուելֆեանք, և Վայպլինկեանք կամ Կիպելեանք։

² Գերմանիոյ եկեղեցականներէն ու ազնուա-

---

¹ Գերմանիոյ և Իտալիոյ մէջ եղած թշնամութիւնը նորէն ինչ կերպով սաստկացաւ։
² Կուելֆեանց ու Կիպելեանց կռիւը ինչէ՞ն սկսաւ։

կամններէն վաթսուն հազար հոգի , արքեպիսկոպոսներ , եպիսկոպոսներ , աբբաներ , դուքսեր , պարոններ , կոմսեր , իրենց հպատակներովը ժողով ըրին Մոգունտիա (Մակոնցիա) քաղաքը՝ որպէս զի թագաւորին ընտրութեանը վրայ խօսին : Սաքսոնիոյ դուքսը Լոթարիոս Բ. , կայսր ընտրուեցաւ ազնուականաց կողմէն՝ Մոգունտիոյ արքեպիսկոպոսին առաջարկութեամբը : Այս ընտրութեան դէմ ելաւ Կոնրադոս Սուապիացին՝ որ ըսուեցաւ Թագաւոր Իտալիոյ , և Միլան գնաց որ երկաթէ պսակը գլուխը դնէ (1133) : Քիչ մնաց որ քաղաքական պատերազմը բոլոր միջին Եւրոպայի մէջ պիտի բորբոքէր , բայց սրբոյն Բեռնարդոսի ճարտասանութեամբը հաշտուած՝ երկու նախանձորդներն ալ իրենց զէնքերը վար առին , ու Սուապիոյ դուքսը կայսրէն ետքը առաջին պատիւը ունեցաւ : Երբոր Լոթարիոս պատերազմէ մը դառնալու ժամանակը մեռաւ (1137) , Կոնրադոս նորէն ետեւէ եղաւ կայսերական Թագը ձեռք ձգելու : Ան ատենը սկսաւ Գուելֆեանց և Կիպելեանց կռիւը :

[1] Այս անուններուն ծագումը այսպէս եղաւ . Հենրիկոս Դ. կայսրը 1071ին Պաւերայի դքսութիւնը տուեր էր ան երկրին իշխաններէն Վելֆ անունով մէկուն , Սուապիան ալ 1080ին Փրեդերիկոս Հոհենշթաուֆեն իշխանին՝ որ Վիպլինկէն բերդին տէրն էր : Վելֆեանք , կամ որ նոյն է Կուելֆեանք , որ եղբերը իրենց տէրութեան

---

[1] Կուելֆեան ու Կիպելեան անուններուն պատճառը ինչ է :

հետ միացուցեր էին նաև Թոսքանան ու Սաքսոնիան, ան ատենը Գերմանիոյ զօրաւոր ցեղերէն մէկը եղած էին, այնպէս որ իրենց գլխաւորը Հենրիկոս Գոռոզ համարձակեցաւ Սուաբիոյ Կոնրադոս կայսեր ձեռքէն իշխանութիւնը իրեն առնելու ։

¹ Կոնրադոս Գ (1137) յաղթեց իր նախանձորդին ու վրէժը առաւ. վասն զի Աւկսպուրկի ժողովին մէջ ըսաւ թէ Հենրիկոս Գոռոզին իշխանութիւնը հասարակաց հանգստութեանը վնաս է, ուստի ստիպեց որ իր դքսութիւններէն մէկը թողու անիկայ ։ Հենրիկոս մտիկ չըրաւ, անոր համար բռնի առին իրմէ Սաքսոնիան ու Պաւերան ։ Իր տէրութիւնները ձեռք ձգելէն առաջ մեռաւ Հենրիկոս, ու տասը տարեկան որդի մը թողուց՝ Մակտեպուրկի արքեպիսկոպոսին յանձնելով զանիկայ ։ Հենրիկոսին եղբայրը Վելֆ Ա. Թորֆեան փուճ տեղը աշխատեցաւ կայսեր դէմ կենալու. ինքը յաղթուեցաւ, ու ան կարճ պատերազմին ատենը երկու կողմին զինուորները իրարու հետ միաբանեցան ։

² Գուելֆեանց ու Կիպելեանց հաշտութեան ձայնը Ալպեան լեռներէն ալ անդին անցաւ ու Իտալիոյ մէջ հնչակուեցաւ. բայց աս երկու անունները, որ առաջ երկու Գերմանացի ցեղերու յատուկ սեպուած էին, քիչ ատենէն սկսան հայրենասիրաց ու օտարասիրաց տրուիլ. ուստի Գուելֆ-

---

¹ Առջի բերան ի՞նչ կերպով հաշտուեցան Գուելֆեանք ու Կիպելեանք ։

² Իտալիոյ մէջ աս հերձուածը ի՞նչպէս էր ։

ֆեանք ազգային ազատութեան համար սկսան պատերազմիլ, իսկ Կիպելլեանք օտար կայսեր և օտար իշխաններուն պաշտպան կը կենային։

1 Քանի որ Մեծն Օթոն մեռեր էր, Իտալիա Գերմանիոյ կայսերաց պաշտպանութեանը տակն էր. և որովհետև աս երկու երկիրներուն մէջ մեծ տարբերութիւն կար թէ՛ բարուց, թէ լեզուի և թէ քաղաքականութեան կողմանէ, Իտալացիք Գերմանիոյ պաշտպանութենէն սաստիկ ձանձրացած էին, և Գերմանացիք Իտալացւոց առջևը բարբարոս կը սեպուէին. ուստի քանի որ իրենց մէջ ազգասիրութիւնը կ՚աւելնար, այնչափ ալ ան օտարականաց դէմ ատելութիւննին կը շատնար. անոր համար Գերմանիոյ մէջ կոմսերը օրէնք կը դնէին քաղաքներուն, իսկ Իտալիոյ մէջ քաղաքացիք կը հրամայէին իշխանաց։ Լոմպարտիոյ մէջ այնչափ տարածուեցաւ ազատական հոգին որ ընչուան հին Հռոմայ տէրութիւնը ուզեցին նորոգել։

2 Ան միջոցին Առնոլդոս Պրեշիացի անուանով կրօնաւորը ուրիշ մոլորութիւններէ զատ սկսաւ քարոզել թէ եկեղեցականք միայն տասանորդներով ու յիշելիքներով գոհ ՚պիտի ըլլան. Հռովմայեցւոց կը յիշեցընէր իրենց հին ատենի փառքը, և կը յորդորէր որ պապերուն ժամանակաւոր իշխանութենէն ապստամբին։ Եւգինէոս Գ. պապը սրբոյն Պետրոսի եկեղեցիէն հալածուեցաւ, ու

---

1 Իտալացիք Գերմանացւոց հետ ի՞նչպէս էին ան ատենները։

2 Առնոլդոս Պրեշիացին ի՞նչ խռովութիւն հանեց։

Կոնրադոս կայսեր ապաւինեցաւ . կայսրն ալ՝ որ երկրորդ խաչակրութենէն նոր դարձած էր՝ կը պատրաստուէր որ Իտալիա անցնի . բայց մահը վրան հասնելով՝ իրեն յաջորդ անուանեց իր եղբօրորդին Փրեդերիկոս Պարպարոսսան ու վախճանեցաւ :

[1] Փրեդերիկոս Պարպարոսսա (1152) խելացի մարդ էր , բայց փառասիրութիւնը աւելի ըլլալով՝ միտքը դրեր էր որ իր աթոռը ուրիշ ամէն աթոռներէ վեր բարձրացընէ , Իտալիան նուաճէ , ու պապերուն իշխանութիւնը պակսեցընէ :

[2] Շատ պատճառներ կային իրեն Իտալիա արշաւելուն : Վասն զի Միլանցիք Լոտի քաղաքը կործաներ էին՝ որ Գերմանացւոց կողմն էր . Կապուայի կոմսը օգնութիւն կը խնդրէր Փրեդերիկոսէն՝ Սիկիլիոյ Ռոճէր թագաւորին դէմ . Առնոլդոս Պրեշիացին ալ կը յորդորէր զինքն որ Հռովմայ առջի պայծառութիւնը նորոգէ . կայսրն ալ Ալպեան լեռներէն անդին անցաւ , Ռոնքալիա ըսուած դաշտին մէջ բանակը դրաւ , ու մունետիկներ խրկեց որ այլեւայլ քաղաքներէն կայսերական տուրքը պահանջեն : Ասթի ու Թորթոնա քաղաքներուն տիրելէն ետքը, Պաւիացիք ուրախութեամբ ընդունեցան զինքը . բայց անիկայ Միլանի մօտենալու չհամարձակեցաւ . միայն կը փութար որ Հռոմ հասնի ու կայսր ըսուելու պատուանունը ընդունի :

---

1 Փրեդերիկոս Պարպարոսսա ի՞նչ մարդի վրայ էր :
2 Ուրիշ ի՞նչ պատճառ ունէր Իտալիա արշաւելու :

[1] Հռոմին մէջ ան ատենը Թագաւորի պէս տիրապետողը Առնոլդոս Պրէշիացին էր, որ հին ատենի արիութիւններուն պէս հրապարակներու մէջ կ'ելլէր, ժողովրդեան առջև ճառ կը խօսէր, անդադար վկայութիւններ բերելով Տակիտոսէն Լիւիոսէն Աւետարանէն և Պօղոս առաքելոյն Թղթերէն: Միտքը դրեր էր որ Գերմանիոյ կայսրը հին կայսերաց օրինաւոր յաջորդն է. ուստի դեսպաններ խրկեց Փրեդերիկոսի՝ Կապիտոլիոնին ու ծերակուտին փառացը վրայ մեծ մեծ խօսելով. կայսրը արհամարհեց դեսպաններն ու ըսաւ. "Ես շատ բան լսած էի Հռովմայեցւոց իմաստութեանն ու քաջութեանը վրայ. ուստի ձեր խօսքերուն վրայ կը զարմանամ: Գիտեմ որ ձեր քաղաքը ատենով մեծ ու զօրաւոր եղած է. բայց այսօրուան օրս ամէն բան մերն է. ձեր քաղաքն ալ, հիւպատոսներն ալ, ծերակոյտն ալ, զինուորներն ալ": Աս ըսաւ ու զօրքերը Հռոմին վրայ քշեց: Նէապօլսեցի Իշխանին մէկը բռնեց Առնոլդոս Պրէշիացին, կայսեր ձեռքը տուաւ. անիկայ ալ հրամայեց որ ողջ ողջ այրեն զինքը ու մոխիրները Տիբերիս գետը ձգեն:

[2] Աս լուրը Հռոմ տարածուելուն պէս ժողովուրդը կատղեցաւ ու Գերմանացւոց վրայ վազեց. սոսկալի պատերազմ մը բացուեցաւ փողոցներուն մէջ, և ինչուան կանայք երեք մարդկանց մէջտ

---

[1] Հռովմայ կառավարութիւնը ան ատեն ինչ վիճակի մէջ էր:

[2] Փրեդերիկոս ինչպէս յաղթեց Հռովմայեցւոց:

կուսայլին : Փրեդերիկոս յաղթեց Ժողովրդեան, բայց Հռոմի օդին սաստկութեանը չդիմանալով՝ շուտ մը ինքզինքը կայսր պսակել տուաւ, ու Ադրիանոս Դ պապը աթոռը հաստատելէն ետքը ետ դարձաւ (1154) :

[1] Զորս տարիէն մէյմըն ալ ուզեց Իտալիա անցնիլ, և պատճառը աս էր : Եպիսկոպոսին մէկը Գերմանիոյ մէջ բռնուած բանտ դրուած ըլլալով, Ադրիանոս պապը աս բանիս դէմ գանգատ ըրաւ, և իրեն նուիրակը Պըզանսոնի ժողովոյն մէջ բարձր ձայնով կանչեց. "Կայսերական թագը կայսեր տուողը ո՞վ է. միթէ պապը չէ՞" : Փրեդերիկոս հրամայեց նուիրակին որ Պըզանսոնէն դուրս ելլէ, ու կռիւը սկսաւ. կայսրը յայտարարութիւն մը հանեց՝ որուն մէջ կ'ըսէր թէ Հռոմ այր աւազակաց է : Իտալիա որ անցաւ, տեսաւ որ Լոմպարտիոյ քաղաքները երկու բաժնուեր են, մէկ կողմին գլուխը Միլան էր, մէկալինը Փաւիա. Փաւիան կայսեր կողմը բռնեց, և Միլան շուտ մը պաշարուեցաւ. քաղաքացիք ներսէն հաստատուն պատնէշ մը շինեցին աղէկ մեքենաներով, խրամը ջրով լեցուցին ու քաղաքը պաշարող սպահովցուցին : Փրեդերիկոս ալ տեսնելով որ գլուխ սլիալի չելլէ, հաշտութիւն ըրաւ քաղաքացւոց հետ աս պայմաններով որ Միլանցիք կայսերաց համար պալատ մը շինեն, շատ մը ստակ վճարեն, իրեք հարիւր հոգի ալ պատանդ տան : Ան բաւական

---

[1] Ինչ կերպով Փրեդերիկոս Իտալիան բոլորովին նուաճեց :

չէր. ժողով մը եղաւ Ռոնքալիա, ու Պոլոնիացի ճարտասաններն այս հին զրուցուածքը նորոգելով ըսին կայսեր. «Քու կամքդ իրաւունք սեպուի, և քու հաճոյքդ օրինաց տեղ անցնի»: Ասանկով Իտալիան Գերմանիոյ հպատակ ու հարկատու ճանչցուեցաւ:

[1] Սակայն կայսրը իր երկիրը դառնալուն պէս իմացաւ որ Իտալացիք նորէն սկսեր են տրտընջալ: Ադրիանոս Դ պապը կ'ըսէր իրենց որ տուրքը չվճարեն. անոնք ալ կայսեր հարկապահանջները քարով վռնտեր էին: Փրեդերիկոս բարկացաւ, հանեց գլխէն թագն ու երդում ըրաւ որ մինչուան որ Միլանցիներէն վրէժը չհանէ, թագը գլուխը չդնէ: Ստիպեց զիրենք որ նոր ժողովի մը գան, անոնք ալ եկան ու համարձակ ըսին իրեն. «Մենք քեզի հնազանդ ըլլալու երդում ըրինք. բայց մեր երդմանը հաւատարիմ մնալու խօսք չտուինք»: Աս խօսքը յայտնի պատերազմի նշան էր. ուստի երկու կողմէն ալ պատերազմը հրատարակուեցաւ: Կայսերականք Քրեմա քաղաքը պաշարած ատեննին՝ գերիներուն գլուխը գնտակ կը խաղային. անդիէն Քրեմացիք ալ իրենց թշնամեաց մարմինը կտոր կտոր կ'ընէին: Այսպիսի կատաղի պատերազմէն ետքը քաղաքը առնուեցաւ ու հիմնայատակ կործանեցաւ: Ան միջոցին Ադրիանոս պապն ալ մեռաւ, ու եկեղեցւոյ մէջ հերձուած ընկաւ. վասն զի փակարանին (այսինքն

---

1 Լոմպարտացւոց դէմ ինչ անգթութիւններ ըրաւ Փրեդերիկոս:

կարգինալաց ժողովոյն) մեծ մասը Աղեքսանդր Գ պապը ընտրեց, մնացած մասն ալ Վիկտոր երրորդը: Փրեդերիկոս Վիկտորին կողմը բռնեց, իսկ Աղեքսանդր Գաղղիոյ ապաւինեցաւ: Կայսրը Միլանցիներէն վրէժը առնելու համար՝ շատ զօրքով ան մեծ քաղաքին վրայ գնաց, առաւ, տներնին կործանեց, շատ տեղը արօրադիր ըրաւ հերկեց. միայն բնակիչներուն աղաչանքովը անոնց կենացը խնայեց (1162):

[1] Կայսեր աս սոսկալի անգթութիւնը աւելի կատղեցուց Լոմպարտիոյ ուրիշ բնակիչները. անիկայ երկրորդ անգամ Իտալիա անցնելուն պէս, դաշնակցութիւն մը ըրին Գերմանացւոց դէմ ու երդուընցան որ Միլանը նորէն շինեն, և մէկ ամսուան մէջ խօսքերնին կատարեցին. Աղեքսանդր Գ պապն ալ Իտալիա կանչեցին, և իրեն անուանը յիշատակ Աղեքսանդրիա քաղաքը շինեցին: Կայսրը շատ զօրքով Իտալացւոց վրայ եկաւ. բայց ան զօրքին մէկ մասը ցրուեցաւ, մնացածն ալ կէս մը հիւանդութեամբ, կէս մը պատերազմով ջարդուեցաւ, կայսրն ալ ծպտեալ կերպարանքով ձգեց փախաւ:

[2] Գերմանիոյ աս նախատինքը ծածկելու համար Փրեդերիկոս Պարպարոսսան ինքը անձամբ պատերազմի ելաւ. 1174ին գնաց Աղեքսանդրիա քաղաքը պաշարեց, որուն համար իրենները ծաղ-

---

1 Ի՞նչ կերպով զօրացան Միլանցիք:

2 Իտալիոյ մէկալ կողմերը ի՞նչպէս ազատութիւն գտան:

կաններէն վաճառուն հազար հոգի, արքեպիսկոպոսներ, եպիսկոպոսներ, աբբաներ, դուքսեր, պարոններ, կոմսեր, իրենց հպատակներովը ժողով ըրին Մոգունտիա (Մակոնցա) քաղաքը՝ որպէս զի Թագաւորին ընտրութեանը վրայ խօսին։ Սաքսոնիոյ դուքսը Լոթարիոս Բ. կայսր ընտրուեցաւ ազնուականաց կողմէն՝ Մոգունտիոյ արքեպիսկոպոսին առաջարկութեամբը։ Աս ընտրութեան դէմ ելաւ Կոնրադոս Սուաբիացին՝ որ ըսուեցաւ Թագաւոր Իտալիոյ, և Միլան գնաց որ երկաթէ պսակը գլուխը դնէ (1133)։ Քիչ մնաց որ քաղաքական պատերազմը բոլոր միջին Եւրոպայի մէջ պիտի բորբոքէր, բայց սրբոյն Բեռնարդոսի Ճարտասանութեամբը համոզուած՝ երկու նախանձորդներն ալ իրենց զէնքերը վար առին, ու Սուաբիոյ դուքսը կայսրէն ետքը առաջին պատիւը ունեցաւ։ Երբոր Լոթարիոս պատերազմէ մը դառնալու ժամանակը մեռաւ (1137), Կոնրադոս նորէն ետևէ եղաւ կայսերական Թագը ձեռք ձգելու։ Ան ատենը սկսաւ Կուէլֆեանց և Կիպէլեանց կռիւը։

[1] Աս անուններուն ծագումը այսպէս եղաւ. Հենրիկոս Դ կայսրը 1071ին Պաւերայի դքսութիւնը տուեր էր ան երկրին իշխաններէն Վէլֆ անունով մէկուն, Սուաբիան ալ 1080ին Փրետերիկոս Հոհէնշթաուֆէն իշխանին՝ որ Վիպլինկէն բերդին տէրն էր։ Վէլֆեանք, կամ որ նոյն է Կուէլֆեանք, որ ետքերը իրենց տէրութեան

---

1 Կուէլֆեան ու Կիպէլեան անուններուն պատճառը ինչ է։

հետ միացուցեր էին նաև Թոսքանիան ու Սաքսո-նիան, ան ատենը Գերմանիոյ զօրաւոր ցեղերէն մէկը եղած էին, այնպէս որ իրենց գլխաւորը Հենրիկոս Գոռոզ համարձակեցաւ Սուաբիոյ Կոնրադոս կայսեր ձեռքէն իշխանութիւնը իրեն առնելու ։

[1] Կոնրադոս Գ (1137) յաղթեց իր նախան-ձորդին ու վրէժը առաւ. վասն զի Աւկսպուրկի ժողովին մէջ ըսաւ թէ Հենրիկոս Գոռոզին իշ-խանութիւնը հասարակաց հանգստութեանը վնաս է, ուստի ստիպեց որ իր դքսութիւններէն մէկը թողու անիկայ ։ Հենրիկոս մտիկ չըրաւ, անոր համար բռնի առին իրմէ Սաքսոնիան ու Պաւե-րան ։ Իր տէրութիւնները ձեռք ձգելէն առաջ մեռաւ Հենրիկոս, ու տասը տարեկան որդի մը թողուց՝ Մակտեպուրկի արքեպիսկոպոսին յան-ձնելով զանիկայ ։ Հենրիկոսին եղբայրը Վէլֆ Եւ Թորֆեան փուճ տեղը աշխատեցաւ կայսեր դէմ կենալու. ինքը յաղթուեցաւ, ու ան կարճ պա-տերազմին ատենը երկու կողմին զինուորները իրարու հետ միաբանեցան ։

[2] Կուելֆեանց ու Կիպելեանց հաշտութեան ձայնը Ալպեան լեռներէն ալ անդին անցաւ ու Իտալիոյ մէջ հռչակուեցաւ. բայց աս երկու ա-նունները, որ առաջ երկու Գերմանացի ցեղերու յատուկ սեպուած էին, քիչ ատենէն սկսան հայ-րենասիրաց ու օտարասիրաց տրուիլ. ուստի Կուել-

---

1 Առջի բերան ի՞նչ կերպով հաշտուեցան Կուել-ֆեանք ու Կիպելեանք ։

2 Իտալիոյ մէջ աս հերձուածը ի՞նչպէս էր ։

ջեանք ազգային ազատութեան համար սկսան պատերազմիլ, իսկ Կուելֆեանք օտար կայսեր և օտար իշխաններու պաշտպան կը կենային:

1 Քանի որ Մեծն Օթոն մեռեր էր, Իտալիա Գերմանիոյ կայսերաց պաշտպանութեանը տակն էր. և որովհետև աս երկու երկիրներուն մէջ մեծ տարբերութիւն կար թէ բարուց, թէ լեզուի և թէ քաղաքականութեան կողմանէ, Իտալացիք Գերմանիոյ պաշտպանութենէն սաստիկ ձանձրացած էին, և Գերմանացիք Իտալացւոց առջևը բարբարոս կը սեպուէին. ուստի քանի որ իրենց մէջ ազգասիրութիւնը կ'աւելնար, այնչափ ալ անոնց օտարականաց դէմ ատելութիւննին կը շատնար. անոր համար Գերմանիոյ մէջ կոմսերը օրէնք կը դնէին քաղաքներուն, իսկ Իտալիոյ մէջ քաղաքացիք կը հրամայէին իշխանաց: Լոմպարտիոյ մէջ այնչափ տարածուեցաւ ազատական հոգին որ ինչուան հին Հռոմայ տէրութիւնը ուզեցին նորոգել:

2 Ան միջոցին Առնոլդոս Պրեշիացի անուանով կրօնաւորը ուրիշ մոլորութիւններէ զատ սկսաւ քարոզել թէ եկեղեցականք միայն տասանորդներով ու յիշելիքներով գոհ պիտի ըլլան. Հռովմայեցւոց կը յիշեցունէր իրենց հին առենի փառքը, և կը յորդորէր որ պապերուն ժամանակաւոր իշխանութենէն ազատուին: Եւգինէոս Գ պապը սրբոյն Պետրոսի եկեղեցիէն հալածուեցաւ, ու

---

1 Իտալացիք Գերմանացւոց հետ ի՞նչպէս էին ան առենները:

2 Առնոլդոս Պրեշիացին ի՞նչ խռովութիւն հանեց:

Կոնրադոս կայսեր ապաւինեցաւ. կայսրն ալ՝ որ երկրորդ խաչակրութենէն նոր դարձած էր՝ կը պատրաստուէր որ Իտալիա անցնի. բայց մահը վրան հասնելով՝ իրեն յաջորդ անուանեց իր եղբօրորդին Փրեդերիկոս Պարպարոսսան ու վախճանեցաւ:

1 Փրեդերիկոս Պարպարոսսա (1152) խելացի մարդ էր, բայց փառասիրութիւնը աւելի ըլլալով՝ միտքը դրեր էր որ իր աթոռը ուրիշ ամէն աթոռներէ վեր բարձրացընէ, Իտալիան նուաճէ, ու պապերուն իշխանութիւնը պակսեցընէ:

2 Շատ պատճառներ կային իրեն Իտալիա արշաւելուն: Վասն զի Միլանցիք Լոտի քաղաքը կործաներ էին՝ որ Գերմանացւոց կողմն էր. Կապուայի կոմսը օգնութիւն կը խնդրէր Փրեդերիկոսէն՝ Սիկիլիոյ Ռոճեր թագաւորին դէմ. Առնոլդոս Պրէշիացին ալ կը յորդորէր զինքն որ Հռովմայ առջի պայծառութիւնը նորոգէ. կայսրն ալ Ալպեան լեռներէն անդին անցաւ, Ռոնքալիա ըսուած դաշտին մէջ բանակը դրաւ, ու մունետիկներ խրկեց որ այլեւայլ քաղաքներէն կայսերական տուրքը պահանջեն: Ասթի ու Թորթոնա քաղաքներուն տիրելէն ետքը, Փաւիացիք ուրախութեամբ ընդունեցան զինքը. բայց անիկայ Միլանի մօտենալու չհամարձակեցաւ. միայն կը փութար որ Հռոմ հասնի ու կայսր ըսուելու պատուանունը ընդունի:

---

1 Փրեդերիկոս Պարպարոսսա ինչ մտքի վրայ էր:
2 Ուրիշ ինչ պատճառ ունէր Իտալիա արշաւելու:

¹ Հռոմին մէջ ան ատենը Թագաւորի պէս ախրապետողը Առնոլդոս Պրէշիացին էր, որ հին ատենի տրիբուններուն պէս հրապարակներու մէջ կ'ելլէր, ժողովրդեան առջև ճառ կը խօսէր, անդադար վկայութիւններ բերելով Տակիտոսէն Լիւիոսէն Աւետարանէն և Պօղոս առաքելոյն Թղթերէն: Միտքը դրեր էր որ Գերմանիոյ կայսրը հին կայսերաց օրինաւոր յաջորդն է. ուստի դեսպաններ խրկեց Փրեդերիկոսի՝ Կապիտոլիոնին ու ծերակուտին փառացը վրայ մեծ մեծ խօսելով. կայսրը արհամարհեց դեսպաններն ու ըսաւ. “Ես շատ բան լսած էի Հռովմայեցւոց իմաստութեանն ու քաջութեանը վրայ. ուստի ձեր խօսքերուն վրայ կը զարմանամ: Գիտեմ որ ձեր քաղաքը ատենով մեծ ու զօրաւոր եղած է. բայց այսօրուան օրս ամէն բան մերն է. ձեր քաղաքն ալ, հիւպատոսներն ալ, ծերակոյտն ալ, զինուորներն ալ„: Աս ըսաւ ու զօրքերը Հռոմին վրայ քշեց: Նէապօլսեցի իշխանին մէկը բռնեց Առնոլդոս Պրէշիացին, կայսեր ձեռքը տուաւ. անիկայ ալ հրամայեց որ ողջ ողջ այրեն զինքը ու մոխիրները Տիբերիս գետը ձգեն:

² Աս լուրը Հռոմ տարածուելուն պէս ժողովուրդը կատղեցաւ ու Գերմանացւոց վրայ վազեց. սոսկալի պատերազմ մը բացուեցաւ փողոցներուն մէջ, և ինչուան կանայք էրիկ մարդկանց սկսա

---

¹ Հռովմայ կառավարութիւնը ան ատեն ինչ վիճակի մէջ էր:

² Փրեդերիկոս ինչպէս յաղթեց Հռովմայեցւոց:

կուսակալին ։ Փրեդերիկոս յաղթեց ժողովրդեան , բայց Հռոմի օդին անողջութեանը չդիմանալով՝ շուտ մը ինքզինքը կայսր պսակել տուաւ , ու Ա. դրիանոս Դ պապը աթոռը հաստատելէն ետքը ետ դարձաւ (1154) ։

[1] Զորս տարիէն մէյմըն ալ ուզեց Իտալիա անցնիլ, և պատճառը աս էր ։ Եպիսկոպոսին մէկը Գերմանիոյ մէջ բռնուած բանտ դրուած ըլլալով, Ադրիանոս պապը աս բանիս դէմ գանգատ ըրաւ , և իրեն նուիրակը Պըզանսոնի ժողովոյն մէջ բարձր ձայնով կանչեց . " Կայսերական Թագը կայսեր տուողը ո՛վ է . մինթէ պապը չէ՞ ,, ։ Փրեդերիկոս հրամայեց նուիրակին որ Պըզանսոնէն դուրս ելլէ , ու կռիւը սկսաւ . կայսրը յայտարարութիւն մը հանեց՝ որուն մէջ կ՚ըսէր թէ Հռոմ այր աւազակաց է ։ Իտալիա որ անցաւ , տեսաւ որ Լոմպարտիոյ քաղաքները երկու բաժնուեր են , մէկ կողմին գլուխը Միլան էր , մէկալինը Փաւիա . Փաւիան կայսեր կողմը բռնեց , և Միլան շուտ մը պաշարուեցաւ . քաղաքացիք ներսէն հաստատուն պատնէշ մը շինեցին աղէկ մեքենաներով , խրամը ջրով լեցուցին ու քաղաքը պաշարով ապահովցուցին ։ Փրեդերիկոս ալ տեսնելով որ գլուխ ելլի չելլէ , հաշտութիւն ըրաւ քաղաքացւոց հետ աս պայմաններով որ Միլանցիք կայսերաց համար պալատ մը շինեն , շատ մը ստակ վճարեն , իրեք հարիւր հոգի ալ պատանդ տան ։ Այն բաւական

---

[1] Ի՞նչ կերպով Փրեդերիկոս Իտալիան բոլորովին նուաճեց ։

չէր․ Ժողով մը եղաւ Ռոնքալիա, ու Գոլոնիացի Ճարտասանները աս հին զրուցուածքը նորոգելով ըսին կայսեր․ “ Քու կամքդ իրաւունք սեպուի, և քու հաճոյքդ օրինաց տեղ անցնի ”։ Ասանկով Իտալիան Գերմանիոյ հպատակ ու հարկատու ճանչցուեցաւ։

¹ Սակայն կայսրը իր երկիրը դառնալուն պէս իմացաւ որ Իտալացիք նորէն սկսեր են դրդունջալ։ Ադրիանոս Դ պապը կ'ընէր իրենց որ տուրքը չվճարեն․ անոնք ալ կայսեր հարկապահանջները քարով վռնտեր էին։ Փրեդերիկոս բարկացաւ, հանեց գլխէն թագն ու երդում ըրաւ որ մինչուան որ Միլանցիներէն վրէժը չհանէ, թագը գլուխը չդնէ։ Ստիպեց զիրենք որ նոր ժողովի մը գան, անոնք ալ եկան ու համարձակ ըսին իրեն․ “ Մենք քեզի հնազանդ ըլլալու երդում ըրինք․ բայց մեր երդմանը հաւատարիմ մնալու խօսք չտուինք ”։ Աս խօսքը յայտնի պատերազմի նշան էր․ ուստի երկու կողմէն ալ պատերազմը հրատարակուեցաւ։ Կայսերականք Քրեմա քաղաքը պաշարած ատեննին՝ գերիներուն գլուխը գնտակ կը խաղային․ անդիէն Քրեմացիք ալ իրենց թշնամեաց մարմինը կտոր կտոր կ'ընէին։ Այսպիսի կատաղի պատերազմէն ետքը քաղաքը առնուեցաւ ու հիմնայատակ կործանեցաւ։ Ան միջոցին Ադրիանոս պապն ալ մեռաւ, ու եկեղեցւոյ մէջ հերձուած ընկաւ․ վասն զի փակարանին (այսինքն

---

¹ Լոմպարտացւոց դէմ ինչ անգթութիւններ ըրաւ Փրեդերիկոս։

կարդինալաց ժողովոյն) մեծ մասը Աղեքսանդր Գ. պապը ընտրեց, մնացած մասն ալ Վիկտոր երրորդը ։ Փրեդերիկոս Վիկտորին կողմը բռնեց, իսկ Աղեքսանդր Գաղղիոյ ապաւինեցաւ ։ Կայսրը Միլանցիներէն վրէժը առնելու համար՝ շատ զօրքով այն մեծ քաղաքին վրայ գնաց, առաւ, տներնին կործանեց, շատ տեղը աւերակ ըրաւ հերկեց. միայն բնակիչներուն աղաչանքովը անոնց կենացը խնայեց (1162) ։

[1] Կայսեր աս սոսկալի անգթութիւնը աւելի կատղեցուց Լոմպարտիոյ ուրիշ բնակիչները. անիկայ երկրորդ անգամ Իտալիա անցնելուն պէս, դաշնակցութիւն մը ըրին Գերմանացւոց դէմ ու երդուընցան որ Միլանը նորէն շինեն, և մէկ ամսուան մէջ խօսքերնին կատարեցին. Աղեքսանդր Գ. պապն ալ Իտալիա կանչեցին, և իրեն անուանը յիշատակ Աղեքսանդրիա քաղաքը շինեցին ։ Կայսրը շատ զօրքով Իտալացւոց վրայ եկաւ. բայց ան զօրքին մէկ մասը ցրուեցաւ, մնացածն ալ կէս մը հիւանդութեամբ, կէս մը պատերազմով ջարդուեցաւ, կայսրն ալ ծպտեալ կերպարանքով ձգեց փախաւ ։

[2] Գերմանիոյ աս նախատինքը ծածկելու համար Փրեդերիկոս Պարպարոսան ինքը անձամբ պատերազմի ելաւ. 1174ին գնաց Աղեքսանդրիա քաղաքը պաշարեց, որուն համար իրենները ծաղ-

---

1 Ի՞նչ կերպով զօրացան Միլանցիք ։
2 Իտալիոյ մէկալ կողմերը ի՞նչպէս ազատութիւն գտան ։

րածութեամբ յորդէ տողաւ կ'ըսէին, վասն զի մարտակոցները կաւով ու յարդով շինուած էին : Դաշնակից ազգերը թող չտուին որ քաղաքը առնու, ու զինքը պատերազմի բռնեցին . բայց Փրեդերիկոս չուզեց պատերազմիլ ու հաշտութիւն ըրաւ : Ան միջոցին Հենրիկոս Առիւծն, որ Հենրիկոս Գոռոզին որդին էր, յանկարծակի կայսեր կողմը ձգեց ու Իտալացւոց կողմն անցաւ . Լինեանոյ բերդին քով մեծ պատերազմ եղաւ, և Իտալացիք յաղթեցին . կայսրը առանց զօրքի Գերմանիա դարձաւ, Կիպէլեանք ակարացան և յաղթողները Կուէլֆեանք ըսուեցան : Դաշնադրութիւն մը եղաւ Վենետիկ տասնըհինգ տարուան համար, որով Աղեքսանդր Գ իր իշխանութեանը մէջ հաստատուեցաւ, և Իտալիոյ քաղաքներուն ազատութիւն տրուեցաւ . Վենետկոյ դքսին ալ մատնի մը տուաւ դաշնակցութիւնը իբր թէ ծովուն հետ զինքը պսակելով :

1 Երբոր Փրեդերիկոս Գերմանիա դարձաւ, Հենրիկոս Առիւծէն իր վրէժը առնելու համար զինքը իշխանութենէն ձգեց, անոր երկիրներն ալ ուրիշ իշխաններու բաժնեց, այնպէս որ Կուէլֆեանց ձեռքը մնացին միայն Պրունսուիք ու Հանովէր : Ասանկով Գերմանիոյ մէջ Կիպէլեանք զօրացան, և Իտալիոյ մէջ Կուէլֆեանք (1180) :

2 Փրեդերիկոս 1187ին իր Հենրիկոս որդին

---

1 Կիպէլեանք ի՞նչ կերպով զօրացան Գերմանիոյ մէջ :

2 Երկուց Սիկիլիոյ թագաւորութիւնը ի՞նչ կերպով միացաւ Սուաբիոյ ցեղին հետ :

Հռովմայեցւոց Թագաւոր անուանեց, ու Սիկի-լիոյ Ռոճէր Բ Թագաւորին աղջիկը անոր հարս առաւ, որով Երկուց Սիկիլեայց թագաւորութիւնը Սուաբիոյ ցեղին հետ կը միանար։ Երկու տարի ետքը խաչակրութեամբ արեւելք գնաց ու Սելեւ-կիոյ գետին մէջ լուացուելու ատենը մեռաւ (1190)։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Պատմութիւն Սպանիոյ և Փորթուգալի՝ 1076էն մինչեւ 1454։ Քասթիլիոյ ու Լէոնի թագաւորութիւնը. — Անդարի ցեղը. — Մորաբեդինք. — Սիտ. — Ալֆոնսոս Զ. — Պուրկոնեան ցեղը. — Մուահեդինք. — Ջինուորական կարգեր. — Տոլոզայի պատերազմը. — Ալֆոնսոս Աստեղագէտ. — Ալֆոնսեան ցուցակք. — Մերինեանք. — Սալատոյ գետին պատերազմը. — Պետրոս Անգութն. — Թրանսթամարի ցեղը. — Տիւկեքլէն զօրավարը. — Նաւարէթթայի պատերազմը. — Պետրոսին գերի բռնուիլը. — Հէնրիկոս Գ. — Նաւարրայի թագաւորութիւնը. — Անդարի, Շամփայնի, Էւրէօյի, Արակոնի, Ալպրէթի, Պուրպոնի ցեղերը. — Արակոնի թագաւորութիւնը. — Պարսէլոնայի ու Քասթիլիոյ ցեղերը. — Փորթուգալի թագաւորութիւնը. — Պուրկոնի և Աւիզի ցեղերը։

[1] ՍՊԱՆԻԱ. ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՔԱՍԹԻԼԻՈՅ ԵՒ ԼԷՈՆԻ։ — Սպանիացիք Պաղեստինու խաչա-կրութեանց մէջ չէին մտած. վասն զի իրենց եր-

---

1 Խաչակրաց ատենները Սպանիացիք ի՞նչ վիճակի մէջ էին։

երին մէջ արդէն շատ մահմետականներ կային , որոնց դէմ պէտք էր որ պատերազմէին ։ Ալփոնսոս Զ 1076ին բոլոր Քասթիլլիոյ տիրած էր , և Սանքոյ՝ Արակոնի ու Նաւարրոյի վրայ կը թագաւորէր ։

[1] Քասթիլլիոյ երկիրը Սպանիոյ մէջտեղը լեռնոտ երկիր ըլլալով , բնակիչները հին ատենէ 'ի վեր ազատասէր հոգւով վառուած էին . անոր համար եօթը հարիւր տարիի չափ զարմանալի քաջութեամբ պատերազմեցան հիւսիսային Ափրիկէի բովանդակ զօրութեանը դէմ ։ Ալփոնսոս Զ Թագաւորին ատենը (1085) Արաբացիք Տօլետոյ քաղաքը ձեռքերնէն հանեցին , ու տեսնելով որ իրենք մինակ կարողութիւն չունին Քասթիլլիացւոց դէմ կենալու , Ափրիկէէն Մորաւեան ցեղը իրենց օգնութիւն կանչեցին ։ Աս ցեղը ան ատենները նոր սկսած էր . վասն զի Ապտուլլահ անունով մէկը Թունուզի կողմերը քարոզութիւն ընելով շատ մարդիկ իրեն գլուխը ժողվեր էր , որ Մօրապէթին կամ էլ-Մօրապիթ ըսուեցան իբր թէ Այր Աստուծոյ , և իրենց վարուց խստութեանը համար սուրբ մարդիկ կը սեպուէին ։ Ասոնք գնացին արևմտեան Մաւրիտանիոյ տիրեցին և Մարոքի կամ Մէրաքէշի տէրութիւնը հաստատեցին . տիրեցին նաև Ֆէսի ու Սէւթայի կամ Սեպտէի , ու անկէց պատրաստուեցան Սպանիա յարձըկելու ։ Առջի անգամուն (1086) Ալփոնսոսի զօրքը յաղթեցին Սպանիոյ Պատայոզ քաղաքին քով , այնպէս որ քսանըչորս հազար քրիստոնեայ մեռաւ

---

[1] Մորաւեանք ովքեր էին և ինչպէս անցան Սպանիա ։

ան պատերազմին մէջ ։ Սիտ անունով Քասմթի-լիացի դիւցազն ապստամբը հոն չէր . վասն զի ուրիշներուն նախանձէն քաշուելով վտանգին տեղը հեռու կեցած էր ։ Ալփոնսոս կանչեց զինքը , և իրմէ զատ Գասղլիոյ հարաւային կողմի իշխաններէն ալ օգնութիւն ուզեց , որ էին Թուլուզի կոմսը Ռայմոնտ և Պուրկոյնի կոմսը Հենրիկոս ։

[1] Մորաւեանք նորէն երեւցան 1090ին . բայց Սիտին, Քասմթիլլիացւոց ու Գասղլիացի ապստամբաց քաջութեանը առջև չդիմացան ։ Ինկեց յուսահատելով, Մաւրիտանացւոց այսինքն Մուզլիմներուն դէմ դարձաւ , և առին անոնց ձեռքէն Կրանատա , Ալմերիա , Քորտովա ու Սեւիլլիա քաղաքները ։ Իրենց գլխաւորը Եուսուֆ՝ բռնեց Թագաւորական ցեղերուն վերջին մնացորդները Ափրիկէ խրկեց ու բանտի մէջ մեռցընել տուաւ , և ինքզինքը անուանեց Էմիր-Իւլ-Միւմինին այսինքն իշխան հաւատացելոց կամ ամիրապետ (1091) ։

[2] Սիտ մեռաւ 1099ին . կինը Խիմենէ անոր մարմինը Պուրղոս քաղաքին քով Քարտենայի վանքը տարաւ , ու հոն հօրը քով թաղեց . ետքը ինքն ալ հոն թաղուեցաւ , և մինչև հիմայ ճամբորդներուն կը ցուցընեն ինչուան Սիտին ընտիր ձիուն ալ գերեզմանը ։ Սիտին առջի անունն էր Ռոտրիկէս կամ Ռուի Տիաս տէ Պիվար ։ Երբոր հինգ մաւրիտանացի դաշնակից թագաւորաց յաղթեց , անոնց դեսպանները հետը տեսնուելու եկած

---

[1] Երկրորդ անգամ Մորաւեանց արշաւանքը ինչպէս եղաւ ։

[2] Սիտին վրայ ինչ գիտելիք կայ ։

ատէններին իրեն Սէյիտ կամ Ցէր կանչեր էին. աս-կէց ելեր է Սիտը, որ ետքը իրեն յատուկ անուն դարձեր է: Վիպասանները շատ զարդարած են Սիտին պատմութիւնը. կը ձեւացնեն թէ պատա-նեկութեան ատենը Տօն Կորմաս անունով մէկուն հետ մենամարտութեան ելեր է, որ իրեն ընտրած Սիմենէ անունով հարսնացուին հայրն էր. և աս դիպուածին վրայ Կիլէմ տէ Քասթրոյ սպանիա-ցին ու Պետրոս Քոռնէյլ գաղղիացին գեղեցիկ ու հռչակաւոր ողբերգութիւններ շինած են:

1 Սիտին մեռնելէն ետքը Մորաւեանք Վալէն-ցա քաղաքին ալ տիրեցին և Ալփոնսոսի յաղթե-ցին Ուքլեսի պատերազմին մէջ, ուր իր որդին ալ մեռաւ, հետն ալ եօթը կոմս ու քսանըչորս հա-զար զինուոր (1108):

2 Տարի մը ետքը վախճանեցաւ Ալփոնսոս Զ: Իր աղջիկը Ուրրաքէ՝ Պուրկոնիացի կոմսի մը հետ կարգուած էր, և անկէց որդի մը ունեցեր էր՝ Ալփոնսոս Է անունով. անոր համար իրեք հա-րիւր տարիի չափ Սպանիոյ թագաւորները Պուր-կոնի ցեղէն սերուեցան: Ալփոնսոս Է Անտա-լուսիա գաւառին վրայ յարձակեցաւ ու յաղթեց Մորաւեանց. այնպէս որ երբոր Լէոն քաղաքը դարձաւ, Օվիէտոյ ու Եւրշանի մեծամասնութիւնները տակին իրեն:

3 Այն ատենները Ափրիկէի մէջ նոր ցեղ մը

---

1 Սիտին մեռնելէն ետքը ի՞նչ ըրին Մորաւեանք:
2 Ի՞նչ պատճառաւ Սպանիոյ թագաւորները ա-տեն մը Պուրկոնի ցեղէն սերուեցան:
3 Մուհատեանք ի՞նչ արշաւանք ըրին Սպանիա:

զօրացաւ որ Մուահհիտեանք կ'ըսուէին . ասոնք Մորաւեաններուն յաղթեցին , Մարոք քաղաքն ալ հիմնայատակ կործանեցին (1146) ։ Անոնց գլխաւորը Աբտուլ Մումին՝ Նեղուցէն դիմացը անցաւ , և Քասթիլիոյ ու Արակոնի թագաւորութիւնները կործանելու կը սպառնար ։ Սպանիացիք անոնց դէմ հանեցին զինուորական ու կրօնաւորական ասպետութիւնները , որ կ'ըսուէին Կարգ Քալաթրաւայի , Սրբոյն Յակոբայ և Ալկանտարայ . ասոնցմով Սպանիացիք աղէկ դիմացան Ափրիկեցւոց աներկիւղ ձիաւորներուն դէմ . բայց չէր գիտցուեր թէ ինչուան ետքը պիտի կարենան արդեօք պատերազմիլ , մանաւանդ որ իրենց երկրին մէջ ալ խռովութիւնները պակաս չէին՝ Լարա ու Քասթրոյ ըսուած ցեղերուն իրարու դէմ թշնամութեանը պատճառաւ ։

[1] Ալփոնսոս իններորդին ժամանակը այնչափ վտանգի մէջ ընկաւ Սպանիա , որ Իննովկենտիոս Գ. պապը Հռոմ իրեք օր ծոմ պապահեց ու հրապարակական աղօթքներ ու թափօրներ ընել տուաւ . կանայք սուգ մտան Սպանիոյ քրիստոնէից համար , Գաղղիոյ մէջ ալ խաչակրութիւն քարոզուեցաւ անհաւատից դէմ ։ Մուհամմէտ-էլ-Նասըր Արաբացւոց գլխաւորը ութսուն հազար ձիաւորով ու անթիւ հետևակ զօրքով քրիստոնէից դէմ ելաւ , ու Տոլոսա քաղաքին քովը սոսկալի պատերազմ մը եղաւ . հարիւր ութսունըհինգ հազար Սարակինոս ան պատերազմին մէջ մեռան , և անոնց դիակները տասը տասնըհինգ մղոն տեղ

[1] Տոլոսայի պատերազմը ինչպէս եղաւ ։

ծածկեցին ։ Մահմետական պատմիչները կ՚ըսեն թէ ան ատեն սկսաւ իյնալ Արաբացւոց տէրութիւնը (1212) ։

[1] Սակայն երեք հարիւր տարիէն աւելի պէտք էր որ Սպանիան բոլորովին ազատէր ան սոսկալի օտարականներէն ։ Սուրբն Ֆերտինանտոս՝ Ալֆոնսոս իններորդին որդին՝ շատ քաջութիւններ ըրաւ Արաբացւոց դէմ ու Սեւիլլիա և Քորտովա քաղաքներուն տիրեց . միայն Կրանատա քաղաքը Արաբացւոց ձեռքն էր ։ Բայց ան ատենները Մերինի թոռը Իպն Եուսուֆ Ափրիկէի մէջ զօրանալով տիրեց Ֆեսի երկրին ու Մերինեանց տէրութիւնը հաստատեց , որ քիչ ատենէն տասներեօթը հազար հոգւով Սպանիա արշաւեցին , երկու անգամ յաղթեցին Սպանիացւոց , Թոլէտոյի արքեպիսկոպոսին ալ գլուխն ու աջ ձեռքը կտրեցին ։

[2] Ալֆոնսոս Ժ , Աստեղագէտ ու Իմաստուն ըսուածը , հօրը Ֆերտինանտոսի յաջորդելով Լէոնի ու Քասթիլլիոյ թագաւորութեան մէջ (1252) , շատ ջանաց Կրանատան Արաբացւոց ձեռքէն առնելու ։ Քանի մը գերմանացի իշխաններէ հրաւիրուելով երբոր Գերմանիոյ կայսերութիւնը ձեռք ձգելու զբաղած էր , Մաւրիտանացիք իր տէրութիւնը սկսան ոտնակոխ ընել , Սանքոյ որդին ալ գլուխ քաշելով թագաւորութիւնը յափշտակեց

---

1 Սեւիլլիա ու Քորտովա քաղաքները ի՞նչ պատճառաւ ազատեցան Արաբացւոց ձեռքէն ։ — Մերինեանք ի՞նչ արշաւանք ըրին ։

2 Ալֆոնսոս Ժ ի՞նչպէս ըրաւ թագաւորութիւնը ։

(1282) ։ Ափրիկէի Մաւրիտանացիքը իրեն օգնութեան կանչեց Ալփոնսոս ։ Եպու-Եուսուֆ մեծ բանակով եկաւ Մարոքէն, ու Քորտովայի մէջ Սանչոն պաշարեց. բայց ան միջոցին Ալփոնսոս սրտին ցաւէն Սեւիլիա քաղաքին մէջ մեռաւ, և վրան սանկ տապանագիր գրին. " Երկնային բաները դիտելու ատենը երկրիս վրայինները կը կորսնցընէր ,, ։

[1] Իր դարուն Թագաւորացը մէջ ամենէն ուսեալն էր Ալփոնսոս, Թէպէտ և Թագաւորելու արուեստը չէր գիտեր ։ Թոլետոյի մէջ գումարուած արաբացի ու հրեայ աստղաբաշխից հետ Ալփոնսեան ըսուած աստղաբաշխական ցուցակները շինեց. և կ'ըսէր թէ " Աստուած աշխարհս ստեղծելու ատեն թէ որ ինծի խորհուրդ հարցընէր, աշխարհս աւելի աղէկ կարգաւորեալ կ'ըլլար ,, . աս խօսքով անշուշտ իր ատենի աստղաբաշխական մոլար դրութիւնը կ'ուզէր վար զարնել ։

[2] Երբոր մեռաւ Ալփոնսոս Ժ (1295), ներքին խռովութիւնները նորէն սկսան, որով Մաւրիտանացիք յոյս առին իրենց կորսնցուցած տէրութիւնը ձեռք ձգելու ։ Եպիւլ Հասան Մերինեանը շատ զօրքով եկաւ Ափրիկէէն 1340ին, ու Սալատոյ գետին քովը մեծ պատերազմ մը ըրաւ, որուն մէջ երկու հարիւր հազար հոգի կորսնցուց, ու Քասթիլիացիք այնչափ աւար ժողվեցին որ ոսկւոյն յարգը վար իջաւ ։ Ալփոնսոս ԺԱ

---

1 Ալփոնսեան ցուցակները ինչ են ։

2 Սալատոյ գետին քովի պատերազմը ինչպէս եղաւ ։

կ'ուզէր նեղը ձգել Կրանատայի թագաւորութիւնը ու գրաւել . բայց երբոր Ճիպրալթարի բերդը պաշարեր էր՝ ժանտամահէ բռնուեցաւ ու մեռաւ (1350) :

1 Անկէց ետքը շատ փորձանքներու մէջ ընկաւ Քասթիլիոյ թագաւորութիւնը : Ալֆոնսոսի որդին Պետրոս այնպիսի բռնաւորութիւններ ըրաւ որ արժանապէս Անգութ մականունը ժառանգեց . մարդկանց կեանքը իրեն խաղալիկ ըրած էր . ոչ ազգականի կը խնայէր և ոչ իշխանի : Առաջ որ Պլանքա Պուրպոնեան թագուհւոյն հետ կարգուած էր , անիկայ ձգեց ու տեղը ցած կին մը առաւ . և ազնուականներէն ով որ աս բանիս համար իրեն բան մը ըսելու սիրտ ըրաւ , ո՛րը թրով՝ որը թունաւորուելով մեռաւ : Իրեն չորս եղբայրները , անոնց մայրը Էլէոնորա և իր կինն ալ , որ ութը տարիէ 'ի վեր շղթայակապ պահած էր , իր ձեռքովը սպաննեց :

2 Վերջապէս մէկ մարդ մը գտնուեցաւ որ այնչափ չարագործութեանցը վրէժը հանէ . Հենրիկոս Բ Թրանսթամար , որ Ալֆոնսոս մետասաներորդին որդւոցը մէկն էր , Գաղղիոյ Կարոլոս Է թագաւորէն օգնութիւն խնդրեց . ան ալ շատ զօրքով խրկեց իր քաջ զօրավարը Պերթրան Տիւկէքլէն , որ գնաց յանկարծ Քասթիլիա մտաւ , և Պետրոս ստիպուեցաւ Ակուիտանիա , Պորտոյ և անկէց ալ Կալլեսի երկիրը փախչելու : Հենրի-

---

1 Պետրոս Անգութին վրայ ինչ կը պատմուի :
2 Ո՞վ եղաւ Պետրոսի չարագործութեանցը վրէժխնդիր :

կոս Պուրպոսին մէջ նոր թագաւորեր էր, մէյմըն ալ Պետրոս Անգութը անգղիացի զօրքով վրան պատերազմի ելաւ. Հենրիկոս զօրքերը ժողվեց ու Տիւկէքլէնին կարծեացը դէմ Նաւարէթթայի պատերազմը ըրաւ. Սպանիացիք ձգեցին փախան. Գաղղիացիք ալ քիչ մը ատեն դիմանալէն ետքը՝ թշնամեաց բազմութեանը չկրցան յաղթել ու ետ քաշուեցան: Պետրոս Անգութը Գաղղիացւոց զօրավարը տեսնելով՝ վրան վազեց ու կանչեց. "Տիւկէքլէնին պէտք չէ խնայել": Իսկ ան քաջ զօրավարը առանց պատասխան տալու այնպիսի ուժով մը զարկաւ անոր որ կիսամեռ գետին ինկաւ (1367):

[1] Յաջորդ տարին պատերազմը նորէն սկսաւ, Տիւկէքլէն նորէն սպարապետ եղաւ Հենրիկոսի զօրացը, Մոնթիէլ քաղաքին քով մեծ յաղթութիւն մը ըրաւ, Պետրոս Անգութն ալ քաղաքին մէջ պաշարուելէն ետքը գերի բռնեց, ու Հենրիկոսին ձեռքը տալով ըսաւ. "Ահա քու թշնամիդ. — Այո, ըսաւ գերին, Պետրոսը ես եմ". Հենրիկոս ալ մէկէն 'ի մէկ անոր երեսին ապտակ մը զարկաւ; ու երկու եղբարք սկսան իրարու հետ ծեծկուիլ. Պետրոս իր եղբայրը գետինը զարկաւ, ու քիչ մնաց որ զինքը սպաննէր. վրայ հասաւ Տիւկէքլէն ու Հենրիկոսին օգնեց. իսկ Պետրոս Անգութը իր անթիւ վէրքերուն ցաւէն մեռաւ (1369):

[2] Թրանսթամարի ցեղին թագաւորութեանը

---

1 Ի՞նչ կերպով մեռաւ Պետրոս Անգութը:

2 Հենրիկոս Գ. ի՞նչ հնարքով ստակ հանեց ազնուականներէն:

Սպանիոյ Ներքին խռովութիւնները չդադրեցան. մանաւանդ թէ Հենրիկոս Գ. Թագաւորին կըրտսերութեան ատենը աւելի սաստկացան։ Այս Թագաւորը տասնըհինգ տարեկան հազիւ կար՝ երբոր ուզեց ինքնագլուխ թագաւորել. և որովհետև գանձին մէջը ստակ չկար, մէկ առաւօտ մը հարուստ ազնուականներուն գլխաւորները իր պալատը կանչեց և ոտքէն ինչուան գլուխը զէնքերով զարդարուած՝ աս խօսքերս ըսաւ անոնց. “ Ասկէց ետքը դուք պիտի չկառավարէք. ասկէց ետքը Թագաւորները ձեր խաղալիկը պիտի չըլլան. հիմա գլուխնիդ կտրեմ որ սորվիք ”։ Շուտ մը դահիճները դուրս ելան, վեց հարիւր զինուոր ալ անոնց հետ, և Թագաւորը հրամայեց անոնց որ իր սպառնալիքը կատարեն։ Իշխանները Թագաւորին ոտքը ընկան. այնչափ աղաչեցին, լացին ու խոստմունքներ ըրին որ վերջապէս անոնց հարստութեան մեծ մասը առնելէն ետև՝ կեանքերնին շնորհեց Հենրիկոս։ Այս խստութենէն ետքը Թագաւորը խաղաղութեամբ թագաւորեց ինչուան որ մեռաւ 1406ին։

[1] Յովհաննէս Բ. նոյն քաջութիւնը չունեցաւ, և իր մօրը մեռնելէն ետքը երբոր մինակ թագաւորեց, անկարողութիւնը յայտնի եղաւ։ Իր փոխարքան Ալվարոյ տէ Լունա՝ ամենուն ատելի եղաւ ու շատ ալ խռովութեանց պատճառ, ինչուան որ Պուրղոս քաղաքին հրապարակին մէջ զինքը քաշկռտելէն ետքը գլուխը կտրեցին (1453).

---

1 Յովհաննէս Բ. ինչպէս ըրաւ թագաւորութիւնը։

թագաւորն ալ սրտին ցաւէն յաջորդ տարին մեռաւ (1454) :

[1] ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՆԱՒԱՐՐԱՅԻ : — Աս թագաւորութիւնը պզտիկ երկիր մը մէջ էր, Քասթիլիոյ՝ Արակոնի ու Տուլուզայի մէջտեղը : Կարսիա Ա. Թագաւորէն ետքը, որ Ազնարի ցեղէն էր, շատ թագաւորներ ունեցաւ, որոնց վրայ գիտնալու արժանի բան մը չկայ · վերջինը Սանքօ 1234ին մեռաւ առանց ժառանգի · իր տէրութեան մեծ մասն ալ Քասթիլիոյ հետ միացաւ :

[2] Անկէց ետքը Նաւարրան Գաղղիացւոց ձեռքը անցաւ (1328), որ իրարու ձեռքէն ալ շատ անգամ յափշտակեցին ինչուան 1386 : Կարոլոս Չարին որդին Կարոլոս Ազնիւն 1425ին մեռաւ, ու Պլանքա անունով աղջիկ մը թողուց որ Արակոնի Յովհաննէս թագաւորին հետ կարգուեցաւ : Ասոնցմէ ծնան Տոն Քարլոս և Տոնա Պլանքա · բայց երկուքն ալ ժառանգութենէն զրկեց հայրերնին, և անոնց քրոջը Ելէոնորային տուաւ, որ ուրիշ կնկանէն էր, ու Կասթոն տը Ֆուա ըսուած անուանի գաղղիացի կոմսին հետ կարգուած էր : Աս Կասթոնին թոռը Կատարինէ՝ Նաւարրան Ալպերի ցեղին անցուց · ան ցեղին ալ վերջի թագաւորը Հենրիկոս Դ բոլորովին Գաղղիոյ հետ միացուց Նաւարրայի թագաւորութիւնը (1590) :

---

[1] Նաւարրայի թագաւորութիւնը ինչպէս էր ՚ի սկզբան :

[2] Գաղղիոյ թագաւորութեան հետ երբ ու ինչպէս միացաւ :

1 ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՐԱԳՈՆԻ : — Արագոնի թագաւորութիւնը Նաւարրայի թագաւորութեան ու Միջերկրական ծովուն մէջտեղը ինկալով՝ կրնար հետ զհետէ աւելի մեծնալ, մանաւանդ ծովային վաճառականութեամբ : Ալփոնսոս Ա Քասթիլլիոյ ու Լէոնի գաւառներն ալ անոր հետ միացուց (1109)․ Սպանիոյ՛ ալ մեծ մասին տիրած ըլլալով՝ շատ յաղթութիւններ ըրաւ Մաւրիտանացւոց դէմ․ բայց Ֆրակա քաղաքին քով յաղթուեցաւ, ու սրտին ցաւէն մեռաւ : Քասանըլինը պատերազմի մէջ մտեր էր Ալփոնսոս, անոր համար ալ Պատերազմող կամ խաղմարար ըսուեցաւ : Իր եղբայրը Հռամիրոս վանականը վանքէն հանեցին ու տեղը թագաւորեցուցին, բայց անիկայ շուտ մը հրաժարեցաւ աթոռէն (1137) :

2 Աղնարի ցեղը վերջացած կ'երեւնար՝ երբոր իշխանները Արագոնի թագաւորութիւնը տուին Պարսելոնայի կոմս Ռայմոնտ Բերենգարիոսին, որ Հռամիրոս վանականին աղջկանը հետ կարգուած էր : Ան ատեն Արագոնի թագաւորութիւնը շատ մեծցաւ ու զօրացաւ թէ մահմետականաց և թէ ուրիշ տէրութեանց դէմ․ ետքը Փռովանս ու Ռուսիյլիոնի գաւառներուն և Մարսիլիա քաղաքին ալ տիրելով ծովու վրայ ալ շատ զօրացան Արագոնացիք :

---

1 Արագոնի թագաւորութիւնը հին ատեն ինչ վիճակի մէջ էր :

2 Ե՞րբ և ինչ կերպով զօրացան Արագոնացիք :

1 Բերենգարիոսի յաջորդներէն Խայմէ Ա. քաջ թագաւորը որ Աշխարհակալ ըսուեցաւ ու երեսուներեք պատերազմի մէջ մնացած էր, տիրեց նաև Մայորքա կղզւոյն, Վալենցայի թագաւորութիւնն ալ Մաւրիտանացւոց ձեռքէն առաւ։ Պետրոս կամ Փետրոս Գ իրեն յաջորդը՝ աչքը Սիկիլիոյ վրայ դարձուց՝ ուր կը հրաւիրէր զինքը Յովհաննէս Պրոկիդաս, որ Սիկիլեան կոտորածոյն գլխաւոր դաւակիցներէն մէկն էր (1282)։ Ալփոնսոս Գ ալ տիրեց Սարտենիա կղզւոյն։ Իր որդիքը անզաւակ մեռան ու Բերենգարիոսի ցեղը հատաւ (1410)։

2 Շատ թագաւորներ ետևէ եղան որ աս հարուստ ժառանգութիւնը ձեռք ձգեն. բայց ժողովուրդը 1412ին Փերտինանտոս Գասթիլիացւոյն տուաւ աթոռը, որ Պետրոս չորրորդին թոռն էր։ Անոր որդին Ալփոնսոս Ե Մեծանձն ըսուածը՝ Անժուի ցեղը Նէապոլիսէն դուրս հանեց (1442). իր որդին էր Փերտինանտոս Ուղղափառն, որուն թագաւորութիւնը նոր պատմութեան մէջ կ'իյնայ։

3 ՓՈՐԹՈԿԱԼ։ — Աս թագաւորութիւնը սկիզբէն ինչուան մեր օրերը գրեթէ միշտ նոյն սահմանները ունեցեր է, ու մետասաներորդ դարէն ետքը սկսած է։ Ան դարուն մէջ աս երկիրը, որ

---

1 Բերենգարիոսի յաջորդացը մէջ ո՞վ գտնուեցաւ անուանի։

2 Ի՞նչ կերպով վերջացաւ Արակոնի թագաւորութիւնը։

3 Փորթոկալի երկիրը 'ի սկզբան ի՞նչ վիճակի մէջ էր։ — Ի՞նչ քաջութիւններ ըրաւ Հենրիքէզ։

հին անունով Լուսիտանիա կ՚ըսուէր, Արաբացւոց ձեռքը ընկած էր․ 1094ին երբոր Հենրիկոս Պուրկոնեան դուքսը Մորաւեանց դէմ պատերազմի գնաց, Ալփոնսոս Զ Թագաւորը անոր քաջութեանը վրայ զարմացած՝ իր Թերեզիա աղջիկը անոր տուաւ՝ Արաբացւոցմէ առած երկիրներն ալ անոր օժիտ կապելով։ Հենրիկոս Տուրոյ ու Մինիոյ գետերուն մէջ եղած երկիրներուն տիրելով 1139ին ժառանգութիւն Թողուց զանոնք իր որդւոյն, որ էր Ալփոնսոս Հենրիքէզ։ Աս Թագաւորը հինգ արաբացի իշխաններու դէմ մեծ յաղթութիւն մը ընելէն ետքը Աշխարհակալ և Թագաւոր անուանեցաւ, որով և Փորթոկալի առաջին Թագաւորն եղաւ, ու Լիսպոնա քաղաքին տիրեց՝ Պէյրա ու Էսթրէմատուրա գաւառներուն հետ մէկտեղ։ Մուհամէտանք 1184ին ուզեցին անոր ձեռքէն տէրութիւնը առնուլ․ բայց չկրցան․ Սանթարէմ քաղաքին քովը նորէն յաղթեց անոնց Հենրիքէզ ու քիչ ատենէն ետքը մեռաւ։

[1] Իր յաջորդները Ալէնթէժոյ ու Ալկարվա գաւառներուն ալ տիրեցին ու անկէց ետքը Փորթոկալի սահմանը չմեծցաւ․ 1385ին ատենները Աւիսեան ցեղին անցաւ Թագաւորութիւնը, և ազատ տէրութիւն ճանչցուելով սկսաւ ծովային վաճառականութեան ետևէ ըլլալ, գուշակելով որ անով պիտի հարըստանայ ու զօրանայ։ Նոր երկիրներ գտնուելու ժամանակը Յովհաննէս

---

[1] Փորթոկալցիք ինչ կերպով զօրացան ու հարըստացան։

Մեծն, և մանաւանդ իր որդին Հենրիկոս՝ շատ օգնութիւն ըրին նաւորդներուն։ Փորթուկալցիք 1412ին Մատերա կղզին ելան. անկէց ետքը ետևէ ետև տեսան Գլուխ Պոյատորը և Դալարի գլխոյ կղզիները. 1448ին ալ Ազորեան կղզիները գտան. վրան քառասուն տարի չանցաւ, Բարեյուսոյ գլուխը հասան։

## ԳԼՈՒԽ Լ.

Պատմութիւն Գերմանիոյ և Իտալիոյ՝ Հենրիկոս վեցերորդէն մինչև Հռոդոլփոս Հապսպուրկցին (1190-1273)։ Հենրիկոս Զ. — Երկուց Սիկիլեայց տէրութիւնը. — Կայսեր անգթութիւնները. — Օթոն Դ և Փիլիպպոս Սուապիացին. — Փրեդերիկոս Բ. — Պապին հետ ունեցած կռիւները. — Մեծ միջոց պարապոյ. — Կարոլոս Անժուացին Իտալիա կ'երթայ. — Կոնրադինոսի գլխատումը. — Հռոդոլփոս Հապսպուրկցւոյն կայսր ընտրուիլը։

1 Փրեդերիկոս Պարպարոսայի որդին Հենրիկոս Զ (1190), փառասիրութեան ու անգթութեան կողմանէ իր հայրն ալ անցուց, եօթը տարուան մէջ այնչափ բան ըրաւ, որ անկէց կ'իմացուի թէ աւելի ապրելու ըլլար նէ ինչեր պիտի ընէր։ Երբոր Ռիքարտոս Առիւծասիրտն փաթորիկով մը Դալմատիոյ ծովեզերքը ընկաւ,

---

1 Հենրիկոս Զ ի՞նչ բնաւորութեան տէր էր։ — Ի՞նչպէս վարուեցաւ Առիւծասիրտ Ռիքարտոսին հետ։

Աւստրիոյ դուքսը բռնեց զինքը կայսեր ծախեց․ Հենրիկոս ալ չամչցաւ այնպիսի դիւցազնը գերի պահելու, և իրեն կամակից եղին Գաղղիոյ Օգոստոս Փիլիպպոս թագաւորը, Գերմանիոյ իշխաններ և Յովհաննէս Անհողինը։ Բայց վերջապէս պապին Նզովքէն վախնալով՝ ստիպուեցաւ որ Հռիքարտոսը արձըկէ՝ շատ ստակ առնելէն ետքը։

[1] Սիկիլիոյ մէջ ան ատենները Գուլիէլմոս Բ թագաւորը մեռած ըլլալով՝ աթոռը կայսեր կ'իյնար․ բայց բնակիչները օտարական թագաւոր չէին ուզեր, անոր համար Նորմանտացի Տանկրետոս ընտրեցին որ Սիկիլիոյ Լեչչէ քաղաքին կոմսն էր։ Գերմանացիք արշաւեցին Փուլիա գաւառը․ ան միջոցին Տանկրետոս ալ մեռաւ ու թագաւորութիւնը թողուց իր որդւոյն Գուլիէլմոս երրորդին․ ան ալ տեսնելով որ ինքը բաւական կարողութիւն չունի թագաւորութիւնը պահելու, Հենրիկոս վեցերորդին տուաւ։ Բայց աս վստահութեամբն ալ բան մը չշահեցաւ․ վասն զի կայսրը անոր աչուըները հանելէն ետքը զինքը բանտ դրաւ․ Տանկրետոսին մարմինն ալ գերեզմանէն հանել տուաւ ու գլուխը կտրեց։ Որչափ որ Նորմանտացւոց ցեղէն իշխաններ կային, կայսրը ամենուն ալ սոսկալի բարբարոսութիւններ ըրաւ․ ոմանց աչուըները փորեց հանեց, ոմանք ալ ողջ ողջ այրեց։ Ճորստանոյ կոմսը չդիմանալով աս անգթութիւններուն՝ ուզեց կայսեր դէմ գլուխ վերցընել․ բայց բռնեցին զինքը, բռընկած աթո-

[1] Սիկիլիոյ տիրելու համար ի՞նչ անգթութիւններ ըրաւ Հենրիկոս Զ։

*ափ մը վրայ նստեցուցին ու կարմրցուցած երկաթով մը զինքը պսակեցին՝ վրայի գամերը գլխուն մէջը զարնելով։ Կին մը գտնուեցաւ որ իր հայրենեաց վրէժը հանեց. վասն զի Կոստանդիա Սիկիլիացին Թոյն խմցուց կ՚ըսեն Հենրիկոսի ու մեռուց* (1197)։

[1] *Հենրիկոս կայսրը իր Փրեդերիկոս որդին Իննովկենտիոս Գ պապին պաշտպանութեանը յանձնած էր. բայց որովհետեւ անիկայ դեռ տղայ էր, կայսրընտիրները ուզելով որ զիրենք կառավարելու կարողութիւն ունեցող մէկը կայսր ըլլայ, ոմանք ընտրեցին Փիլիպպոս Սուաբիացին, որ Հենրիկոս վեցերորդին եղբայրն էր, ոմանք ալ Ոթոն Բրունսվիքցին, որ Պաւիերայի դուքս Առիւծ ըսուած Հենրիկոսի որդին էր* (1197)։

[2] *Իննովկենտիոս պապին նուիրակը յայտարարութիւն մը ըրաւ թէ Փիլիպպոս Սուաբիացւոյն ընտրութիւնը ոչ ինչ է, որովհետեւ անիկայ Կիպելլեան էր. ասով պատերազմը նորէն սկսաւ։ Փիլիպպոսի բաները սկսեր էին յաջող երթալ. մէյմըն ալ* 1208*ին իր անձնական թշնամիներէն մէկը զինքը սպաննեց։ Քիչ ատենէն Ոթոն չորրորդ ալ պապին հետ աւրուեցաւ. վասն զի Մաթիլտէ կոմսուհւոյն ստացուածքը ետ չդարձնելուն համար պապին կողմանէ նզովք եկաւ իրեն։ Ան ատեն Փրեդերիկոս Բ, որ տասնըութը տարեկան էր, Գերմանիա եկաւ, ազնուականաց մեծ մասը իրեն կողմը ձգեց ու կայսր անունը առաւ Աքուիս-*

---

[1] *Հենրիկոս վեցերորդին յաջորդ ո՞վ եղաւ։*
[2] *Փրեդերիկոս Բ ի՞նչպէս հասաւ կայսերութեան։*

կրանա քաղաքին մէջ. և երբոր Ոթոն Դ Փիլիպպոս Օգոստոսէն յաղթուեցաւ, Փրեդերիկոս իր կայսերութեանը մէջ աւելի հաստատուեցաւ :

[1] Շատ խոստմունքներ ըրած էր Փրեդերիկոս Իննովկենտիոս պապին, որոնց մէկն էր Հռովմայ ամենայն իրաւունքները ճանչնալ, մէկալը պապին տէրութեանը վերաբերեալ երկիրները ետ դարձընել, անոնց վրայ աւելցընելով նաև Սարտենիան ու Քորսիքան, Երկուց Սիկիլեայց համար ալ տուրք տալ : Բայց երբոր Ոթոն և Իննովկենտիոս Գ մեռան, ինքն ալ սկսաւ նորէն պատերազմիլ Եկեղեցւոյ տէրութեան ու Իտալիոյ դէմ (1218) : Խաչակրութիւնը յանձն առաւ Փրեդերիկոս, ու իրեք տարի դանդաղեցաւ երթալու. խոստմունքներն ալ մէկիկ մէկիկ ետ առաւ : Նէապօլիս գնաց, ան տեղի համալսարանը հիմնեց, Սիկիլիոյ Սարակինոսները նուաճեց, և անոնցմէ քսան հազար հոգի հին Սամնիացւոց երկիրը տարաւ բնակեցուց (1224) :

[2] Գրիգոր Թ պապը անդադար կը ստիպէր զկայսրը որ խաչակրութեան երթայ. տեսնելով որ անիկայ մէյմէկ պատճառանքով ետ կը կենայ, բանադրեց զինքը : Վերջապէս 1228ին Փրեդերիկոս ճամբայ ելաւ Երուսաղէմ երթալու. բայց ան ատենները այնչափ ահաւոր էր պապին նզովքը, որ ան հեռաւոր երկիրներուն մէջ ալ ամէն

---

[1] Ի՞նչ խոստմունքներ ըրած էր պապին Փրեդերիկոս Բ, և ի՞նչպէս պահեց զանոնք :

[2] Գրիգոր Թ պապը ի՞նչպէս վարուեցաւ Փրեդերիկոս կայսեր հետ :

մարդ Փրեդերիկոսէն կը փախչէր ։ Քիչ առենէն պէտք եղաւ որ կայսրը իր երկիրը դառնայ . վասն զի Գրիգոր Թ կայսեր դէմ խաչակրութիւն մը քարոզել տուեր էր . և խաչակրաց գլուխն էր Յովհաննէս Պրիէնեան՝ Փրեդերիկոսի աները ։ Միլանցիք պապին զօրացը հետ միացած՝ Նէապօլսոյ տէրութիւնը սկսեր էին տանակոխ ընել . կայսրը իրեն Սարակինոս օգնականներովը քրիստոնէից դէմ պատերազմեցաւ ու Նէապօլսոյ Սան-Ճէրմանոյ քաղաքին մէջ եղած հաշտութեամբը կռիւը դադրեցաւ (1230) ։

[1] Բայց Փրեդերիկոսի աչքը Լոմպարտիոյ վրան էր . Իծէլինոյ կամ Եկէլինոս բռնաւորը, որ Վէրոնայի քաղաքապետ էր , ու Վիչենցայի Կուէլֆեանց դէմ կը պատերազմէր , կայսեր պաշտպանութիւնը խնդրեց . անիկայ ալ 1237ին տասուերկու հազար Սարակինոս հետն առած՝ պատերազմեցաւ Միլանցւոց դէմ ու յաղթեց անոնց ։ Գրիգոր Թ փոխանակ վհատելու՝ նորէն զօրացուց Կուէլֆեանց կողմը . Իտալացիները յորդորեց որ Փրեդերիկոսի դէմ ելլեն , մանաւանդ անոր համար որ ըսած էր թէ Մովսէս , Քրիստոս ու Մահմէտ աշխարհքիս խաբեբր են ։ Ասանկով Վենետկոյ ու Ճենովայի հասարակապետութիւնները ոտք հանեց կայսեր դէմ ։ Բայց պատերազմը սկսելէն առաջ Գրիգոր պապը իննսունըհօթը տարեկան վախճանեցաւ (1241) ։

---

[1] Կուէլֆեանք ի՞նչպէս զօրացան Փրեդերիկոսի դէմ ։

[1] Անոր յաջորդեց Կեղեստինոս Դ․, որ ընտրուելէն տասնըեօթը օր ետքը վախճանեցաւ, ու տեղը անցաւ Իննովկենտիոս Դ։ Ան միջոցին Հռովմայ մէկ մասը Սարակինոսաց ձեռքն էր, մէկալը Գերմանացւոց, պապն ալ իր կարդինալներուն մէջ գերիի մը պէս էր. անոր համար ձգեց փախաւ Իտալիայէն Լիոն քաղաքը, հոն ժողով մը ըրաւ, ու ժողովոյն մէջ աս վճիռը հանեց կայսեր դէմ. “Փրեդերիկոս Բ հերետիկոս է ու սեղանակապուտ, բանադրեալ է ու կայսերութենէն ընկած. ով որ իրեն հաւատարմութեան երդում ըրած է, ես զինքը երդմանէն կ՚արձըկեմ”։ Միանգամայն հրաման խրկեց Գերմանիոյ ժողովուրդներուն որ ուրիշ կայսր մը ընտրեն. ասով Իտալիոյ ու Գերմանիոյ ամէն կողմերը պատերազմը սկսաւ։ Փրեդերիկոս Փարմայի քով յաղթուեցաւ, իր որդին ալ Պոլոնիայի կողմերը. կայսրն ալ բարկացած ու ձանձրացած՝ գնաց Կամպանիա գաւառին մէջ Ֆլորենցոլա բերդը քաշուեցաւ ու հոն մեռաւ (1250)։

[2] Փրեդերիկոսի մահուամբը մեծամեծ խռովութեանց դուռ բացուեցաւ Գերմանիոյ համար, ու քսանուերկու տարի գրեթէ անիշխանութեան մէջ մնաց ան երկիրը, կամ չէր գիտեր թէ որո՛ւն հնազանդի. և ասիկայ ըսուեցաւ Մեծ միջոց պարապոյ կամ անիշխանութեան։ Սուաբիոյ ցեղը Գերմանիոյ մէջ ոյժը կորսնցուցած էր, Իտալիոյ մէջ

---

1 Փրեդերիկոս Բ ի՞նչ կերպով բանադրուեցաւ ու վերջը ի՞նչպէս եղաւ։

2 Մեծ միջոց պարապոյ ըսուածը ո՞րն է։

ալ քիչ ատենէն ալխար կորանցնէր։ Իրեք կայսերք ետևէ ետև երևցան ու անցան. Գուլիելմոս Հօլանտացին իր կեանքը պատերազմով անցուց Ֆրիզիացւոց դէմ ու մեռաւ 1256ին։ Հռիքարտոս Քոռնուալիացին՝ Անգղիոյ Հենրիկոս Գ թագաւորին եղբայրը, ճամբորդութեամբ անցուց կեանքը. Ալփոնսոս Ժ Քասթիլիոյ թագաւորը՝ հրաման չկրցաւ առնել իր հպատակներէն որ Գերմանիա երթայ։

1 Այսպիսի անիշխանութեան պատճառաւ կայսերական իշխանութիւնը անզգալի կերպով ազնուականաց ձեռքը անցաւ. և առաջ ու ամէն իշխաններն ալ իրաւունք ունէին կայսր ընտրելու, անկէց ետքը միայն Պոհեմիոյ, Պաւերայի, Սաքսոնիոյ, Պրանտեպուրկի, Տրեւերի, Մոգունտիոյ ու Կոլոնիոյ իշխանները իրենց պահեցին այն իրաւունքը և Կուրֆիւրստ ըսուեցան։ Կալուածական իշխանութիւնները շատցան, ու Սուապիոյ ցեղին կտորներուն հարիւր յիսուն հազար կալուածներ ձևացան. շատ քաղաքներ իրարու հետ միանաւոր ընկերութիւններ ըրին ու ինքնագլուխ եղան, և ատանկով սկսաւ Հռենոսի դաշնակցութիւնը։

2 Իտալիոյ մէջ ալ միջոցին ժողովուրդներն ու քաղաքները Փրեդերիկոսի ծանր լուծէն ազատելով քիչ մը հանգչեր էին։ Փրեդերիկոս Բ իրեք որդի թողեր էր. Կոնրադոս, Հենրիկոս և Ման-

1 Պարապ միջոցին ատենը Գերմանիոյ մէջ ինչ կերպով զօրացան ազնուականք։

2 Այն ատենները Իտալիա ինչ վիճակի մէջ էր։

Ֆրէտ ։ Անդրանիկը Գերմանիոյ թագաւորութեան անունը ժառանգեց, բայց ինքը չթագաւորեց. մէկալներն ալ Երկուց Սիկիլեայց թագաւոր եղան ։ Պապը կարծէր թէ աս երկուքին երկիրները դիւրաւ պիտի միացընէ Եկեղեցւոյ վիճակին հետ. բայց ետքը տեսնելով որ Մանֆրէտ սաստիկ դէմ պիտի կենայ, Նէապօլսոյ թագաւորութիւնը սրբոյն Լուդովիկոսի եղբօրը Կարոլոսի ընծայեց ։ Անիկայ ալ իր փառասէր կնոջը յորդորանքովը շուտ մը ճամբայ ելաւ, քանի ցուկանաւով ու հազար ասպետով Իտալիա անցաւ, առաջ Հռոմ գնաց, Երկուց Սիկիլեայց թագաւոր պսակուեցաւ ու Եկեղեցւոյ դրօշը առաւ, ետքը գնաց Մանֆրետին յաղթեց Բենեւենտ քաղաքին քովը ու թագաւորութեանը տիրեց ։ Իսկ Մանֆրէտ քաջութեամբ ինչուան վերջի վայրկեանը պատերազմելով թշնամեաց մէջ մեռած գտնուեցաւ (1266) ։

[1] Ան ատենները Կոնրադոս մեռեր ու Կոնրադինոս անունով որդի մը թողուցեր էր. Նէապօլսեցիք Գաղղիացւոց ամբարտաւան բռնութենէն ձանձրացած ըլլալով Կոնրադինոսի դիմեցին խոստանալով որ իրեն օգնեն հայրենի ժառանգութիւնը ձեռք ձգելու ։ Երկու բանակները Նէապօլսոյ Թալլիաքոցցոյ քաղաքին քովի դաշտին մէջ զարնուեցան. Կարոլոս Անժուցին յաղթեց, և Կոնրադինոս ու Աւստրիոյ դուքսը Փրետերիկոս թէպէտ փախչելով ազատեցան, բայց ետքը Կարոլոսի ձեռքը մատնուեցան. ան ալ դատաւորներ ընտրեց զանոնք 'ի մահ դատապարտելու ։ Դա-

[1] Կոնրադինոս Ճիչլէս գլխատուեցաւ ։

տաւորներէն մէկը միայն սիրտ ըրաւ անոնց դատավճիռը ջնջելու . Կարոլոս ան վճիռը հաստատեց , և Կոնրադինոս Նէապօլսոյ հրապարակը տարուեցաւ որ անթիւ բազմութեան առջևը գլխատուի : Զարմանալի արիութեամբ ինքիրմէն հանեց վերարկուն , ծունկի վրայ եկած աղօթք ըրաւ , ետքը ոտք ելաւ ու կանչեց . " Ո՜վ մայր իմ , ինչ ցաւ է որ ես քեզի ախտի պատճառեմ " : Ետքը դարձաւ ժողովրդեան , իր ձեռնոցը բազմութեան մէջ նետեց ու գլուխը դահճին առջևը խոնարհեցուց (1268) : Ետևէն մեռաւ նաև իր բարեկամը Փրեդերիկոս Աւստրիացին . և Կարոլոս Անժուցին իրեն յաղթութիւնը անգթութեամբ փճացընելով՝ նոյն ատենը Կիպելեան իշխաններէն գլխաւորներուն գլուխն ալ կտրել տուաւ :

[1] Բայց Գերմանիոյ մէջ ալ երկպառակութիւնները դեռ չէին դադրած : Գրիգոր Ժ պապը գրեց կայսրընտիրներուն որ բարեբարոյ ու իմաստուն կայսր մը ընտրեն . անոնք ալ երբոր ժողվուեցան , Մոգունտիոյ արքեպիսկոպոսը՝ Ռոդոլփոս Հապսպուրկցին առաջարկեց : Անիկայ աղքատ իշխան մըն էր՝ Բասիլէայի եպիսկոպոսին դէմ պատերազմի զբաղած . և իրեն նախահայրը կը սեպուէր Ալսացիոյ դուքսը Ետիքոն , որ եօթներորդ դարուն մէջն էր , և իր տէրութիւնը հետզհետէ մեծցեր էր այլևայլ ցեղերու անուններով , որ էին Սունտկաւ , Պրիսկաւ , Հապսպուրկ , Վերին Ալսացիա , և միանգամայն պաշտպան սեպուած էին

---

[1] Ո՞վ էր Ռոդոլփոս Հապսպուրկցին և ինչ կերպով կայսր եղաւ :

Զուիցերիոյ Ուրի, Շուից և Ունթերվալտէն գաւառներուն։ Ամէնքը միաբան ընտրեցին Հռոդոլֆոսը՝ որ յիսուներեօթը տարեկան էր․ վասն զի անոր իշխանութեանը մեծնալէն վախ չունէին, ու խոհեմութեանը վրայ վստահ էին։

## ԳԼՈՒԽ ԼԱ․

Պարփակութիւն Գերմանիոյ՝ Հռոդոլֆոս Հապսպուրկեցիէն մինչեւ Փրետերիկոս Գ (1273–1452))։ Հռոդոլֆոս Հապսպուրկեցին․ — Աւստրիոյ, Պաւերայի ու Լիւքսէմպուրկի ցեղերը․ — Ադոլֆոս Նասաու․ — Ալպերտ Ա․ — Հելուետիոյ դաշնակցութիւնը․ — Գուլիելմոս Թէլ․ — Կեսլեր բռնաւորը․ — Յովհաննէս Սուաբիացին․ — Ալպերտի մահը․ — Հենրիկոս Է․ — Լուդովիկոս Ե Պաւերացին․ — Կարոլոս Դ․ — Ըրած կարգաւորութիւնները․ — Վենցէսլաս․ — Հռոպերտոս Պաւերացին․ — Սիկիզմոնտ․ — Յովհաննէս Հուս, ու Պոհեմիոյ խռովութիւնը․ — Ալպերտ Բ․ — Փրետերիկոս Գ։

1 Հռոդոլֆոս Հապսպուրկեցին, որ Աւստրիոյ ցեղին հիմնադիրը կամ նախահայրը կը սեպուի (1273), քիչ ատենէն հասկըցուց իր իշխաններուն որ թէպէտ իր հայրենական ժառանգութիւնը անոնց ունեցածներէն քիչ է, բայց բնաւորութեամբն ու հանճարովը ինքը անոնցմէ վեր է։ Կայսր պսակուելու օրը մեծամեծներէն ոմանք

---

1 Հռոդոլֆոս Հապսպուրկեցին ինչպէս սկսաւ կայսերութիւնը։

Մեծին Կարողոսի գաւազանը պահեր էին. Հռոդոլփոս խորանին վրայէն խաչ մը առաւ, երկընցուց որ ամէնքն ալ անոր վրայ հաւատարմութիւն երդուըննան իրեն, ու ըսաւ. “Աս խաչը որ աշխարհքիս փրկութեանը պատճառ եղաւ, կայսերական գաւազանէ մը վեր է„: Մէկ հոգի մը միայն չուզեց երդում ընել, որ էր Փրեմիսլաւ Օթթոքար Բ Պոհեմիոյ Թագաւորը, որ էր միանգամայն դուքս Մորաւիոյ, Աւստրիոյ, Սթիրիոյ, Քարինթիոյ ու Քառնիոլի: Հռոդոլփոս բանակ մը պատրաստեց Ալսացիոյ ու Սուաբիոյ մէջ, և ստիպեց ան ապստամբ իշխանը որ Աւստրիայէն առած գաւառները ետ տայ. երբոր անիկայ մտիկ չըրաւ, վրան պատերազմի ելաւ (1275): Աս առաջին պատերազմը երկու տարի քշեց, ու ետքը հաշտութիւն եղաւ՝ երկու Թագաւորաց զաւկըները իրարու հետ կարգուելով. երկու տարիէն ետքը պատերազմը նորէն սկսաւ ու Պոհեմիոյ Թագաւորը պատերազմի մէջ մեռաւ. Իկլաւ քաղքին մէջ եղած դաշնադրութեամբն ալ Հռոդոլփոսի ընկան Սթիրիա ու Քառնիոլ նահանգները (1278):

[1] Այսպիսի անակնկալ կերպով Հապսպուրկեան Աւստրիոյ ցեղը Եւրոպայի հզօր ցեղերէն մէկը եղաւ: Կայսրընտիրները նայեցան որ անոր մեծնալուն արգելք ըլլան. ու երբոր կայսրը մահուան մօտ ժամանակը ուզեց որ իր Ալպերտ որդին ընտրուի, անոնք մտիկ չըրին. վասն զի ուրիշ երկու երևելի ցեղեր իրենք կ'ուզէին ան պատիւը

[1] Հռոդոլփոս զո՞վ որոշեց իրեն յաջորդ:

առնել, որ էին Պաւերայի և Լուքսեմպուրկի ցեղերը ։

[1] Կայսրընտիրները 1291ին Ատոլփոս Նասաւը ընտրեցին, որ Հռենոսի եղերքը պզտիկ իշխան մըն էր. ասիկայ երբոր կայսր դրուեցաւ, իր երկիրը ընդարձակելու ետևէ եղաւ. Գաղղիոյ Փիլիպպոս Գեղեցիկ լսուած Թագաւորին դէմ պատերազմելու համար՝ Անգղիոյ Թագաւորէն ստակ փոխ առաւ. և ասոր նման շատ անխոհեմ ու անիրաւ գործողութիւններ ըրաւ. իր իշխանները իրեն դէմ ելան, Ալբերտ Աւստրիացին անոնց գլուխ կեցաւ, ու Վորմս քաղաքին քով անոր զօրացը յաղթելով Ատոլփոսն իր ձեռքովը սպաննեց ։

[2] Ալբերտ Ա իր հօրը փառաւորութեանը հետևելով բոլոր տասը տարուան թագաւորութեան ատենը նայեցաւ որ իր երկիրը ընդարձակէ. Արելատայ թագաւորութիւնը իր որդւոյն ուզեց առնել, Հոլանտայի թագաւորութիւնը իր ցեղին ժառանգութիւն ընել, Պոհեմիոյ, Միսնիոյ ու Թուրինկիոյ ալ տիրելու ետևէ եղաւ ։ Բայց տեսնելով որ իր հպատակները իրեն դէմ կը կենան, Հելուետիոյ դէմ դարձուց իր զէնքերը (1307) ։

[3] Հելուետիան, որ Զուիցերի ալ կ'ըսուի, ան ատենները գերմանական կայսրութեան մէկ մասը կը սեպուէր իբրև Արելատայ թագաւորութեան

---

1 Ատոլփոս Նասաւ ի՞նչ կերպով կայսր եղաւ ու ի՞նչպէս մեռաւ ։

2 Ալբերտ Ա ի՞նչ երկիրներու տիրապետել ուզեց ։

3 Հելուետիան ան ատենները ի՞նչ վիճակի մէջ էր ։

կտոր ։ Մէջը կային երկու հարիւր կալուած , չորս կայսերական քաղաք , ու երեք գաւառ՝ որ էին Ուրի , Ունթերվալտէն ու Շուից ։ Հապըսպուրկի ցեղը աս երեք գաւառներուն վրայ մասնաւոր կերպով մը պաշտպան սեպուած էր , և Ալբերտ կայսրը միտքը դրեր էր որ բոլորովին տիրէ անոնց ։ Մարդիկ խրկեց հոն իբրև դատաւոր՝ որ բռնանան Զուիցերացւոց վրայ , այնպէս որ անոնք ալ փափաքին Աւստրիոյ հպատակաց կարգը անցնելու ։ Ան դատաւորները ամէն տեսակ բռնութիւն ըրին , և պզտիկ յանցանքներն ալ անգութ խստութեամբ կը պատժէին ։

[1] Կ'ըսեն թէ անոնցմէ մէկը , որ Կեսլէր կը կոչուէր , Ալթորֆ քաղաքին հրապարակին մէջ ձող մը կանգնեց ու անոր ծայրը իր գլխարկը դրաւ , ապսպրելով ամենուն որ անոր առջև երկրպագութիւն ընեն իբրև թագաւորական նշանի ։ Գուլիելմոս Թէլ անունով մէկը միայն աս պատիւը չուզեց տալ գլխարկին . կատաղի Կեսլէրն ալ զինքը ՚ի մահ դատապարտեց . բայց թող տուաւ որ ոստկալի վրանդով մը կարենայ իր կեանքը ազատել ։ Որովհետև Գուլիելմոս մեծ անուն հանած էր իբրև քաջ աղեղնաւոր , բռնաւորը ըսաւ իրեն որ եթէ կարենաս մէկ անգամ նետ նետելով որդւոյդ գլխուն վրայ դրուած խնձորը վար ձգել նետովդ , մահուընէ կ'ազատիս . Գուլիելմոս յանձն առաւ աս պայմանը , թէ՛ հայրը և թէ որդին դիւցազնաբար վարուեցան . հայրը առանց վախնալու նետը

---

1 Գուլիելմոս Թէլ ի՛նչպէս ազատեց իր հայրենիքը ։

նետեց ու խնձորը վար ձգեց առանց որդւոյն գլխուն դպչելու, որդին ալ ինքզինքը ան վտանգին մէջ դրած առանց ամենևին այլայլելու։ Բայց անով չմընցաւ գործողութիւնը։ Գուլիէլմոս սըրտին սաստիկ խռովութենէն մարեցաւ ընկաւ, ու քովինները տեսան որ հագուստին տակը ուրիշ նետ մըն ալ կայ։ Կեսլէր անիկայ տեսնելով ըսաւ. «Ուրեմն ի՞նչ էր միտքդ»։ Պատասխան տուաւ Գուլիէլմոս. «Միտքս ան էր որ եթէ որդիս սպաննէի, սա նետը քու սիրտդ պիտի խոթէի»։ Բռնաւորը մէկէն 'ի մէկ կապել տուաւ զինքը ու իր նաւէն իրեն բերդը տանել հրամայեց։ Բայց որովհետև ան բերդը հասնելու համար լճէ մը անցնելու էր, ջրին վրայ յանկարծ փոթորիկ մը ելաւ, ու քիչ մնաց որ ան խեղճ նաւակը ընկղմէր։ Թիավարները յուսահատած՝ թիերը թողուցին. և որովհետև Գուլիէլմոս քաջ թիավարի անուն ալ ունէր, շղթաները արձըկեցին ու նաւակին առաջնորդութիւնը իրեն յանձնեցին։ Գուլիէլմոս նաւակը դէպ 'ի լճին եզերքը ժայռերուն մօտեցուց, հոն համնելուն պէս դուրս ցատքեց, և ոտքովը զարկաւ նաւակը՝ դէպ 'ի լճին մէջ հեռացուց ու Կեսլէրը փոթորիկի մատնեց. բայց իր որսը ձեռքէ չփախցընելու համար՝ վազեց գնաց լճին մէկ նեղ կողմը, ուր եթէ հասնէր նաւակը՝ Կեսլէր կրնար ազատիլ. Գուլիէլմոս՝ Կեսլէրը տեսնելուն պէս աղեղը լարեց ու նետով մը զանիկայ սպաննեց։

[1] Այս բանաստեղծական պատմութիւնը չինծ ու

---

[1] Ուրիշ ո՞վ գտնուեցաւ Զուիցերացւոց մէջ Գուլիէլմոս Թէլին պէս հայրենասէր։

ուլ ըլլայ նէ, աս յայտնի է որ Աւստրիոյ գործակալաց սոսկալի բռնութիւնները պատճառ եղան որ բոլոր Զուիցերացիք ոտք ելան ։ Առնոլդոս Մէլքթալ անունով կտրիճը դատաւորներուն մէկ կանոնին դէմ ըրած ըլլալուն համար, հրամայեցին անոնք որ հօրը եզները ձեռքէն առնուին, ըսելով թէ “ Մի՛թէ աս բիրտ գեղացիները եզներու տեղը իրենք չե՞ն կրնար հերկել„ ։ Երբոր գործակալին մէկը մօտեցաւ որ դատաւորաց վճիռը կատարէ, Առնոլդոս գաւազանով մը զարկաւ, անոր մէկ մատը կոտրեց ու ձգեց փախաւ Ուրի գաւառը իր բարեկամներէն մէկուն քովը, որ կ՚ըսուէր Վալթէր Ֆուրսթ, ու Գուլիէլմոս Թէլին աներն էր. հոն հանդիպեցաւ նաև Վէռնէր անունով մէկուն, և աս իրեքը հետերնին երեսուն հոգի ալ միաբանած երդում ըրին որ իրենց հայրենիքը ազատեն ։ Յաջորդ տարին (1308), գաւակիցները տեսնելով որ բաւական զօրացեր են, քաղաքապետաց բերդերուն տիրեցին ու իրեք գաւառները իրարու դաշնակից հրատարակեցին ։

[1] Ան ատեն Ալբերտ կայսրը իր գործակալաց վրէժն առնելու համար շատ զօրքով Զուիցերացւոց վրայ գնաց. հետն էր նաև իրեն եղբօրորդին Յովհաննէս Սուապիացի՝ տասնըչորս տարեկան տղան, որուն ժառանգութիւնը անիրաւութեամբ քովը պահած էր ։ Շատ անգամ աս տղան իր ժառանգութիւնը խնդրեր էր, բայց կայսրը մտիկ

---

[1] Ալբերտ կայսրը ի՞նչ վրէժխնդրութիւն ըրաւ Զուիցերացւոց դէմ։ — Ի՞նչ կերպով մեռաւ ։

չընելէն զատ՝ ծաղր ալ կ'ընէր զինքն ու ծաղիկներ թերթել տալով կ'ըսէր անոր. «Յովհաննէս, դուն այս ծաղիկներս առ, որ քու հասակիդ կը վայլեն, ու տէրութիւն կառավարելու հոգը ինծի թող»։ Բայց Յովհաննէսին միտքը անով չէր հանդարտեր. Զուիցերիի պատերազմն ալ աղէկ առիթ առնելով, շատ մը իշխաններու հետ խօսքը մէկ ըրաւ, ու երբոր իր հօրեղբայրը Ռոյս գետէն անցնելու վրայ էր՝ թրովը զարկաւ անոր ու կանչեց. «Ա՛ռ քու անիրաւութեանդ հատուցումը». տղուն կուսակիցներն ալ թափեցան կայսեր վրայ ու սպաննեցին զինքը (1308)։

1 Ալբերտի որդիքը սոսկալի անգթութիւններով անոր մահուան վրէժն առին, ու Զուիցերիի դէմ իրենց հօրը դիտաւորութիւնը կատարելու աշխատեցան։ Լէոփոլտ դուքսը քսան հազար հոգւով վրանին ելաւ (1315) ու Մորկարթին ըսուած լեռան ստորոտը տասնուերկու հազար լեռնական Զուիցերիներէ յաղթուեցաւ, Զուիցերացիք հետզհետէ իրենց ուրիշ երկիրներն ալ ազատեցին Աւստրիացւոց բռնութենէն։ Լուցեռնայի նահանգին մէջ Սէմփաք ըսուած քաղաքին քովն ալ 1386ին նոր յաղթութիւն մը ընելով բոլորովին իրենց ազգային ազատութիւնը ձեռք ձգեցին։

2 Կայսերական աթոռոյն կողմանէ ալ նորա-

---

1 Ալբերտի որդւոց առէնը Զուիցերացիք ինչ ըրին։

2 Կայսերական աթոռոյն յաջորդութեանը կողմանէ ինչ ձախորդութիւններ ունեցան Աւստրիոյ դուքսերը։

նոր ձախորդութիւններ ունեցան Աւստրիոյ դուքսերը. վասն զի կայսրընտիրները սկսան Լուքսեմպուրկի ցեղին տալ կայսերութիւնը։ Բայց աս ցեղն ալ ուրիշներուն պէս նայեցաւ որ իր սեպհական Լուքսեմպուրկի կոմսութեան երկիրը ընդարձակէ։ Իրաւցընէ երբոր Ոթթոքարի ցեղը հատնելով Պոհեմիոյ աթոռը պարապ մնաց, անոր կայսրը Հենրիկոս Է, որ Լուքսեմպուրկի ցեղէն էր, պարտաւորեց Պոհեմիացիները որ իր Յովհաննէս որդին ընտրեն իրենց թագաւոր։ Միանգամայն Հապսպուրկի իշխաններէն ալ աւելի անխոհեմ գտնուելով աչքը Իտալիոյ վրայ դարձուց այնպիսի ժամանակ որ վաթսունըչորս տարիէ 'ի վեր գերմանացի զօրք ոտք չէր կոխած ան երկիրը։

1 Հենրիկոս չվախցաւ Ալպեան լեռներէն անցնելու. վասն զի Կիպելեանք ալ կը յորդորէին զինքը որ գայ զիրենք զօրացընէ, ու հռովմէական կայսերութեան պատիւը ձեռք ձգէ։ Երկու հազար ձիաւոր միայն հետն առած երբոր Իտալիա մտաւ, Լոմպարտիոյ քաղաքները յանկարծակի գալով սիրով ընդունեցան զինքը, և Մոնցա քաղաքին մէջ երկաթի թագը իր գլուխը դրաւ։ Բայց քանի որ երկրին ներսերը գնաց, Իտալացիք սկսան ոտք ելլել, և Փլորենտիոյ ժողովուրդը պատերազմ հրատարակեց։ Հենրիկոս նայեցաւ որ շուտ մը անկեց հեռանայ, ու Հռոմ գնաց որ կայսր օծուի. բայց հոն ալ Նէապոլսոյ թագաւորը, որ միանգամայն Կուէլֆեանց գլուխն էր, իր զի-

---

1 Հենրիկոս Է ի՞նչ կերպով Իտալիա գնաց։

նուորներովը ան հանգիստին մէջ շփոթութիւն ձգեց։

¹ Հասկցաւ Հենրիկոս որ պէտք է իր երկիրը քաշուի․ Փիզա հասնելով հրատարակեց որ Նէապոլսոյ Ռոբերտոս թագաւորը աթոռէ ընկած է․ Փլորենտացիներն ալ դատաստանի կանչեց, բայց իր խորհուրդը մտիկ ընող չեղաւ․ մանաւանդ թէ Կուէլֆեանք աւելի զօրացան ու սկսան ոտք ելլել․ ան միջոցին կայսրն ալ մեռաւ (1313)։

² Տարի մը կայսերական աթոռը պարապ կենալէն ետքը՝ երկու կայսերք մէկէն ընտրուեցան․ վասն զի կայսրընտրաց կէսը Լուդովիկոս Պաւերացւոյն կողմն էին, կէսն ալ Փրեդերիկոս Աւստրիացւոյն․ աս պատճառաւ պատերազմ բացուեցաւ, Փրեդերիկոս գերի ընկաւ, ու իրեք տարիէն ետքը ազատեցաւ Ուլմի դաշնադրութեամբը, և անով Լուդովիկոսի դաշնակից եղաւ ինչուան իր մահը (1330)։

³ Ան պատերազմին ատենը Լուդովիկոս Պաւերացւոյն մեծ թշնամին Յովհաննէս ԻԲ պապն էր, որ Գաղղիոյ Աւենիոն քաղաքը նստած՝ նզովքներ կը սպառնար կայսեր դէմ․ անոր համար Լուդովիկոս պատերազմը լմննալուն պէս բոլոր ջանքը ան եղաւ որ Իտալիա անցնի ու Կիպելեանց կողմը զօրացընէ։ Հռոմ որ հասաւ, Քոլոննա անունով քաղաքապետին ձեռքովը կայսր պսակուեցաւ․

---

¹ Ի՞նչպէս ետ քաշուեցաւ Հենրիկոս։
² Հենրիկոս կայսեր ո՞վ յաջորդեց։
³ Լուդովիկոս Պաւերացին ի՞նչ կերպով կայսր եղաւ։

աս բանիս համար երբոր պապէն բանադրուեցաւ, պէտք եղաւ որ Գերմանիա դառնայ ու հոն Ֆրանքֆորթի ժողովոյն վճռովը կայսերութեանը մէջ հաստատուեցաւ. ասոր վրայ (1338) այնպէս զայրացաւ Կղեմէս Զ պապը, որ հրաման խրկեց Տրեւիրի, Մոգունտիոյ և Կողոնիոյ արքեպիսկոպոսներուն որ ուրիշ կայսր մը ընտրեն. անոնք ալ ընտրեցին Լուքսեմպուրկի Կարոլոս իշխանը: Իսկ Լուդովիկոս պատերազմով իրեն իրաւունքը պաշտպանելու պատրաստուած ատենը՝ կաթուածով մը զարնուեցաւ մեռաւ:

[1] Կարոլոս Դ Լուքսեմպուրկցին 1347ին կայսր ընտրուեցաւ. բայց իր իշխանութիւնը պահելու փոյթ չունենալէն զատ՝ կարծես թէ նայեցաւ որ աւելի տկարացընէ. 1354ին Փատուա ու Վերոնա քաղաքները Վենետիկեցւոց տուաւ ու Լոմպարտիոյ մէջ մշտենջենաւոր փոխարքայ անուանեց Կալէացցոյ Վիսքոնթի Իտալացին. Գերմանիոյ մէջ ալ ան հռչակաւոր սահմանադրութիւնը հրատարակեց որ Ոսկեկնիք հրովարտակ կ'ըսուի, ոսկիէ կնքով հաստատուած ըլլալուն համար. և մէջը որոշուած էին կայսր ընտրելու տեղը, կերպը և կայսրընտրաց իրաւունքներն ու ազատութիւնները: Աւենիոն քաղաքին Կղեմէս Զ պապին ծախուիլը հաստատեց, Արելատայ թագաւորութեանն ալ մնացած կտորը Կարոլոս հինգերորդին թողուց (1365):

---

[1] Կարոլոս Դ Լուքսեմպուրկցին ի՞նչ կարգաւորութիւններ ըրաւ:

[1] Իր բուն երկրին այսինքն Լուքսեմպուրկի կոմսութիւնը ընդարձակեց՝ քովի գաւառները հետը միացընելով։ Փրակայի մէջ համալսարան մը բացաւ գեղեցիկ գրատունով, ուր ինքն ալ կ'երթար վարժապետաց դասերը մտիկ ընելու։ Մեռնելէն առաջ իր Վէնչեսլաւ որդւոյն տուաւ կայսերական անունը, և Պոհեմիացւոց քաղաքականութիւն սորվեցընելու ժամանակը վախճանեցաւ (1378)։

[2] Վէնչեսլաւ իր հօրը հետևեցաւ, ու Պոհեմիոյ մէջ քաշուած՝ փոյթ չըրաւ տկարները ուժովներուն դէմ պաշտպանելու. վասն զի ան ատենները Սուապիոյ ու Ֆրանքոնիոյ քաղաքները իրարու հետ դաշնակցութիւններ կ'ընէին որ դէմ կենան ան ազնուականաց բռնութիւններուն, որ կ'ըսուէին Ազնուաւոյն ընկերութիւն Վահանի սրբոյն Գէորգայ, և Եղբայրութիւն Եղջերաց և ոսկի Առիւծու։ Քիչ ատենէն պատերազմ ալ բացուեցաւ մէջերնին. բայց Վէնչեսլաւ անտարբեր կենալով իր տէրութեանը մէջն ալ ատելի եղեր էր գինեմոլութեամբն ու անգթութեամբ, այնպէս որ կ'ըսեն թէ օր մը իր խոհարարին վրայ սրդողելով որ կերակուրը աղէկ չէ եփած, շամփուրի վրայ անցընել տուեր է զինքն ու ողջ ողջ խորվեր է. վերջապէս հպատակները ապստամբեցան, բանտ դրին զինքը 1393ին. եօթը տարի ետքն ալ կայսրընտիրները զինքը ձգեցին։

---

[1] Լուքսեմպուրկի ու Պոհեմիոյ մէջ ի՞նչ նոր բան ըրաւ։

[2] Վէնչեսլաւ ի՞նչպէս ըրաւ կայսրութիւնը։

1 Հռոբերդոս Պաւերացին կայսր ըլլալուն պէս Իտալիա անցաւ որ Վիսքոնթեանց ցեղին ուժը կոտրէ, որովհետեւ անոնք շատ զօրացեր էին Լոմպարտիոյ մէջ. բայց Կարրարա ըսուած լճին քով այնպէս չարաչար յաղթուեցաւ որ անկէց ետքը Գերմանացիք երկար ատեն Իտալիոյ վրայ տիրելու աչք չունեցան:

2 Գերմանիա դառնալէն ետեւ մեռաւ Հռոբերտոս (1410), ու նորէն երկպառակութիւն ընկաւ կայսրընտրաց ժողովոյն մէջ: Պոհեմիոյ Վինչեսլաւ Թագաւորը, անոր եղբայրը Սիկիսմոնտ որ Մաճառի Թագաւոր էր, և Յովսէփ Մորաւիացին, ետեւէ ետեւ կայսր եղան. բայց վերջապէս Յովսէփ մեռաւ, Վինչեսլաւ ալ խաղաղասէր մարդ ըլլալով՝ կայսերութիւնը Սիկիսմոնտի թողուց:

3 Այս Սիկիսմոնտը կայսր ըլլալէն առաջ մէկ օր մը միայն Թագաւորեր էր Լեհաստանի վրայ, ու երկրորդ օրը ձգուեր էր. ետքը Մաճառներուն վրայ Թագաւորեր և Օսմանցւոց դէմ մեծ պատերազմ ըրեր էր Նիկոպօլսոյ քովը: Կայսր ըլլալէն ետքն ալ ուրիշ խռովութիւններ ունեցաւ. վասն զի Փրակայի համալսարանին վերատեսուչը Յովհաննէս Հուս՝ իր մոլորական կարծիքներուն համար Կոստանդեան ժողովոյն մէջ դատապար-

---

1 Հռոբերտոսի Պաւերացւոյն Իտալիա արշաւելը ինչ կերպով լմնցաւ:
2 Հռոբերտոսի ով յաջորդեց:
3 Սիկիսմոնտին ատենը ինչ երեւելի դիպուածներ եղան:

տուեցաւ որ ողջ ողջ այրի ։ Այս խառնութեան պատճառաւ Պոհեմիոյ մէջ ապստամբութիւն մը ելաւ, և անոր գլխաւորը Յովհաննէս Զիսքա Փրակային տիրեց, խորհրդարանը մտաւ ու ատենականները պատուհաններէն վար նետեց · Վենցեսլաւ վախէն մեռաւ, Սիկիզմոնտ եղբայրն ալ ուշ հասաւ անոր օգնելու (1419) ։ Այս կրօնական պատերազմը այնպէս սաստիկ եղաւ որ Հուսեանք և Թուտորեանք ըսուած աղանդաւորները միանալով հարիւր քաղաք կամ բերդ ու հազար չորս հարիւր գեղ այրեցին, այնչափ ալ աւար ժողվեցին որ իրեք հազար կառք պէտք եղաւ զանոնք տանելու, ամէն մէկ կառքին վեց՝ ութը, և ինչուան տասներչորս ձի լծած ։ Գերմանիոյ իշխանները սարսափած՝ ստիպեցին կայսրը որ աղանդաւորաց հետ հաշտութիւն ընէ · ան ալ Իկլաւի դաշնադրութեամբը ազատութիւն կրօնի տուաւ անոնց (1434) ։ Իրեք տարի ետքը Սիկիզմոնտ մեռաւ, ու իրեն հետ Լիւքսեմպուրկի ցեղէն ալ կայսրութիւնը վերցուեցաւ ու անցաւ Աւստրիոյ ցեղին (1437) ։

[1] Ալպերտ Բ, Սիկիզմոնտի փեսան, երկու տարի թագաւորեց Գերմանիոյ վրայ, և աթոռը թողուց իր ազգական Փրեդերիկոս երրորդին, որ 1452ին Հռոմ գնաց՝ Նիկողայոս Ե պապէն կայսր օծուելու համար · ան վերջին անգամն եղաւ որ Գերմանիոյ կայսերք Հռոմ կայսր օծուին ։ Իսկ Փրեդերիկոսի կայսրութիւնը նոր պատմութեան մասն է ։

---

[1] Սիկիզմոնտին ով յաջորդեց ։

## ԳԼՈՒԽ ԼԲ.

Սկանդինաւեան ու Սլաւեան պետութիւնք. Նորվեկիա, Տանիմարգա, Շուէտ, առաջին պատմական ժամանակներէն մինչեւ 1448 տարին. — Ռուսաստան, Լեհաստան, Մաճառստան և Պոհէմիա 1054էն մինչեւ 1466։ Սկանդինաւեան պետութիւնք. — Նորվեկիա. — Տանիմարգա. — Շուէտ. — Քալմարի դաշնակցութիւնը. — Մարգարիտա Վալտեմար. — Սլաւեան պետութիւնք. — Ռուսաստան. — Վլատիմիր Բ. — Թաթարաց արշաւանքը. — Դիմիտր Բ. — Լեհաստան. — Տեւտոնեան կարգին ասպետները. — Մաճառստան. — Պոհէմիա։

[1] ՍԿԱՆԴԻՆԱՒԵԱՆ ՏԷՐՈՒԹԻՒՆՔ. — ՆՈՐՎԵԿԻԱ։ — *Այս երկիրը որ հիմա Շուէտի մասը կը սեպուի, պատմութեան մէջ միայն տասներորդ դարուն վերջերը կը սկսի յիշատակուիլ. վասն զի ան ատեն իրեն Օլաւոս թագաւորը քրիստոնեայ դարձաւ, իր հպատակները մկրտեց ու կռատունները կործանեց։ Քիչ ատենի մէջ Տրոնթիէմ քաղաքը անուանի եղաւ, ու բոլոր երկրին մէջ քաղաքականութիւնը սկսաւ տարածուիլ. Օլաւոս Բ եկեղեցական բաները կարգի դրաւ 1016ին. շատ չանցաւ, խռովութիւն մը ելաւ երկրին մէջ, որով ինքը աթոռէն ձգուեցաւ ու տեղը անցաւ Սուէնոն որդին. անոր ալ յաջորդեց Հարոլտ*

---

[1] *Նորվեկիոյ թագաւորութեանը վրայ ինչ դիտելիք կայ։*

Հարարատա քաջ մարդը, որ 1066ին Գուլիէլմոս Աշխարհակալին օգնութեան գնաց ու պատերազմի մէջ մեռաւ: Օլաւոս երրորդէն ետքը Նորվեկիացւոց մէջ անիշխանութիւն ընկաւ մինչուան 1223. ան ատենը Հաքին Ե Թագաւորը Իսլանտիոյ ու Կրէօնլանտիոյ տիրեց՝ կարծելով թէ նոր աշխարհք գտեր է: Մագնոս Է 1263ին օրէնքները նորոգեց, եկեղեցականաց մեծամեծ ազատութիւններ տուաւ, որոնց մէկն ալ ան էր որ Տրոնթիէմի արքեպիսկոպոսը իշխանութիւն ունեցաւ սատակ կոխելու: Երիկ Թ աշխատեցաւ որ Սկովտիոյ Թագաւոր ըլլայ. Գերմանիոյ դաշնակից քաղաքներուն դէմ ալ փուճ տեղը պատերազմեցաւ: Իր յաջորդներուն մէջ Մագնոս Ը արդէն Շուետի Թագաւոր էր՝ բայց հպատակները ստիպեցին որ հրաժարի Թագաւորութենէն ու Հաքին եօթներորդին թողու. անիկայ ալ 1362ին կարգուեցաւ Մարգարիտա Վալտէմարին հետ, որ Տանիմարքայի Թագաւորութեանը ժառանգն էր: Երբոր Հաքին մեռաւ 1380ին, ետքն ալ իր որդին Օլաւոս, Տանիմարքայի գաւառապետները Քալմար քաղաքը ժողվուեցան, և սա հիւսիսային երեք Թագաւորութիւնները իրարու հետ միացուցին 1397ին:

[1] ՏԱՆԻՄԱՐՔԱ: — Այս Թագաւորութիւնը հին ատեն Կիմբրիա կամ Կիմբրեան Քերսոնեսս կ'ըսուէր, և ասկէց ելան ետքերը ան Նորմանտացի աւազակները, որ դէպ 'ի Գաղղիա ու Անգլիա

---

[1] Տանիմարքայի վրայ ի՞նչ կայ գիտնալիք:

արշաւեցին ։ Քրիստոնէութիւնը երկոտասաներորդ դարուն մէջ մտաւ հոն. առաջին քրիստոնեայ թագաւորը սուրբն Կանուտոս կամ Քանութ՝ Գալթիկ ծովուն վրայի աւազակներուն հետ պատերազմեցաւ, ու Մէքլէմպուրկի վայրենի ժողովուրդները նուաճեց (1130) ։ Իր որդին Վալտէմար Ա, Տանցիկ քաղաքը առաւ, Քոփէնհակ կամ Քեօպէնհաւն մայրաքաղաքը կանգնեց, իր ազգին համար օրինաց գիրք մը հրատարակեց և՝ Մեծ ըսուեցաւ ։ Որդւոցը մէջէն Վալտէմար Բ Նորվեկիացիները հարկատու ըրաւ, Փոմերանիոյ մէկ մասին տիրեց ու Փրեդերիկոս Բ կայսրէն Բոգատոր անունը ընդունեցաւ (1214) ։ Քանի մը տարի ետքը Քուռլանտիա ու Եսթոնիա արշաւեց, հոն քրիստոնէութիւն քարոզեց ու Ռեւէլ քաղաքը հիմնեց ։ Բայց իր հպատակները զինքը գերի բռնեցին, Սլաւեանք իրեն դէմ ոտք ելան, ու Պոռնհովետի պատերազմին մէջ յաղթուեցաւ ։

ı Երբոր Վալտէմար Բ մեռաւ (1227), հարիւր տարիէ չափ Տանիմարքայի մէջ խռովութիւնները չդադրեցան ։ Քրիստափոր Ա թագաւորին ատենը շատ գաւառներ անկեց բաժնուեցան ։ Վալտէմար Գ 1346ին տէրութիւնը նորէն ընդարձակեց. իսկ իր աղջիկը Մարգարիտա Նորվեկիոյ Հաքին թագաւորին հետ կարգուելով աւելի ալ մեծցուց տէրութիւնը ։

---

ı Ի՞նչ կերպով ընդարձակեցաւ Տանիմարքայի թագաւորութիւնը ։

նուաճներումը ան հանդիպին մէջ չյաջողութիւն ձգեց :

1 Հասկըցաւ Հենրիկոս որ պէտք է իր երկիրը քաշուի · Փիզա հասնելով հրատարակեց որ Նէա-պօլսոյ Հռոբերդոս թագաւորը աթոռէ ընկած է · Փլորենտացիներն ալ դատապարտանի կանչեց, բայց իր խօսքերուն մտիկ ընող չեղաւ · մանաւանդ թէ Կուելֆեանք աւելի զօրացան ու սկսան ոտք ելլել · ան միջոցին կայսրն ալ մեռաւ (1313) :

2 Տարի մը կայսերական աթոռը պարապ կե-նալէն ետքը՝ երկու կայսերք մէկէն ընտրուեցան · վասն զի կայսրընտրաց կէսը Լուդովիկոս Պաւե-րացւոյն կողմն էին, կէսն ալ Փրեդերիկոս Աւս-տրիացւոյն · աս պատճառաւ պատերազմ բացուե-ցաւ, Փրեդերիկոս գերի ընկաւ, ու իրեք տարիէն ետքը ազատեցաւ Ռոմի դաշնադրութեամբը, և անով Լուդովիկոսի գահակից եղաւ ինչուան իր մահը (1330) :

3 Ան պատերազմին ատենը Լուդովիկոս Պաւե-րացւոյն մեծ թշնամին Յովհաննէս ԻԲ պապն էր, որ Գաղղիոյ Աւենիոն քաղաքը նստած՝ նզովքներ կը սպառնար կայսեր դէմ · անոր համար Լուդո-վիկոս պատերազմը լմըննալուն պէս բոլոր ջանքը ան եղաւ որ Իտալիա անցնի ու Կիպելեանց կողմը զօրացընէ : Հռոմ որ հասաւ, Քոլոննա անուանով քաղաքապետին ձեռքովը կայսր պսակուեցաւ ·

---

1 Ի՞նչպէս ետ քաշուեցաւ Հենրիկոս :

2 Հենրիկոս կայսեր ո՞վ յաջորդեց :

3 Լուդովիկոս Պաւերացին ի՞նչ կերպով կայսր եղաւ :

աս բանիս համար երբոր պապէն բանադրուեցաւ, պէտք եղաւ որ Գերմանիա դառնայ ու հոն Ֆրանքֆորթի ժողովոյն վճռովը կայսերութեանը մէջ հաստատուեցաւ. ասոր վրայ (1338) այնպէս զայրացաւ Կղեմէս Զ պապը, որ հրաման խրկեց Տրեւիրի, Մոգունտիոյ և Կողոնիոյ արքեպիսկոպոսներուն որ ուրիշ կայսր մը ընտրեն. անոնք ալ ընտրեցին Լուքսեմպուրկի Կարոլոս իշխանը: Իսկ Լուդովիկոս պատերազմով իրեն իրաւունքը պաշտպանելու պատրաստուած ատենը՝ կաթուածով մը զարնուեցաւ մեռաւ:

[1] Կարոլոս Դ Լուքսեմպուրկցին 1347ին կայսր ընտրուեցաւ. բայց իր իշխանութիւնը պահելու փոյթ չունենալէն զատ՝ կարծես թէ նայեցաւ որ աւելի տկարացընէ. 1354ին Փատուա ու Վերոնա քաղաքները Վենետկեցւոց տուաւ ու Լոմպարտիոյ մէջ մշտենջենաւոր փոխարքայ անուանեց Կալէացցոյ Վիսքոնթի Իտալացին. Գերմանիոյ մէջ ալ ան հռչակաւոր սահմանադրութիւնը հրատարակեց որ Ոսկեղէն Հրովարտակ կ'ըսուի, ոսկէ կնքով հաստատուած ըլլալուն համար. և մէջը որոշուած էին կայսր ընտրելու տեղը, կերպը և կայսրընտրաց իրաւունքներն ու ազատութիւնները: Աւենիոն քաղաքին Կղեմէս Զ պապին ծախուիլը հաստատեց, Արելատայ թագաւորութեանն ալ մնացած կտորը Կարոլոս հինգերորդին թողուց (1365):

---

[1] Կարոլոս Դ Լուքսեմպուրկցին ինչ կարգաւորութիւններ ըրաւ:

[1] Իր բուն երկրին այսինքն Լուքսեմպուրկի կոմսութիւնը ընդարձակեց՝ քովի գաւառները հետը միացընելով։ Փրակայի մէջ համալսարան մը բացաւ գեղեցիկ դրատունով, ուր ինքն ալ կ'երթար վարժապետաց դասերը մտիկ ընելու։ Մեռնելէն առաջ իր Վինչեսլաւ որդւոյն տուաւ կայսերական անունը, և Պոհեմիացւոց քաղաքականութիւն սորվեցընելու ժամանակը վախճանեցաւ (1378)։

[2] Վինչեսլաւ իր հօրը հետևեցաւ, ու Պոհեմիոյ մէջ քաշուած՝ փոյթ չըրաւ տկարները ուժովներուն դէմ պաշտպանելու. վասն զի ան ատենները Սուապիոյ ու Ֆրանքոնիոյ քաղաքները իրարու հետ դաշնակցութիւններ կ'ընէին որ դէմ կենան ան ազնուականաց բռնութիւններուն, որ կ'ըսուէին Ազնուական ընկերութիւնք Վահանի սրբոյն Գէորգայ, և Եղբայրութիւն Եղջերաց և ոսկի Առիւծու։ Քիչ ատեննէն պատերազմ ալ բացուեցաւ մէջերնին. բայց Վինչեսլաւ անտարբեր կենալով իր տէրութեանը մէջն ալ ատելի եղեր էր գինեմոլութեամբն ու անգթութեամբ, այնպէս որ կ'ըսեն թէ օր մը իր խոհարարին վրայ սրդողելով որ կերակուրը աղէկ չէ եփած, շամփուրի վրայ անցընել տուեր է զինքն ու ողջ ողջ խորվեր է. վերջապէս հպատակները ապստամբեցան, բանտ դրին զինքը 1393ին. եօթը տարի ետքն ալ կայսրընտիրները զինքը ձգեցին։

---

1 Լուքսեմպուրկի ու Պոհեմիոյ մէջ ինչ նոր բան ըրաւ։

2 Վինչեսլաւ ինչպէս ըրաւ կայսերութիւնը։

[1] Հռոբերդոս Պաւերացին կայսր ըլլալուն պէս Իտալիա անցաւ որ Վիսքոնթեանց ցեղին ուժը կոտրէ, որովհետև անոնք շատ զօրացեր էին Լոմպարտիոյ մէջ. բայց Կարրարա ըսուած լճին քով այնպէս չարաչար յաղթուեցաւ որ անկէց ետքը Գերմանացիք երկար ատեն Իտալիոյ վրայ տիրելու աչք չունեցան ։

[2] Գերմանիա դառնալէն ետև մեռաւ Հռոբերտոս (1410), ու նորէն երկպառակութիւն ընկաւ կայսրընտրաց ժողովոյն մէջ ։ Պոհեմիոյ Վինչեսլաւ Թագաւորը, անոր եղբայրը Սիկիսմոնտ որ Մաճառի Թագաւոր էր, և Ցովսէփ Մորաւիացին, ետևէ ետև կայսր եղան. բայց վերջապէս Ցովսէփ մեռաւ, Վինչեսլաւ ալ խաղաղասէր մարդ ըլլալով՝ կայսերութիւնը Սիկիսմոնտի թողուց ։

[3] Աս Սիկիսմոնտը կայսր ըլլալէն առաջ մէկ օր մը միայն Թագաւորեր էր Լեհաստանի վրայ, ու երկրորդ օրը ձգուեր էր. ետքը Մաճառներուն վրայ Թագաւորեր և Օսմանցւոց դէմ մեծ պատերազմ ըրեր էր Նիկոպօլսոյ քովը ։ Կայսր ըլլալէն ետքն ալ ուրիշ խռովութիւններ ունեցաւ. վասն զի Փրակայի համալսարանին վերատեսուչը Յովհաննէս Հուս՝ իր մոլորական կարծիքներուն համար Կոստանդեան ժողովոյն մէջ դատապար-

---

1 Հռոբերտոսի Պաւերացւոյն Իտալիա արշաւելը ինչ կերպով լմնցաւ ։
2 Հռոբերտոսի ով յաջորդեց ։
3 Սիկիսմոնտին ատենը ինչ երևելի դիպուածներ եղան ։

տուեցաւ որ ողջ ողջ այրի ։ Այս խստութեան պատճառաւ Բոհեմիոյ մէջ ապստամբութիւն մը ելաւ, և անոր գլխաւորը Յովհաննէս Ժիժքա Փրակայի՛ն տիրեց, խորհրդարանը մտաւ ու ատենակալները պատուհաններէն վար նետեց. Վենչեսլաւ վախէն մեռաւ, Սիկիսմոնտ եղբայրն ալ ուշ հասաւ անոր օգնելու (1419)։ Այս կրօնական պատերազմը այնպէս սաստիկ եղաւ որ Հուսեանք և Թաբորեանք ըսուած աղանդաւորները միանալով հարիւր քաղաք կամ բերդ ու հազար չորս հարիւր գեղ այրեցին, այնչափ ալ աւար ժողվեցին որ իրեք հազար կառք պէտք եղաւ զանոնք տանելու, ամէն մէկ կառքին վեց՝ ութը, և ինչուան տասնըչորս ձի լծած ։ Գերմանիոյ իշխանները սարսափած՝ ստիպեցին կայսրը որ աղանդաւորաց հետ հաշտութիւն ընէ. ան ալ Իկլաւի դաշնագրութեամբը ազատութիւն կրօնի տուաւ անոնց (1434)։ Իրեք տարի ետքը Սիկիսմոնտ մեռաւ, ու իրեն հետ Լուքսեմպուրկի ցեղէն ալ կայսերութիւնը վերցուեցաւ ու անցաւ Աւստրիոյ ցեղին (1437)։

[1] Ալբերտ Բ, Սիկիսմոնտի փեսան, երկու տարի թագաւորեց Գերմանիոյ վրայ, և աթոռը թողուց իր ազգական Փրեդերիկոս երրորդին, որ 1452ին Հռոմ գնաց՝ Նիկողայոս Ե պապէն կայսր օծուելու համար. ան վերջին անգամն եղաւ որ Գերմանիոյ կայսերք Հռոմ կայսր օծուեցին ։ Իսկ Փրեդերիկոսի կայսերութիւնը նոր պատմութեան մասն է ։

---

[1] Սիկիսմոնտին մէկ յաջորդը ։

## ԳԼՈՒԽ ԼԲ.

**Սկանդինաւեան եւ Սլաւեան պետութիւնք. Նորվեկիա, Տանիմարքա, Շուէտ, առաջին պատմական ժամանակներէն մինչեւ 1448 տարին. — Ռուսաստան, Լեհաստան, Մաճառաստան և Պոհեմիա 1054էն մինչեւ 1466։ Սկանդինաւեան պետութիւնք. — Նորվեկիա. — Տանիմարքա. — Շուէտ. — Քալմարի դաշնակցութիւնը. — Մարգարիտա Վալտեմար. — Սլաւեան պետութիւնք. — Ռուսաստան. — Վլատիմիր Ա. — Թաթարաց արշաւանքը. — Դիմիտր Բ. — Լեհաստան. — Տեւտոնեան կարգին ասպետները. — Մաճառաստան. — Պոհեմիա։**

[1] ՍԿԱՆԴԻՆԱՒԵԱՆ ՏԵՐՈՒԹԻՒՆՔ. — ՆՈՐՎԵԿԻԱ։ — *Այս երկիրը որ հիմա Շուէտի մասը կը սեպուի, պատմութեան մէջ միայն տասներորդ դարուն վերջերը կը սկսի յիշատակուիլ. վասն զի այն ատեն իրեն Օլաւոս Թագաւորը քրիստոնեայ դարձաւ, իր հպատակները մկրտեց ու կռատունները կործանեց։ Քիչ ատենի մէջ Տրոնթիեմ քաղաքը անուանի եղաւ, ու բոլոր երկրին մէջ քաղաքականութիւնը սկսաւ տարածուիլ. Օլաւոս Բ եկեղեցական բաները կարգի դրաւ 1016էն. շատ չանցաւ, խռովութիւն մը ելաւ երկրին մէջ, որով ինքը աթոռէն ձգուեցաւ ու տեղը անցաւ Սուենոն որդին. անոր ալ յաջորդեց Հարոլտ*

---

[1] *Նորվեկիոյ թագաւորութեանը վրայ ինչ դիտելիք կայ։*

Հարարատա քաջ մարդը, որ 1066ին Գուլիէլմոս Աշխարհակալին օգնութեան գնաց ու պատերազմի մէջ մեռաւ։ Օլաւոս երրորդէն ետքը Նորվեկիացւոց մէջ անիշխանութիւն ընկաւ մինչուան 1223. ան ատենը Հաքին Ե Թագաւորը Իսլանտիոյ ու Գրէօնլանտիոյ տիրեց՝ կարծելով թէ Նոր աշխարհք գտեր է։ Մագնոս Է 1263ին օրէնքները նորոգեց, եկեղեցականաց մեծամեծ ազատութիւններ տուաւ, որոնց մէկն ալ ան էր որ Տրոնթիէմի արքեպիսկոպոսը իշխանութիւն ունեցաւ սատակ կոխելու։ Էրիկ Բ աշխատեցաւ որ Սկովտիոյ Թագաւոր ըլլայ. Գերմանիոյ դաշնակից քաղաքներուն դէմ ալ փուճ տեղը պատերազմեցաւ։ Իր յաջորդներուն մէջ Մագնոս Ը արդէն Շուետի Թագաւոր էր՝ բայց հպատակները ստիպեցին որ հրաժարի Թագաւորութենէն ու Հաքին եօթներորդին թողու. անիկայ ալ 1362ին կարգուեցաւ Մարգարիտա Վալտէմարին հետ, որ Տանիմարքայի Թագաւորութեանը ժառանգն էր։ Երբոր Հաքին մեռաւ 1380ին, ետքն ալ իր որդին Օլաւոս, Տանիմարքայի գաւառապետները Քալմար քաղաքը ժողվուեցան, և աս հիւսիսային իրեք Թագաւորութիւնները իրարու հետ միացուցին 1397ին։

¹ ՏԱՆԻՄԱՐՔԱ։ — Աս Թագաւորութիւնը հին ատեն Կիմբրիա կամ Կիմբրեան Քերսոնէս կ՚ըսուէր, և անկէց ելան ետքերը ան Նորմանտացի աւազակները, որ դէպ ՚ի Գաղղիա ու Անգղիա

---

¹ Տանիմարքայի վրայ ի՞նչ կայ գիտնալիք։

արշաւեցին ։ Քրիստոնէութիւնը երկոտասաներորդ դարուն մէջ մտաւ հոն . առաջին քրիստոնեայ Թագաւորը սուրբն Կանուտոս կամ Քանուտ՝ Պալթիկ ծովուն վրայի աւազակներուն հետ պատերազմեցաւ , ու Մէքլէմպուրկի վայրենի ժողովուրդները նուաճեց (1130) ։ Իր որդին Վալտէմար Ա , Տանցիկ քաղաքը առաւ , Քոփէնհակ կամ Քեօպէնհաւն մայրաքաղաքը կանգնեց , իր ազգին համար օրինաց գիրք մը հրատարակեց և Մեծ լսուեցաւ ։ Որդւոյը մէջէն Վալտէմար Բ Նորվեկիացիները հարկատու ըրաւ , Փոմերանիոյ մէկ մասին տիրեց ու Փրեդերիկոս Գ կայսրէն Յաղթող անունը ընդունեցաւ (1214) ։ Քանի մը տարի ետքը Քուռլանտիա ու Եսթոնիա արշաւեց , հոն քրիստոնէութիւն քարոզեց ու Ռեւէլ քաղաքը հիմնեց ։ Բայց իր հպատակները զինքը գերի բռնեցին , Սլաւեանք իրեն դէմ ոտք ելան , ու Պոռնհովետի պատերազմին մէջ յաղթուեցաւ ։

[1] Երբոր Վալտէմար Բ մեռաւ (1227) , հարիւր տարիի չափ Տանիմարքայի մէջ խռովութիւնները չդադրեցան ։ Քրիստափոր Ա Թագաւորին ատենը շատ գաւառներ անկէց բաժնուեցան ։ Վալտէմար Գ 1346ին տէրութիւնը նորէն ընդարձակեց . իսկ իր աղջիկը Մարգարիտա Նորվեկիոյ Հաքին Թագաւորին հետ կարգուելովը աւելի ալ մեծցուց տէրութիւնը ։

---

[1] Ի՞նչ կերպով ընդարձակեցաւ Տանիմարքայի Թագաւորութիւնը ։

[1] ՇՈՒԷՏ: — Շուէտի երկրին քաղաքականութեան սկիզբը Վատսթէնայի վանքը եղաւ, որ բարեպաշտութեամբ ու գիտութիւններով ծաղկած էր, և հիմնադիրները Հռովմայ պապերն էին: Երկոտասաներորդ դարուն մէջ քրիստոնէութիւնը մտաւ Շուէտի երկիրը: Շուէտի առաջին պատմական թագաւորը Սուէրքէր՝ չորս վիճակ բաժնեց իր ազգը, և կառավարութիւնը երկու որդւոյը թողուց, որ էին սուրբն Երիկ և Կարոլոս Ը (1150): Երիկ գնաց Կոթլիա նահանգին վրայ թագաւորեց, և իր հպատակները կըրթելու աշխատեցաւ. մեռնելու ատեն իր տէրութիւնը եղբօրը յանձնեց՝ որ արդէն Ուփսալի թագաւորն էր: Իրմէ ետքը Շուէտի մէջ ալ խռովութիւնները սկսան մինչուան որ Մագնոս Լատուլոս թագաւորը ընտրեցաւ նաև թագաւոր Գոթաց և Շուէտաց (1279):

[2] Այն ատենները Օտին թագաւորին ցեղը հատած ըլլալով, նոր խռովութիւններ ելան յաջորդութեան համար. օտարազգի ցեղեր թագաւորութեան ետևէ եղան, և անով անիշխանութիւնը զօրացուցին: Ալբերտ Մեքլէմպուրկցին թագաւորեց 1363ին. բայց ազնուականները վրան գոհ չըլլալով՝ ձգեցին զինքն ու տէրութիւնը Մարգարիտա Վալտէմարեկի յանձնեցին. անիկայ ալ զօրք ժողվեց ու պատերազմի ելաւ Ալբերտին դէմ ու զանիկայ ձեռք ձգեց (1389): Այն ատենը Մարգա-

---

1 Շուէտի պատմութիւնը ուսկից կը սկսի:

2 Քալմարի դաշնակցութիւնը ինչպէս եղաւ:

րիտա (որ հիւսիսային Շամիրամ ըսուեցաւ) մեծ ժողով մը ըրաւ Քալմար քաղաքը, երեք Թագաւորութիւնները միացուց, այսինքն Տանիմարքան, Շուէտն ու Նորվեկիան, և երեք ազգաց երեսփոխաններուն երդում ընել տուաւ որ մէյմէն ալ Տանիմարքա, Շուէտն ու Նորվեկիան իրարու դաշնակցութենէն չբաժնուին : Իսկ դաշնագրին պայմանները ասոնք էին. Թագաւորը ընտրութեամբ պիտի ըլլար, երեք տէրութեանց մէյմը մէկուն մէյմը մէկալին մէջ պիտի բնակէր, երեքին ալ օրէնքներն ու սովորութիւնը անարատ պիտի պահուէին :

1 Երբոր Մարգարիտա մեռաւ (1412), ազնուականները Էրիկ Փոմերանիացին ընտրեցին Թագաւոր, որ անկարող մարդ էր : Քրիստափոր Բաւերացին ալ անկէց աւելի կատարելութիւն չունէր, որով երեք ազգաց մէջ սկսաւ խռովութիւն ելնալ, այնպէս որ երբոր ինքը մեռաւ 1448ին, Շուէտները իրենց դաշնակցութիւնը աւրեցին, ու Կարոլոս ութերորդը Թագաւոր դրին. իսկ Նորվեկիացիք ու Տանիմարքացիք Թագաւորեցուցին Քրիստիանոս առաջինը :

2 ՍԼԱՒՈՆԵԱՆ ՏԷՐՈՒԹԻՒՆՔ. — ՌՈՒՍԱՍՏԱՆ : Եարոսլաւ՝ Ռուսաստանի օրէնսդիրը մեռեր էր 1054ին. իրմէ ետքը խռովութիւնները նորէն սաստ-

---

1 Մարգարիտայի մահուընէն ետքը Շուէտի վիճակը ի՞նչպէս եղաւ :

2 Եարոսլաւի մեռնելէն ետքը ի՞նչ վիճակի մէջ էր Ռուսաստան :

կացան, ու Կասպից ծովուն, Վոլկա գետին քովերէն և Ուրալ լեռներէն եկած վայրենի ժողովուրդները Ռուսաստանը տանակոխ ըրին : Անկէց ետքը անուանի Թագաւոր եղաւ Ռուսաստանի մէջ խաղաղասէրն Վլատիմիր Բ, որ տէրութեան խռովութիւնները դադրեցուց, և Յունաց Ալեքս Կոմնենոս կայսրը Զոր կամ Կեսար պատուանունը տուաւ իրեն :

[1] Երեքտասաներորդ դարուն մէջ Թաթարները Ճէնկիզ խանին առաջնորդութեամբը շատ զօրացած ըլլալով, Ճէնկիզին փոխանորդներէն մէկը Ռուսաստան մտաւ ու սկսաւ տիրապետել (1239): Թաթարաց մայրաքաղաքը եղաւ Խազան. իսկ Ռուսաց Թագաւորները Մոսքուա կը նստէին ու Թաթարաց հարկատու էին :

[2] Հարիւր տարի աս վիճակիս մէջ կենալէն ետքը, Տմիթրի կամ Դեմետր Բ Թագաւորեց 1363ին, զօրք ժողվեց, Տոն գետէն անցաւ ու մեծ պատերազմ մը ըրաւ Թաթարաց դէմ, որուն մէջ հարիւր հազար Մողոլ մեռաւ կ'ըսեն, և Տմիթրի միշտ առաջին պատերազմողներուն մէկը եղաւ : Պատերազմէն ետքը ծառի մը տակ գտան զինքը կիսամեռ, և իրեն մականուն դրին Տոնցի՝ Տոն գետին անունովը : Երբոր Տմիթրի բոլոր իր երկիրը ազատելու կ'աշխատէր, Լէնկթիմուրի զօրավարներէն մէկը Թաթարաց օգնութիւն հասաւ, Մոսքուա քաղաքը կործանեց ու Ռուսաց Թագաւորը հարկատու ըրաւ : Տմիթրիին յաջորդները

---

1 Թաթարները ի՞նչպէս տիրեցին Ռուսաստանի :
2 Դեմետր Բ ի՞նչ քաջութիւններ ըրաւ :

Վասիլ Բ և Վասիլ Գ մեծ յաջողութիւն մը չունեցան . բայց Վասիլ երրորդին որդին Իւան Գ վերջապէս Թաթարները հալածեց, ու Մոսքուայի մեծ դքսութիւնը շատ պայծառացուց (1462) :

¹ ԼԵՀԱՍՏԱՆ : — Երկոտասաներորդ դարէն առաջ Լեհաստանի վրայ Թագաւոր եղողներուն ամենէն անուանին էր Պօլեսլաւ Գ Յաղթականը, որ իր տէրութիւնը շատ ընդարձակեց : Մեռնելէն առջը իր չորս որդիքը տէրութիւնը մէջերնին բաժնեցին (1139), որով Թագաւորութիւնը տկարացաւ ու Պրուշներէն ոտնակոխ եղաւ : Ան միջոցին էր որ Բրուսիոյ Թուռն քաղաքին իշխանը Կոնրադոս իրեն օգնութեան կանչեց Տեւտոնեան կարգին ասպետները, Քուլմ քաղաքին մէջ տեղ տուաւ անոնց, ու պայմանեց որ Պալթիկ ծովուն քովի վայրենի բնակիչները քրիստոնէութեան դարձընեն (1226) : Քանի մը տարի առաջ Լիվոնիոյ Րիկա քաղաքին եպիսկոպոսը նոյն դիտաւորութեամբ Սուսերակիր ըսուած ասպետաց կարգը հաստատեր էր :

² Աս կերպով Լեհաստանի սահմանին մօտ նոր տէրութիւն մը ձեւացաւ, որ քիչ ատենի մէջ շատ մեծցաւ . Տեւտոնեան ասպետները Պրուշ կամ Բրուս ըսուած ժողովուրդը նուաճեցին, երկիրները մշակեցին ու քաղաքներ շինեցին :

---

¹ Լեհաց Պօլեսլաւ Գ Թագաւորին և անոր որդւոցը վրայ ի՞նչ գիտելիք կայ :
² Տեւտոնեան ասպետները ի՞նչ կերպով զօրացան:

[1] Այն միջոցին ուրիշ մեծամեծ վտանգներ ալ շատցան Լեհաստանի համար հիւսիսային ու արեւելեան կողմերէն. վասն զի Ռուսները, Լիթուանիացիք, Թաթարներն ու խազարները միշտ կը ջանային Լեհաստանի երկիրը արշաւել. ան ատենը Լեհաստան մեծ թագաւոր մը ունեցաւ Քազիմիր երրորդը՝ որ 1343ին Տեւտոնեան կարգին հետ դաշնակցութիւն մը ըրաւ, ուրիշ թշնամեաց ալ շատ պատերազմի մէջ յաղթեց, օրինաց գիրք մը շարադրեց իր ազգին համար, ու թագաւորական իշխանութիւնը պակսեցընելով՝ ազնուականներունը աւելցուց: Այս թագաւորը Փիասթի ցեղին վերջինն էր (1370):

[2] Երբոր Քազիմիր Գ մեռաւ, Լեհաց ազնուականները ազգային ժողով ըրին ու Մաճառաց թագաւորը Մեծն Լուդովիկոսը հրաւիրեցին որ իրենց վրայ ալ թագաւորէ. բայց անիկայ տարի մը թագաւորելէն ետքը մեռաւ, ու ժառանգ թողուց Հետուիկ անունով աղջիկ մը՝ որ Լիթուանիոյ Վլատիսլաւ Եակելլոն դքսին հետ կարգուած էր:

[3] Եակելլոնեանց թագաւորութեան ատենը Լեհաստան շատ մեծցաւ ու պայծառացաւ. վասն զի Լիթուանիոյ հետ միանալովը հարստութիւնն

---

1 Ուրիշ ի՞նչ թշնամիներ ունեցան Լեհացիք: — Այն ատենները իրենց անուանի թագաւորը ո՞վ եղաւ:

2 Քազիմիր երրորդին ո՞վ յաջորդեց:

3 Եակելլոնեանց թագաւորութեան ատենը Լեհաստան ի՞նչ վիճակի մէջ էր:

ալ շատցաւ, ու կրցաւ Տեւտոնեան ասպետութիւնը իր երկիրներէն բոլորովին հեռացնել (1410)։ Յիսուն տարի ետքը Քազիմիր Դ. այնպիսի յաղթութիւններ ըրաւ որ Տեւտոնեանց մեծ մագիստրոսը հարկադրուեցաւ բոլոր արեւմտեան Բրուսիան Լեհերուն յանձնելու, և արեւելեան Բրուսիան միայն իրեն պահելով՝ Եակեղլոններուն ինքզինքը հպատակ ճանչնալու։ Աս դաշնադրութեամբ Լեհաստան հիւսիսային տէրութեանց մէջ առաջին աստիճանի մեծութիւն ունեցաւ (1466)։

[1] ՄԱՃԱՌՍՏԱՆ։ — Ան երկիրն որ ատենով Դակիա ու Պաննոնիա կ'ըսուէր, Մաճառաստան և Հունգարիա ըսուեցաւ Մաճառ կամ Հունգ ազգին անունովը։ Ասոնք խազարք ըսուած Թաթարներուն բռնութենէն փախչելով, Գերմանիոյ Առնուլ կայսրէն հրաման առին ու Դանուբի եզերքը բնակեցան (891)։ Հարիւր տարիի չափ ետքը Գերմանիան, Իտալիան ու Գալլիան ոտնակոխ ըրին. 997ին իրենց գլխաւորը Կէյզա մկրտուեցաւ, քրիստոնեայ եղաւ. անոր որդին ալ սուրբն Ստեփանոս բոլոր ժողովուրդը քրիստոնէութեան դարձուց։ Ասոր փոխարէն՝ Սեղբեստրոս Բ պապը զինքը թագաւոր անուանեց ու իրեն պսակ մը պարգև տուաւ որ ինչուան մեր օրերը Մաճառաց վերջին պատերազմին ատենը կեցած էր, և անով Մաճառի թագաւորները կը պսակուէին (1000)։ Ինչուան 1218 Մաճառաստանի թագաւորաց մէջ

[1] Մաճառաստանի ու Մաճառաց սկզբնաւորութեանը վրայ ինչ կայ գիտնալիք։

ուրիշ անուանի գործողութիւն մը ընող չկայ . Իսկ այն ժամանակը Անդրէաս Բ. Թագաւորը առաջին խաչակրաց հետ Տաճկաց գնաց :

1 Մաձառաց եկեղեցականները Գաղղիոյ Կարոլոս Անժուցիին Թոռանը որդին Քարոլոբերթը իրենց Թագաւոր ընտրեցին, ժողովուրդն ալ հաւանեցաւ (1347) : Անոր որդւոյն Մեծին Լուդովիկոսի ատենը, որ Լեհաստանի ալ Թագաւոր էր, Մաձառաստան սկսաւ աւելի անուանի ըլլալ. Լուդովիկոս Օսմանցւոց դէմ պատերազմեցաւ ու չարաչար յաղթուեցաւ : Իր յաջորդներն ալ շատ պատերազմներ ըրին Տաճկաց դէմ. Սիկիսմոնտ Թագաւորը 1396ին յաղթեց Օսմանցւոց Նիկոպոլսոյ պատերազմին մէջ. 1410ին Գերմանիոյ կայսր ընտրուեցաւ, ու 1437ին մեռաւ, ուրախութեամբ տեսնելով որ Մաթիաս Քորվինն և անոր որդին Յովհաննէս Հունիատ իր հայրենեացը քաջ պաշտպաններ պիտի ըլլան :

2 ՊՈՀԵՄԻԱ : — Պոհեմիացիք, որ հին Մարկոմաններուն երկիրը բնակէր էին, շատ անգամ Գերմանիոյ գործողութեանց մէջ մտան, բայց միշտ երկրորդական կերպով մը, և իրենց դուքսը կամ Թագաւորը միշտ կայսերաց հպատակ էր : Երբոր Լիւքսեմպուրկի ցեղին անցաւ կայսերութիւնը (1310), Պոհեմիոյ Թագաւորութիւնն ալ

---

1 Խաչակրաց ժամանակներէն ետքը ի՞նչ անուանի Թագաւորներ ունեցան Մաձառները :

2 Պոհեմիոյ Թագաւորութեանը վրայ ի՞նչ գիտելիք կայ :

քիչ մը ատեն աւելի պայծառացաւ. Յովհաննէս Կոյր, Ըլեզիա ու Պրանտէպուրկ գաւառները Պոհեմիոյ հետ միացուց, և բոլոր Եւրոպայի մէջ մեծ անուն հանեց: Անոր անցնելէն ետքը Կարոլոս Դ կայսրը Լուսացիա գաւառն ալ Պոհեմիոյ հետ միացուց, ու Պոհեմիոյ Թագաւորին առաջին կայսրընտիր ըլլալը պատուանուն տուաւ: Երբոր Սիկիսմոնտոս կայսրը մեռաւ, որ Մաճառաստանի ու Պոհեմիոյ ալ Թագաւոր էր, Լուքսեմպուրկի ցեղէն արու ժառանգ չմնալով, Պոհեմիոյ Թագաւորութիւնն ալ Աւստրիոյ Ալբերտոս կայսեր ձեռքը անցաւ (1438):

## ԳԼՈՒԽ ԼԳ.

Գաղղիոյ և Անգղիոյ հակառակութիւնները (1272-1350): (Փիլիպպոս Գ). Երեկորին կոտորած Սիկիլիոյ. — Եդուարդ Ա. (Փիլիպպոս Դ). — Սկովտիա և Ֆլանտրա. — Եդուարդեայ մահը. — Փիլիպպոս Գեղեցիկին մահը. — (Լուդովիկոս Ժ, Փիլիպպոս Ե. Կարոլոս Դ). — Եդուարդ Բ. — Կամքոթան. — Ռոբերդոս Պրիւս. — Սկովտիացւոց պատերազմը. — Իզապէլ Թագուհին. — Մորթիմերի ու Թագաւորին մահը. — Եդուարդ Գ. — (Փիլիպպոս Վալուա). — Ժաքմար Արթեւէլ. — Քրեսիի պատերազմը. — Պոհեմիոյ Թագաւորը Յովհաննէս Կոյր. — Քալէ:

1 Գաղղիոյ և Անգղիոյ հակառակութիւնները պատմութեան մէջ շատ անուանի են. վասն զի

---

1 Գաղղիոյ և Անգղիոյ Թագաւորութիւնները ինչ ատեն հակառակութիւն ունէին իրարու դէմ:

հին առենէն Հռովմայեցւոց ու Կարքեդոնացւոց պէս աս երկու ազգերն ալ մէկզմէկ կործանելու կ'աշխատէին :

[1] Փիլիպպոս Գ Ցանդուզն ըսուածը իր հօրը որբոյն Լուդովիկոսի տեղը թագաւոր հրատարակուեցաւ Թունուզի քովը : Փիլիպպոս հինգ դագաղ հետն առած՝ Գաղղիա մտաւ . ասոնց մէկը իր Լուդովիկոս հօրը մեռելն էր , մէկը իր կնոջը Իզապելլին , մէկը նոր ծնած որդւոյն , երկուքն ալ երկու իշխաններուն . և տասնըհինգ տարուան թագաւորութեանը մէջ ամենևին հօրը արժանի գործ մը չըրաւ : Իրեն առենը Սիկիլիոյ մէջ սոսկալի ջարդ մը ունեցան Գաղղիացիք , և պատճառը աս եղաւ : Փիլիպպոսի հօրեղբայրը Կարոլոս Անժուցին Նէապօլսոյ ու Սիկիլիոյ տիրելով՝ սոսկալի բռնութիւններ կ'ընէր բնակչացը վրայ . օր մըն ալ երեկոյեան ժամերգութեան երթալու զանգակները զարնուած առենը՝ Փալէրմոյ քաղաքին բնակիչները յանկարծակի Գաղղիացւոց վրայ վազեցին ու զամէնքն ալ սպաննեցին . ամսէ մը ետքն ալ բոլոր Սիկիլիոյ մէջինները ջարդեցին . աս հռչակաւոր կոտորածին անունը մնաց Երեկոյին Սիկիլիոյ , կամ Սիկիլեան Երեկոյեան ժամերգութիւն : Փիլիպպոս ասոր վրէժն առնելու համար՝ հարիւր հազար զօրքով Սիկիլիացւոց վրայ գնաց . բայց անխոթութեամբ ու ջերմախտով զօրացը մեծ մասը կորսնցընելով ինքն ալ հիւանդ Գաղղիա դարձաւ , քիչ առենէն մեռաւ (1285) , ու տեղը նստաւ որդին Փիլիպպոս Դ որ Գեղեցիկ ըսուեցաւ :

---

[1] Փիլիպպոս Գ ինչպէս թագաւորեց :

1 Անգղիոյ Թագաւորը Եդուարդ Ա արդէն քաջութեան անուն հանած էր. վասն զի իր Հէնրիկոս եղբայրը գերութենէն ազատելէն ետև արևելք գնացեր ու Սարակինոսաց դէմ պատերազմեր էր սրբոյն Լուդովիկոսի զօրացը հետ: Երբոր Անգղիա դարձաւ, հայրը նոր մեռեր էր. մէկէն ինքը Թագաւոր պսակուեցաւ ու նայեցաւ որ Կալլէսի երկիրն ու Սկովտիան ալ առնէ ու Մեծին Բրիտանիոյ հետ միացընէ. Կալլէսի երկրին տիրեց (1283), բայց Սկովտիոյ չկրցաւ տիրել՝ թէ բնակիչներուն քաջութեանը և թէ Գաղղիացւոց խարդախութիւններուն պատճառաւ:

2 Փիլիպպոս Դ Սկովտիացւոց օգնեց Եդուարդ Թագաւորին դէմ. ան ալ Ֆլանտրան ոտք հանեց Գաղղիոյ Թագաւորին դէմ, և ան պատերազմին պատճառը կ'ըսեն թէ անգղիացի ու Նորմանտացի նաւավարներու մէջ հանդիպած մէկ կռիւը եղաւ. որովհետև ան կռիւը Գաղղիոյ նաւահանգիստներէն մէկուն մէջը եղեր էր, ու ոչ մէկ կողմին և ոչ մէկալին հաշտութիւնք ուզեր էին ընել, Գաղղիացիք ու Անգղիացիք պատերազմ բացին իրարու դէմ. Սկովտիան Գաղղիոյ կողմը բռնեց, Ֆլանտրան Անգղիոյ (1296): Ֆլանտրացիք Գաղղիացւոցմէ յաղթուեցան, Սկովտիացիք ալ Անգղիացւոցմէ, և Եդուարդ Թագաւորը 1303ին հաշտութիւն ըրաւ: Բայց Ֆլանտրա քիչ ատենէն նորէն ոտք ելաւ՝ առաջնորդ ունենալով Պետրոս Քէնիկ

---

1 Եդուարդ Ա ինչպէս ըրաւ Թագաւորութիւնը:

2 Անգղիոյ և Գաղղիոյ մէջ եղած պատերազմին պատճառը և հետևանքը ինչ եղաւ:

անուանով մէկը ու Քուրթլըէի պատերազմին մէջ մեծ յաղթութիւն ըրաւ Գաղղիացւոց դէմ։ Փիլիպպոս վազեց գնաց որ իր տէրութեան պատուոյն վրէժը առնէ, բայց յաղթութենէ մը վերջը ետ քաշուեցաւ. վասն զի վաթսուն հազար Ֆլանտրացիք երկրորդ օրը դիմացը պատերազմի ելան. զարմացաւ Փիլիպպոս. “Աս ի՞նչ է, ըսաւ, երկնքէն անձրեւի տեղ Ֆլանտրացի՞ կը թափի„. ու այնպիսի քաջ ժողովրդեան անկախութիւնը ճանչցաւ (1305)։ Սկովտիոյ մէջ ալ գրեթէ նոյն բաները պատահեցան. վասն զի Վելլէս անուանով քաջ Սկովտիացին Անգղիացիները հալածելէն ետեւ՝ մատնութեամբ անոնց ձեռքն ինկաւ եւ սոսկալի տանջանքներով Լոնտրայի մէջ սպաննուեցաւ։ Ան ատեն Սկովտիացիք Հռոբերտոս Պրիւս անուանով մէկը իրենց թագաւոր անուանեցին. անիկայ առջի բերան յաղթուեցաւ, ու անտառներու մէջ պահուըտելով ձայն հանեց թէ մեռեր է. մէյմըն ալ յանկարծ պահուըտած տեղէն դուրս ցատքեց ու չկարծած ատեններին Անգղիացւոց վրայ վազելով՝ ցիրուցան ըրաւ զանոնք։ Եդուարդ ատեն չունեցաւ ան ձախորդութեան դարման ընելու, եւ մեռաւ 1307ին։ Իր որդւոյն պատուէր էր որ իր ոսկորները եփէ ու միշտ զանոնք բանակին առջեւէն տանի. վասն զի կ'ըսէր հպարտութեամբ. “Թշնամիք անոնց դիմացը կենալու չեն համարձակիր„։ Բարձրահասակ էր Եդուարդ, անոր համար ալ Երկայնաբազուկ ըսուեցաւ, ուժով, եռանդուն, դիւրագրգիռ ու յանդուգն. տէրութեանը մէջ ալ շատ բարեկարգութիւններ ըրաւ, օրինաց գիրքը կարգաւորեց ու ըսուեցաւ Անգղիո-

ջէ Յուստինիանոս : Իրեն յաջորդեց անդրանիկ որդին Եդուարդ Բ :

¹ Այն ատեններր Գաղղիոյ բռնաւոր ու արիւնահեղ Թագաւորը Փիլիպպոս Դ՝ Վոնիփակիոս Ը պապին դէմ դայթագղական կռիւներ ընելով երկու անգամ բանադրուեցաւ . Տաճարականները կ'այրէր , ու Կղեմէս Ե պապը կը ստիպէր որ աթոռը Հռոմէն փոխադրէ Աւենիոն . իր հպատակներէն անիրաւ տեղ սատակ հանելու համար անոնց կեանքին ալ չէր խնայեր : Տաճարականաց մեծ մագիստրոսը Յակոբ Մոլէ իր բազմաթիւ ընկերներովը Փարիզու մէջ այրուելու ատենը անէծք տուեր էր Թագաւորին , և կարծես թէ անէծքը կատարուեցաւ . վասն զի անոր մեռնելէն ետքը իրեք որդիքն ալ , այսինքն Լուդովիկոս Ժ , Փիլիպպոս Ե և Կարոլոս Դ ետևէ ետև չորս տարուան մէջ մեռան և արու ժառանգ մը չթողուցին (1314-1328) :

² Անդին Անգղիոյ Եդուարդ Բ Թագաւորն ալ Պետրոս Կավէսթոն անունով իշխանի մը հետ մտերիմ բարեկամ ըլլալուն համար՝ մեծամեծներուն ատելի եղաւ . մանաւանդ որ ան մարդն ալ իր թշնամիներուն ծանր նախատինքներ կ'ընէր . օրինակի համար Վարուիքի կոմսին անունը դրեր էր Սեաւ շուն Արտեննոյ . վերջապէս իշխանները բռնեցին Կավէսթոնն ու գլխատեցին :

---

¹ Փիլիպպոս Դ ի՞նչ բռնութիւններ ըրաւ :

² Կավէսթոն իշխանին վրայ ի՞նչ կայ գիտնալիք :

[1] Սկովտիոյ մէջ ալ Եդուարդայ բաղդը չբանեցաւ. վասն զի Հռոբերտոս Պրիւս մեծամեծ քաջութիւններ ընելով, ետեւէ ետեւ տիրեր էր Ռոքըսպուրկ, Փերթ ու Էտինպուրկ քաղաքներուն. երեսուն հազար տիգաւոր զօրքով ալ պատերազմի ելաւ Թագաւորին առջեւը (1313)։ Առաւօտանց կանուխ Սկովտիացիք աղօթքի կեցան, ու մօտ տեղ բլրի մը վրայ եղած պատարագը մտիկ ըրին. անկէց ետքը քահանան բոպիկ ոտքով բոլոր զինուորներուն մէջ պտըտեցաւ ու յորդորեց զիրենք որ քաջութեամբ պատերազմին հայրենեաց ազատութեանը համար։ Եւ որովհետեւ զինուորները անոր անցնելու ատենը ծնրադրութիւն կ՚ընէին, Անգղիացւոց մէկը կանչեց թէ “Ծունկի վրայ եկած կ՚աղաչեն որ խնայենք իրենց։ — Այո՛, ըսաւ անգղիացի իշխան մը, բայց զԱստուած կ՚աղաչեն, և ոչ թէ զմեզ„։ Պատերազմը սկսելուն պէս՝ Անգղիացւոց հետեւակ զօրքը ջարդուեցաւ, փախաւ. ան ատեն ձիաւորները առաջ եկան, բայց փոսերով լեցուն տեղ մը հանդիպելով՝ ձիերը ընկան, ձիաւորներն ալ իրարու վրայ թափելով՝ ոչ իրենք զիրենք կրցան պաշտպանել և ոչ նորէն ոտք ելլել. զէնքերուն ալ ծանրութեանը տակ ճնշուելով չարաչար ջարդուեցան. Եդուարդ Թագաւորն ալ իր կնիքն ու դանձերը կորսնցընելէն ետեւ, պատերազմին տեղէն ձգեց փախաւ։

---

[1] Հռոբերտոս Պրիւս ի՛նչ քաջութիւններ ըրաւ Անգղիացւոց դէմ։

[1] Կավէսթոնին տեղը ուրիշ նոր բարեկամ մը ունեցեր էր Թագաւորը՝ Հուկոս Սփենսէր անունով. անոր ալ մեծ թշնամին եղաւ Իզապէլ, որ Գաղղիոյ Փիլիպպոս Թագաւորին քոյրն էր, ու կենդանութեան ատենը ամէն տեսակ չարագործութեան օրինակ ըլլալէն ետքը, մեռնելէն ետքն ալ հարիւր յիսուն տարուան պատերազմի մը պատճառ եղաւ: Այս Թագուհին կիրքերովը կուրցած՝ սոսկալի դիտաւորութիւն մը ունեցաւ որ թէ էրիկը սպաննէ և թէ Սփենսէրը: Գաղղիա անցաւ իր եղբօրորդւոյն Կարոլոս չորրորդին պալատը, և հոն միտքը դրածը ուզածին պէս սկսաւ պատրաստել: Որովհետև Անգղիոյ մեծամեծներն ալ Սփենսէրին իյնալը կ'ուզէին, Թագուհւոյն հետ անդադար թղթակցութիւն կ'ընէին. վերջապէս Անգղիա հրաւիրեցին զինքը, ու երբոր հոն գնաց՝ իբրև իրենց ազատարարը այնպէս ուրախութեամբ ընդունեցան զինքն ու ձեռքը շատ զօրք տուին: Եդուարդ մայրաքաղաքէն ելաւ փախաւ, Սփենսէրը ձեռք ընկաւ, ու եղեռնով պակուած՝ յիսուն ոտնաչափ բարձր կախաղանէ մը կախուեցաւ: Իսկ Թագաւորին վրայ խորհրդարանին մէջ դատաստան եղաւ ու ամէնքը ջանացին հաստատել թէ քանի որ Թագաւորը բանտ չէ դրուած, Թագուհւոյն կեանքը ապահով չէ. ուստի բռնեցին խեղճ Թագաւորը բերդի մը մէջ դրին, քիչ ատենէն ետքն ալ դիակը հանեցին ժողովրդեան ցուցուցին՝ իբր թէ ինքիրեն մեռեր է.

---

[1] Իզապէլ Թագուհին ի՞նչ անգթութիւններ ըրաւ Թագաւորին ու Սփենսէր իշխանին:

բայց կեղծաւորանքին աւրուելէն կասկած եղաւ որ բանութեամբ սպաններ են զինքը, և հասարակաց խօսքը այնպէս էր որ կարմրացուցած երկաթ խոթեր են փորը, և նոյն գիշերը բերդին մէջէն ալ կանչուըռտելուն ձայնը լսուեր է (1307)։

[1] Եդուարդ Գ երբոր Թագաւորեց, Անգղիացիք ու Սկովտիացիք իրարու դէմ սաստիկ պատերազմի մէջ էին. և որովհետև Սկովտիացիք երկու անգամ յաղթեր էին իր հօրը, Եդուարդ միտքը դրաւ որ Հռոբերտ Պրիւսին արիւնովը աս նախատինքը լուանայ. բայց յաղթուեցաւ, հաշտութիւն ըրաւ հետն ու զինքը որդւոց որդի Սկովտիոյ թագաւոր ճանչցաւ (1328)։

[2] Սկովտիացւոց հետ հաշտութիւն ընելը սուաղը աւելի Թագաւորին Իզապէլ մայրին էր։ Ան ատենները Կարոլոս Դ, Գաղղիոյ Փիլիպպոս Թագաւորին որդին մեռեր ու աղջիկ զաւակ մը թողեր էր. Թագուհին ալ յղի էր, և ինքը խնամակալ անուաներ էր իր եղբօրորդին Փիլիպպոս Վալուա։ Խորհուրդ հարցուեցաւ իրաւագիտաց ու կանոնագիտաց. անոնք ալ պատասխան տուին թէ ըստ Սալեան օրինաց կնիկ մարդիկ յաջորդութեան իրաւունք չունին. ուստի Կարոլոսի Թագուհին աղջիկ զաւակ մը ծնանելուն պէս՝ Փիլիպպոս Վալուա իրաւագիտաց վճռոյն և ազգային կարծեաց զօրութեամբը Թագաւոր ըսուեցաւ։

---

1 Եդուարդ Գ ինչ կերպով հաշտութիւն ըրաւ Սկովտիացւոց հետ։

2 Գաղղիոյ Թագաւորութիւնը ան ատենները որո՞ւ ընկեր էր։

1 Անգղիոյ թագաւորը տեսաւ որ իր վախճանին չհասաւ, որովհետեւ կ'ուզէր Գաղղիոյ ալ տիրել իր մօրը Իզապելլին ձեռքովը, սրտին դառնութիւնը պարտակեց, ու 1329ին Ամիէն քաղաքը գնաց՝ Փիլիպպոս վեցերորդին թագաւորութիւնը շնորհաւորեց, ու իր երկիրը դառնալով նորէն Սկովտիոյ դէմ պատերազմ բացաւ: Հոն ան ատենի թագաւորն էր Հռոբերտոսի որդին Դաւիթ Բրիւս. Անգղիոյ թագաւորը անոր թշնամի հանեց Եդուարդ Պալիոլ անունով մէկը (1332). Գաղղիոյ թագաւորն ալ Դաւիթի օգնեց. անոր համար Եդուարդ Գ բոլոր Ֆլանտրան ոտք հանեց: Ասանկով պատերազմը նորէն սկսաւ երկու ազգաց մէջ:

2 Ան միջոցին Ֆլանտրացւոց մէջ զօրաւոր մարդ մը կար ժողովրդեան շատ սիրելի՝ Ճաքմար Արթվէլ անունով, որ Կանթ քաղաքին մէջ գրեթէ թագաւորի պէս տիրապետած էր: Եդուարդ Գ նայեցաւ որ անիկայ ոտք հանէ. ան ալ դեսպանին պատասխան տուաւ. “Որովհետեւ մենք Գաղղիոյ թագաւորին հաւատարմութիւն խոստացեր ենք, գնա ըսէ քու տիրոջդ որ ինքն ալ թող թագաւոր Գաղղիոյ ըսուի”: Աս վատ խարդախութիւնը Եդուարդայ խելքին յարմար եկաւ, և իրաւցնէ ինքզինքը թագաւոր Գաղղիոյ անուանեց:

---

1 Ի՞նչ պատճառաւ նորէն պատերազմ բացուեցաւ Գաղղիացւոց ու Անգղիացւոց մէջ:

2 Ո՞վ էր Ճաքմար Արթվէլ և ի՞նչպէս Անգղիոյ թագաւորին կողմը բռնեց:

[1] Սակայն 1337ին պատերազմը դանդաղութեամբ առաջ կ'երթար. կարծես թէ երկու կողմէն ալ պատերազմին յաջողութեանը վրայ տարակուսած էին. վասն զի երկու կողմէն ալ գրեթէ հաւասար ոյժ ու քաջութիւն ունէին, և առջի պատերազմները մէկ կողմին համար ալ որոշ վիճակ մը չունեցան: Բայց քիչ ատենէն Ժոֆրուա կամ Կոտֆրուա Հարքուրին մատնութեամբը Անգղիացիք զօրացան, և Եդուարդ Գաղղիոյ շատ քաղաքները առնելով, ու Սէն-Ժէրմէն, Սէն-Քլու և Պուռ-լա-Ռէն ըսուած աւանները այրելով Փարիզու մօտեցաւ. ետքը երբոր դէպ 'ի Փիքարտիա կ'երթար, լսեց որ Գաղղիացի նոր զօրքեր հասնելու վրայ են: Քրէսի քաղաքին քովը մեծ պատերազմ մը եղաւ, ու Գաղղիացիք չարաչար յաղթուեցան (1346): Հոն Եդուարդայ որդին, որ ետքը Սեաւ Իշխան անունով մեծ համբաւ ունեցաւ, շատ քաջութիւններ ըրաւ. հոն ընկաւ մեռաւ նաև Պոհեմիոյ թագաւորը Յովհաննէս Կոյր: Աս քաջ ծերունին լսելով որ Գաղղիացւոց բաները ձախորդ կ'երթան, դարձաւ ըսաւ քովիններուն. “Կ'աղաչեմ, այնչափ առաջ տարէք զիս, որ կարենամ թրովս մէկ թշնամի մը զարնել”: Ան ատենը երկու ասպետ իրենց ձիերուն սանձերը անոր ձիուն սանձին հետ կապեցին, համարձակ առաջ գնացին ու թշնամեաց բազմութեան մէջ զարնուեցան մեռան:

---

[1] Քրէսիի պատերազմը ինչպէս եղաւ: — Ի՞նչ կը պատմուի Պոհեմիոյ Յովհաննէս Կոյր թագաւորին վրայ:

1 Պատերազմին ատենը Փիլիպպոս Վալուա միշտ մէկ նետընկեց մը հեռու կեցած էր. Յովհաննէս Հէնոյ իշխանը վերջապէս Թագաւորին ձիուն սանձը բռնեց ու պատերազմին տեղէն դուրս հանեց. ան գիշերն ալ անձրեւոտ ու մութ ըլլալով, Թագաւորը հազիւ կրցաւ բերդ մը հասնիլ: Բերդին դռները գոց էին. բերդապահը կանչուեցաւ. անիկայ ալ պատին վրայէն հարցուց թէ ո՞վ է ուշ ատեն զինքը կանչողը. Թագաւորը պատասխան տուաւ. “ Բացէ՛ք բացէք, Գաղղիոյ բաղդն է ”:

2 Երկրորդ օրը Անգղիոյ Թագաւորը ասպետներ խրկեց որ թշնամւոյն մեռելները համրեն. համրեցին տեսան որ տասնըմէկ իշխան, ութսուն դրօշակիր, հազար երկու հարիւր ասպետ, ու երեսուն հազար զինուոր մեռեր են. իսկ Անգղիացիք մէկ ձիապան մը, երեք ասպետ ու քանի մը զինուոր միայն կորսնցուցեր էին կ'ըսեն: Բայց “ Յաղթութիւնը չհամրեր իր մեռելները. ով որ յաղթող կ'ելլէ բան մը չկորսնցըներ ” կ'ըսէ առածը:

3 Քրեսիի պատերազմէն ետքը, Եդուարդ Գ գնաց Քալէ քաղաքը պաշարեց ու շուտ մը մէջը սով ձգեց: Քաղաքապետը այսպիսի թուղթ մը գրեց Փիլիպպոս Թագաւորին. “ Որչափ կենդանի որ գտանք, ձի, շուն, կատու, ամէնը կերանք.

---

1 Այն պատերազմին ատենը ի՞նչ կը պատմուի Փիլիպպոս Վալուա Թագաւորին վրայ:

2 Ո՞րչափ մարդ ինկեր էր Քրեսիի պատերազմին մէջ երկու կողմէն:

3 Ի՞նչպէս եղաւ Քալէ քաղաքին պաշարումն ու առումը:

անուանով մէկը ու Քուրթրէի պատերազմին մէջ մեծ յաղթութիւն ըրաւ Գաղղիացւոց դէմ։ Փիլիպպոս վազեց գնաց որ իր տէրութեան պատուոյն վրէժը առնէ, բայց յաղթութենէ մը վերջը ետ քաշուեցաւ. վասն զի վաթսուն հազար Ֆլանտրացիք երկրորդ օրը դիմացը պատերազմի ելան. զարմացաւ Փիլիպպոս. «Աս ի՞նչ է, ըսաւ, երկինքէն անձրեւի տեղ Ֆլանտրացի՞ կը թափի»։ ու այնպիսի քաջ ժողովրդեան անկախութիւնը ճանչցաւ (1305)։ Սկովտիոյ մէջ ալ դրեթէ նոյն բաները պատահեցան. վասն զի Վալլէս անուանով քաջ Սկովտիացին Անգղիացիները հալածելէն ետեւ՝ մատնութեամբ անոնց ձեռքն ինկաւ և սոսկալի տանջանքներով Լոնտրայի մէջ սպաննուեցաւ։ Անոր տեղը Սկովտիացիք Հռոբերտոս Պրիւս անուանով մէկը իրենց թագաւոր անուանեցին. անիկայ առջի բերան յաղթուեցաւ, ու անտառներու մէջ պահուըտելով հազիւ հանեց թէ մեռեր է. մէյմըն ալ յանկարծ պահուըտած տեղէն դուրս ցատքեց ու չկարծած ատենին Անգղիացւոց վրայ վազելով ցիրուցան ըրաւ զանոնք։ Եդուարդ ատեն չունեցաւ ան ձախորդութեան դարման ընելու, և մեռաւ 1307ին։ Իր որդւոյն ապսպրեր էր որ իր ոսկորները եփէ ու միշտ զանոնք բանակին առջեւէն տանի. վասն զի կ'ըսէր հպարտութեամբ. «Թշնամիք անոնց դիմացը կենալու չեն համարձակիր»։ Բարձրահասակ էր Եդուարդ, անոր համար ալ Երկայնոտն ըսուեցաւ, ուժով, եռանդուն, դիւրագրգիռ ու յանդուգն. տէրութեանը մէջ ալ շատ բարեկարգութիւններ ըրաւ, օրինաց գիրքը կարգաւորեց ու ըսուեցաւ Անգղիո-

ջի Յուստինիանոս ։ Իրեն յաջորդեց անգլիական որդին Եդուարդ Բ ։

1 Այն ատենները Գաղղիոյ բռնաւոր ու արխնահեղ Թագաւորը Փիլիպպոս Դ՝ Վոնիփակիոս Ը պապին դէմ գայթագղական կռիւներ ընելով երկու անգամ բանադրուեցաւ . Տաճարականները կ'այրէր , ու Կղեմէս Ե պապը կը ստիպէր որ աթոռը Հռոմէն փոխադրէ Աւենիոն . Իր հպատակներէն անիրաւ տեղ սակ հանելու համար անոնց կեանքին ալ չէր խնայեր ։ Տաճարականաց մեծ մագիստրոսը Յակոբ Մոլէ իր բազմաթիւ ընկերներովը Փարիզու մէջ այրուելու ատենը անէծք տուեր էր Թագաւորին , և կարծես թէ անէծքը կատարուեցաւ . վասն զի անոր մեռնելէն ետքը իրեք որդիքն ալ , այսինքն Լուդովիկոս Ժ , Փիլիպպոս Ե և Կարոլոս Դ ետեւէ ետեւ չորս տարուան մէջ մեռան և արու ժառանգ մը չթողուցին (1314-1328) ։

2 Անդին Անգղիոյ Եդուարդ Բ Թագաւորն ալ Պետրոս Կավէստոն անունով իշխանի մը հետ մտերիմ բարեկամ ըլլալուն համար՝ մեծամեծներուն ատելի եղաւ . մանաւանդ որ ան մարդն ալ իր թշնամիներուն ծանր նախատինքներ կ'ընէր . օրինակի համար Վարուիքի կոմսին անունը դրեր էր Սեւ շուն անտառոյ . վերջապէս իշխանները բռնեցին Կավէստոնն ու գլխատեցին ։

---

1 Փիլիպպոս Դ ի՞նչ բռնութիւններ ըրաւ ։
2 Կավէստոն իշխանին վրայ ի՞նչ կայ գիտնալիք ։

[1] Սկովտիոյ մէջ ալ Եդուարդայ բաղդը չբանեցաւ. վասն զի Հռոբերտոս Պրիւս մեծամեծ քաջութիւններ ընելով, ետեւէ ետեւ տիրեր էր Ռոքսպուրկ, Փէրթ ու Էտինպուրկ քաղաքներուն. երեսուն հազար տիգաւոր զօրքով ալ պատերազմի ելաւ Թագաւորին առջեւ (1313)։ Առաւօտանց կանուխ Սկովտիացիք աղօթքի կեցան, ու մօտ տեղ բլրի մը վրայ եղած պատարագը մտիկ ըրին. անկէց ետքը քահանան բոպիկ ոտքով բոլոր զինուորներուն մէջ պտըտեցաւ ու յորդորեց զիրենք որ քաջութեամբ պատերազմին հայրենեաց ազատութեանը համար։ Եւ որովհետեւ զինուորները անոր անցնելու ատենը ծնրադրութիւն կ'ընէին, Անգղիացւոց մէկը կանչեց թէ “Ծունկի վրայ եկած կ'աղաչեն որ խնայենք իրենց։ — Այո՛, ըսաւ անգղիացի իշխան մը, բայց զԱստուած կ'աղաչեն, և ոչ թէ զմեզ”։ Պատերազմը սկսելուն պէս՝ Անգղիացւոց հետեւակ զօրքը ջարդուեցաւ, փախաւ. ան ատեն ձիաւորները առաջ եկան, բայց փոսերով լեցուն տեղ մը հանդիպելով՝ ձիերը ընկան, ձիաւորներն ալ իրարու վրայ թափելով՝ ոչ իրենք զիրենք կրցան պաշտպանել և ոչ նորէն ոտք ելլել. զէնքերուն ալ ծանրութեանը տակ ճնշուելով չարաչար ջարդուեցան. Եդուարդ Թագաւորն ալ իր կնիքն ու գանձերը կորսնցընելէն ետեւ, պատերազմին տեղէն ձգեց փախաւ։

---

[1] Հռոբերտոս Պրիւս ի՞նչ քաջութիւններ ըրաւ Անգղիացւոց դէմ։

[1] Կավէսթոնին տեղը ուրիշ նոր բարեկամ մը ունեցեր էր Թագաւորը՝ Հուկոս Սփենսէր անունով. անոր ալ մեծ Թշնամին եղաւ Իզապէլ, որ Գաղղիոյ Փիլիպպոս Թագաւորին քոյրն էր, ու կենդանութեան ատենը ամէն տեսակ չարագործութեան օրինակ ըլլալէն ետքը, մեռնելէն ետքն ալ հարիւր յիսուն տարուան պատերազմի մը պատճառ եղաւ։ Աս Թագուհին կիրքերովը կուրցած՝ սոսկալի դիտաւորութիւն մը ունեցաւ որ Թէ էրիկը սպաննէ և Թէ Սփենսէրը։ Գաղղիա անցաւ իր եղբօրորդւոյն Կարոլոս չորրորդին պալատը, և հոն միտքը դրածը ուզածին պէս սկսաւ պատրաստել։ Որովհետև Անգղիոյ մեծամեծներն ալ Սփենսէրին իյնալը կ՚ուզէին, Թագուհւոյն հետ անդադար Թղթակցութիւն կ՚ընէին. վերջապէս Անգղիա հրաւիրեցին զինքը, ու երբոր հոն գնաց՝ իբրև իրենց ազատարարը այնպէս ուրախութեամբ ընդունեցան զինքն ու ձեռքը շատ զօրք տուին։ Եդուարդ մայրաքաղաքէն ելաւ փախաւ, Սփենսէրը ձեռք ընկաւ, ու եղինճով պսակուած՝ յիսուն ոտնաչափ բարձր կախաղանէ մը կախուեցաւ։ Իսկ Թագաւորին վրայ խորհրդարանին մէջ դատաստան եղաւ ու ամէնքը ջանացին հաստատել Թէ քանի որ Թագաւորը բանտ չէ դրուած, Թագուհւոյն կեանքը ապահով չէ. ուստի բռնեցին խեղճ Թագաւորը բերդի մը մէջ դրին, քիչ ատենէն ետքն ալ դիակը հանեցին ժողովրդեան ցուցուցին՝ իբր Թէ ինքիրեն մեռեր է.

---

[1] Իզապէլ Թագուհին ինչ անգթութիւններ ըրաւ Թագաւորին ու Սփենսէր իշխանին։

բայց կերպարանքին աւրուելէն կասկած եղաւ որ բանտութեամբ սպաններ են զինքը, և հասարակաց խօսքը այնպէս էր որ կարմրացուցած երկաթ խո-թեր են փորը, և նոյն գիշերը բերդին մէջէն ալ կանչուըռտուելուն ձայնը լսուեր է (1307)։

[1] Եդուարդ Գ երբոր Թագաւորեց, Անգղիա-ցիք ու Սկովտիացիք իրարու դէմ սաստիկ պատե-րազմի մէջ էին. և որովհետև Սկովտիացիք երկու անգամ յաղթեր էին իր հօրը, Եդուարդ միտքը դրաւ որ Հռոբերտ Պրիւսին արիւնովը աս նախա-տինքը լուանայ. բայց յաղթուեցաւ, հաշտու-թիւն ըրաւ հետը ու զինքը որդւոց որդի Սկով-տիոյ Թագաւոր ճանչցաւ (1328)։

[2] Սկովտիացւոց հետ հաշտութիւն ընել տալու-ղը աւելի Թագաւորին Իզապէլ մայրն էր։ Ան ա-տենները Կարոլոս Դ, Գաղղիոյ Փիլիպպոս Թա-գաւորին որդին մեռեր ու աղջիկ զաւակ մը թո-ղեր էր. Թագուհին ալ յղի էր, և ինքը խնամա-կալ անուաներ էր իր եղբօրորդին Փիլիպպոս Վա-լուա։ Խորհուրդ հարցուեցաւ իրաւագիտաց ու կանոնագիտաց. անոնք ալ պատասխան տուին թէ ըստ Սալեան օրինաց կնիկ մարդիկ յաջորդու-թեան իրաւունք չունին. ուստի Կարոլոսի Թագու-հին աղջիկ զաւակ մը ծնանելուն պէս՝ Փիլիպպոս Վալուա իրաւագիտաց վճռոյն և ազգային կար-ծեաց զօրութեամբը Թագաւոր ըսուեցաւ։

---

1 Եդուարդ Գ ի՞նչ կերպով հաշտութիւն ըրաւ Սկովտիացւոց հետ։

2 Գաղղիոյ Թագաւորութիւնը ան ատենները որո՞ւ ինկեր էր։

1 Անգղիոյ Թագաւորը տեսաւ որ իր վախճանին չհասաւ, որովհետեւ կ'ուզէր Գաղղիոյ ալ տիրել իր մօրը Իզապելլին ձեռքովը, սրտին դառնութիւնը պարտըկեց, ու 1329ին Ամիէն քաղաքը գնաց՝ Փիլիպպոս Վեցերորդին Թագաւորութիւնը շնորհաւորեց, ու իր երկիրը դառնալով նորէն Սկովտիոյ դէմ պատերազմ բացաւ: Հոն ան ատենի Թագաւորն էր Հռոբերտոսի որդին Դաւիթ Բրիւս. Անգղիոյ Թագաւորը անոր թշնամի հանեց Եդուարդ Պալիոլ անունով մէկը (1332). Գաղղիոյ Թագաւորն ալ Դաւիթի օգնեց. անոր համար Եդուարդ Գ բոլոր Ֆլանտրան ոտք հանեց: Ասանկով պատերազմը նորէն սկսաւ երկու ազգաց մէջ:

2 Ան միջոցին Ֆլանտրացւոց մէջ զօրաւոր մարդ մը կար ժողովրդեան շատ սիրելի՝ Ճաքմար Արթվէլ անունով, որ Կանթ քաղաքին մէջ գրեթէ Թագաւորի պէս տիրապետած էր: Եդուարդ Գ նայեցաւ որ անիկայ ոտք հանէ. ան ալ դեսպանին պատասխան տուաւ. "Որովհետեւ մենք Գաղղիոյ Թագաւորին հաւատարմութիւն խոստացեր ենք, դուն ըսէ քու տիրոջդ որ ինքն ալ թող Թագաւոր Գաղղիոյ ըսուի": Աս վատ խարդախութիւնը Եդուարդայ խելքին յարմար եկաւ, և իրաւցընէ ինքզինքը Թագաւոր Գաղղիոյ անուանեց:

---

1 Ի՞նչ պատճառաւ նորէն պատերազմ բացուեցաւ Գաղղիացւոց ու Անգղիացւոց մէջ:

2 Ո՞վ էր Ճաքմար Արթվէլ և ի՞նչպէս Անգղիոյ Թագաւորին կողմը բռնեց:

[1] Սակայն 1337ին պատերազմը դանդաղութեամբ առաջ կ'երթար . կարծես թէ երկու կողմէն ալ պատերազմին յաջողութեանը վրայ տարակուսած էին . վասն զի երկու կողմէն ալ գրեթէ հաւասար ոյժ ու քաջութիւն ունէին , և առջի պատերազմները մէկ կողմին համար ալ որոշ վիճակ մը չունեցան : Բայց քիչ ատենէն Յոֆրուա կամ Կոտֆրուա Հարքուրին մատնութեամբը Անգղիացիք զօրացան , և Եդուարդ Գաղղիոյ շատ քաղաքները առնելով , ու Սէն-Ժէրմէն , Սէն-Քլու և Պուռ-լա-Րէնի ըսուած աւանները այրելով ինչուան Փարիզու մօտեցաւ . ետքը երբոր դէպ'ի Փիքարտիա կ'երթար , լսեց որ Գաղղիացի նոր զօրքեր հասնելու վրայ են : Գրեսի քաղաքին քովը մեծ պատերազմ մը եղաւ , ու Գաղղիացիք չարաչար յաղթուեցան (1346) : Հոն Եդուարդայ որդին , որ ետքը Սեաւ Իշխան անուանով մեծ համբաւ ունեցաւ , շատ քաջութիւններ ըրաւ . հոն ընկաւ մեռաւ նաև Պոհեմիոյ թագաւորը Յովհաննէս Կոյր : Աս քաջ ծերունին լսելով որ Գաղղիացւոց բաները ձախորդ կ'երթան , դարձաւ ըսաւ քովիններուն . “ Կ'աղաչեմ, այնչափ առաջ տարէք զիս , որ կարենամ թրովս մէկ թշնամի մը զարնել ” : Ան ատենը երկու ասպետ իրենց ձիերուն սանձերը անոր ձիուն սանձին հետ կապեցին , համարձակ առաջ գնացին ու թշնամեաց բազմութեան մէջ զարնուեցան մեռան :

---

[1] Գրեսիի պատերազմը ինչպէս եղաւ : — Ինչ կը պատմուի Պոհեմիոյ Յովհաննէս Կոյր թագաւորին վրայ :

¹ Պատերազմին ատենը Փիլիպպոս Վալուա միշտ մէկ նետընկեց մը հեռու կեցած էր․ Յովհաննէս Հէնոյ իշխանը վերջապէս Թագաւորին ձիուն սանձը բռնեց ու պատերազմին տեղէն դուրս հանեց․ ան գիշերին ալ անձրեւոտ ու մութ ըլլալով, Թագաւորը հազիւ կրցաւ բերդ մը հասնիլ։ Բերդին դռները գոց էին․ բերդապանը կանչուեցաւ․ անիկայ ալ պատին վրայէն հարցուց թէ ո՞վ է ուշ ատեն զինքը կանչողը․ Թագաւորը պատասխան տուաւ․ “ Բացէ՛ք բացէ՛ք, Գաղղիոյ բաղդն է ”։

² Երկրորդ օրը Անգղիոյ Թագաւորը ասպետներ խրկեց որ Թշնամւոյն մեռելները համրեն․ համրեցին տեսան որ տասնըմէկ իշխան, ութսուն դրօշակիր, հազար երկու հարիւր ասպետ, ու երեսուն հազար զինուոր մեռեր են․ իսկ Անգղիացիք մէկ ձիապան մը, երեք ասպետ ու քանի մը զինուոր միայն կորսնցուցեր էին կ՚ըսեն։ Բայց “ Յաղթութիւնը չհամրեր իր մեռելները․ ով որ յաղթող կ՚ելլէ բան մը չկորսնցըներ ” կ՚ըսէ առածը։

³ Քրէսիի պատերազմէն ետքը, Եդուարդ Գ գնաց Քալէ քաղաքը պաշարեց ու շուտ մը մէջը սով ձգեց։ Քաղաքապետը այսպիսի թուղթ մը գրեց Փիլիպպոս Թագաւորին․ “ Որչափ կենդանի որ գտանք, ձի, շուն, կատու, ամէնը կերանք․

---

1 Ան պատերազմին ատենը ի՞նչ կը պատմուի Փիլիպպոս Վալուա Թագաւորին վրայ։

2 Ո՞րչափ մարդ ինկեր էր Քրէսիի պատերազմին մէջ երկու կողմէն։

3 Ի՞նչպէս եղաւ Քալէ քաղաքին պաշարումն ու առումը։

ուրիշ ճար չմնայ , բայց եթէ մէկզմէկ ուտել սկսինք . շուտով օգնութեան հասիր մեզի . ապա թէ ոչ՝ մեր զինուորները մտքերնին դրեր են որ թշնամեաց վրայ նետուին , ու պատուով մեռնին պատերազմին մէջ քան թէ քաղաքին մէջ անօթութիւնը զիրենք սպաննէ ,, : Փիլիպպոս աշխատեցաւ որ Քալէն ազատէ , բայց չկրցաւ , քաղաքն ալ անձնատուր եղաւ . բնակիչները մէջէն վռընտուեցան ու երկու հարիւր տարիի չափ Անգղիացիք տիրեցին Գաղղիոյ այն նաւահանգստին : Նոյն տարեններր Սկովտիոյ Դաւիթ Բրիւս թագաւորն ալ գերի բռնուեցաւ ու Եդուարդայ կնոջը Փիլիպպինէ թագուհւոյն ձեռքն ընկաւ , որ տասը տարի Լոնտրայի աշտարակին մէջ փակելէն ետքը արձըկեց :



## ԳԼՈՒԽ ԼԴ.

**Դարձեալ Գաղղիոյ և Անգղիոյ հակառակութիւններ (1350–1453) : (Յովհաննէս Բարեբարոյ). — Կարգ Աստեղ. — Փուաթիէի պատերազմը. — Սեւ իշխանը. — Յովհաննէս Թագաւորին գերի իյնալը ու Լոնտրա տարուիլը. — (Կարոլոս Ե). — Տիւկէքլէն. — Ռիքարդոս Բ. — (Կարոլոս Զ). — Յովհաննէս Պալ. — Վաթ Թայլէր. — Ռիքարդոսի քաջագործութիւնը. — Թագաւորաց ապստամբութիւնը. — Լէնքասթրի ցեղը. — Հենրիկոս Դ. — Կարոլոս Վեցերորդին խելքը կորսնցնելը. — Արմանեաք և Պուրկինեան ըսուած կուսակցութիւններ. — Հենրիկոս Ե. — Ազէնքուրի պատերազմը. — Գաղղիոյ խեղճութիւնը. — Հենրիկոս Զ. — (Կարոլոս Է). — Ժան տ՚ Արք. — Օռլէանը ազատելը. — Անգղիացւոց ձեռքը իյնալն ու մահը. — Կարոլոս Եօթներորդին մահը:**

1 *Փիլիպպոս Վալուային յաջորդեց Յովհաննէս Բարեբարոյ. ասիկայ թէպէտ և Քրէսիի պատերազմին նախատինքը վերցընելու շատ կը փափաքէր, բայց չկրցաւ նոր բան մը ընել: Իրեններուն նորէն սիրտ տալու համար ասպետութիւն մը հաստատեց՝ Կարգ Աստեղ ըսուած, և անոր մէջ գրուողները կ՚երդուընային որ պատերազմին մէջ մէկ ոտնաչափ տեղէ աւելի չհեռանան: Այն միջո-*

---

1 *Փիլիպպոս Վալուային ո՞վ յաջորդեց: — Կարգ Աստեղ ըսուածը ի՞նչ էր: — Փուաթիէի պատերազմը ի՞նչպէս եղաւ:*

ցին Նաւարրայի Թագաւորը Կարոլոս Չարաբարոյ՝
սպաննել տուեր էր Թագաւորին մտերիմ Իշխանը
Փերդինանտոս Լասերտան․ Յովհաննէս ուզեց
անոր մահուանը վրէժխնդիր ըլլալ․ Կարոլոս ալ
Անգղիա գնաց․ Եդուարդ Գ Թագաւորին հետ
դաշնակցութիւն ըրաւ ու պատերազմը նորէն
սկսաւ ։ Այն պատերազմին մէջ ալ քաջութիւն
ընողներուն գլխաւորը Սեւ Իշխանը եղաւ ։ Յով-
հաննէս վաթսուն հազար զօրքով ելաւ Փուա-
թիէի ճամբուն վրայ թշնամւոյն դէմ՝ որ վեց հա-
զար Կասքոն ու երկու հազար Անգղիացի միայն
էին ։ Սեւ Իշխանը հաշտութիւն խնդրելու միտք
ունէր․ բայց Յովհաննէս այնպիսի ծանր պայ-
մաններ դրաւ վրան որ ան ալ լաւ համարեցաւ
ինչուան ետքը պատերազմիլ ։ Սեպտեմբերի 19ին
1356ին երկու կողմէն զարնուեցան, ու Գաղղիա-
ցիք չարաչար յաղթուեցան․ իրենց ազնուական-
ներէն ալ այնչափ մարդիկ գերի ինկան որ յաղ-
թողներէն աւելի շատուոր էին ։ Յովհաննէս Թա-
գաւորն ալ թշնամեաց ձեռքն ինկաւ, ու առաջ
Պորտոյ, ետքը Լոնտրա տարուեցաւ ։

[1] Եդուարդ Գ իր յաղթութիւնէն մեծ շահ մը
քաղելու միտքով նայեցաւ որ Գաղղիոյ մեծ մասին
տիրապետէ․ մանաւանդ որ անիշխանութիւնը ան
երկրին մէջ տիրած ըլլալով, այլեւայլ իշխաններ
իրարու ձեռքէ տէրութիւնը յափշտակել կ՚ու-
զէին ։ Կարոլոս արքայորդին խոհեմութեամբ շար-
ժեցաւ, իր նախանձորդները հեռացուց, ու Անգ-
ղիոյ Թագաւորը ստիպեց որ Կիւյէն գաւառը առ-

---

[1] Գաղղիա ինչ վիճակի մէջ էր ան ատենները ։

նելով. գոհ ըլլայ (1360) : Չորս տարի ետքը Յովհաննէս Թագաւորը Լոնտրայի մէջ մեռաւ :

1 Կարոլոս Ե գիտուն ու խոհեմ Թագաւոր մը ըլլալով, առանց իր պալատէն դուրս ելլելու՝ օտարականները Գաղղիայէն հանեց (1364) . վասն զի իր զօրավարներն ու իշխանները աղէկ ընտրած էր . անոնց մէջ ալ շատ անուանի էր Պէրթրան Տիւկէքլէն, որ պատերազմասէր ու խոհեմ մարդ ըլլալով՝ Թագաւորին յոյսը պարապ չհանեց ու Թշնամեաց վրայ քանի մը յաղթութիւն ըրաւ : Անիկայ մատնութեամբ գերի բռնուեցաւ . Կարոլոս զինքը գնեց, նորէն զօրավար ըրաւ ու իրեն յանձնեց որ երթայ Հենրիկոս Թրանսթամարը Քասթիլիոյ Թագաւորութեանը մէջ հաստատէ : Երբոր տեսաւ Կարոլոս որ Տիւկէքլէնին ձեռքովը Սպանիոյ մէջ ալ զօրացաւ, օր մը իր խոհակերոցը իջաւ ու ծառաներէն մէկուն Թուղթ մը տուաւ որ Անգղիոյ Թագաւորին տանի . ան Թուղթն ալ պատերազմի յայտարարութիւն էր ծանր խօսքերով : Բայց Կարոլոսին բաղդէն ան միջոցին Եդուարդ ծերացած ու ինքզինքը զուարճութեանց տուեր էր . անոր որդին Սեաւ իշխանն ալ երկարատեւ հիւանդութեան մէջ ընկած ըլլալով՝ առաջին գործունէութիւնը չունէր :

2 Տիւկէքլէն սպարապետ ընտրուելով (1370) մեծամեծ քաջութիւններ ըրաւ, իրեք հարիւր քաղաքէն աւելի առաւ, ու Գաղղիոյ Շաթոնէօֆ-տը-Րանտան ըսուած քաղաքը պաշարելու ատե-

---

1 Կարոլոս Ե զո՞վ ընտրեց իրեն սպարապետ :
2 Ի՞նչ քաջութիւններ ըրաւ Տիւկէքլէն :

նը սաստիկ զարնուելով մեռաւ (1380)։ Նոյն տարին մեռաւ նաև Կարոլոս Ե, և մեռնելու ատեն աս ուրախութիւնն ունէր, որ իր թագաւորութիւնը օտարաց ձեռքէն ազատեր էր։

¹ Անգղիոյ թագաւորը Եդուարդ Գ 1377ին մեռնելով, իր տէրութիւնը խեղճ վիճակի մէջ թողեր էր. այնպէս որ Սկովտիոյ մէջ Սթուարթեանց նոր ցեղը ինքնագլուխ թագաւորեր էր. Գաղղիոյ մէջ ալ միայն Պորտոյ ու Քալէ քաղաքները Անգղիոյ թագաւորին ձեռքն էին, որ էր Ռիչարտոս Բ, և դեռ տղայ ըլլալով իրեն հօրեղբարցը խնամակալութեանը տակն էր։

² Անգղիոյ նման էր նաև Գաղղիոյ վիճակը. վասն զի Կարոլոս հինգերորդին մեռնելէն ետև, Կարոլոս Զ տղայ ըլլալով, իրեք հօրեղբարցը խնամակալութեամբը կը կառավարէր երկիրը, որ էին Անժուի, Պէրրիի ու Պուրկոյնի դուքսերը։

³ Թէ Անգղիոյ և թէ Գաղղիոյ մէջ տուրքերն ալ սաստիկ շատնալով մեծ խռովութեանց պատճառ եղան։ Անգղիոյ երկիրը որովհետև գլխահարկ ըսուած տուրքը նոր բան էր, Էսսէքսի ու Քէնթի կոմսութիւնները ոտք ելան. ան խռովութեան գլխաւորն էր Ուիքլէֆ հերետիկոսին աշակերտը Յովհաննէս Պալ, որ հարիւր հազար հոգի

---

¹ Եդուարդ երրորդին մեռնելէն ետև Անգղիա ի՞նչ վիճակի մէջ էր։

² Կարոլոս հինգերորդին ո՞վ յաջորդեց։

³ Անգղիոյ մէջ տուրքի պատճառաւ ի՞նչ խռովութիւն ելաւ։ — Ո՞վ էր Պալ։ — Ուաթ-Թայլէր ո՞վ էր։

հետն առած՝ Լոնտրայի վրայ գնաց, բոլոր ճամ-բուն վրայ հարկապահանջները սպաննելով ու ամէն տեղ այրելով ու կողոպտելով: Այն ատենուան խռովութեան ժամանակը՝ դեռահասակ Թագաւորը մեծ քաջարութիւն ցուցուց: Անոնց վախնալու ապստամբներուն կատաղի աղաղակներէն՝ դիմացնին ելաւ: Անոնց գլխաւորը Վաթ-Թայլէր ըսուած ցած ու բիրտ մարդը մէկ ձեռքը թուր բռնած, մեկալովը Թագաւորին ձիուն սանձէն բռնեց. բայց իշխաններէն մէկը զարկաւ, հոն մէկէն կիսամեռ ձգեց զինքը: Թագաւորին կեանքը վտանգի մէջ էր. սակայն անխռով առաջ գնաց դէպ 'ի ապստամբներուն մէջ ու ըսաւ. " Ի՞նչ կ'ընէք բարեկամք. Վաթ-Թայլէրը մատնիչ մըն էր. իմ ետեւէս եկէք, ես միայն պիտի ըլլամ ձեր առաջնորդը ": Ապստամբները աս խօսքերը լսելով երբոր տեսան որ յանկարծակի հազար հոգի ալ դիմացնին ելաւ աղէկ զինուած, շփոթեցան ու զէնքերնին ձգելով ցրուեցան եղան, իրենց գլխաւորներն ալ ձեռք ընկան և գլխատուեցան:

¹ Գաղղիոյ մէջ ալ տուրքերուն պատճառաւ ապստամբութիւն մը ելեր էր, որ ըսուեցաւ ապըստամբութիւն Ժաքըրիայ. վասն զի Փարիզու բնակիչները զինուորները կողոպտեր էին, և ուրիշ զէնք չգտնելով՝ կապարէ թակերը * առեր ու անոնցմով հարկապահանջները սպաններ էին. իսկ Թագաւորին հօրեղբայրները Փարիզ քաղաքը

---

¹ Թակաւորաց ապստամբութիւնը ինչպէս եղաւ:

* Թօգմագ:

պատժելու համար՝ անոր ապստամբութիւնները վերուցին, փողոցներու բերանը կապուած շղթաները կոտրտեցին, քաղաքացւոց ստացուածքը գրաւեցին ու շատ մարդ ալ սպաննեցին։ Այն միջոցին Անգղիացիք ալ նորէն սկսան իրենց պատերազմները Սկովտիոյ, Գաղղիոյ ու Փլանտրայի դէմ. Հռիքարտոս Բ չկրցաւ յաղթել Հռոբերտոս Սթուարթին, իսկ Կարոլոս Զ յաղթեց Փլանտրացւոց՝ Պելճիոյ Ռոզպէք ըսուած քաղաքին քովը (1382)։

[1] Երկու թագաւորութեանց մէջ եղած նմանութիւնը այն ատենը վերջացաւ։ Անգղիոյ մէջ խռովութիւն մը ելաւ, ու թագաւորութիւնը Անժուի ցեղէն Լէնքասթրի ցեղին անցաւ։ Հռիքարտոս Բ քանի մը իշխանաց չար խորհրդին հետեւելով՝ ինքզինքը անկարգութեանց տուաւ, և ով որ իրեն վարմունքին չհաւնիլ կը ցուցընէր՝ սկսաւ հալածել զանոնք ու սպաննել։ Երբոր այսպիսի բռնութիւններով իր հպատակացը աչքէն ելեր էր, Կարոլոս վեցերորդին աղջկանը հետ կարգուելովն ալ բոլորովին իր ազգը իրեն դէմ հանեց. վասն զի այն հարսնիքին պայմաններուն մէկն ալ աս էր որ Գաղղիոյ Պրէսթ ու Շէրպուր քաղաքները Գաղղիացւոց դարձուին։ Հռիքարտոսի հօրեղբօրորդին Հէնրիկոս Լէնքասթրի թագաւոր ընտրուեցաւ, իսկ ինքը դժբաղդն Հռիքարտոս Բ բերդի մը մէջ արգիլուեցաւ ու հոն սպաննուեցաւ. ոմանք կ'ըսեն թէ իր պահապանները անօթի մեռուցին զինքը (1399)։

---

[1] Հռիքարտոս Բ ինչ անգթութիւններ ըրաւ ու ինչպէս մեռաւ։

[1] Գաղղիոյ մէջ պատահածներն ալ անկէց վար չէին մնար : Պետրոս Քրան անունով Պրեթայնի դքսին հպատակը, Օլիվիէ որ Քլիսոն անունով զօրապետը սպաններ ու իր դքսին քովը փախեր էր : Կարոլոս Զ Թագաւորը ուզեց որ յանցաւորը իրեն ձեռքը տրուի, երբոր տեսաւ որ Պրեթայնի դուքսը մտիկ չըներ, շատ զօրքով վրան գնաց : Ճամբուն տաք ատեն Մանս քաղաքին անտառէն անցնելու ժամանակը պատըռտած հագուստներով մէկը յանկարծակի վրան հասաւ, ու ձիուն սանձէն բռնելով ըսաւ. “ Առաջ մ'երթար Թագաւոր, վասն զի մատնուած ես ”: Ան յանկարծական երեւութէն Կարոլոսին ակար ուղեղը շփոթեցաւ ու խեղճ Թագաւորը խելքը կորսնցուց : Ասկէց ետքը սոսկալի անիշխանութեան մէջ ընկաւ Գաղղիա. Թագաւորին հօրեղբայրները Թագաւորութիւնը ձեռք առին, ու անոր խորհրդականները պաշտօնէ ձգեցին : Պուրկոյնի դուքսը Յովհաննէս Աներկիւղն սպաննեց Օռլէանի դուքսը, որ Թագաւորին եղբայրն էր, և ասկէց քաղաքական պատերազմ մը սկսաւ բոլոր երկրին մէջ (1407) : Ազգը երկու բաժնուած, ու մէկ կողմը Արմանեաք՝ մէկալ կողմը Պուրկինեան անունները առած՝ բոլոր Փարիզն ու գրեթէ գաւառները սպանութեամբ և աւազակութեամբ լեցուցին : Արմա-

---

[1] Կարոլոս Զ ի՞նչ պատճառաւ խելքը կորսնցուց : — Ան միջոցին ի՞նչ վիճակի մէջ ընկաւ Գաղղիա : — Քաղաքական պատերազմը ի՞նչպէս բացուեցաւ : — Ի՞նչպէս եղաւ Ազէնքուրի պատերազմը :

նեաքները իրենց ազգական Օռլէանեանց վրէժը հանելու համար՝ Անգղիոյ Թագաւորէն օգնութիւն խնդրեցին . բայց անիկայ ան միջոցին մեռաւ (1413) : Անոր որդին Հենրիկոս Ե Գաղղիա անցաւ ու սկսաւ պահանջել որ Գաղղիացիք զինքը Թագաւոր ճանչնան : Կարոլոս Արմանեակք ողէտ զօրավարը անոր դէմ գնաց ու Ազէնքուրի քով չարաչար յաղթուեցաւ Անգղիացւոցմէ , այնպէս որ տասը հազար մարդ կորսնցուց , եօթը թագաւորազուն իշխան ու հարիւր քսան նշանաւոր ազատններ : Հենրիկոս Ե այնչափ գերի քովը պահելէն վախնալով , զամէնքն ալ սպաննեց , թէպէտ և խոստացեր էր որ կեանքերնուն խնայէ :

[1] Գաղղիոյ այնպիսի վտանգի մէջ եղած ատենը՝ երկպառակ կողմերը սկսան մտածել որ կերպով մը հաշտութիւն իրարու հետ . ան միջոցին երիտասարդ Կարոլոս Օռլէանցին իր հօրը մահուան վրէժը առնելու համար , Պուրկոյնի դուքսը Յովհաննէս Աներկիւղը սպաննել տուաւ (1419) : Աս որ տեսաւ Պուրկոյնի նոր դուքսը Փիլիպպոս Բարեբարոյ՝ Անգղիոյ Թագաւորին անձնատուր եղաւ ընելով թէ Հենրիկոս Ե իրաւունք ունի Գաղղիոյ վրայ Թագաւորելու : Ան ատենը Կարոլոս վեցերորդին անուանովը ու Իզապէլլա Թագուհւոյն հաւանութեամբը հաստատուեցաւ Թրուա քաղաքին մէջ ան նախատալից դաշնադրութիւնը , որով Գաղղիոյ Թագաւորին աղջիկը Կատարինէ Անգղիոյ Թագաւորին տրուեցաւ , Գաղղիոյ Թագաւո-

---

1 Գաղղիա ինչ կերպով Անգղիոյ Թագաւորին պաշտպանութեանը տակ ընկաւ :

րութիւնն ալ անոր պաշտպանութեանը տակն ինկաւ (1420)։ Հենրիկոս Ե յաղթանակով Փարիզ մտաւ ու Թագաւորի պէս Կարոլոս վեցերորդին քովը նստաւ։ Երկու տարիէն երկու Թագաւորներն ալ մեռան (1422)։

[1] Հենրիկոս Զ, Հենրիկոս հինգերորդին որդին, դեռ տղայ էր. իր խնամակալները զինքը հրատարակեցին Փարիզու և Լոնտրայի մէջ փառաւոր հանդիսով Թագաւոր Գաղղիոյ և Անգղիոյ։ Ան ատենները Քափէթեանց օրինաւոր ժառանգը Կարոլոս Է քանի մը հաւատարիմ մարդիկներով մէկդի քաշուած՝ փուճ տեղը կը բողոքէր Անգղիացւոց դէմ, որ զինքը Պուրժի միայն Թագաւոր կ'անուանէին. իրաւցընէ ալ քանի մը պզտիկ քաղաքներու վրայ միայն կ'իշխէր, և իրեն գլխաւոր քաղաքը Օռլէանն էր։

[2] Անգղիոյ Թագաւորին խնամակալներէն մէկը, այսինքն Պէտֆորտի դուքսը գնաց Օռլէան քաղաքը պաշարեց ու քիչ մնաց որ պիտի առնէր. բայց դաշտերու մէջ մեծցած պզտիկ աղջիկ մը Լորէն գաւառէն ելած՝ օգնութեան հասաւ ու ազատեց ոչ միայն Օռլէանը, հապա նաև բոլոր Գաղղիան. և ասիկայ էր հռչակաւոր Ժան տ'Արք կամ Յովհաննա Արքեան ըսուած աղջիկը։

---

[1] Անգղիոյ Թագաւորին ո՞վ յաջորդեց։ — Գաղղիոյ Թագաւորին յաջորդը ո՞վ էր։

[2] Օռլէան քաղաքին պաշարուիլն ու ազատիլը ի՞նչպէս եղաւ։

ցին Նաւարրայի Թագաւորը Կարոլոս Չարաբարոյ՝ սպաննել տուեր էր Թագաւորին մտերիմ իշխանը Փերդինանտոս Լասերտան. Յովհաննէս ուզեց անոր մահուանը վրէժխնդիր ըլլալ. Կարոլոս ալ Անգղիա գնաց, Եդուարդ Գ Թագաւորին հետ դաշնակցութիւն ըրաւ ու պատերազմը նորէն սկսաւ ։ Այն պատերազմին մէջ ալ քաջութիւն ընողներուն գլխաւորը Սեաւ իշխանը եղաւ ։ Յովհաննէս վաթսուն հազար զօրքով եկաւ Փուաթիէի ճամբուն վրայ Թշնամւոյն դէմ՝ որ վեց հազար Կասքոն ու երկու հազար անգղիացի միայն էին ։ Սեաւ իշխանը հաշտութիւն խնդրելու միտք ունէր . բայց Յովհաննէս այնպիսի ծանր պայմաններ դրաւ վրան որ ան ալ լաւ համարեցաւ ինչուան ետքը պատերազմիլ ։ Սեպտեմբերի 19ին 1356ին երկու կողմէն զարնուեցան, ու Գաղղիացիք չարաչար յաղթուեցան . իրենց ազնուականներէն ալ այնչափ մարդիկ գերի ինկան որ յաղթողներէն աւելի շատուոր էին ։ Յովհաննէս Թագաւորն ալ Թշնամեաց ձեռքն ինկաւ, ու առաջ Պորտօ, ետքը Լոնտրա տարուեցաւ ։

[1] Եդուարդ Գ իր յաղթութեններէն մեծ շահ մը քաղելու մտքով նայեցաւ որ Գաղղիոյ մեծ մասին տիրապետէ . մանաւանդ որ անիշխանութիւնը ան երկրին մէջ տիրած ըլլալով, այլեւայլ իշխաններ իրարու ձեռքէ տէրութիւնը յափշտակել կ'ուզէին ։ Կարոլոս արքայորդին խոհեմութեամբ շարժեցաւ, իր նախանձորդները հեռացուց, ու Անգղիոյ Թագաւորը ստիպեց որ Կիւյէն գաւառը առ-

[1] Գաղղիա ինչ վիճակի մէջ էր ան տարիները ։

նելով գոհ ըլլայ (1360) ։ Չորս տարի ետքը Յովհաննէս Թագաւորը Լոնտրայի մէջ մեռաւ ։

1 Կարոլոս Ե գիտուն ու խոհեմ Թագաւոր մը ըլլալով, առանց իր պալատէն դուրս ելլելու՝ օտարականները Գաղղիայէն հանեց (1364) · վասն զի իր զօրավարներն ու իշխանները աղէկ ընտրած էր · անոնց մէջ ալ շատ անուանի էր Պէրթրան Տիւկէքլէն, որ պատերազմասէր ու խոհեմ մարդ ըլլալով Թագաւորին յոյսը պարապ չհանեց ու թշնամեաց վրայ քանի մը յաղթութիւն ըրաւ ։ Ասիկայ մատնութեամբ գերի բռնուեցաւ · Կարոլոս զինքը գնեց, նորէն զօրավար ըրաւ ու իրեն յանձնեց որ երթայ Հենրիկոս Թրանսթամարը Քասթիլիոյ Թագաւորութեանը մէջ հաստատէ ։ Երբոր տեսաւ Կարոլոս որ Տիւկէքլէնին ձեռքովը Սպանիոյ մէջ ալ զօրացաւ, օր մը իր խոհակերոցը իջաւ ու ծառաներէն մէկուն թուղթ մը տուաւ որ Անգղիոյ Թագաւորին տանի · ան թուղթն ալ պատերազմի յայտարարութիւն էր ծանր խօսքերով ։ Բայց Կարոլոսին բաղդէն ան միջոցին Եդուարդ ծերացած ու ինքզինքը զուարճութեանց տուեր էր · անոր որդին Սեաւ իշխանն ալ երկարատև հիւանդութեան մէջ ընկած ըլլալով առաջին գործունէութիւնը չունէր ։

2 Տիւկէքլէն սպարապետ ընտրուելով (1370) մեծամեծ քաջութիւններ ըրաւ, իրեք հարիւր քաղաքէն աւելի առաւ, ու Գաղղիոյ Շաթոնէօֆ-տը-Ռանտան բռնած քաղաքը պաշարելու տա-

---

1 Կարոլոս Ե զո՞վ ընտրեց իրեն սպարապետ ։
2 Ի՞նչ քաջութիւններ ըրաւ Տիւկէքլէն ։

նը սաստիկ զարնուելով մեռաւ (1380)։ Նոյն տա-րին մեռաւ նաև Կարոլոս Ե, և մեռնելու ատեն աս ուրախութիւնն ունէր, որ իր թագաւորութիւնը օտարաց ձեռքէն ազատեր էր։

1 Անգղիոյ թագաւորը Եդուարդ Գ 1377ին մեռնելով, իր տէրութիւնը խեղճ վիճակի մէջ թողեր էր. այնպէս որ Սկովտիոյ մէջ Սթուար-թեանց նոր ցեղը ինքնագլուխ թագաւորեր էր. Գաղղիոյ մէջ ալ միայն Պորտոյ ու Քալէ քաղաք-ները Անգղիոյ թագաւորին ձեռքն էին, որ էր Ռիքարտոս Բ, և դեռ տղայ ըլլալով իրեն հօր-եղբարցը խնամակալութեանը տակն էր։

2 Անգղիոյ նման էր նաև Գաղղիոյ վիճակը. վասն զի Կարոլոս հինգերորդին մեռնելէն ետև, Կարոլոս Զ տղայ ըլլալով, իրեք հօրեղբարցը խնամակալութեամբը կը կառավարեր երկիրը, որ էին Անժուի, Պերրիի ու Պուրկոյնի դուքսերը։

3 Թէ Անգղիոյ և թէ Գաղղիոյ մէջ տուրքերուն ալ սաստիկ շատնալովը մեծ խռովութեանց պատ-ճառ եղան։ Անգղիոյ երկիրը որովհետև գլխա-հարկ ըսուած տուրքը նոր բան էր, Էսսէքսի ու Քէնթի կոմսութիւնները ոտք ելան. ան խռովու-թեան գլխաւորն էր Վիքլէֆ հերետիկոսին աշա-կերտը Յովհաննէս Պալ, որ հարիւր հազար հոգի

---

1 Եդուարդ երրորդին մեռնելէն ետև Անգղիա ի՞նչ վիճակի մէջ էր։

2 Կարոլոս հինգերորդին ո՞վ յաջորդեց։

3 Անգղիոյ մէջ տուրքի պատճառաւ ի՞նչ խռովու-թիւն ելաւ։ — Ո՞վ էր Պալ։ — Վաթ-Թայ-լէր ո՞վ էր։

հեան առած՝ Լոնտրայի վրայ գնաց, բոլոր Ճամբուն վրայ հարկապահանջները սպաննելով ու ամէն տեղ այրելով ու կողոպտելով: Այն սոսկալի խռովութեան ժամանակը՝ դեռահասակ Թագաւորը մեծ քաջասրտութիւն ցուցուց: Առանց վախնալու ապստամբներուն կատաղի աղաղակներէն՝ դիմացնին ելաւ: Անոնց գլխաւորը Վաթ-Թայլէր ըսուած ցած ու բիրտ մարդը մէկ ձեռքը թուր բռնած, մէկալովը Թագաւորին ձիուն սանձէն բռնեց. բայց իշխաններէն մէկը զարկաւ, հոն մէկէն կիսամեռ ձգեց զինքը: Թագաւորին կեանքը վտանգի մէջ էր. սակայն անխռով առաջ գնաց դէպ 'ի ապստամբներուն մէջ ու ըսաւ. "Ինչ կ՚ընէք բարեկամք. Վաթ-Թայլէրը մատնիչ մըն էր. իմ ետեւէս եկէք, ես միայն պիտի ըլլամ ձեր առաջնորդը": Ապստամբները աս խօսքերը լսելով երբոր տեսան որ յանկարծակի հազար հոգի ալ դիմացնին ելաւ աղէկ զինուած, շփոթեցան ու զէնքերնին ձգելով ցիրուցան եղան, իրենց գլխաւորներն ալ ձեռք ընկան և գլխատուեցան:

1 Գաղղիոյ մէջ ալ տուրքերուն պատճառաւ ապստամբութիւն մը ելեր էր, որ ըսուեցաւ ապըստամբութիւն Թակաւորաց. վասն զի Փարիզու բնակիչները զինարանը կողոպտեր էին, և ուրիշ զէնք չգտնելով՝ կապարէ թակերը* առեր ու անոնցմով հարկապահանջները սպաններ էին. իսկ Թագաւորին հօրեղբայրները Փարիզ քաղաքը

---

1 Թակաւորաց ապստամբութիւնը Ինչպէս եղաւ:

* Թոքմաք:

պատժելու համար՝ անոր ազատութիւնները վերուցին, փողոցներու բերանը կապուած շղթաները կտրտեցին, քաղաքացւոց ստացուածքը գրաւեցին ու շատ մարդ ալ սպաննեցին։ Այն միջոցին Անգղիացիք ալ նորէն սկսան իրենց պատերազմները Սկովտիոյ, Գաղղիոյ ու Ֆլանտրայի դէմ. Հռիքարտոս Բ չկրցաւ յաղթել Հռոբերտոս Սթուարթին, իսկ Կարոլոս Զ յաղթեց Ֆլանտրացւոց՝ Պեւզմէոյ Ռոզպէկ ըսուած քաղաքին քով (1382)։

[1] Երկու Թագաւորութեանց մէջ եղած նմանութիւնը ան ատենը վերջացաւ։ Անգղիոյ մէջ խռովութիւն մը ելաւ, ու Թագաւորութիւնը Անժուի ցեղէն Լէնքասթրի ցեղին անցաւ։ Հռիքարտոս Բ քանի մը իշխանաց չար խորհրդին հետեւելով՝ ինքզինքը անկարգութեանց տուաւ, և ով որ իրեն վարմունքին չհաւնիլ կը ցուցնէր՝ սկսաւ հալածել զանոնք ու սպաննել։ Երբոր այսպիսի բռնութիւններով իր հպատակացը աչքէն ելեր էր, Կարոլոս վեցերորդին աղջկանը հետ կարգուելովն ալ բոլորովին իր ազգը իրեն դէմ հանեց. վասն զի ան հարսնիքին պայմաններուն մէկն ալ աս էր որ Գաղղիոյ Պրէսթ ու Շէրպուր քաղաքները Գաղղիացւոց դարձուին։ Հռիքարտոսի հօրեղբօրորդին Հէնրիկոս Լէնքասթրի Թագաւոր ընտրուեցաւ, իսկ ինքը դժբաղդն Հռիքարտոս Բ բերդի մը մէջ արգիլուեցաւ ու հոն սպաննուեցաւ. ոմանք կ'ըսեն թէ իր պահապանները անօթի մեռուցին զինքը (1399)։

---

1 Հռիքարտոս Բ ի՞նչ անգթութիւններ ըրաւ ու ի՞նչպէս մեռաւ։

[1] Գաղղիոյ մէջ պատահածներն ալ անկէց վար չէին մնար : Պետրոս Վրան անունով Պրեթայնի դքսին հպատակը, Օլիվիէ տը Քլիսոն անունով զօրապետը սպաններ ու իր դքսին քովը փախեր էր : Կարոլոս Զ. Թագաւորը ուզեց որ յանցաւորը իրեն ձեռքը տրուի, երբոր տեսաւ որ Պրեթայնի դուքսը մտիկ չըներ, շատ զօրքով վրան գնաց : Ճամբուն տաք ատեն Մանս քաղաքին անտառէն անցնելու ժամանակը պատըռտած հագուստներով մէկը յանկարծակի վրան հասաւ, ու ձիուն սանձէն բռնելով ըսաւ. “ Առաջ մ'երթար Թագաւոր, վասն զի մատնուած ես ”: Այն յանկարծական երեւումէն Կարոլոսին տկար ուղեղը շփոթեցաւ ու խեղճ Թագաւորը խելքը կորսնցուց : Անկէց ետքը սոսկալի անիշխանութեան մէջ ընկաւ Գաղղիա. Թագաւորին հօրեղբայրները Թագաւորութիւնը ձեռք առին, ու անոր խորհրդականները պաշտօնէ ձգեցին : Պուրկոյնի դուքսը Յովհաննէս Աներկիւղն սպաննեց Օռլէանի դուքսը, որ Թագաւորին եղբայրն էր, և անկէց քաղաքական պատերազմ մը սկսաւ բոլոր երկրին մէջ (1407) : Ազգը երկու բաժնուած, ու մէկ կողմը Արմանեաք՝ մէկալ կողմը Պուրկինեոն անունները առած՝ բոլոր Փարիզն ու դրսի գաւառները սպանութեամբ և աւազակութեամբ լեցուցին : Արմա-

---

1 Կարոլոս Զ ի՞նչ պատճառաւ խելքը կորսնցուց : — Այն միջոցին ի՞նչ վիճակի մէջ ընկաւ Գաղղիա : — Քաղաքական պատերազմը ի՞նչպէս բացուեցաւ : — Ի՞նչպէս եղաւ Ազէնքուրի պատերազմը :

նեաքները իրենց ազգական Օռլէանեանց վրէժը հանելու համար՝ Անգղիոյ Թագաւորէն օգնութիւն խնդրեցին . բայց անիկայ ան միջոցին մեռաւ (1413) : Անոր որդին Հենրիկոս Ե Գաղղիա անցաւ ու սկսաւ պահանջել որ Գաղղիացիք զինքը Թագաւոր ճանչնան : Կարոլոս Արմանեակք ոգէտ զօրավարը անոր դէմ գնաց ու Ազէնքուրի քով չարաչար յաղթուեցաւ Անգղիացւոցմէ , այնպէս որ տասը հազար մարդ կորսնցուց , եօթը Թագաւորազուն իշխան ու հարիւր քսան նշանաւոր պարոններ : Հենրիկոս Ե այնչափ գերի քովը պահելէն վախնալով , զամէնքն ալ սպաննեց , Թէպէտ և խոստացեր էր որ կեանքերնին խնայէ :

1 Գաղղիոյ այնպիսի վտանգի մէջ եղած ատենը՝ երկպառակ կողմերը սկսան մտածել որ կերպով մը հաշտութիւն իրարու հետ . ան միջոցին երիտասարդ Կարոլոս Օռլէանցին իր հօրը մահուան վրէժը առնելու համար , Բուրկոյնի դուքսը Յովհաննէս Աներկիւղը սպաննել տուաւ (1419) : Աս որ տեսաւ Բուրկոյնի նոր դուքսը Փիլիպպոս Բարեբարոյ՝ Անգղիոյ Թագաւորին անձնատուր եղաւ ըսելով Թէ Հենրիկոս Ե իրաւունք ունի Գաղղիոյ վրայ Թագաւորելու : Ան ատենը Կարոլոս վեցերորդին անուանովը ու Իզապէլլա Թագուհւոյն հաւանութեամբը հաստատուեցաւ Թրուա քաղաքին մէջ ան նախատալից դաշնադրութիւնը , որով Գաղղիոյ Թագաւորին աղջիկը Կատարինէ Անգղիոյ Թագաւորին տրուեցաւ , Գաղղիոյ Թագաւո-

---

1 Գաղղիա ինչ կերպով Անգղիոյ Թագաւորին պաշտպանութեանը տակ ընկաւ :

րութիւնն ալ անոր պաշտպանութեանը տակն ընկաւ (1420)։ Հենրիկոս Ե յաղթանակով Փարիզ մտաւ ու Թագաւորի պէս Կարոլոս վեցերորդին քովը նստաւ։ Երկու տարիէն երկու Թագաւորներն ալ մեռան (1422)։

[1] Հենրիկոս Զ, Հենրիկոս հինգերորդին որդին, դեռ տղայ էր. իր խնամակալները զինքը հրատարակեցին Փարիզու և Լոնտրայի մէջ փառաւոր հանդիսով Թագաւոր Գաղղիոյ և Անգղիոյ։ Ան ատենները Քափէթեանց օրինաւոր ժառանգը Կարոլոս Է քանի մը հաւատարիմ մարդիկներով մէկդի քաշուած՝ փուճ տեղը կը բողոքէր Անգղիացւոց դէմ, որ զինքը Պուրժի միայն Թագաւոր կ՚անուանէին. իրաւցընէ ալ քանի մը պզտիկ քաղաքներու վրայ միայն կ՚իշխէր, և իրեն գլխաւոր քաղաքը Օռլէանն էր։

[2] Անգղիոյ Թագաւորին խնամակալներէն մէկը, այսինքն Պէտֆորտի դուքսը գնաց Օռլէան քաղաքը պաշարեց ու քիչ մնաց որ պիտի առնէր. բայց դաշտերու մէջ մեծցած պզտիկ աղջիկ մը Լօրէն գաւառէն ելած՝ օգնութեան հասաւ ու ազատեց ոչ միայն Օռլէանը, հապա նաև բոլոր Գաղղիան. և ասիկայ էր հռչակաւոր Ժան տ՚Արք կամ Յովհաննա Արքեան ըսուած աղջիկը։

---

[1] Անգղիոյ Թագաւորին ով յաջորդեց։ — Գաղղիոյ Թագաւորին յաջորդը ով էր։

[2] Օռլէան քաղաքին պաշարուիլն ու ազատիլը ինչպէս եղաւ։

[1] Հօրը ոչխարները արածելու ատեն աս բարեպաշտ աղջիկը իր հայրենեացը ազատութիւնը կը մտածէր ու անոր համար զԱստուած կ'աղաչէր. սուրբ Կոյսը երևցաւ իրեն, "Գնա, ըսաւ, Օռլէանը ազատէ ու Թագաւորդ Ռէնս քաղաքին մէջ օծել տուր"։ Արխասքրա Յովհաննան վերջին բարևը տուաւ իրեններուն ու լի հաւատով ճամբայ ելաւ, գնաց Կարոլաս եօթներորդին, "Ազնիւ արքայորդի, ըսաւ, երկնից Թագաւորը կ'իմացընէ քեզի իմ ձեռքովս որ գաւն Ռէնս քաղաքին մէջ պիտի օծուիս ու պսակուիս, և պիտի ըլլաս փոխանորդ Թագաւորին երկնից՝ որ Գաղղիոյ ալ Թագաւոր է։ Հիմայ ինծի զօրք տուր որչափ ալ քիչ ըլլան, ես կ'երթամ Օռլէանի պաշարումը կը վերցընեմ"։ Կարոլոս Է. ան աղջկան ձեռքը զօրք տուաւ, և հրաշքինէ Օռլէան քաղաքը ազատեցաւ. ութը օրուան մէջ Յովհաննան այնչափ գործ տեսաւ որ Օռլէանցիք եօթը ամիս դէմ կենալով պիտի չկարենային ընել։ Անգղիացիք ամէն տեղ յաղթուեցան ու Ռէնս քաղաքէն ալ ելան, և հոն Կարոլոս Է. Թագաւոր օծուեցաւ (1429)։ Հանդեսէն ետքը Յովհաննան Թագաւորին ոտքն ինկաւ ու ըսաւ լալով. "Ահա Աստուծոյ կամքը կատարուեցաւ. ես Օռլէանի պաշարումը վերցընել տուի և զքեզ Ռէնս քաղաքը բերի. հիմա թող որ երթամ հօրս մօրս ծառայեմ, ու քոյրերուս և եղբարցս հետ մեր ոչխարներուն պահպանութիւն ընեմ"։ Բայց իր աղաչանքին մտիկ

---

[1] Ի՞նչ կերպով Յովհաննա ելաւ Թագաւորին առջևն ու Օռլէանը ազատեց։

չըրաւ Թագաւորը, քովը սպաննեց զինքը. Նախանձոտ իշխաններն ալ մատնեցին զինքը և Քոմնինէն քաղաքին պաշարման առենը Թշնամեաց ձեռքն ընկաւ :

[1] Յովհաննան բռնելնուն վրայ մեծ պատերազմի մը մէջ յաղթութիւն ըրածի պէս ուրախացան Անգղիացիք, հանդիսով գոհաբանութիւններ ըրին եկեղեցեաց մէջ, Յովհաննան շղթայակապ երկաթէ վանդակի մէջ դրած Ռուանի բերդը պահեցին ու վրան դատաստան ըրին : Այն խեղճ ու անուսումն աղջիկը խելացի ու վսեմ պատասխաններով դատաւորները զարմացուց. բայց վերջապէս վճիռ հանեցին որ ողջ ողջ կրակը ձգուի այրուի : Երբոր աս ահաւոր դատակնիքը խեղճ աղջկան իմացուցին (որ հազիւ քսան տարեկան կար), սկսաւ լալ. կը մտածէր Թէ ի՞նչպէս հայրը, մայրը և ազգականները պիտի Թողու : Խոստովանանք ըլլալէն ետքը, առին Ռուանի հրապարակը տարին զինքը. արիութեամբ ելաւ խարուկին վրայ, սուրբ Աստուածածնայ և ամենայն սրբոց բարեխօսութիւնը խնդրելով՝ քովիններէն խաչ մը խնդրեց. Անգղիացւոյն մէկը երկու գաւազանով ձեւացուցած խաչ մը տուաւ ձեռքը. առաւ կոյսը, ջերմեռանդութեամբ պագաւ այն խաչը, ու երբոր չորսդին դիզուած փայտերը բռնկեցան, Յովհաննան Քրիստոսի Տեառն մերոյ անունը օգնութիւն կանչելով աւանդեց հոգին : Ժողովուրդը որ արդէն սիրտը կտրատելով կեցեր կը նայէր, այն միջոցին սարսափած ձգեց փախաւ. “Վա՜յ մեզի, կ'ըսէին,

---

[1] Յովհաննային վերջը ի՞նչպէս եղաւ :

այնպիսի բարի ու անմեղ կոյսը ի՞նչ խղճմտանքով այրեցին ,, ։ Անգղիոյ Թագաւորը հրամայեց որ Յովհաննային մոխիրները հովին տան ցրուեն . բայց ինչուան հիմա ոչ Անգղիացւոց անգթութեան բիծը անով սրբուեցաւ , և ոչ մանաւանդ Գաղղիացւոց մատնութեան աղտը (1431) ։

1 Անգղիացիք ուրիշ շատ տեղ ալ յաղթուելով՝ պէտք եղաւ որ Գաղղիոյ Թագաւորութենէն ձեռքերնին քաշեն (1452) ։ Իրենց Հենրիկոս Զ. Թագաւորէն հաշիւ պահանջեցին այնչափ կորսուած յաղթութիւններուն ու ջարդուած զօրքերուն համար , և անկէց ետքը սկսաւ Երկու Վարդից ըսուած պատերազմը՝ որ Նոր պատմութեան մասն է ։

2 Կարոլոս Է իր Թշնամեացը վրայ զօրանալուն համար Յաղթող ըսուելէն ետքն ալ հանդստութիւն չունեցաւ . որդին Լուդովիկոս՝ անհանդարտ բնաւորութեամբը անդադար հօրը դէմ կ՚ապստամբէր . վերջապէս ասոր խեռ որդւոյն ձեռքէն քաշած վիշտերուն չդիմացաւ Կարոլոս . մանաւանդ երբոր լսեց որ անիկայ ինչուան զինքը թունաւորել ալ կ՚ուզէ , սրտին ցաւէն չուզեց բերանը բան դնել ու անօթութենէ մեռաւ յիսունըութը տարեկան (1461) ։

---

1 Անգղիացիք ի՞նչպէս ձեռք քաշեցին Գաղղիոյ Թագաւորութենէն ։

2 Կարոլոս Է ի՞նչ մասնաւոր վիշտ ունեցաւ , ու ի՞նչ կերպով մեռաւ ։

# ԳԼՈՒԽ ԼԵ.

Պատմութեան գլխաւոր դէպքերուն Իտալիոյ 1258էն մինչեւ 1450 : *Հիւսիսային Իտալիա*. — Միլանի դքսութիւնը. Վիսքոնթեանք, Ցովհաննէս Բ Կալէացցոյ, Սֆորցաները. — Փիեմոնթէ Սավոյա. — Ծովեզերեայ հասարակապետութիւնք. Վենետիկ, Ճենովա, Փիզա. — Ճենովացւոց ու Փիզացւոց հակառակութիւնները. — Վենետիկեցւոց ու Ճենովացւոց հակառակութիւնները. — Վենետիկեցւոց մեծութիւնն ու վաճառականութիւնը. — Մարին Ֆալիերոյ դաւը. — Մալամոքքոյի պատերազմը. — Վիթոր Փազինի հազարապետը. — *Միջին Իտալիա*. — Թոսքանա, Մեդիչեանք. — Եկեղեցւոյ պետութիւնը. — Պապերուն աթոռին Աւինիոն փոխադրուիլը. — Արեւմտեան մեծ հերձուածը. — *Հարաւային Իտալիա*. — Նէապոլսոյ ու Սիկիլիոյ թագաւորութիւնը. — Անժուի ցեղը. — Սիկիլիոյ կոտորածը. — Սիկիլիոյ թագաւորութեանը Անժուի ցեղէն վերցուիլը :

[1] ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԻՏԱԼԻԱ : — *Փրեդերիկոս Բ կայսեր մեռնելէն ետքը՝ Իտալիան երկու ներհակ կուսակցութեանց մէջ բաժնուած էր, այսինքն Կուելֆեանց ու Կիպելեանց, որ կը նշանակէր՝ ժողովրդականաց ու ազնուականաց, կամ ազգայնոց և օտարաց : Կուելֆեանք յաղթեր էին Գերմանացւոց, բայց Իտալիայի Կիպելեանց չէին*

---

[1] *Փրեդերիկոս կայսեր մեռնելէն ետքը Հիւսիսային Իտալիա ինչ վիճակի մէջ էր :*

կրցած բան մը ընել․ մանաւանդ թէ ատոնք կայ-սերաց յաղթուիլը տեսնելով՝ իրենք մեծցեր էին ու Փօփօլօ կամ Իշխանութիւն անունը առեր էին։ Վերոնայի պէս մեծ քաղաքը Եկելինոս Գ. Կիապելլեան բռնաւորին ձեռքն էր, իր Ալպերիք եղբայրն ալ Թրեվիզի մէջ կը թագաւորէր, և ա-տոնք Լոմպարտիոյ ազնուականաց գլխաւոր առա-ջնորդներն էին։ Աղեքսանդր Դ պապը 1255ին խա-չակրութիւն մը հանեց անոնց դէմ․ Եկելինոս յաղթուեցաւ ու պատերազմի մը մէջ մեռաւ, եղ-բայրն ալ բոլոր քովի մարդիկներովը սպաննուե-ցաւ։ Աս ցեղին իյնալովը Էսթէի ու Սքալայի ցե-ղերը զօրացան (1260)։

1 ՄԻԼԱՆԻ ՏԷՐՈՒԹԻՒՆԸ։ — Արևմտեան Իտա-լիոյ մէջ ուրիշ փոփոխութիւն մը եղաւ․ Միլան որ առաջ ազատ քաղաք էր՝ ազատութիւնը կոր-սընցուց․ վասն զի Թորրիանի ըսուած ցեղը յան-կարծակի անկեց հալածուեցաւ 1277ին, և Ոթոն Վիսքոնթի անունով արքեպիսկոպոսը ինքզինքը անուանեց տէր Միլանու, և ան ատենէն սկսաւ իր ցեղին մեծութիւնը։

2 Ոթոն քանի տարի թագաւորելէն ետքը՝ տե-ղը անցաւ իր եղբօրորդին Մաթէոս Մեծն, որ 1302ին Թորրիանիներէն հալածուեցաւ․ բայց ետքը կէս մը խարդախութեամբ և կէս մը ան-գթութեամբ յաղթեց անոնց։ Աս էր որ Հեն-

---

1 Արևմտեան Իտալիան ինչ վիճակի մէջ էր։ — Վիս-քոնթեանց իշխանութիւնը ինչպէս սկսաւ։
2 Ոթոնին յաջորդացը վրայ ինչ կայ գիտնալիք։

րիկոս Է կայսրը Լոմպարդիոյ փոխարքայ ըսուելու պատուանունը տալով : Մատթէոսի յաջորդները Միլանի տէրութիւնը մեծցուցին, և հիւսիսային Իտալիոյ տասնըմէկ հատ մեծամեծ քաղաքները իրենց իշխանութեան տակը ձգեցին : Լուքինոյ Վիսքոնթի այնպէս աղէկ ըրաւ կառավարութիւնը որ իրեն ժամանակակից Փեթրարքայ բանաստեղծը վրան երգ շինեց : Յովհաննէս Ա Կալէացցոյ և Պեռնապոյ 1349ին միասեղ իշխեցին, բայց իրարու ներհակ ճամբայ բռնելով. Յովհաննէս գրքատուն մը շինեց, Միլանը զարդարեց, գիտունները, պատկերհանները խրախուսեց ու Փաւիոյ համալսարանը հաստատեց. իսկ Պեռնապոյ բոլոր կեանքը անցուց յանցաւորաց համար նոր նոր տանջարաններ հնարելու և իր հպատակներէն ստակ քաղելու, այնպէս որ զինքը Սիկիլիոյ բռնաւորին նմանցընելով Փալարիսի մականունը տուին իրեն :

[1] Յովհաննէս Բ Կալէացցոյ՝ Յովհաննէս Առաջնոյն որդին, հնարքով մը իր Պեռնապոյ հօրեղբօրը ու անոր որդիքը բռնեց բանտ դրաւ ու ինքը մինակ տիրապետեց (1378) : Աս իշխանը թէպէտև երբեմն փառասիրութեամբ շատ չարիք ըրաւ, բայց ընդհանրապէս կառավարութիւնը գէշ չէր, և շատ շինուածքներ ըրաւ : Կ'ըսէր թէ "Կ'ուզեմ որ իմ տէրութեանս մէջ ինծմէ զատ գող չգտնուի". ուստի արդարութեան բաներուն սաստիկ վրէժխնդիր էր : Ջրանցքներ փորել տուաւ,

---

[1] Յովհաննէս Բ Կալէացցոյ ինչպէս ըրաւ կառավարութիւնը, և ինչ պատուանուն ունեցաւ :

երկրագործութիւնը ծաղկեցուց, քաղաքական կառավարութիւնն ալ պատկառելի ըրաւ: Տերեց նաեւ Վերոնայի հասարակապետութեանը՝ ուր շատ զօրացած էր Աքալայի ցեղը. իր ստակովը օտար զինուորներ վարձեց և Պրենթա ու Թիչինոյ գետերուն մէջտեղի բոլոր երկիրներուն վրայ տիրեց: Այն ատենը Վինչեսլաւ կայսրը դուքս անունը տուաւ Կալէացցոյի (1396):

[1] Յովհաննէս երկրորդին որդիքը Յովհաննէս-Մարիամ և Փիլիպպոս-Մարիամ (1402) իրենց հօրը մեծութիւնը չունեցան. մանաւանդ թէ երկրորդին օրերը խռովութիւն մը եղաւ, որով իր ցեղն ալ իշխանութիւնը կորսնցուց: Միլանի վարձուոր զօրքերը Վենետկեցւոց կողմը անցան. Ֆրանչիսկոս Քարմանիոլա զօրավարը մեծ անուն հանեց իր քաջութեամբը, ու Վիսքոնթիները հալածեց. բայց ինքն ալ անոնց յաջորդելու պատիւը չունեցաւ: Օր մը զինուոր ժողվող պաշտօնեաներ գեղացիի մը հանդիպեցան որ գետինը կը մշակէր. առաջարկեցին իրեն որ գայ իրենց հետ միանայ. գեղացին առջի բերան չուզեց. բայց երբոր անոնք շատ ստիպեցին, ձեռքի բրիչը ծառի մը վրայ նետեց ու ըսաւ. « Թէ որ բրիչս վար չիյնայ՝ կուգամ »: Բրիչը դիպուածով ծառին վրայ մնաց. անիկայ ալ խօսքին վրայ կեցաւ ու գնաց հետերնին. աս գեղացին էր Աթթէնտոլոյ, որ քաջութեանը համար Սֆորցա ըսուեցաւ ու քիչ ատենի մէջ զօրավար եղաւ:

---

[1] Յովհաննէս երկրորդին ո՞վ յաջորդեց: — Ո՞վ էր Սֆորցա:

1 Սֆորցայի ցեղը պատերազմով օրէ օր առաջ եկաւ. Աթթէնտոլոյի որդին Ֆրանչիսկոս՝ Փիլիպպոս Վիսքոնթիին դէմ ըրած յաղթութիւններովը այնպիսի մեծ անուն հանեց որ Փիլիպպոս իր աղջիկը անոր կին տուաւ, ու Փիլիպպոսի մեռնելէն ետքը (1447) Միլանցիք տեսնելով որ Վենետկեցիք իրենց վրայ պիտի տիրեն՝ անոր յանձնեցին իրենց երկրին պաշտպանութիւնը: Ասանկով Ֆրանչիսկոս Սֆորցան որդւոց որդի նոր իշխանութիւն մը հաստատեց (1450):

2 ՓԻԷՄՈՆԹ ԵՒ ՍԱՒՈՅԱ. — Հին ատենը Սաբաւդիա և հիմա Սաւոյա ըսուած երկիրը մասնաւոր դքսերու ձեռք էր՝ Գերմանիոյ կայսերաց իշխանութեանը տակ. Հումբերտոս Բ դուքսը 1098ին Հենրիկոս չորրորդէն առաւ նաև Սուզայի և Թուրինի գաւառները և ըսուեցաւ Մարքիզ Իտալիոյ. բայց Ալպեան լերանց արևելեան կողմը բնակողները այսինքն Փիէմոնթեցիք՝ Սաւոյայի դքսերուն իշխանութիւնը չուզեցին ճանչնալ: Դուքսերը պատերազմով անոնց վրայ ելան, բայց երկար ատեն բան չկրցան ընել: Ամեդէոս Ը առաւ Նիցցա, Վերչէլլի և Քոնի քաղաքները. Սիկիսմոնտ կայսրն ալ զինքը դուքս ճանչցաւ. անոր համար Սաւոյայի ցեղին առաջին հիմնադիրը սա Ամեդէոսը կը սեպուի (1427):

---

1 Սֆորցայի ցեղը ի՞նչ կերպով զօրացաւ:
2 Փիէմոնթի ու Սաւոյայի տէրութեան սկիզբը ի՞նչպէս եղաւ:

1 ԾՈՎԱԶԵՐԵԱՑ ՀԱՍԱՐԱԿԱՊԵՏՈՒԹԻՒՆՔ: — Ճենովացիք Քորսիքա կղզւոյն տէրեր էին, և Փիզացիք Սարտենիան առեր էին. ասոնք երկար ատեն իրարու հետ միաբան չմնացին. սկսան իրարու վրայ նախանձելով հակառակութիւններ ընել ու շատ ժամանակ մէկմէկու դէմ սաստիկ ոխ պահեցին. Իտալիոյ խռովութեանց մէջ ալ Ճենովացիք Կուէլֆեանց կողմը բռնեցին, Փիզացիք Կիպէլլեանց: Փիզացիք չկրցան Քորսիքա կղզին պաշտպանել. Մելորիայի պատերազմին մէջ իրենց նաւերը ջարդուեցան, և Ճենովացիք բոլոր Ետրուրական ծովուն տիրեցին (1284): Իսկ Փիզայի մէջ անիշխանութիւնը տիրեց. Կուէլֆեանք ու Կիպէլլեանք իրարու հետ կռուելով՝ անոր մնացած ոյժն ալ տկարացուցին, ու ստիպեցին որ Ճենովացւոց հետ դաշնադրութիւն մը ընեն. Ճենովացիք ալ պահանջեցին որ Փիզացիք իրենց նաւահանգիստը հողով ու քարով լեցնեն, և աս կերպով դրեթէ իրենք զիրենք կործանեն (1290):

2 Այն ատենները Վենետիկ շատ զօրաւոր տէրութիւն մը ձևացեր էր: Անոր ծովեզերքները շատ տեղուանք ձեռք ձգեր էր, որ մասնաւոր կառավար ունէին, բայց ամէնքն ալ Վենետկոյ իշխանութեան տակն էին: Մանուէլ կայսրը շատ պատիւներ տուեր էր Վենետկեցւոց. չորրորդ խա-

---

1 Ճենովացւոց ու Փիզացւոց հակառակութեան պատճառն ինչ էր և ինչ վերջ ունեցաւ:

2 Այն ատենները ինչ վիճակի մէջ էր Վենետկոյ տէրութիւնը:

չակրաց ժամանակն ալ Վենետիկեցիք Յունաց կայսերութեան գրեթէ բոլոր վաճառականութեանը տիրեցին. Նմանապէս Կրետէ, Քորֆու, Արշիպելագոսի կղզիները, ու Կոստանդնուպոլսոյ կէսը իրենց ձեռքը ընկաւ: Ճենովացիք Վենետիկեցւոց սաստիկ մեծնալը չքաշելով Յունաց կողմը բռնեցին, որով Պալէոլոգները նորէն զօրացան ու Լատինացւոց թագաւորութիւնը Կոստանդնուպոլսէն հանեցին (1264). ետքը Վենետիկոյ վրայ ալ Ճենովացիք պատերազմի ելան ու երկու անգամ յաղթեցին անոնց, այնպէս որ Կրատէնիկոյ դուքսը նախատական դաշնագրութիւն մը ստիպուեցաւ ընել անոնց հետ, որով խօսք կուտար որ Սեւ ծովուն և Ազովւոց ծովուն մէջ Վենետիկեցւոց նաւերը չքալեն (1299):

[1] Այս ձախորդութիւնները մեծ փոփոխութեան մը պատճառ եղան Վենետիկոյ կառավարութեանը մէջ. վասն զի անով Գերագոյն ատեանը ամէն իշխանութենէն վեր եղաւ ու որդւոց որդի ժառանգութեամբ կ'անցնէր. ազնուականները ամէն տեսակ իշխանութիւն իրենց ձեռքը առին, և միայն իրենց անունները ոսկէմոփէան ըսուած գրքին մէջ կը գրուէին որ իշխանութեան հասնելու իրաւունք ունենալուն նշան էր: Ասոնց դէմ մէկ երկու անգամ ժողովուրդը ուզեց ոտք ելլել. բայց ազնուականք աւելի զօրացան ու ափէան փառանց ըսուած անաչառ ու ծածուկ ատեանը հնարեցին որ տէրութեան ամէն գաղտնիքը անոր ձեռքն էր (1310):

---

[1] Ազնուականաց կողմը ինչպէս զօրացաւ:

[1] Սակայն Ճենովացւոց հակառակութիւնը չէր դադրած . Վենետիկեցիք ուզելով Ազախու ծովուն մէջ վաճառականութիւն ընել, Ճենովացիք Քէֆէի պատերազմը բացին անոնց դէմ, և Փականին Տորիա անունով ծովակալին առաջնորդութեամբը յաղթեցին անոնց (1355) : Վենետիկեցիք հարկադրեցան հաշտութիւն խնդրելու, թէպէտև Մարին Ֆալիէրոյի կուսակիցները ան հաշտութեան հակառակ էին :

[2] Մարին Ֆալիէրոյ շատ տարի հայրենեացը ծառայելէն ետև՝ եօթանասունըվեց տարեկան ատենը դուքս ընտրուեցաւ (1354) : Սթենոյ անունով մէկը որ ատեան քառասնից ըսուած խորհրդարանին գլխաւորներէն էր, Մարինին ծանր նախատինք մը ըրաւ՝ անոր կնոջը անունը կոտրելով . Մարին քառասնից ատեանին բողոքեց, անիկայ ալ դատապարտեց Սթենոն որ երկու ամիս բանտ կենայ ու տարի մը աքսորուի : Աս վճռոյն թեթևութիւնը տեսնելով դուքսը աւելի բարկացաւ, ու բոլոր ատենակալաց և ազնուականաց դէմ ոխ պահելով, ստորին կարգի պաշտօնէից հետ խօսք դրաւ որ բոլոր Վենետիկոյ պատրիկները այսինքն ազնուականները թրէ անցընէ . բայց աս դաւակցութիւնը իմացուեցաւ ու դքսերու պալատին սանդուխներուն վրայ Մարինին գլուխը կտրուեցաւ (1355) :

---

1 Վաճառականութեան համար ինչ պատերազմ ըրին Վենետիկեցիք Ճենովացւոց հետ :
2 Մարին Ֆալիէրոյ ինչո՞ւ գլխատուեցաւ :

[1] Ճենովացիք 1378ին ուզեցին Վենետիկեցւոց հետ անոնց ծովակին մէջ պատերազմիլ. ուստի կարիճ զինուորներով փառաւոր նաւատորմիղ մը պատրաստեցին ու Պետրոս Տորիա ծովակալին հետ խրկեցին, որ գնաց Քեօճիան առաւ ու բանակը Վենետիկէն հինգ մղոն հեռու Մալամոքքոյ ըսուած տեղը դրաւ: Այնչափ մօտեցած էր Թըշնամին որ Վենետիկեցիք արգելք հանեցին որ մայր եկեղեցւոյն այսինքն սրբոյն Մարկոսի զանգակատան զանգակները չզարնեն ժողովուրդը ժողվելու համար, որպէս զի Թշնամին չիմանայ: Վենետիկեցիք դեսպան խրկեցին Ճենովացւոց. բայց Տորիա սպարապետը ետ ճամբեց զանոնք ըսելով. " Ինչուան որ սրբոյն Մարկոսի ձիերուն * բերանը սանձ չանցընեմ, մէկ առաջարկութիւն մը չեմ ընէր: Քանի մը օրէն պէտք է որ քաղաքնիդ մտնեմ,, ըսաւ: Բայց իր գուշակութիւնը չկատարուեցաւ. վասն զի Վենետիկեցիք զարմանալի հայրենասիրութեամբ անկարծելի քաջութիւններ ըրին, ամէն մարդ զէնք առաւ՝ թէ քաղաքացի և թէ ազնուական, և ամէնքն ալ երդուըն-յան որ իրենց հայրենեացը համար մեռնին: Մէկ բերնով ուզեցին որ իրենց ծերունի քաջ զօրա-

---

[1] Ճենովացւոց Վենետիկոյ վրայ յարձակիլը ինչպէս եղաւ:

* Սրբոյն Մարկոսի եկեղեցւոյն ճակատը չորս հատ թափթալ պղնձէ ոսկեզօծ ձաատաւոր ձիեր կան՝ հին ատենը Կոստանդնուպօլսոյ ձիարձակարանէն (աթ մէյտանը) բերուած, որոնց համար կ'ըսուի թէ մեր Տիրիթ թագաւորը ընծայ խրկած ըլլայ Հռովմայեցւոց:

պետը Վիկտոր Փաղինի որ զրպարտութեամբ մը բանտ գրուած էր, հանեն բանտէն։ Անիկայ երբ որ բանտին մէջէն լսեց ժողովրդեան «Կեցցէ Վիկտոր Փաղինի» կանչելը, ցատքեց ոտքէն, բանտին երկաթապատ պատուհանին առջևը գնաց ու ըսաւ «Բարեկամք, ուրիշ կեցցէ մի կանչէք, բայց եթէ Կեցցէ սուրբն Մարկոս»։ Մէկէն հանեցին զինքը բանտէն, ձեռքի վրայ առած դուրս տարին, սպարապետութիւնը անոր տուին, ու հանդիսաւոր պատարագ մը լսելէն ետքը պատերազմի ելան։ Փիզանին երթալու ատենը երդուընցեր էր որ Ճենովացւոց զօրքը գերի ընէ, ու երդմանը վրայ հաստատուն կեցաւ. վասն զի թշնամեաց բոլոր նաւերն ալ գերի բռնեց՝ չորս հազարէն աւելի զինուորով. Ճենովացիք ստիպուեցան հաշտութիւն խնդրելու, և անկէց ետքը երթալով տկարացան (1381)։

[1] Պերուլթի պատերազմին մէջ (1403) Ճենովացիք տեսնելով իրենց ներքին երկպառակութիւնները ու արտաքին ուժերնուն պակսիլը, Գաղղիոյ Կարոլոս Զ թագաւորին ապաւինեցան. ան ալ Պուսիքոյ զօրավարը խրկեց որ երթայ Ճենովան կառավարէ. Ճենովացիք շուտով ձանձրացան Գաղղիացիներէն ու անոնց դէմ ոտք ելան, Միլանցւոց իշխանութեանը տակ մտան. անկէց ետքը Վենետիկեցիք բոլոր ծովերուն մինակ տիրեցին։

[2] Վենետիկեցւոց ամենէն աւելի յաջողութիւն

---

1 Ճենովացիք ինչո՞ւ Գաղղիացւոց ու ետքը Միլանցւոց ապաւինեցան։

2 Վենետիկեցիք իրենց ծաղկած ատենը ինչ մեծութեան մէջ էին։

ունեցած ժամանակը ան եղաւ. Իտալիոյ մէջ Վենետիկոյ պէս հարուստ և բազմամարդ քաղաք չկար, և բնակիչն էր հարիւր յիսուն հազար. երեսունըութը հազար ծովային զօրք ունէին. իրեք հազար իրեք հարիւր քառասունըհինգ վաճառականի նաւ, որ Վենետիկեցւոց ճարտարութեանը բերքերը և արևելքին պատուական վաճառքները Միջերկրական ծովուն ամէն նաւահանգիստները կը թափէին ։ Նաւարանին մէջ հազար գործաւոր կը բանէին միշտ ։ Վենետիկեցիք ան աստիճան հարկաւոր պարձեր էին Իտալացւոց, որ անոնց որուն հետ որ երթևեկութիւննին կտրուէր՝ ան ժողովուրդը մէկէն կ'աղքատնար. ինչպէս պատահեցաւ Նափոլիի բնակչացը, որոնց Հռոբերտոս թագաւորը ստիպուեցաւ հաշտութիւն խնդրելու. վասն զի հպատակները չէին ուզեր իրեն տուրք վճարել, ըսելով որ Վենետիկեցիք մեր նաւահանգիստներէն պակսեցան, տուակնիս հատաւ ։

[1] Ադրիական ծովուն եզերքէն զատ՝ ցամաք երկրին վրայ ալ շատ գաւառներ կային Վենետկեցւոց ձեռքը, ինչպէս Պերկամոյ, Պրեշիա, Վերոնա, Քրեմա, Վիչենցա, Փատուա, Թրեվիզ, Ֆելթրե, Պելլուն, Քատորե, Փոլեզինէ, և Ռաւեննա. իրենց իշխանութեանը տակն էին նաև Կորիցիայի, Ֆրիուլի, ու Իսթրիոյ կոմսութիւնները՝ Թրիեստ քաղաքէն զատ ։ Նոյն ծովուն արևելեան եզերքն ալ ունէին Զառա ու Սփալաթրոյ քաղաքները, Տալմաչիայի մօտ եղած կղզի-

---

1 Վենետիկ քաղաքէն դուրս ինչ տեղուանք ունէին Վենետիկեցիք ։

ները. և անոնցմէ զատ Վ՛ելլիա, Զանթէ, Քորֆու, Լէփանթոյ և Պատրաս կղզիները. Մորայի մէջ ալ Մեթոն, Կորոն, Նափոլի տի Ռոմանիա, և Արգոս։ Արշիպեղագոսին մէջ ալ մանր կղզիներ, ծովեզերքը քանի մը տեղ և Կրետէ ու Կիպրոս կղզիները իրենց ձեռքն էին։

1 Իրենց գլխաւոր գործուածներն էին բրդեղէն, զէնք, ապակի, և մանաւանդ հայլի, կոկած կաշի, չուան ու դերձան, զտած բորակ, և շատ տեսակ դեղեր. վարպետ էին նաև մոմ, շաքար, ըմպելիք, սապոն և ոսկի թերթ շինելու. տպագրութիւնն ալ շատ ծաղկած էր։ Վ՛ենետկոյ ձեռագործներուն մէջ արուեստաւորները ան ատենի ընդհանուր սովորութեանը հետևելով պաղանիք շատ կը պահէին, մանաւանդ տեսակ տեսակ եղեր հանելու, բժշկական աղեր շինելու և անուանի Թիւրակէն պատրաստելու մէջ։

2 Վ՛ենետկեցւոց մեծութեանը իյնալուն մեծ պատճառ եղան Իտալիոյ կռիւները և Փորթուկալցւոց Բարէյուսոյ գլուխը գտնելը 1486ին։

3 ՄԻՋԻՆ ԻՏԱԼԻԱ. — ԹՈՍՔԱՆԱ։ — Աս երկրին մէջ քանի քաղաք որ կար՝ այնչափ տէրութիւն բաժնուած էր. մայրաքաղաքը Փլորենտիա

---

1 Վ՛ենետկեցւոց գլխաւոր գործուածներն ու վաճառքները ինչ էին։

2 Վ՛ենետկեցւոց իյնալուն գլխաւոր պատճառը ինչ եղաւ։

3 Միջին Իտալիոյ մէջ ան ատենները Թոսքանան ինչ վիճակի մէջ էր։

(Ֆլորենցա) Կուէլֆեանց մեծամեծ կուսակներուն բոյնը եղած էր ։ Այն խռովութիւններուն ժամանակը հռչակաւոր Տանթէ բանաստեղծը իր հայրենիքէն հալածուած՝ Իտալիոյ ուրիշ քաղաքները կը պտըտէր ։ Երբոր Կուէլֆեանց կուսները քիչ մը դադրեցան, Փլորենտացիք ալ սկսան քիչ մը հանգչիլ ։ Հնգետասաներորդ դարուն սկիզբները Փիզան իրենց երկրին հետ միացուցին, Թոսքանայի ամէն հասարակապետութեանց վրայ տիրեցին, Ճենովացւոցմէ Լիվուռնօ (Լիվոռնոյ) քաղաքը գնեցին ու վաճառաշահ տէրութիւն մը ձևացան ։

[1] Փլորենտիոյ հարուստ վաճառականներուն մէջէն ելաւ Մէտիչի ըսուած հռչակաւոր ցեղը, որ հասարակապետութեանը մեծնալուն և արուեստից ու գիտութեանց ծաղկելուն մեծ պատճառ եղան (1430) ։

[2] ՎԻՃԱԿ ԵԿԵՂԵՑԻՈՅ ։ — Այն երկիրը որ Պէպինոսի, Մեծին Կարոլոսի և Մեծին Ոթոնի պարգևած տեղերովը ձևացած էր, վերջերը Բենեւենտ քաղաքէն ինչուան Թոսքանայի սահմանը և ինչուան Ադրիական ծովը տարածուէր էր ։ Երբոր 1309ին խռովութեամբը պէտք եղաւ որ պապին աթոռը Աւենիոն փոխադրուի, քիչ մնաց որ պապերուն ժամանակաւոր իշխանութիւնը վեր-

---

1 Ի՞նչ հռչակաւոր ցեղ կար Թոսքանայի մէջ ։
2 Եկեղեցւոյ վիճակ ըսուած երկրին վրայ ի՞նչ փոփոխութիւն եղաւ միջին դարուն ետքերը ։ — Ռիէնցիին միտքը ի՞նչ էր ։

ցուէր ։ Վասն զի Նիկողայոս Ռիէնցի անունով մէկը ուզեց Հռովմայ տիրել ու հին ատենի հասարակապետութեանը նման հասարակապետութիւն մը հաստատել (1347)։ Բայց եօթը տարիէն ետքը Ռիէնցին սպաննուեցաւ եւ Ալպոռնոս կարդինալն ու քաջ զօրավարը եկաւ Հռովմը առաւ ու Աւենիոնէն ետ կանչեց Գրիգոր ԺԱ պապը։

1 Երբոր Գրիգոր ԺԱ մեռաւ, երկու պապ մէկէն ընտրուեցան, մէկը Աւենիոն՝ մէկալը Հռոմ. ասով մեծ հերձուած ընկաւ ժողովրդոց մէջ (1377)։ Փիզայի ժողովքովը անկարգութիւնը աւելի ծանրացաւ ու երրորդ պապ մըն ալ ընտրուեցաւ։ Յովհաննէս ԻԳ 1414ին Սիկիսմոնտ կայսեր հետ խօսք դրած՝ ժողով մը ըրաւ Կոստանդիա քաղաքը. այն ժողովքը երեք պապերն ալ ձգեց ու անոնց տեղը ընտրեց Մարտինոս չորրորդը։ Քիչ ատենէն ետքը նոր ժողով մըն ալ եղաւ, առաջ Բասիլէա քաղաքը, ետքը Փլորենտիա, լատին եկեղեցւոյ ու արեւմտեան եկեղեցեաց հետ միաբանութիւն ընելու համար (1443)։

2 ՀԱՐԱՒԱՅԻՆ ԻՏԱԼԻԱ. — ՆԷԱՊՈԼՍՈՅ ԵՒ ՍԻԿԻԼԻՈՅ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ։ — Փրեդերիկոս Բ երեք որդի թողեր էր, Կոնրադոս, Հենրիկոս եւ Մանֆրէտ. վերջի երկուքին ընկաւ Երկուց

---

1 Ե՞րբ և ի՞նչպէս սաստկացաւ հակապապերուն կռիւը։ — Ան պատճառաւ ի՞նչ ժողովքներ եղան։

2 Նէապոլսոյ ու Սիկիլիոյ տէրութիւնները ի՞նչ վիճակի մէջ էին։

Սիկիլեայց Թագաւորութիւնը։ Կարոլոս Անժուցին գնաց անոնց ձեռքէն հայրենական ժառանգութիւննին առաւ (1266). բայց Իտալացիք Գաղղիացւոց բռնաւորութեանը չդիմանալով, Կոնրադոսի որդին Կոնրադինոսը կանչեցին, և խոստացան որ օգնեն իրեն և Թագաւորութեան իրաւունքը իրեն դարձընեն. բայց այն խեղճ արքայորդին Թալիաքոցցոյի պատերազմին մէջ յաղթուեցաւ, գերի ընկաւ ու ետքը հրապարակաւ գլխատուեցաւ (1268)։ Գաղղիացւոց աս անիրաւութիւնը անպատիժ չմնաց. վասն զի Յովհաննէս Փրոչիտացին, որ Մանֆրէտի բժիշկն էր, Սիկիլիոյ մէջ մեծ դաւակցութիւն ըրաւ Գաղղիացւոց դէմ, և Երէկորին Սիկիլիոյ ըսուած կոտորածին պատճառ եղաւ։

։ Կարոլոս Անժուցին ամէն ուժը ժողվեց որ Սիկիլիան նուաճէ, բայց անօգուտ. վասն զի Արակոնի Տոն Փետրոյ Թագաւորին ալ Սիկիլիացւոց օգնութեան հասաւ, և ծովակալը Ռոճէր տէ Լօրիա՝ Գաղղիացւոց նաւերը այրեց. ան միջոցին Կարոլոս ծովուն եզերքը կեցած՝ կատաղութենէն իր գաւազանը կը խածնէր, և առանց կարենալու վրէժը հանել մեռաւ։ Իր յաջորդներն ալ յուսահատեցան Սիկիլիոյ տիրելէն։

---

։ Կարոլոս Անժուցին կրցա՞ւ Սիկիլիան նուաճել։

# ԳԼՈՒԽ ԼԶ․

Պատմութիւն արեւելեան կայսերաց և Օսմանեանց՝ Յունաց կայսերութեան նորոգուելէն ինչուան Ա սուլթան Մէհէմմէտին մահը (1255–1422)։ Թուրքք․ — Լատինացւոց կայսերութեան Արեւելքին վերջանալը և Յունաց կայսերութեան նորէն հաստատուիլը․ — Յովհաննէս Վատացէս․ — Միքայէլ Պալէոլոգ․ — Անդրոնիկոս Բ․ — Սուլթան Օսման Ա․ — Օրխան․ — Ենիչէրեաց սկիզբը․ — Յունաց կայսերութեան խեղճութիւնը․ — Սուլթան Մուրատ Ա․ — Սերվիացւոց դէմ պատերազմը․ — Սուլթան Պայէզիտ․ — Նիկոպօլսոյ պատերազմը․ — Լէնկթիմուր և Մոնղոլները․ — Անկիւրիոյ պատերազմը․ — Սուլթան Պայէզիտին գերի իյնալը․ — Զմիւռնիոյ առումը․ — Սուլթան Պայէզիտին մահը․ — Լէնկթիմուրին մահը․ — Չէլէպի Սուլթան Մէհէմմէտ Ա․ — Շէյխ Սինան բծինը․ — Սուլթան Մէհէմմէտին մահը։

¹ *Վոլկա գետին ու Ալթայ լերանց մէջտեղը ընդարձակ դաշտերուն մէջ գտնուող բազմաթիւ բնակիչները հին ատեն Սկիւթացի կ'ըսուէին, ետքերը Թուրք, Թիւրքմէն և Թաթար, որ ինչուան հիմա շատ տեղ վրաններով կը բնակին Արաբացւոց պէս։ Թուրքաց անունը նախ եօթներորդ դարուն մէջ կը յիշուի․ վասն զի Հերակլ կայսրը անոնցմէ օգնութիւն խնդրեց Պարսից դէմ։ Ատեն անցնելէն*

---

¹ *Թուրքաց ազգին սկիզբը ուսկից է և ինչպէս զօրացաւ։*

ետքը Պաղտատու ամիրապետները անոնցմէ շատ զօրք իրենց պահապան ընտրեցին . իսկ Գայիմ Աբբասեան ամիրապետը իր երկրին խռովութիւնները տեսնելով Տուղրիլ պէկէն օգնութիւն խնդրեց . ասանկով 1059ին Սելճուգեան Թուրքերը Պաղտատու տիրեցին , և անկէց դրեթէ բոլոր Փոքր Ասիա ալ իրենց իշխանութիւնը տարածեցին : Երեքտասաներորդ դարուն մէջ անոնց տըշաւանքը յանկարծակի դադրեցաւ . վասն զի անգիէն Մողոլները Ճէնկիզ խանին և անոր որդւոցը առաջնորդութեամբը հեղեղի պէս վազեցին Պաղտատը քանդեցին և Սելճուգեանց իշխանութիւնը կործանեցին :

[1] Յիսուն տարիէն աւելի աս վիճակիս մէջ մնալէն ետև , Թուրքը ազգին մէկ ցեղը այսինքն Օսմանցի կամ Օսմանեան ըսուածը Ասիոյ արևմտեան կողմերը այնչափ զօրացաւ որ քիչ ատենի մէջ զօրաւոր տէրութիւն մը ձևացաւ :

[2] Լատինացւոց կայսերութիւնը Կոստանդնուպօլսոյ մէջ յիսուն տարի քշելէն ետքը , Բաղդովինոսի յաջորդները այնպիսի իշխանութեան յարգը չճանչցան . Յունաց կայսերք ալ որ Նիկիա (Իզնիք) քաղաքը քաշուած կը կենային , կամաց կամաց իրենց իշխանութիւնը նորէն ձեռք ձգեցին : Յովհաննէս Վատացէս քաջ մարդը առաւ

---

1 Թուրքաց ո՞ր ցեղը ուրիշներէն աւելի մեծցաւ :
2 Կոստանդնուպօլսոյ կայսերութիւնը ի՞նչ կերպով Լատինացւոց ձեռքէն ելաւ ու նորէն Յունաց ձեռքը անցաւ : — Պալէոլոգեանց ցեղին կայսերութիւնը ուսկի՞ց սկսաւ :

Կալլիպօլիսը (Կէլիպօլու), Թրակիան, Մակեդոնիան, Արշիպեղագոսի կղզիները, եւ աւքն ալ այսինքն 1255ին իր տէրութիւնը Թողուց Թէոդորոս Լասկարիս անուանով որդւոյն, որ իրեք տարի միայն Թագաւորեց: Թէոդորոսի որդին Յովհաննէս Լասկարիս տղայ ըլլալով, անոր խնամակալը Միքայէլ Պալէոլոգ իշխանութիւնը առաւ ձեռքէն, ինքը կայսր պսակուեցաւ, Լատինացւոց հետ պատերազմ ըրաւ, ու Եպիրոսը, Եւոքիան և Պեղոպոնեսի (Մորայի) մեծ մասը առնելէն ետև Կոստանդնուպօլսոյ ալ տիրեց, Լատինացւոց իշխանութիւնը վերջացուց, և իրմէ սկսաւ Պալէոլոգեանց ցեղին նոր իշխանութիւնը:

1 Այս նոր կայսերութիւնը առջինին մեծութիւնը չունէր. մէկ կողմանէ ալ տեսնելով որ Թուրքերն ու Թաթարները արևելքի կողմը զօրանալու վրայ են՝ կը ջանար արևմտեան տէրութեանց հետ բարեկամութիւն ընել: Հռովմայ քահանայապետները յորդորանքներ կը գրէին կայսերաց որ հռովմէական եկեղեցւոյ հետ միաբանին, անոնք ալ խօսք կուտային. բայց կէս մը անհոգութեամբ, կէս մըն ալ իրենց մէջ անմիաբան ըլլալով՝ խոստմունքնին չէին կրնար կատարել: Երբոր Միքայէլ Պալէոլոգին յաջորդեց Անդրոնիկոս Բ, կայսերութիւնը մեծ վտանգի մէջ էր:

2 Մասուտ սուլթանին մեռնելէն ետքը Օսման

---

1 Պալէոլոգեանց ատենը Յունաց կայսերութիւնը ի՞նչ վիճակի մէջ էր:

2 Օսմանեանց տէրութեան սկիզբը ի՞նչպէս եղաւ: — Ո՞վ էր Օսման:

անուանով քաջ Թուրքը, որ իր ցեղին հետ մէկտեղ նոր եկեր էր Թուրքաստանի կողմերէն, միտքը դրաւ որ Սելճուգեանց տէրութիւնը նորէն կանգնէ։ Հայրը Էրթողրուլ երազ մը տեսաւ՝ որով կը գուշակէր թէ Օսմանին աս դիտաւորութիւնը իրօք պիտի կատարուի. վասն զի մէկ գիշեր մը Էրթողրուլ տեսաւ քունին մէջ որ լուսինը եկաւ իր ծոցը մտաւ, ու անկէց ահագին ծառ մը բուսաւ ոսկիէ ճիւղերով, ու ճիւղերուն վրայ ամէն տեսակ թռչուններ նստեր էին. և աս ծառը Օսմանը կը նշանակէր, որ Օսմանեան ինքնակալութեանը հիմնադիրն եղաւ։

[1] Օսման (1299) իր քովի կտրիճներուն յայտնեց միտքը. Իկոնիոնի (Գոնիա) Մողոլները հալածեց, Թրակիա (Րումէլի) անցաւ, ու Անդրոնիկոս Բ կայսրը այնպէս սարսափեցուց որ անիկայ ստիպուեցաւ Քաթալոնիացի Ռոճէր ու Ֆլօրը իրեն օգնութեան կանչելու. թէպէտ ետքը խարդախութեամբ Ռոճէրը սպաննեց ու Քաթալոնիացւոց ուժը սաստիկ բաժնեց. անոնք ալ բարկացան ու սկսան Յունաց հետ կռուելու։ Աս շփոթութեան մէջ սուլթան Օսման Պրուսային տիրեց ու իր աթոռը հոն հաստատեց։

[2] Օսմանի որդին սուլթան Օրխան քիչ աշխարհակալութիւն ըրաւ. նայեցաւ որ իր հօրը տէրութիւնը հաստատէ։ Քանի մը օրէնքներ ու սովորութիւններ դրաւ, սաստիկ կռուեց ու Էնիչէրի ը-

---

[1] Սուլթան Օսման ո՞ւր հաստատեց իր աթոռը։
[2] Սուլթան Օրխան ի՞նչ կարգաւորութիւններ ըրաւ։ — Ո՞վ էին Ենիչէրի ըսուածները։

տուած զօրքը հանեց. վասն զի իր զօրաց դաստաւորին խորհրդովը բոլոր երկրին մէջ հինգ տարին մէյմը որչափ ուժով տղաք որ կային ժողվել կուտար ու անոնցմով մանաւոր գունդ մը կը կազմէր, որ քիչ ատենէն քառասուն հազար հոգի եղան. և ասոնք ըսուեցան Էնիչէրի՝ այսինքն Նոր զօրք: Աս ենիչէրիները ծնողքնին ու հաւատքնին մոռնալով՝ տէրութեան հաւատարիմ ու քաջ գունդ մը եղան, և ան ատենն որ Եւրոպայի մէջ շատ տեղ կանոնաւոր զօրք չկար՝ ասոնք կարգաւորեալ կրթութեամբ իրենց տէրութիւնը զօրացուցին:

¹ Օրխանին որդին ու յաջորդը սուլթան Մուրատ Ա (1360), իր շատ զօրավարներէն աւելի կտրիճ ու քաջասիրտ էր, և պատերազմ չունեցած ատենը որսորդութեան հետ կ՚ըլլար: Թագաւորելուն պէս՝ քրիստոնէից դէմ պատերազմ բացաւ և ամէն տեղ յաջողութիւն գտաւ. Թէ Ասիոյ և թէ Եւրոպայի մէջ շատ տեղերու տիրեց, և աթոռը Ադրիանուպոլիս (Էտիրնէ) փոխադրեց: Սերվիացիները (Սըրփերը) նուաճելու համար՝ անոնց Լազար իշխանին մէկ պարկ մը կորեկ խրկեց՝ իր զօրացը բազմութիւնը ցուցնել ուզելով. Լազար շուտ մը ան ընծան իր հաւերուն բաժնեց, ու դարձաւ ըսաւ դեսպաններուն. “ Գնացէք պատմեցէք սուլթանին որ իր զինուորները որչափ ալ շատուոր ըլլան, Սերվիացւոց կերակուր պիտի ըլ-

---

1. Սուլթան Մուրատ Ա ի՞նչ յաջողութիւններ ունեցաւ: — Աթոռը ո՞ւր փոխադրեց: — Ի՞նչպէս մեռաւ:

ըլան ,,. իրաւցընէ սուլդան Մուրատին անոնց դէմ խրկած առաջին գունդը յաղթուեցաւ. անոր համար ինքը անձամբ պատերազմի ելաւ, ու Գոսովայի պատերազմին մէջ անոնց յաղթելէն ետքը, Միլոշ անունով Սերվիացի մը վրան յարձըկեցաւ ու սպաննեց զինքը (1389).

¹ Սուլդան Պայէզիտ, որ իր գործունեայ քաջութեանը համար Եըլտըրըմ այսինքն Փայլակն ըսուեցաւ, մեծ վախ ձգեց քրիստոնէից սիրտը։ Քանի մը տարուան մէջ Բուլղարներուն, Մակեդոնացւոց ու Մոլտաւիոյ տիրեց։ Մաճառստանի Թագաւորը Սիկիսմոնտ՝ հարիւր երեսուն հազար հոգւով ու գաղղիացի ասպետներով Օսմանցւոց դէմ ելաւ Նիկոպօլիս (Նիկէպօլու) քաղաքին քովը. “Թուրքերէն ի՞նչ վախ ունինք, կ՚ըսէր. Թէ որ երկինքը վրանիս փլչի, բաւական տէգ ունինք վեր բռնելու,,, և սակայն յաղթուեցաւ, ու ինքը մինակ հազիւ կրցաւ փախչիլ իր երկիրը (1396)։ Պատերազմին երկրորդ օրը սուլդան Պայէզիտ վաթսուն հազար մեռած Տաճիկներուն վրէժը առնելու համար՝ տասը հազար գերի աչքին առջեւը սպաննել տուաւ։

² Այն յաղթութեամբ Օսմանեանք յոյս առին Կոստանդնուպօլսոյ ալ տիրելու։ Արդէն սուլդան Պայէզիտ գրեր էր Մանուէլ կայսեր. “Պէտք է

---

¹ Սուլդան Պայէզիտ ի՞նչ անուանի յաղթութիւններ ըրաւ։ — Նիկոպօլսոյ պատերազմը ի՞նչպէս եղաւ։

² Սուլդան Պայէզիտ ի՞նչ կերպով սկսաւ Կոստանդնուպօլիսը առնելու ջանալ։

որ մեկ տաճիկ դատաւոր մը նստի մայրաքաղաքիդ մէջ. վասն զի չէի ուզեր որ Տաճիկներդ իրենց սեպհական դատաւոր չունենան. Թէ որ չես ուզեր մտիկ ընել, քաղաքիդ դռները գոցէ ու միայն ներսը թագաւորէ. պարսպէն դուրս եղածը բոլոր իմս է ,,: Բայց աս սպառնալեաց կատարումը քիչ մը ատեն ալ ուշացաւ:

[1] Այն ատենները Մողոլաց աշխարհակալը Թիմուր (որ գիպուածով մը պզտիկուց իյնալով կաղալուն համար Լէնկ այսինքն կաղ ըսուեր է, որով և անունը եղաւ Լէնկթիմուր կամ Թիմուրլէնկ), Ճինկիզխանին տէրութիւնը կանգնելով երդում ըրեր էր որ աշխարհքիս ամէն թագաւորներուն դէմ պատերազմ ընէ. Խարէզմի ու բոլոր Պարսկաստանի տիրելէն ետքը Հնդկաստան ալ գնացեր էր, Տէլհի քաղաքը կործաներ ու ինչուան Գանգէս գետին ակունքը եղած երկիրները ոտնակոխ ըրեր էր. անկէց ալ անցաւ տիրեց Վրաստանի ու Հայաստանի:

[2] Սելճուգեան իշխանները Սուլթան Պայէզիտին դէմ գանգատ ըրին: Լէնկթիմուր հրաման խրկեց Օսմանցւոց որ իրենց առած երկիրները ետ դարձընեն. սուլթան Պայէզիտ Մողոլի դեսպաններուն մօրուքը ածիլել տուաւ ու ըսաւ անոնց. “Գնացէք ըսէք ձեր տիրոջը որ ես իրեն կը սպասեմ, թող շուտով գայ ,,: Լէնկթիմուր

---

1 Ո՞վ էր Լէնկթիմուր ու ի՞նչ արշաւանքներ ըրաւ:

2 Ի՞նչ պատճառաւ սուլթան Պայէզիտին դէմ ելաւ: — Անգիւրիոյ պատերազմին վերջը ի՞նչպէս եղաւ:

աղ շուտ մը ելաւ Սեբաստիա (Սըվազ) քաղաքը առաւ, կողոպտեց, Դամասկոսը այրեց, Պաղտատն ալ կործանեց ու անոր աւերակներուն վրայ վաթսունըվեց հազար մարդու գլխով բուրգ մը կանգնեց. անկէց ութը հարիւր հազար հոգւով Պայէզիտին դէմ ելաւ, որ հարիւր քսան հազար մարդ միայն ունէր: Պատերազմը Անկիւրիոյ դաշտին մէջ եղաւ (1402), ու Մողոլները յաղթեցին. կ'ըսեն թէ երկու կողմէն չորս հարիւր հազար հոգի մեռան այն սոսկալի պատերազմին մէջ. Սուլթան Պայէզիտ ալ գերի բռնուեցաւ, ու Լէնկթիմուրին առջևը տարուեցաւ, որ ան միջոցին իր վրանին մէջ նարտ կը խաղար, ու բան մը չիմանալ ձևացընելով, երբոր իրեն ըսին թէ ահա հոս է Օսմանցւոց Թագաւորը, քաղցրութեամբ ընդունեցաւ զինքը ու հրամայեց որ փառաւոր վրանի մը մէջ պատուով պահեն:

[1] Պայէզիտի որդին Մէհէմմէտ պատերազմէն փախած ըլլալով, քանի մը Օսմանցի խորհեց Թաթարաց բանակը, որ վրանի մը տակէն ինչուան Պայէզիտի վրանը ճամբայ փորեցին՝ Թագաւորը ազատելու համար: Թաթարաց պահապանները իմանալուն պէս, Օսմանցիք ձգեցին փախան. բայց Թիմուր կանչեց Պայէզիտը, և անոր սաստիկ յանդիմանութիւն տալէն ետքը հրամայեց որ զինքը գիշերները շղթայակապ խուցի մը մէջ պահեն, որուն դուռը վանդակապատ երկաթ է եղեր. ասկէց ելած է այն պատմութիւնը թէ

---

[1] Լէնկթիմուր ի՛նչպէս վարուեցաւ ետքը սուլթանի Պայէզիտին հետ:

Լէնկթիմուրի հրամանովը երկաթէ վանդակի մէջ դրուեր է Պայէզիտ :

1 Լէնկթիմուր իր արշաւանքը առաջ տանելով գնաց ծովէն ու ցամաքէն Զմիւռնիան պաշարեց, որ Հռոդոսի ասպետները կը պաշտպանէին. տասնըհինգ օր սաստիկ պատերազմելով առաւ քաղաքը, բնակիչներէն հազար հոգի սպաննեց, ու գլուխներուն կէսը քաղաքին դրան առջեւը դիզել տուաւ, կէսն ալ օգնութեան եկող քրիստոնէից նաւերուն մէջ նետեց :

2 Անկէց Փոքր Ասիա դառնալու ատենը քաղաքի մը տղաքը Ղուրանը ձեռքերնին առած՝ մէջէն բերնուց հատուած մը երգելով առջեւը ելան : Հարցուց Լէնկթիմուր թէ աս տղաք ինչո՞ւ համար կը կանչուըռտեն. երբոր ըսին թէ կ'աղաչեն որ իրենց քաղաքին խնայես՝ հրաման տուաւ ձիաւոր զօրացն որ բոլոր ան խեղճ տղաքը ձիերնուն ոտքին տակը կոխկըռտեն :

3 Թիմուր միշտ հետը կը պտըտցընէր Պայէզիտը, և օր մը հարցուց իրեն. "Ի՞նչ կը կարծես, թէ որ հիմա երկիրդ դառնալու ըլլամ՝ որդիքդ քեզի կը հնազանդի՞ն թէ չէ" : Պատասխան տուաւ Պայէզիտ. "Դուն ազատութիւն տուր նախ ինծի, ես գիտեմ թէ զանոնք ի՞նչպէս նուաճելու է : — Հանդարտ կեցիր, ըսաւ Լէնկթիմուր,

---

1 Ի՞նչ կերպով առաւ Լէնկթիմուր Զմիւռնիա քաղաքը :

2 Փոքր Ասիոյ մէջ ի՞նչ մասնաւոր անգթութիւն ըրաւ Լէնկթիմուր :

3 Սուլդան Պայէզիտ ի՞նչպէս մեռաւ :

թող մէյմը զքեզ Սմրղանդ տանիմ, եաքը երկիրդ ալ կը խրկեմ„։ Այս խօսքին վրայ սաստիկ տրտմութեան մէջ ընկաւ Պայէզիտ, որով քիչ ատենէն Աքշէհիր քաղաքին մէջ հիւանդացաւ ու մեռաւ։

[1] Սմրղանդ դարձաւ Լէնկթիմուր որ քիչ մը հանգչի ու ետքը Չինու վրայ երթայ։ Հոն բոլոր իշխաններն ու մեծամեծները մէկտեղ ժողվեց որ անոնց հետ խորհուրդ ընէ, ու շատ մը հանդէսներ ու հարսնիքներ կատարէ. անանկով երկու ամիս կառավարութեան ամէն հոգը մէկդի թողուց։ Մեծ դաշտի մը մէջ պալատ մը շինել տուաւ՝ ամէն մէկ կողմը հազար հինգ հարիւր կանգուն երկայնութեամբ, ներսը դուրսը յախճապակէ քանդակներով ու անթիւ շատրուաններով զարդարած. և այն պալատին մէջ կոչունք մը ըրաւ, ուր իր զօրավարներէն, թագուհիներէն, ու ամէն կարգի մեծամեծներէն զատ՝ անհամար ժողովըրդեան հետ մէկտեղ գտնուեցան նաև Չինու, Ռուսաց, Հնդկաստանի, Յունաստանի, Եգիպտոսի, բոլոր Ասիոյ, ինչուան նաև Սպանիոյ դեսպանները։ Երկու հարիւր մետաքսէ պատշգամ կանգնել տուեր էր իրեն համար, ամէն մէկը տասուերկու հատ արծըթէ ոսկեզօծ սիւներու վրայ կեցուցած, ու ծանրագին քարերով զարդարած. անոր չորս դին ալ հարիւրաւոր խանութներ՝ ամէն տեսակ զարդերով զարդարած. իսկ երաժըշտական երգերուն ու զանազան տեսարաններուն թիւը չկար։ Սմրղանդի բոլոր արուեստաւորներն

---

[1] Սմրղանդի մէջ ինչ պերճութիւն ցուցուց Լէնկթիմուր։

ալ իրենց նոր նոր գիւտերովը Թագաւորին առաջեւէն անցան Թափօրով. մուշտակագործները արջու, վագրի ու առիւծու մորթեր հագած էին. լաթեղէն ծախողները՝ չուանէ ու կտաւէ ուղտ մը շիներ էին որ կը քալէր. բամպակէ թռչուններ ու նաեւ բամպակէ աշտարակ մը կար որ կը շարժէր. մեղրավաճառքն ու օղին ան կոչունքին մէջ ոսկիէ ամաններով կը բաժնուէին, և մսերը եփելու համար ամբողջ անտառներ ջարդուեցան : Հրովարտակ մըն ալ հաներ էր Թագաւորը որ ան միջոցին ամէն կռիւ դադրի, և հարուստը աղքատին նեղութիւն չտայ : Այն հանդէսին առենը իր Թոռներէն մէկ հատին հարսնիքը ըրաւ, որ ինը անգամ հագուստնին փոխեցին, և ամէն մէկ անգամուն հանուած հագուստներուն մարգարիտները ու գոհարները անոնց քովիններուն բաժնուեցան :

[1] Այն հանդէսը լմննալէն ետքը դարձաւ ըսաւ Լէնկթիմուր մեծամեծներուն. “ Իմ ըրած մեծամեծ աշխարհակալութիւններուս մէջ շատ բռնութիւններ ու վնասներ ալ ըրեր, և Աստուծոյ արարածները ջարդեր եմ. անոր համար միտքս դրի որ հիմա անհաւատից դէմ պատերազմի երթամ, ու կռապաշտ Չինացիքը ջնջեմ աշխարհքէս : Այն զօրքերս որ մեղանչելու համար օգնեցին ինծի, հիմա ալ Թող ապաշխարութեանս գործիք ըլլան, ու աս սրբազան պատերազմին մէջ ինծի հետ կռատունները կործանեն, և անոնց տեղը մզկիթներ կանգնեն ,, : Այս խօսքը ըսաւ ու երկու հարիւր

[1] Ինչպէս մեռաւ Լէնկթիմուր :

հազար զօրքով Ճամբայ ելաւ. բայց դեռ Չինաստան չհասած՝ Ճամբան մեռաւ եօթանասունըմէկ տարեկան, ետեւէն թողած աւերակ քաղաքներուն ու մարդկանց դէզադէզ գլխակներուն անէծքը հետը տանելով (1405)։

[1] Պայեզիտի որդւոցը մէջ յաջորդութեան համար կռիւ ընկաւ. բայց վերջապէս Մէհէմմէտ Թագաւորեց որ մարմնոյն գեղեցկութեանը, վայելուչ հասակին ու ազնիւ բնաւորութեանը համար Չէլէպի ըսուեցաւ։ Ամէն կողմէն իրեն ուրախակցութեան դեսպաններ եկան. սիրով ընդունեցաւ զանոնք սուլթան Մէհէմմէտ և ըսաւ իրենց. "Գնացէք ձեր տէրերուն զրուցեցէք, որ ես ամենուն խաղաղութիւն կու տամ ու ամենէն խաղաղութիւն կ'առնում, և ով որ աս խաղաղութիւնը լուծէ՝ խաղաղութեան Աստուածը առնէ անոր դատաստանը"։

[2] Բայց որովհետեւ Թշնամիք իր տէրութիւնը ոտնակոխ կ'ընէին, պէտք եղաւ որ պատերազմի ելլէ։ Գարամանի իշխանին վրայ գնաց ու շատ քաղաքներ առաւ ձեռքէն. երբոր Անկիւրիա հասաւ՝ հիւանդացաւ. և անուանի Շէյխ Սինան բժիշկն ու բանաստեղծը գիտնալով որ Թագաւորին հիւանդութիւնը մաղձոտութենէ առաջ կուգայ՝ ըսաւ Թէ Թագաւորին առողջութեան մի միայն դեղ է յաղթութեան աւետիս մը։ Պայեզիտ փաշա վէզիրը խաբէութեամբ Գարամանի իշ-

---

1 Սուլթան Պայեզիտին ով յաջորդեց։
2 Ի՞նչ պատերազմ ունեցաւ Գարամանի իշխանին հետ։

խանէն զօրքը ջարդեց ու անոր Մուստաֆա որդին ալ գերի բռնեց։ Այն յաղթութեան աւետիսն առնելուն պէս առողջացաւ սուլթան Մէհէմմէտ, ու Մուստաֆան արձըկեց. անիկայ ալ ձեռքը կուրծքին զարնելով երդուընցաւ, ու "Քանի որ աս մարմինը կենդանի է, Օսմանեանց երկրին պիտի չդպչիմ" ըսաւ։ Բայց սուլթան Մէհէմմէտին բանակէն ելլելուն պէս երդմանը ստեց, և Օսմանեանց արօտական ձիերը առաւ տարաւ՝ ըսելով թէ "Օրոցքէն ինչուան գերեզման Օսմանցիք և Գարամանցիք իրարու թշնամի պիտի ըլլան"։ Երբոր իրեն քովինները ըրած երդումը յիշեցուցին, ծոցէն մեռած աղաւնի մը հանեց (որ Մէհէմմէտին առջևը կեցած ատենը ծոցին մէջ կենդանի է եղեր) ու ըսաւ. "Քանի որ աս մարմինը կենդանի է"։ Բայց Իկոնիոնի մէջ դարձեալ պաշարեց զինքը սուլթան Մէհէմմէտ, առաւ քաղաքը ու Մուստաֆային նորէն ներում տուաւ։

[1] Քանի մը տարի ետքը սուլթան Մէհէմմէտ Ադրիանուպօլիս երթալու ատենը կաթուածէ մը զարնուեցաւ ու մեռաւ (1422), և որպէս զի ինչուան որդւոյն թագաւորելը զօրքը չապստամբի՝ մահը դուրս չհանեցին, ու զինքը փառաւոր զգեստով վերնատան մէջ գահոյքը նստեցուցին, զօրքն ալ պատուհանին առջևէն անցնելով թագաւորը տեսան և անոր բարևը առնելով ուրախացան. վասն զի ետևը ծառայ մը կեցած՝ անոր մուշտակին թևը բարևելու ձևով կը շարժէր։

---

[1] Ի՞նչպէս մեռաւ։

## ԳԼՈՒԽ ԼԵ.

Պատմութիւն Օսմանեանց և Յունաց՝ սուլտան Մուրատ Երկրորդէն մինչեւ Կոստանդնուպօլսոյ առումը (1422-1453)։ Սուլտան Մուրատ Բ. — Վառնայի պատերազմը. — Կոստանդին Պալէոլոգ. — Սուլտան Մէհէմմէտ Բ. — Կոստանդնուպօլսոյ պաշարումը. — Կոստանդին կայսեր որոշումը. — Ենիչէրիներուն քաջութիւնը. — Կոստանդին կայսեր մահը. — Կոստանդնուպօլսոյ առումը. — Սուլտան Մէհէմմէտին քաղաքը մտնալը։

[1] *Սուլդան Մուրատ Բ (1422) Թագաւորելուն պէս, երկու հարիւր հազար հոգւով գնաց Կոստանդնուպօլիսը պաշարեց, բայց ան անգամուն ալ ազատեցաւ քաղաքը. վասն զի Մաճառներն ու Սերվիացիք Օսմանցւոց դէմ պատերազմի ելան, ու Մաճառաց Վլատիսլաւ Թագաւորը, և մանաւանդ Թրանսիլվանիոյ Յովհաննէս Հունիատ զօրավարը շատ քաջութիւններ ըրին Օսմանցւոց դէմ։ Ան ատենները Ալպանիացւոց (Առնաւուտներուն) մէջ ալ մեծ անուն հանած էր Գէորգ Իսքէնտէր պէկ ըսուած իշխանը, որ Հունիատին հետ շատ քաջութիւններ ըրաւ, այնպէս որ սուլդան Մուրատ հաշտութիւն խնդրեց՝ Սերվիան ետ տալով. ինքը Ղուրանին վրայ երդուընցաւ,*

---

[1] *Սուլդան Մէհէմմէտին յաջորդը ով եղաւ։ — Սուլդան Մուրատ ինչ պատերազմ ունեցաւ Սերվիացւոց ու Մաճառաց հետ։*

քրիստոնեայք ալ Աւետարանին վրայ. բայց երդումը աւրողները քրիստոնեայք եղան նոյն տարուան մէջ. սուլթան Մուրատն ալ բարկացած՝ Վառնայի քով Մաճառներուն հետ զարնուեցաւ: Կ'ըսեն թէ երբոր իրենները յաղթուելու վրայ էին, սուլթան Մուրատ հանեց ծոցէն ան դաշնագիրը որ քրիստոնէից հետ ըրած էր, ու դէպ 'ի երկինքը վերցնելով կանչեց. " Ո՛վ Քրիստոս, դուն վրէժխնդիր եղիր քու և իմ նախատանացս ": Ան խօսքէն Օսմանցիք քաջալերուեցան ու յաղթեցին, Վլատիսլաւ թագաւորն ալ պատերազմին մէջ մեռաւ (1444):

1 Անկէց սուլթան Մուրատ Արնաւուտներուն դէմ դարձաւ, ու գնաց Քռոյա (Ագհիսար) ըսուած բերդաքաղաքը պաշարեց. չկրցաւ առնուլ ու պաշարման ատենը կաթուածէ զարնուելով մեռաւ, և տեղը նստաւ որդին սուլթան Մէհէմմէտ Բ քսանըմէկ տարեկան (1451):

2 Ան միջոցին Կոստանդին ԺԲ Պալէոլոգ կայսրը նոր թագաւորեր էր Կոստանդնուպոլսոյ մէջ, և Օսմանեանց առաջ գալէն սարսափած՝ Եւրոպայի ամէն տէրութիւններէն օգնութիւն կը խնդրէր, բայց խիստ ուշ էր. իր տէրութեան կործանումն ալ հասեր էր:

3 Սուլթան Մէհէմմէտ Բ իր պապերուն քաջութեանը վրայ՝ անգութ բնաւորութիւն մը ու-

---

1 Ի՞նչ կերպով մեռաւ սուլթան Մուրատ Բ:
2 Ան ատենները ո՞վ էր Յունաց կայսր:
3 Սուլթան Մէհէմմէտ Բ ի՞նչ կերպով սկսաւ Կոստանդնուպօլիսը առնելու ետեւէ ըլլալ:

նէր, բայց միանգամայն միտքը սուր, կամքը զօրաւոր ու մեծախորհուրդ Թագաւոր մըն էր։ Հօրը յաջորդելուն պէս, միտքը դրաւ որ Յունաց կայսերանիստ Կոստանդնուպօլիսը իր լայնածաւալ տէրութեանը մայրաքաղաք ընէ. և մէկ արգելք մը աչքին չէր երևնար. գիշեր ցորեկ ասոր վրայ կը մտածէր։ Գիշեր մը յանկարծ մարդ խրկեց ու իր վեզիրը կանչեց. անիկայ կարգէ դուրս կանչուելուն վրայ վախցած՝ հետը սկաւառակ մը լեցուն ոսկի առաւ ու տարաւ Թագաւորին առջը Թափեց. անիկայ որ հագուած՝ անկողնոյն մէջ նստեր էր, “Այդ ի՞նչ է ըսաւ իրեն, բերած ոսկեդ քեզմէ՞ ըլլայ. իմ քեզմէ ուզածս աս է որ Կոստանդնուպօլիսը առնելու համար օգնես ինծի։ Զըլլայ թէ Յունաց տղեկովը կաշառուիս. պատերազմը շուտով պիտի սկսի, և յուսամ որ Աստուծոյ և Մահմէտին օգնութեամբ անոր քաղաքը անհաւատից ձեռքէն կ'առնենք,,։

1 Սուլթան Մէհէմմէտին պատրաստութիւնն որ լսեց կայսրը, խոստացաւ որ հարկատու ըլլայ իրեն՝ թէ որ ան դիտաւորութենէն ետ կենայ. սուլթան Մէհէմմէտ ըսաւ դեսպանին. “Գնա զրուցէ քու տիրոջդ, որ Օսմանցւոց հիմակուան Թագաւորը իր նախորդներուն չնմանիր. անոնց ընել չկրցածը ինքը շուտ մը կ'ընէ, անոնց չուզածը ինքը կ'ուզէ ու կը կատարէ։ Ո՛վ որ ասկէց ետքը գայ աս բաներուս վրայ խօսելու, ողջ ողջ մորթը կը հանեմ,,։

---

1 Կայսեր կողմանէ եկող դեսպանին ի՞նչ պատասխան տուաւ։

1 Կոստանդնուպօլսոյ պաշարումը սկսաւ ապրիլի 6ին 1453ին : Տաճկաց զօրքն էր երեք հարիւր հազար հոգի. ահագին Թնդանօթներով սկսան պարիսպները զարնել ծովէն ու ցամաքէն, բոլոր քաղաքը պաշարուեցաւ. խեղճ Յոյները յուսահատած՝ ընելիքնին չէին գիտեր. բոլոր զօրքերնին հինգ հազար հոգի էր, անոնց ալ երկու հազարը Ճենովացիք ու Վենետիկեցիք էին : Կայսրը աս սակաւաթիւ զօրաց սպարապետ դրաւ Յովհաննէս Ճուսթինիանի Ճենովացի կտրիճ իշխանը, ու մէկ կողմանէ քաջութեամբ իր աթոռը կը պաշտպանէր, մէկալ կողմանէ նորէն հաշտութիւնը կը խնդրէր. բայց անողորմելի Թշնամին պատասխան տուաւ. “ կամ ես աս քաղաքը պիտի առնեմ, կամ աս քաղաքը զիս պիտի առնէ. Կոստանդնուպօլիս կամ աթոռս և կամ գերեզմանս պիտի ըլլայ ,, : Կոստանդին կայսրն ալ ըսաւ. “ կամ մայրաքաղաքս կ'ազատեմ, և կամ անոր աւերակացը տակ կը Թաղուիմ ,, :

2 Ենիչէրի ժողվեց սուլթան Մէհէմմէտ, և որոշեց որ մայիսի 29ին ընդհանուր յարձակմունք մը ընեն Յունաց վրայ : Պատերազմին նախընթաց օրը հրամայեց որ բոլոր զօրքը ծոմ բռնէ ու լուացմունքներ ընէ, գիշերն ալ բոլոր բանակը լուսաւորել տուաւ. տէրվիշներն ու իմամները վեր վար պտըտելով ու աղօթելով բանակը մզկիթ դար-

---

1 Ե՞րբ ու ի՞նչ կերպով սկսաւ Կոստանդնուպօլսոյ պաշարումը ։

2 Սուլթան Մէհէմմէտ իր զօրքերուն ի՞նչ յորդորանք կուտար :

ձուցին․ Թագաւորին ալ անդադար մարդիկը, կանայքն ու քաղաքին հարստութիւնը ձեզի կը թողում, ինծի անոր աթոռն ու շէնքերը միայն կը պահեմ կ՚ըսէր։

[1] Ան միջոցին Քիոս (Սագըզ) կղզիէն հինգ նաւ քաղաքին օգնութեան հասան, և Օսմանեանց նաւատորմիղին հետ պատերազմելով յունական կրակով անոնցմէ շատը այրեցին, տասուերկու հազար մարդ ջարդեցին ու յաղթանակով նաւահանգիստը մտան․ Ղալաթիայի Պալըգ փազարը ըսուած տեղէն ինչուան դիմացի Պալըգ փազարին ալ շղթայ մը ձգուեցաւ որ թշնամիք չկարենան ներս մտնել։

[2] Սուլթան Մէհէմմէտ որ ծովեզերքը կեցեր պատերազմը կը դիտէր, զօրացը ջարդուիլը տեսնելով բարկութենէն չդիմացաւ, վազեց իր ծովապետին վրայ ու ձեռքի ոսկի գաւազանովը ծեծեց կ՚ըսեն զինքը։ Անկէց ետքը մտաւ իր վրանը, քիչ մը ատեն մտածեց, ու նաւատորմիղը նաւահանգըստին մէջ իջեցընելու համար անկարծելի դիւտ մը գտաւ։ Պէշիքթաշէն ինչուան Ղալաթիա երկու մղոնի չափ տեղին խորտուբորտութիւնը շըտկեցուց, ճարպ քսուած տախտակներով պատեց, ու ան սահուն ճամբով մէկ գիշերուան մէջ իր նաւերը ծովէն անցուց և Ղալաթիայէն ներսի նաւահանգիստը իջեցուց։ Արևը ծագելուն պէս երբոր տեսան Յոյնք որ Օսմանեանց նաւերը նա-

---

1 Քիացիք ի՞նչ օգնութիւն ըրին Յունաց։
2 Օսմանցիք ի՞նչ կերպով նաւահանգստին մէջ մտան նաւերով։

ւահանգստին մէջ լեցուեր են՝ սարսափեցան․ քաղաքին մէջ խոր լռութիւնն ու յուսահատութիւնը տիրեց, ժողովուրդը եկեղեցիները կը վազէին, և արտասուօք գետինը թրջելով Աստուծոյ ողորմութիւնը կը խնդրէին ։

[1] Այն յուսահատութեան մէջ միայն Կոստանդին կայսրը անդրդուելի քաջութեամբ մը զօրքը, մեծամեծներն ու ծերակոյտը ժողվեց ու ըսաւ․ “ Բարեկամք, ահա մեր վերջին յաղթանակը կամ վերջին օրը հասեր է․ վտանգնիս մեծ է, բայց քաջութեամբ կրնանք յաղթել անոր ։ Ձեր նախնիքը աշխարհքս նուաճեցին, և աս քանի՞ հարիւր տարի է որ մենք ալ Պարսից, Սարակինոսաց, Սկիւթացւոց, Բուլղարաց, Հոնաց, և անթիւ բարբարոսաց անհամար յարձակմանցը դէմ կեցանք ։ Աս Թուրքերն ալ որ հիմայ վրանիս յարձըկեր են, քանի՜ քանի անգամ առջևնէս փախան․ հիմա մեր երկպառակութեամբը միայն այսչափ վրանիս զօրացան․ միաբանինք դարձեալ, չեն կրնար մեր առջևը դիմանալ ։ Բոլոր Եւրոպա մեզի համար զէնք առեր է․ Հունիատ և Մաճառները մօտեցեր են, Վենետկեցւոց նաւերը մեզի օգնութեան կը հասնին․ մէկ օր մըն ալ ցուցուցէք քաջութիւննիդ, ամէն բան կը լմըննայ ։ Մեզի կը սպասէ փառքը, հայրենիքը զմեզ կը կանչէ, մեր դիւցազունքը մեզի կը նային․ երթա՛նք ։ Թէ պատերազմին վտանգացը և թէ յաղթութեան պտուղին ձեզի հետ մասնակից պիտի ըլլամ․ թէ որ Կոստանդնուպօլիս առնուի, թէ որ իմ քաջ զինուորակիցներս մեռնին, պէտք է որ ես

---

[1] Կոստանդին կայսրը ի՜նչ քաջութիւն ցուցուց ։

ալ հետերնին մեռնիմ,,: Աս պատաշարժ խօսքերուն վրայ ամէնքը արտասուօք ու քաջութեամբ երդուընցան որ կամ յաղթեն և կամ մեռնին: Կոստանդնին աչուըները դարձած՝ գնաց կայսերական պալատը, ընտանեացը ետքի բարևը տուաւ, հագաւ զրահներն ու ելաւ գնաց Թօփ գափու ըսուած դուռը, վասն զի Օսմանցիք ալ իրենց բոլոր ուժը անոր վրայ պիտի թափէին:

[1] Արշալոյսը ծագելուն պէս՝ Օսմանցիք սոսկալի գոռում գոչումով ծովէն ու ցամաքէն կատաղաբար յարձակեցան. չորս կողմէն թնդանօթները կ'որոտային ու քաղաքին վրայ անձրևի պէս ռումբ կը թափէին: Քաղաքացիք պարիսպներուն փլած կտորները շուտ շուտ կը նորոգէին. բայց անոնք չէին դիմանար թնդանօթներուն դիմացը. լայն լայն խրամներ բացուեցան պարսպին վրայ ու Տաճկըները վազեցին որ հեղեղի պէս ներս թափին. օդը նետերուն բազմութենէն մթընցեր էր: Պատերազմողները ամպի պէս դիզուած սաստիկ փոշիէն ու ծուխէն մէկզմէկ չէին տեսներ, ու ան մթութեան մէջ վառօդին կրակն ու յունական կրակին բոցերը միայն կ'երևնային. ամէն կողմէն լսուած սոսկալի հայհոյանքներ, աղաղակներ, զանգակներու ձայներ, զէնքերու շառաչմունք ու ամէն տեսակ գոռում գոչումն անպատմելի էր:

[2] Սուլթան Մէհէմմէտ մէկ կողմանէ իր զօրքերուն սիրտ կուտար, մէկալ կողմանէ զանոնք կը շատցըներ. զօրացը ետևէն ալ մասնաւոր դահիճներ

---

1 Պաշարման սաստկութիւնը ի՞նչպէս էր:
2 Ի՞նչ կերպով սկսաւ քաղաքը առնուիլ:

կեցած՝ կը ստիպէին զանոնք որ կամ պարսպին վրայ վազեն մեռնին, և կամ ետ դառնան նէ՝ իրենց թրովը սպաննուին։ Ասանկով քաղաքին խրամները մեռելներով լեցուեցան. բայց դեռ Յոյնք աւելի յաղթող էին քան թէ յաղթուած։ Ան ատեն սուլթան Մէհէմմէտ ենիչէրիները առաջ քշեց, որ ինչուան ան ատենը չէին պատերազմած. Թագաւորն ալ ձի հեծած, լախտը ձեռքը առջևնին ընկած՝ ձայնովը ու ձեռքովը զանոնք կը քաջալերէր։ Հասան անունով յաղթահասակ ենիչէրին ամենէն առաջ պարսպին վրայ վազեց. անհամար թրերէ ու նիզակներէ զարնուելով ընկաւ, նորէն ելաւ, պարսպէն անդին անցաւ ու նորէն ընկաւ մեռաւ։ Անոր ետևէն ուրիշները վազեցին, առջի պարիսպը առին։ Ան միջոցին Ճուսթինիանի զօրապետը վիրաւորուեցաւ ու ալ չէր կրնար պատերազմիլ. ուստի նաւակ մը մտաւ ու ետ քաշուեցաւ. Կոստանդնի զօրքերը բոլորովին վհատեցան ու սկսան մէկզմէկ կոխկռտելով փախչիլ։ Ենիչէրիներն ալ կատաղաբար անոնց վրայ ընկան, ու բոլոր ան քաջ զինուորները անխնայ ջարդեցին։

1 Կոստանդին յուսահատած սկսաւ կանչել. " Մէկ քրիստոնեայ մը չկա՞յ որ զիս մեռցնէ ու գերութեան նախատինքը վրայէս հանէ ,,։ Տեսաւ որ մօտիկ ընող չկայ, թշնամեաց բազմութեանը մէջ նետուեցաւ, շատ մարդ սպաննեց ու չորս դին զարնուելով ուրիշ մեռելներուն բազմութեանը մէջ աներևոյթ եղաւ։

---

1 Կոստանդին կայսրը ինչ եղաւ։

1 Օսմանցիք ամէն կողմէն մտան քաղաքը (մայիսի 29ին 1453), յիսունըեօթը օր պաշարելէն ետքը, ու ահաւոր ամէն տեղ կոտորել, քանդել ու կողոպտել. կայսեր ընտանիքը՝ չարաչար նախատանօք անարգեցին, Վենետիկոյ դեսպանը գլխատեցին, քառասուն հազար քաղաքացի ջարդեցին ու վաթսուն հազարը գերի տարին։

2 Այն միջոցին սրբոյն Սոփիայ (Այա Սոֆիա) եկեղեցւոյն մէջ անթիւ բազմութիւն ժողվուած կը ապաստանէին որ հրեշտակ մը գայ իրենց երևնայ, ինչպէս որ ոմանք գուշակութիւն ըրեր էին. Օսմանցիք վազեցին անոնց վրայ, ամէնքն ալ ինչպէս որ եկաւ նէ՝ երկերկու հոգի իրարու հետ կապեցին, գերի ըրին։ Աս ահաւոր կոտորածն ու կողոպուտը երկու օր քշեց, և անկէց ետքը հասարակաց շինուածքներուն քանդումը դադրեցաւ. վասն զի սուլթան Մէհէմմէտ ալ հասաւ, շիտակ գնաց սրբոյն Սոփիայ եկեղեցին, ձիէն իջաւ ներս մտաւ ու զարմացաւ մնաց շէնքին գեղեցկութեանը վրայ։ Աչքը վար դարձուց տեսաւ որ զինուորներէն մէկը յատակին գեղեցիկ քարերը կոտրտելու հետ է. բարկացաւ թագաւորը, թրովը զարկաւ մարդուն ու ըսաւ. "Աս քաղաքին գանձերը ձեզի թողուցի, բայց շինուածքները իմս են"։ Ետքը հրամայեց իր կարգադրողներէն մէկուն որ ամպիոնը ելլէ ու մահմետականութեան դա-

---

1 Ի՞նչ ջարդ ըրին Օսմանցիք Կոստանդնուպօլսոյ մէջ։

2 Սուլթան Մէհէմմէտ ի՞նչ կերպով ներս մտաւ։ — Յունաց ի՞նչ ազատութիւն տուաւ։

ւանանքը կարդայ · Ինքն ալ ասոր սեղանին վրայ կէսօրուան նամազը կատարեց ։ Ետքը դուրս ելաւ , ողջ մնացած՝ քրիստոնէից ազատութիւն տուաւ , հրաման ալ ըրաւ անոնց որ իրենց հաւատքը պաշտեն ու միայն գլխահարկը որոշեց իրեւ ան ազատութեանը գին ։ Յունաց պատրիարք մը անուանեց · ետքն ալ Գրուսայեն իրեն ճանչւոր Յովակիմ եպիսկոպոսը Կոստանդնուպօլիս բերաւ ու ամենայն Հայոց պատրիարք անուանեց · եպիսկոպոսին հետ Գրուսայէն , Անկիւրիայէն և ուրիշ տեղերէն քանի մը տուն հայ ալ եկան ու Ղալաթիա և բուն քաղաքին մէջ բնակեցան ։



# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## Միջին դարու ատենները եղած գիտութեանց ու արուեստից վրայ :

1 Բարբարոսաց արշաւանքովը նախնեաց գեղեցիկ մատենագրութիւնը բոլորովին վար ընկաւ : Օգոստոսի դարուն ու քրիստոնէական մատենագրութեան ոսկի դարուն յաջորդեց երկաթի դար մը, թէպէտ և լատիներէնն ու յունարէնը դեռ բոլորովին չէին վերցուած բարեկիրթ ժողովուրդներուն մէջէն : Երբոր այլեւայլ ազգեր արտաքին խռովութիւններէ քիչ մը հանգչեցան, փիլիսոփայական ուսմունքներն ալ սկսան ծաղկիլ. բայց դպրոցական փիլիսոփայութիւնը դրականութեան կամ գեղեցիկ դպրութեանց ծաղկելուն քիչ մը արգելք եղաւ : Աս փիլիսոփայութեան մէջ անուանիներուն գլխաւորներն են Լանֆրանք, Աբայելարդոս, սուրբն Բեռնարդոս, Պետրոս Լոմբարտոս, սուրբն Թովմաս Աքուինացի, և Յունս Սկոտոս :

2 Վանական դպրոցներէն զատ, որոնց մէջ աստուածաբանական գիտութիւններ դաս կը տրուէին, մեծամեծ քաղաքներու մէջ աշխարհական

---

1 Միջին դարու ատենները Եւրոպացւոց դրականութիւնը ի՞նչ վիճակի մէջ էր :
2 Ի՞նչ անուանի դպրոցներ կային :

դպրատուններ ալ բացուեցան, ուր հասարակ գիտութիւնները կը սորվեցընէին: Բոլորը մէկէն եօթը տեսակ ուսմունք կը բաժնէին, այսինքն քերականութիւն, ճարտասանութիւն, տրամաբանութիւն, եկեղեցական երաժշտութիւն, թուաբանութիւն, երկրաչափութիւն և աստեղաբաշխութիւն: Աշխարհական դպրոցներուն մէջ անուանի էին մէյմը Սալէռնոյինը՝ բժշկականութեան համար, Փարիզունը՝ որ մետասաներորդ դարուն սկսեր էր ծաղկիլ, Օքսֆորտինը որ Մեծն Աղֆրէտ հիմներ էր, Պոլոնիայինը՝ ուր քաղաքական իրաւունք կը սորվեցընէին, և Մոնփելլիէինը ուր բժշկութիւն կը սորվեցընէին:

1 Երկոտասաներորդ դարուն մէջ Փարիզու ազատ վարժապետները ընկերութիւն մը ձևացուցին որ ըսուեցաւ Համալսարան. ասոնք Փիլիպպոս Օգոստոս Թագաւորէն հրովարտակ ալ առին, և 1218ին կանոններ ալ ունեցան: Եւրոպայի հին համալսարաններէն շատը Փարիզու կանոններէն օրինակ առին: Ան ատենը սկսան նաև Աքադէմիա կամ ճեմարան ըսուած ընկերութիւնները:

2 Միջին դարու մէջ նոր լեզուներն ալ սկսան ձևի գալ: Չորս գլխաւոր լեզու կար՝ որոնց այլեայլ ճիւղերը կը խօսուէին հիմա Եւրոպայի մէջ. Ա, Յունարէն՝ Կոստանդնուպօլսոյ լեզուն, որ օրէ օր աւրուելու հետ էր. Բ, Սլաւեան լեզուն, ուսկէց ձևացան ռուսերէն, լեհերէն, պոհեմերէնն ու խռուաթերէնը. Գ, Տեւտոնեան լեզուն, ուսկից

---

1 Փարիզու համալսարանը ե՞րբ հաստատուեցաւ:
2 Ի՞նչ նոր լեզուներ ձևացան Եւրոպայի մէջ:

